ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃՀԶ.

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԼԱԶԱՐԵԱՆ ՏՈՀՄԻ ԵՒ ԼԱԶԱՐԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԻ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԼԵԶՈՒԱՑ

ԳՐԵՑ

**ՅՈՎՍԷՓ ԹԱԴԷՈՍԵԱՆ**

ՇՐՋԱՆԱՒԱՐՏ ԼԱԶԱՐԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԻ



ՎԻԷՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1953

# GESCHICHTE DER LAZAREFFS UND DES LAZAREFFISCHEN INSTITUTES DER ORIENTALISCHEN SPRACHEN ZU MOSKAU

VON

JOSEF THADEOSSIAN



WIEN

MECHITARISTEN-BUCHDRUCKEREI

1953

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԼԱԶԱՐԵԱՆ ՏՈՀՄԻ ԵՒ ԼԱԶԱՐԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԻ ԱՐԵ-ՒԵԼԵԱՆ ԼԵԶՈՒԱՑ

ԳՐԵՑ
ՅՈՎՍԷՓ ԹԱԳԷՈՍԵԱՆ
ՇՐՋԱՆԱՒԱՐՏ ԼԱԶԱՐԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԻ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1953

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ռուս հանճարեղ գրող Լեւ Տոլստոյը ասում է.

*«Չկայ աւելի մեծ հաճոյք քան այն, որ գրողը ստանում է իր ստեղծագործութիւնից»:*

Իսկ հայ գրողը պիտի աւելացնի.

*«Չկայ աւելի մեծ երջանկութիւն հայ գրողի համար քան այն, երբ նա տեսնում է իր ստեղծագործութեան պտուղը լոյս աշխարհ հանած եւ հանրութեան սեփականութեան դարձրած»:*

Ահա՛ այսպիսի մի երջանկութեան արժանացրեց մեզ «*Հանդէս Ամսօրեայ*»ի խմբագրապետ Հ. Ներսէս Ակինեանը, որ ոչ միայն շարունակաբար գրեթէ երկու տարի տպագրեց իր ուսումնաթերթում մեր աշխատանքը՝ «*Պատմութիւն Լազարեան տոհմի եւ Լազարեան Ճեմարանի Արեւելեան լեզուաց*», այլ եւ առանձին գրքոյկով այսօր լոյս է ընծայում, առանց մեր մասնակցութեան դոյզն ինչ չափով հրատարակութեան նիւթական ծախսերի մէջ:

Մեր լեզուն չափազանց աղքատ է գտնելու պատշաճ արտայայտութիւններ այն երախտագիտական քնքուշ զգացումների, որոնցով լցուած է մեր սիրտը հանդէպ գերաշնորհ Հ. Ներսէս Ակինեանի եւ ընդհանրապէս

Վիեննայի Մխիթարեանների ամբողջ Միաբանութեանը:

Առանց այդ վեհանձն վերաբերմունքի մեր այդ աշխատանքը՝ ի թիւս մեր միւս անտիպ մնացած աշխատանքների՝ պիտի մնար անշարժութեան մատնուած…:

Արդ, բարոյական պարտք ենք համարում այս երկու խօսքով հրապարակաւ յայտնելու մեր սրտագին շնորհակալութիւններն ու երախտագիտական ջերմ զգացումները մեր անզուգական գիտնական ու բազմահմուտ խմբագրապետ Հ. Ներսէս Ակինեանին ու Վիեննայի Մխիթարեան Միաբանութեան իրենց այս վեհանձն գործի համար, որ այնքան համապատասխանում է Մխիթարեանների աւանդութեան՝ *լինել մշտավառ Հնոց Հայ գրի ու գրականութեան, Հայ պանծալի Մշակոյթների*:

Երախտապարտ՝

ՅՈՎՍԷՓ ԹԱԴԷՈՍԵԱՆ

Թեհրան, Դեկտ. 1953:

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

## ՆԱԽԱԲԱՆ

*Լազարեանները 18րդ դարի կէսից սկսած մինչեւ 19րդ դարի կէսերը ի յայտ են բերել մեր ազգային հասարակական–քաղաքական ու մշակութային կեանքի մէջ այնպիսի՛ բեղուն ու վճռական նշանակութիւն ունեցող գործունէութիւն, որին միացրել են իրենց անձնական մեծ առաքինութիւնները, որ արժանի են, որպէս զի նրանց յիշատակը միշտ մնայ թարմ ու կենդանի:*

*Եթէ Լազարեանները ոչինչ ուրիշ գործ կատարած չլինէին, այլ միայն այն, որ նրանք ե՛ւ պատճառ եղան ե՛ւ մեծապէս նպաստեցին տասնեակ հազարաւոր հայ ընտանիքների ազատագրութեան գործին աsիական բռնակալների անհանդուրժելի դարձած իշխանութիւնից եւ ապա ապահովեցին նրանց խաղաղ զարգացման ուղին Ռուսաստանի հովանու տակ, — արդէն իսկ բաւական է, որպէս զի յետագայ հայ սերունդները միշտ երախտագիտական զգացումներով առլցուն վառ ու կենդանի պահեն նրանց յիշատակը:*

Բայց Լազարեանները օժտուած էին նաեւ մի այլ բացառիկ առաքինութեամբ, որ յաւերժ օրինակ պիտի ծառայէ մեր բոլոր Կրեսոսների եւ օտար պետութիւններում կառավարական բարձր պաշտօններ վարող ազգայինների համար:

Լազարեանները իրենց ամբողջ կեանքով ու գործունէութեամբ ապացուցեցին, որ կարելի է հաւատարմութեամբ, անկեղծ նուիրումով ծառայել մի հիւրընկալ օտար պետութեան, բայց երբեք չմոռանալ իրենց հայ ազգը:

Եւ արդարեւ, Լազարեանները մեծ հաւատարմութեամբ ծառայել են Ռուսաստանին՝ հինգ կայսրների եւ երկու կայսրուհիների օրօք, երբ Ռուսաստանի ներքին եւ արտաքին քաղաքականութիւնները այնքա՜ն խոր տարբերութիւններ են ունեցել, երբ ռուս կեանքը յաճախ փոթորկուել է ներքին ու արտաքին մեծամեծ ցնցումներով, նրանք անխախտ պահպանել են իրենց բարձր դիրքերն ու մեծամեծ ծառայութիւններ մատուցել Ռուսաստանին:

120 տարուայ ընթացքում նրանք ձեռք են բերել մեծ հարստութիւն, հասել բարձր աստիճանների, իրենց պատասխանատու պաշտօնների մէջ արժանացել մեծ ու բացառիկ պատիւների ու փառքի, բայց երբեք չեն մոռացել, որ իրենք ամենից առաջ հայ են եւ

պարտականութիւններ ունին հանդէպ իրենց հայրենիքի, իրենց ազգի ու ժողովուրդի։ Նրանք անվախ ու բացարձակ կերպով ցուցադրել են իրենց հայրենասիրական ջերմ զգացումներն ու ձգտումները մեծամեծ գործերով։ Մի խօսքով նրանք կարողացել են զկայսերն՝ կայսեր եւ զԱստուածոյն՝ Աստուծոյ տալ։

Եւ հիմնեցին այն կրթական մեծ հաստատութիւնը այն օրերին, երբ Հայաստանը յօշոտուած էր ասիական բռնակալների ձեռքով եւ հայ ժողովուրդը գալարւում էր անհուն տառապանքների ու տգիտութեան խաւարի ճիրանների մէջ։

Եւ Լազարեան Ճեմարանը եղաւ մի լուսարձակ փարոս, որ վայելելով ռուս հզօր պետութեան մշտական հովանաւորութիւնը — մի հովանաւորութիւն, որ Լազարեանները կարողացան մեծ հեռատեսութեամբ եւ իրատեսութեամբ ապահովել, — տարածեց իր լուսոյ ճառագայթները մինչեւ Արաքսի ափերը, մինչեւ Պարսկաստանի խորքերը, թափանցեց ամենայետին գիւղացու խրճիթը եւ վանելով տգիտութիւնը, առատօրէն ցանեց հայկական ապագայ վերածննունդի սերմերը։ Հարիւր տարի Ճեմարանը մտաւոր սնունդ է տուել հայութեան եւ առաջ մղել նրա մշակութային յառաջադիմութիւնը։

Չկայ որեւէ կշիռ ու չափ, որպէս զի կարելի լինի չափել, ճանաչել ու գնահատել այն նպաստը, որ նա բերել է հայ ժողո-

վուրդի մտաւոր լուսաւորութեան մեհ գործին՝ հայ լեզուին, հայ գրականութեան, հայ պատմագիտութեան եւ հայ հասարակական-քաղաքական կեանքի զարթօնքին իր հարիւրաւոր չրջանաւարտների, իր գիտնական ուսուցիչների, իր տպարանի միջոցով:

Ճեմարանի թողած հետքերը — թէեւ նա այլեւս գոյութիւն չունի 1918 թուականից սկսած, 1917 թ. Հոկտեմբերեան յեղափոխութեան հետեւանքով — այսօր էլ դեռ զգալի են ու չօշափելի մեր կեանքի մէջ:

Բայց չնայած այդ բոլորին, Լազարեան Ճեմարանը չունի իր պատմութիւնը, չունին նաեւ նրա հիմնադիրներն ու պահպանողները՝ Լազարեանները, իրենց կենսագրականները, մատչելի հայ ընթերցող հասարակութեան լայն խաւերին...:

Ահա՛ թէ ինչո՞ւ պէտք էր այդ բացը լրացնել: Եւ մենք յանձն առինք այդ աշխատանքը նաեւ մի չարք այլ չարժառիթներից մղուած:

Լինելով Լազարեան Ճեմարանի նախկին սան՝ Լազարեանների որդեգիրը [1], մենք ստացել ենք մեր միջնակարգ կրթութիւնը Ճե-

---

[1] Մեր գիւղը, այն է Վերին Ագուլիսը, արտօնութիւն էր ստացել Լազարեաններից միշտ յաջորդաբար ունենալու Ճեմարանում Լազարեանների հաչուին մի աչակերտ՝ գիւղի դպրոցի յառաջադէմ տղաներից: 1886—1887 թ. ուս. տարում Ճեմարանը աւարտել էր Վ. Ագուլեցի Մկրտիչ Բարխուդարեանը. 1887 թ. ինձ վիճակուեց փոխարինելու նրան, որպէս Լազարեանների սան:

մարանում, որ եւ դուռ է բաց արել մեզ համար նաեւ բարձրագոյն կրթութիւն ստանալու Մոսկուայի համալսարանում: Այս հանգամանքը մեզ վրայ բարոյական պարտականութիւն է դնում մեր երախտագիտական տուրքը տալու այդ բազմերախտ տոհմին: Չէ՞ որ, ինչպէս մենք, այնպէս էլ հարիւրաւոր որբ ու չքաւոր գիւղացի երեխաներ, որոնք նոյնպէս բախտ են ունեցել սովորելու ճեմարանում Լազարեանների հաշուին, դատապարտուած պիտի լինէինք զոհ գնալու մեր խաւար միջավայրին ու չքաւորութեան:

Լազարեանները իրենց հեռատեսութեան եւ իրատեսութեան մէջ հէնց սկզբից ապահովել էին 30 որբ կամ չքաւոր հայ երեխաների ձրի կրթութիւնը ճեմարանում, իրենց հաշուին, որպէս գիշերօթիկներ: Այդ որդեգիրների թիւը իմ ժամանակ արդէն հասել էր 44ի:

Այս տեսակէտից չափազանց ուշագրաւ է, որ Լազարեան ճեմարանը հէնց սկզբից եղել է ապադասակարգային դպրոց, մինչդեռ մեր թեմական դպրոցները, սկսած Ներսիսեան դպրոցից, երկար ժամանակ կրել են դասակարգային բնոյթ եւ յատկացուած են եղել հայ հոգեւորականների, ազնուականների ու վաճառականների զաւակների ուսման համար:

Լազարեան ճեմարանի այդ ժողովրդավար բնոյթը կազմել է նրա բազում առաւե-

լութիւններից մէկը, թերեւս, ամենից էական:

Այնուհետեւ բարի նախանձախնդրութիւնն էլ իր բաժին դերն է կատարել մեր ներկայ ձեռնարկի մղիչ հանգամանքների շարքում:

Եւ արդարեւ, Ներսիսեան դպրոցը Թիֆլիսում, Երեւանի Թեմական դպրոցը եւ նոյն իսկ Ղարաբաղի Թեմական դպրոցը, որոնք հիմնուել են մի քանի տասնեակ տարիներ աւելի ուշ, քան Լազարեան Ճեմարանը, ունին իրենց ընդարձակ ու համառօտ պատմութիւնը, մինչդեռ Լազարեան Ճեմարանը մինչեւ այսօր էլ չունի իր ո՛չ ընդարձակ եւ ո՛չ համառօտ պատմութիւնը, ինչպէս եւ նրա հիմնադիրները՝ Լազարեանները՝ չունին իրենց կենսագրականները...:

Այս պատմական անարդարութիւնն էլ պէտք էր վերացնել...:

Այս բոլոր պատճառների եւ նկատումների շարքում կայ եւ մի այլ պարագայ, որը անկարելի է անտեսել:

1912 թուին Լազարեան Ճեմարանի վերատեսուչ ռուս Գիդուլեանովը, պրպտումներ կատարելով Ճեմարանի անցեալի մէջ, եկել էր ոչ անհիմն այն եզրակացութեան, որ Ճեմարանի հիմնադրութիւնը եղել է 1814 թ. եւ ո՛չ 1815 թ., ինչպէս ընդունուած էր ամբողջ 100 տարուայ ընթացքում: Այս իսկ պատճառով նա որոշեց կատարել Ճեմարանի հարիւրամեայ յոբելեանը 1914 թ.

*աշնանը։ Այս մասին նա, ի միջի այլոց, յայտնեց Մոսկուայում գտնուող ճեմարանի շրջանաւարտներին եւ առաջարկեց նրանց բերել իրենց մասնակցութիւնն եւ օժանդակութիւնը յոբելեանի կազմակերպական աշխատանքներին։*

*Այդ ժամանակ ես պաշտօնավարում էի ճեմարանում։*

*Սիրով արձագանգելով վերատեսչի կոչին, Մոսկուայում գտնուած ճեմարանաւարտները, շուրջ 25—30 հոգի, հաւաքուեցինք խորհրդակցական ժողովի ճեմարանում, մշակելու մեր աշխատանքների ծրագիրը։ Ժողովի նախագահ ընտրուեց Մոսկուայի հանրածանօթ ազգային-հասարակական գործիչ իրաւաբան Ստեփան Մամիկոնեանը։*

*Այդ խորհրդակցական ժողովը իր մի շարք որոշումների շարքին վճռեց կազմել ճեմարանի համառօտ պատմութիւնը, տպագրել այն եւ ապա ձրի ցրուել հայ ժողովրդի մէջ։*

*Եւ այդ գործը յանձնարարուեց ինձ։ Ես սիրով ընդունեցի ինձ եղած առաջարկը եւ մեծ եռանդով նուիրուեցի այդ աշխատանքին։*

*Աղբիւրների պակաս էլ չունէի․ ճեմարանի հարուստ մատենադարանը իմ տրամադրութեան տակ էր։*

1914 *թ․ գարնան վերջերքին արդէն աւարտած ու պատրաստ էր իմ աշխատանքը,*

*ամփոփուած չորս քառածալ հաստ տետրակների մէջ:*

*Բայց նոյն թուի ամրանը պայթեց առաջին համաշխարհային պատերազմը եւ ճեմարանի յոբելեանի խնդիրը ջուրն ընկաւ:*

*Ճեմարանը դէպքերի բերումով այլեւս բախտ չունեցաւ տօնելու իր յոբելեանը, մանաւանդ որ 1918 թ. աշնանը նա դադարեց գոյութիւն ունենալուց:*

*Իսկ 1921 թուին կորուստի մատնուեց եւ մեր այդ աշխատանքը:*

*Եւ մենք ստիպուեցինք միւսանգամ զբաղուել նոյն խնդրով:*

*Այժմ մի-երկու խօսք մեր այս նոր աշխատանքի բնոյթի մասին:*

Մեր այս գործը չունի ինքնուրոյն ուսումնասիրութեան բնոյթ. նա հետամուտ է մի շատ համեստ նպատակի՝ ի մի հաւաքել Լազարեանների եւ Լազարեան ճեմարանի մասին եղած տեղեկութիւնները, ցրուած բազում հայերէն եւ ռուսերէն հրատարակութիւնների մէջ, յաճախ գրաբար ու երբեմն նաեւ շատ խրթին լեզուով գրուած աղբիւրների մէջ, եւ ամբողջացնելով այդ ամէնը, ներկայացնել հայ ընթերցող հասարակութեան մատչելի լեզուով: *Շատ յաճախ մեր աղբիւրների մէջ եղել են բոլոր բուն նշանակութեամբ սոսկ երկու խօսքով յիշատակութիւն մի դէպքի, մի անուան. այդպիսի աղբիւրների անունները մենք չենք յիշատակել:*

*Ասենք եւ այն, որ ինքնուրոյն ուսումնասիրութիւն չէր կարող լինել մեր աշխատանքը հետեւեալ անյաղթահարելի արգելքների հետեւանքով*:

*Ամենից առաջ նրա համար, որ* Լազարեան ճեմարանի հարուստ մատենադարանը, ուր ժամանակին ի պահ դրուած էին նաեւ Լազարեան տոհմի բազմահատոր թղթակցութիւնները եւ ուր գտնւում էին նաեւ ճեմարանի տարեկան հանդէսների ժամանակ ներկայացուած հաշուետուութիւնները ճեմարանի կրթական գործի եւ նիւթական վիճակի մասին, — *այժմ գտնւում են Խ. Հայաստանում եւ մատչելի չեն մեզ*:

*Երկրորդ, մենք չենք ունեցել եւ չէինք էլ կարող ունենալ մի շարք կարեւորագոյն աղբիւրներ, ինչպիսիք են՝*

ա. *Հայ ժողովրդի պատմութեան տեսութեան վերաբերող ակտերի ժողովածուն* (1833—1838 *թթ. ռուսերէն լեզուով*):

բ. *Լազարեան ճեմարանին վերաբերող բարձրագոյն հրովարտակների ու հրամանագրերի ժողովածուն* (1839 *թ. ռուսերէն*) *եւ այլ այնպիսի ուսումնասիրական պատմական մեծարժէք հրատարակութիւններ, որպիսիք են՝ Շոպէնի, Սիրոէյ Գլինկայի, Երիկնէրի, Աչերբատովի եւ այլ հեղինակների գործերը, որոնք անհրաժեշտ էին ձեռքի տակ ունենալ լուրջ ու բազմակողմանի ուսումնասիրական աշխատանքի համար*:

Այս ձեռնարկների եւ աղբիւրների պակասը այսուհանդերձ չի արժէքազրկում մեր աշխատութիւնը. մենք օգտուել ենք մի շարք այնպիսի ձեռնարկներից, որոնք կազմուած են հեղինակաւոր ուսումնասիրողների ձեռքով հէնց վերոյիշեալ աղբիւրներից քաղուածուեալների հիման վրայ. այսպիսով, մենք օգտուել ենք, այսպէս ասած, երկրորդ ձեռքից; բայց այդ ձեռքերը եղել են կարող ու բարեխիղճ:

Յիշատակենք այդ կարգի մեր աղբիւրներից, մի քանիսը.

ա. Յիշատակարան կենաց եւ գործոց մեծանուն պայազատաց Լազարեան տոհմի: Շարադրեալ ի Մսերայ Մագիստրոսէ եւ ասպետէ Գրիգորեան Մսերեանց: Մոսկուա, ի տպարանի Արեւելեան լեզուաց ճեմարանի Տեարց Լազարեանց: 1856—ՌՅԵ:

բ. Պատմական ակնարկ Լազ. ճեմարանի Արեւելեան Լեզուաց հանդերձ համառօտ կենսագրականներով ճեմարանի հիմնադիրների, Յաւելուածներով պատմական ակնարկին ու կենսագրականներին: 2րդ հրատ. կազմեց Պրոֆ. Ալեքսէյ Զինովեւ. Մոսկուա, Տպարան Լազարեան ճեմարանի 1863 (ռուսերէն):

գ. Ճառեր եւ հաշուետուութիւն, արտասանուած Լազարեան ճեմարանի Արեւելեան Լեզուաց 50ամեակի առթիւ տեղի ունեցած հանդիսաւոր հաւաքոյթին: Մոսկուա, Տպարան Լազարեան ճեմարանի, 1865 (ռուսերէն):

դ· Լազարեան Ճեմարանի Արեւելեան Լեզուաց մասնագիտական դասընթացքների 30ամեակը: Մոսկուա, 1903:

ե· Ամենայն Հայոց Կաթողիկոսութիւն եւ Կովկասի Հայք XIX· դարում: Մասն Ա· (1800—1832) եւ Մասն Բ· (1831—1842): Աշխատասիրեց Աղեքսանդր Երիցեանց: Թիֆլիս 1894 եւ 1895:

զ· Լէօ, Յովսէփ Կաթողիկոս Արղութեան, Թիֆլիս 1902:

է· Լէօ, Պատմութիւն Երեւանի Հայոց Թեմական դպրոցի, 1837—1912, Թիֆլիս 1914:

ը· Բարձրագոյն հրովարտակք, կանոնադրութիւնք եւ ցուցակ Լազարեան Ճեմարանի Արեւելեան Լեզուաց ի Մոսկով եւ Կանոնք նորին բարձրագոյնս հաստատեալք, ծախիւք Տ· Հոգաբարձուի Լազարեանց Ճեմարանի ի յիշատակ մատաղահաս Յովհաննու Խաչատրեան Լազարեվի: Ի Մոսկով, ի Տպարանի Լազարեանց Ճեմարանի Արեւելեան Լեզուաց: 1852 (հայերէն եւ ռուսերէն):

Մնացեալ աղբիւրները, որոնցից մենք օգտուել ենք, յիշատակուած են թէ բնագրի եւ թէ առանձին ցանկի մէջ:

Մէջբերումներ անելիս այդ աղբիւրներից, մենք պահպանել ենք բնագրերի թէ լեզուն եւ թէ ուղղագրութիւնը ամենայն հարազատութեամբ:

Ի վերջոյ պարտք ենք համարում յայտնելու մեր խորին շնորհակալութիւնները շատ

*յարգելի* Պ. Տիգրան Աբգարեանին (*Ն. Ջուղա*), *որ մեզ տրամադրեց ճեմարանի 50ամեակին նուիրուած թանկարժէք ու հազուագիւտ դարձած հրատարակութիւնը, ինչպէս եւ* Թեհրանի Հայ Ակումբի Վարչութեան ու մասնաւորապէս գրադարանապետ երիտասարդ Պ. Նորայր Ստեփանեանին, *որոնք դիւրութիւններ տուին լայն չափով օգտուելու Ակումբի գրադարանից*:

*Թեհրան*, 1947 *թ. Օգոստոս* 30:

## ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Քաղաքական կացութիւնն Անդրկովկասում 19րդ դարի սկիզբներին եւ Ռուսաստանի թափանցումը Անդրկովկաս:

(Պատմական համառօտ տեսութիւն։)

### Ա.

*Արեւելեան Հայաստանը 19րդ դարի սկիզբներին դեռ եւս գտնւում էր պարսկական ու թրքական պետութիւնների բիրտ տիրապետութեան տակ եւ հեծում էր նրանց մեծ ու փոքր բռնակալ իշխանաւորների անխիղճ եւ անլուր հարստահարութիւնների ու կեղեքումների ծանր բեռան ներքոյ...:*

*Ռուս պետութեան աստիճանական թափանցումը միայն, նախ տնտեսապէս, առեւտրական գետնի վրայ, եւ ապա քաղաքականապէս, ընդլայնելով ու տարածելով իր սահմանները մինչեւ Երասխ գետի ափերը, գրաւելով ամբողջ Անդրկովկասը 19րդ դարի 20ական թուականների վերջերքին, — վերջ տուեց իրերի յիշեալ ողբերգական կացութեան. Հայ ժողովուրդը հնարաւորութիւն*

տացած կեանքի խաղաղ պայմաններում, պետական օրինական կարգերում, արագօրէն ստեղծել իր համար տնտեսական բարգաւաճ վիճակ, չէնցնելով ամայի երկիրը, եւ ապա բռնել կուլտուրական յառաջադիմութեան ճամբան։ Արդէն 50ական եւ 60ական թուականներին նա ապրում էր իր Վերածնութեան չքնաղ օրերը։ Մի խօսքով, հայ ժողովրդի ստեղծագործ տաղանդը փթթեց ու զարգացաւ ամենակարճ ժամանակում այն աստիճանի, որ նա դարձաւ ամբողջ Անդրկովկասում տնտեսական ու քաղաքական խոշոր գործօն տարր։

Մեր նիւթից դուրս է նկարագրութիւնը հայութեան դառն վիճակի յիշեալ սախական բռնապետութիւնների օրով, սակայն որպէս յիշեցում, որ ներքնապէս կապուած է հետագայ դէպքերի հետ, առաջ ենք բերում մի երկու պատմական վկայութիւններ։

«Վէրք Հայաստանի» մէջ անմահ Խ. Աբովեանը նկարագրում է հայութեան դժբախտ վիճակը Երեւանի խանութեան մէջ, ի միջի այլոց, հետեւեալ յուզիչ տողերով.

«Աղջիկն սանս քաշում էին, տղէն սանս տանում, չատ անգամ թրքացնում, հաւատից հանում, չատ անգամ էլ գլուխը կտրում, էրում, նահատակում։ Ոչ տունն էր իրանը (հայինը), ոչ մալը, ոչ ապրանքը, ոչ ջանը, ոչ օղլուշաղը...»։

Մի այլ վկայութիւն:

«Դարաւոր անիշխանութեան ամբողջ ժամանակամիջոցում, ասում է Գիւտ ար. քահ. Աղանեանը, հազիւ թէ երբ եւ իցէ հայ աշխարհն այնքան բազմաթիւ տիրողներ ունեցած լինի, ինչպէս 18րդ դարում: Թէպէտ Հայաստանը քաղաքականապէս բաժանուած էր խսկապէս երկու տէրութեանց մէջ՝ Պարսից եւ Տաճկաց եւ մի փոքր մասն էլ Վրաց իշխանութեան ներքոյ էր, բայց այնքան խաներ ու փաշաներ կային երկրի մէջ, գրեթէ վասալական իշխողներ, որոնք շատ փոքր կախում ունէին երկու տէրութեանց Շահերից ու Սուլթաններից, որ կարծես թէ երկիրը բազմաթիւ մանր պետութիւնների կամ խանութիւնների բաժանուած լինէր. այդ բանն այն վատ հետեւանքն ունէր, որ յաճախ այդ խաները, զանազան հաշիւներից դրդուած յարձակում գործելով միմեանց վրայ, աւերում էին երկիրը եւ պատճառ դառնում ազգաբնակութեան թշուառութեան, որ ստիպուած էր շատ անգամ իր ծննդավայրը թողնելով գաղթել օտար երկիրներ, ուր աւելի ապահով էին համարում իրենց կեանքը[1]»:

Այդ ապահով երկրներից մէկը, ամենից մերձաւորն ու որպէս քրիստոնեայ մի պետութիւն, ուր կրօնական ազատութիւն էր

---

[1] Տե՛ս Գիւտ ար. քահ. Աղանեանց, «Դիւան Հայոց Պատմութեան», Գիրք Ա. եւ Բ., 1780—1834, Թիֆլիս 1893:

*տիրում, Ռուսաստանն էր հիւսիսում, դէպի որն եւ Հայերը ամենից առաջ դարձրին իրենց հայեացքները:*

*Արեւելքից, արեւմուտքից եւ հարաւից Հայաստանը օղակուած էր մահմեդական ցեղերով ու պետութիւններով, միայն մօտաւոր հիւսիսում էր գտնւում քրիստոնեայ Վրաստանը, որն ինքն էլ տառապում էր նոյն դժբախտ պայմաններում· Մնում էր միայն հեռաւոր Ռուսաստանը, որն արդէն տարածել էր իր իշխանութիւնը մինչեւ Վոլգա գետը եւ Կասպից ծովի ափերը:*

*Քանի որ Լազարեանների հոյակապ տոհմը խոշոր դեր է կատարել, մի կողմից ընդառաջելով իրենց թշուառ հայրենակիցների ձգտումներին ձեռք բերելու Ռուսաստանի հզօր հովանաւորութիւնը կամ իրաւունք գաղթելու Ռուսաստան, եւ միւս կողմից մեծապէս նպաստել է Ռուս պետութեան թափանցումին Անդրկովկաս, ուստի հարկ ենք համարում մի պատմական թռուցիկ հայեացք ձգել ռուս–հայկական յարաբերութիւնների զարգացման վրայ, կանգ առնելով միայն գլխաւոր կէտերի վրայ, մասնաւորապէս այն դէպքերի վրայ, որոնց մէջ այս կամ այն մասնակցութիւնն են ունեցել Լազարեանները, սկսած 1750ական թուականներից:*

⁂

*Ռուս–հայկական փոխյարաբերությունները սկսուել են շատ վաղ ժամանակներից, 17րդ դարի կէսից, ցար Ալէքսէյ Միխայլովիչ Ռոմանովի օրով* (1645—1676)։

*Ռուս պատմաբան* Սոլովեովը *պատմում է հետեւեալ դէպքը.*

«1660 *թ. Մոսկուա էր եկել հայ վաճառական* Զաքար Սահրադովը *եւ բերել էր իր հետ որպէս նուէր ցարին հարուստ գահ, ընդելուզուած ադամանդներով, յակինթներով, գոհարներով, արեւելեան փիրուզայով եւ տաճկական էմալով* [2]»։

*Նոյն պատմաբանի ասելով, Թագաւորի արտաքին գործոց հիմնարկում մանրամասն հարց ու փորձի են ենթարկում այդ չնաշխարհիկ հիւրին, կամենալով պարզել առեւտրական կապեր ստեղծելու հնարաւորութիւններն ու պայմանները։ Սահրադեանը յայտարարում է, որ թէ ինքն եւ թէ իր հայրը պատրաստ են աշխատելու ու ծառայելու քրիստոնեայ մեծ արքային եւ այդ ո՛չ թէ իրենց անձնական շահի համար։*

*Նոր Ջուղայի պատմութեան հեղինակը՝* Յարութիւն Տէր–Յովհանեանը *առաջ է բերում Վենետիկի «Բազմավէպ» թերթից* (1843 *թ. թիւ* 2. *յունուար* 15, *էջ* 13) *նոյն Զաքար Սահրատեանի մասին հետեւեալ հետաքրքրական տեղեկութիւնները «ըստ խական բնագրոյն»։*

---

[2] *Հատոր* 12, *էջ* 273։

«Ան ատենի (իմա՛ ի մէջ եօթն եւ տասներորդ դարու) Հայ վաճառականներուն պատմութեանը մէջ երկու երեւելի դիպուած կայ. հիմակու հիմայ անոնք պատմենք աս տեղն, ստոյգ աղբիւրներէ առնելով. ա. Ռուսաց Ալէքս թագաւորին օրերը 1659ին Սպահանցի Հայ վաճառականներէն Զաքար Սահրատեան անունով մէկը, որ Պարսից փոխարքային ալ գործակալն է եղել, ծովով Աժտէրխան կու գայ, անկէց ալ 1660ին թագաւորական հրամանով Մոսկուա քաղաքն կը հասնի ինը ընկերով: Ասիկայ թագաւորին ընծայ կը բերէ մէկ պղնձի վերայ քաշուած պատկեր մը Քրիստոսին ընթրիքն, մէկ ոսկէ մատնի, այլ եւ այլ սուղ բաժակներ, ազնիւ ըմպելիքներ, ու անուշահոտ նիւթեր, բայց ամենէն երեւելի ընծան եղած է թագաւորական աթոռը, որ Զաքարին հայրը շիներ է եղեր: Ասոր շատ տեղը ոսկի է, ու վրան մեծ ու պզտի 876 ադամանդ կայ, 1 լալ, 1223 յակինթ մանր ու խոշոր, երեք կարգ մարգարիտներով ձեւացուցած հրեշտակներ[3]: Ան ատենի վաճառականները անոնց ամենու գինը կտրեր են 24·443 ռուբլի, որ հիմիկուան արժէքով 550·000 դուրուշէն աւել կ'ընէ: Թագաւորն ալ գրեթէ նոյնչափ սատակ կու տայ Սարհատեանին, անկէ զատ իրեն ուրիշ ընկերներուն թագաւորական ռոճիկ կը կապէ, ան հինգ ամիսի չափ ժամանակն որ Մոսկուա կեցեր են. եւ ետքը իրենց տեղը կը

[3] Ընդգծումները մերն են:

ճամբրէ: Վրան եօթ տարի անցնելէն ետեւ նոյն Ալէքս Թագաւորը Ջուղայեցւոց հետ գրով դաշնադրութիւն կ՚ընէ, ու անկէ ետքը Պարսկաստանի Հայերը կը սկսին աւելի շատ երթալ ու գալ Ռուսաստան: Իսկ ան աթոռը Ռուսի Թագաւորները հին ատենը կը գործածեն եղեր Թագ դնելու օրերին, մեծ տօներուն Եկեղեցական ընդունելու ժամանակին: Հիմա միայն Թագաւոր օծելու ատենը կը գործածեն Վերափոխման Տաճարին մէջ, իսկ սովորաբար Գրանովիթայա պալաթա[4] ըսուած Թանգարանը կը պահուի[5]»:

«Բազմավէպ»ի հաղորդած «երկու երեւելի դիպուածներից» միւսն էլ հետեւեալն է. այս դէպքը արժանի է յիշատակութեան ոչ միայն ռուս–հայկական յարաբերութիւնների

[4] Грановитая палата Կրեմլի մէջ. Գրանովիտի պալատ, սրահ:

[5] Տե՛ս «Պատմութիւն Նոր Ջուղայու որ յԱսպահան»: Աշխատասիրեալ ի Պ. Յարութիւն Թ. Տէր-Յովհանեանց Նոր Ջուղայեցւոյ, յԱռենադպրէ Ամենափրկչեան Սրբոյ Վանաց. Ն. Ջուղա. Տպարան Ամենափրկչեան Ս. Վանաց: 1880, Հատոր Ա., էջ 497 եւ Հատոր Բ., էջ 317: Վերի մէջբերումը տե՛ս Հատ. Ա., էջ 166—167: Այս շքեղ գահը մենք տեսել ենք 90ական թուականների սկզբին, երբ Լազարեան ճեմարանի աշակերտ էինք: Մեզ՝ մի խումբ աշակերտներիս առաջնորդող Թանգարանի պաշտօնեան իր բացատրութիւնների ժամանակ ասում էր, որ այդ գահը նուիրաբերել են ցար Ալէքսէյ Միխայլովիչին Հնդկաստանի հայերը: Հետեւաբար, սխալ պիտի համարել այն կարծիքը, իբր թէ հայերը այդ գահը վաճառել են ցարին, ինչպէս մի քանի հեղինակներ են հաղորդում եւ ինչպէս կարելի է եզրակացնել «Բազմավէպ»ի պատմածից: Ն. Ջուղայի յիշեալ պատմաբանը եւս իր հերթին սրբագրում է «Բազմավէպ»ի տուած տեղեկութիւնները, պնդելով, որ գահը ծախուած չէ եղել, այլ նուէր է եղել ցարին:

տեսակէտից, այլ եւ Նրա համար, որ Նրա մէջ մասնակցութիւն է ունեցել Լազարեաններից մէկը:

«Շատին ծանօթ ու Եւրոպացւոց մէջ շատ անուանի է Կատարինէ Բ. կայսրուհիին գաւազանի ծայրի ադամանդը. կ'ըսեն թէ աս ադամանդը առենով Դահմազգուլի խանինն է եղեր, որ Նադրշահ ալ կ'ըսուի: Պարսից թագաւորութեան չփոթած առենները, Նադրշահին հարստութիւնները ցրուելէն ետքը Շաֆրազ անունով Հայ վաճառականը՝ պարսիկ զինուորէ մը կը գընէ աս ադամանդը, ու 10 կամ 15 տարիէն ետքը Աժտէրխան կը բերէ: Ռուսի Վաճառականներուն մէջ գնող կը փնտռէ չի գտնար. Թագաւորական գանձին ծախել կուզէ՝ մըտիկ ընող չըլլար, ուստի միտք կը դնէ որ Եւրոպայի ուրիշ Տէրութիւններուն տանի. բայց Եղիազարեան (կարգա՛ Լազարեան) հայ ազգի իշխանին միջնորդութեամբը վերջապէս Օռլով կոմսը աս ադամանդը գնելու կ'ըլլայ Թագաւորական գանձին համար, 400·000 ռուպլիով, որ հիմա գրեթէ 12·000·000 ղուրուշ կընէ: Շաֆրազը աս չափաւոր ստըկին կը զիջանի, յանձն կառնէ, բայց կը խնդրէ որ կայսրուհին ալ իրեն մէկ շնորհք մը ընէ: Օռլով կ'առնէ ադամանդը, ադուոր տուփի մը մէջ դրած զատկին առաջի օրը Կատարինէին կ'ընծայէ, կայսրուհին ալ ան 400·000 ռուպլին, Շաֆրազին տալէն ետքը ազնուականութեան աստիճան ալ կու տայ անոր: Աս ադամանդը

ճանչցողները ինչուան հարիւր միլիոն ֆրանքի կ՚արժեցնեն, որ 500 միլիոն ղուրուշ ըսել է»:

Այս դէպքի մասին ռուս անուանի պատմագիր Պօտտօն հետեւեալ կերպով է պատմում. «Լազարեան տոհմի պատմութիւնը ամուր կապուած է Ռուսաց կայսերական թագը զարդարող մի թանկագին գոհարի հետ: Այդ ադամանդը, որ Շահ-Նադիրին էր պատկանում, բերել է Լազարեան տոհմի անդամներից մէկը: Շահի սպանուելուց յետոյ այդ թանկագին քարը ձեռքէ ձեռք անցնելով ընկաւ վերջը Պետերբուրգում բնակւող Շաֆրազ (կարդա՛ Շաֆրազ) անունով մի հայի ձեռք: Լազարեանը յանձն կ՚առնու այդ գոհարը կոմս Օրլովի համար գնել տալու: Գոհարը գնուեցաւ 400.000 մանէթի:

«Օրլովը՝ Զատկի առաջին օրը կարմիր ձուի ձեւով շինուած մի տուփի մէջ այդ գոհարը նուիրեց Եկատարինէ կայսրուհւոյն: Այդ ադամանդն իւր մեծութեամբ, փայլովը, տաշուածքովն ու ջրովը մի հազուագիւտ բան է. ճանաչողները գնահատում են մի քանի միլիոն:

«Եկատարինէն հրամայեց զարդարել նրանով կայսերական գաւազանը[6]»:

---

[6] Տե՛ս «Վերածնութիւն Հայաստանի»: Գրեց Ռուս պատմաբան Վ. Պօտտօ: Ռուսերէնից թարգմանեց Գ. Գ., Պարիս 1904, արտատպած «Բանասէր» հանդեսից: Մէջբերումը՝ էջ 17: Պօտտօյի այս պատմածի մէջ էլ կայ շփոթ: Մէկ ասում է, որ «Լազարեան տոհմի անդամներից մէկն է բերել»: Եթէ այդ ճիշտ է, ապա

*Այս միջանկեալ դէպքից յետոյ, վերադառնանք ցար Ալէքսէյ Միխայլովիչի օրով ռուս–հայկական փոխյարաբերութիւններին:*

*Զաքար Սահրատեանի տուած այցելութիւնը Մոսկուայի կառավարութեան ապարդիւն չի անցնում:*

*Ցար Ալէքսէյ Միխայլովիչը* 1667 *թ. մայիս* 31*ի հրովարտակով մի շարք արտօնութիւններ է տալիս հայ վաճառականներին, թոյլատրելով ներածել մետաքս եւ ասիական ապրանքներ:*

1673 *թուին փետրուար* 7*ին նոր հրամանագրով վերահաստատում են նախկին արտօնութիւններն եւ ապա համաձայն հայ վաճառականների կողմից յայտնուած բաղձանքների՝ որոշ նպաստաւոր փոփոխութիւններ են մտցւում առեւտրական գործառնութիւնների մէջ:*

*Այնուհետեւ առեւտրական կապը շարունակուել է եւ աւելի ու աւելի զարգացել ու իր յետեւից բերել նաեւ մի շարք քաղաքական լուրջ քայլեր, որոնք դուռ են բաց արել*

---

*բերողը կարող էր լինել միայն Լազարեան տոհմի* Ցեղապետը Ղազար Նազարեան Լազարեանցը, *որ* 1749 *թ. փոխադրուեց իր ամբողջ ընտանիքով Մոսկուա: Մէկ էլ ասում է, որ մի ոմն Շաֆրազ հայից է գնուած Պետերբուրգում Լազարեանի* միջնորդութեամբ: *Այդ Լազարեանն էլ կարող էր լինել միայն* կոմս Յովհաննէս Լազարեանը, *որ ցեղապետ Ղազար Լազարեանի աւագ որդին էր, եւ որը մօտիկ բարեկամ էր կոմս Օրլովին: Այսպէս թէ այնպէս ադամանդի գոյութիւնը Եկատերինա կայսրուհու ձեռքն անցնելն ու Լազարեանների մէկի կամ երկուսի մասնակցութիւնն այդ գործում պիտի համարել պատմական իրողութիւն:*

Ռուսների թափանցման Հիւս. Կովկաս եւ Անդրկովկաս՝ Արեւելեան Հայաստան։

Այս տեսակէտից շատ նշանաւոր են Պետրոս Ա. Մեծ կայսեր եւ մանաւանդ Եկատերինա Բ. կայսրուհու ժամանակաշրջանները։

Պետրոս Մեծը (1682—1725) Ռուսաստանի մեծ բարենորոգիչը, որ Մոսկուայի թագաւորութիւնը իր խոշոր նուաճումներով վերածեց կայսրութեան, իր հեռատես քաղաքականութեան մէջ ոչ միայն չանտեսեց Հայերի կողմից արուած դիմումներն առեւտրական ու քաղաքական նպատակներով, այլ եւ ամէն կողմից ջանում էր ընդառաջել այդ դիմումներին եւ ընթացք տալ, վասն զի ինքն էլ որոնում էր Ռուսաստանի սահմանները տարածել մինչեւ Կասպից ծովը։ Մեծապէս գնահատելով ծովերի հսկայ նշանակութիւնը իր երկրի տնտեսական բարգաւաճման, ինչպէս եւ Ռուսաստանի քաղաքական կշռի բարձրացման համար, հանճարեղ կայսրը, Բալթիկ ծովը նուաճելուց յետոյ, իր խորաթափանց հայեացքը դարձրեց նաեւ դէպի հարաւ–արեւելք՝ Սեւ եւ Ազով ու Կասպից ծովերի նուաճումը։ Վերջինը մեծ յարմարութիւններ էր տալիս զարգացնելու Ռուսաստանի առեւտուրը Արեւելքի երկիրների հետ, մանաւորապէս իր առասպելական հարստութիւններով հռչակուած Հնդկաստանի հետ։ Եւ նա խորապէս ըմբռնեց թէ Հայերը որքան օգտաւէտ կարող են լինել իրենց շինարար աշխատանքներով եւ օժան–

ղակութեամբ իր լայն ծրագիրների իրագործման ճամբի վրայ: Այս իսկ պատճառով էր, որ նա անկեղծ համակրանք էր ցուցադրում եւ հնարաւոր սահմաններում ընդառաջում Հայերի բաղձանքներին, խոստանում էր իր բարձր հովանաւորութիւնը:

Նրա տուած մի շարք հրովարտակները փայլուն ապացոյցներ են նրա այդ վերաբերմունքին թէ՛ դէպի հայ վաճառականներն եւ թէ՛ հայ քաղաքական գործիչները, ինչպիսին էր, օրինակ, Իսրայէլ Օրին:

Պետրոս Մեծի առաջին ծանօթութիւնը հայ վաճառականների հետ տեղի է ունենում Ամստերդամում, ուր 1697 թուին նա գնացել էր սովորելու նաւաշինութեան գործը: Այստեղ նա ծանօթանում է Ջէլէպի Ապրօեան երեք եղբայրների հետ, որոնք յայտնի էին իրենց ընդարձակ վաճառականութեամբ Հնդկաստանի, Պարսկաստանի եւ Տաճկաստանի հետ: Ապրոյեան եղբայրները թէեւ Պետրոս Մեծին ընդունել էին սոսկ մի Ռուս ազնուականի տեղ, բայց եւ այնպէս ցոյց էին տուել նրան «մեծ մարդասիրութիւն, ձեռնտուութիւն եւ հիւրասիրութիւն»:

Պետրոս Մեծը, Ամստերդամից դէպի Անգլիա մեկնելիս, նամակով շնորհակալութիւն է յայտնում Ջէլէպի Ապրոյեաններին եւ մի շարք առանձնաշնորհումներ է տալիս նրանց: Այդ նամակից միայն եղբայրները իմանում են, որ իրենց բարեկամ հիւրը Ռուսաց Պետրոս Ա. կայսրն է եղել:

Օգտուելով այդ ծանօթութիւնից 1717 թ. Ջէլէպի Ապրօեան եղբայրները դիմում են Պետրոս Մեծին եւ խնդրում առեւտրի ազատութիւն Ռուսաստանում:

Կայսրը սիրով ընդառաջում է նրանց «աղերսագրին» եւ 1717 թ. Յունուար 28ին յատուկ հրովարտակով տալիս է նրանց առեւտրի ազատութիւն Ռուսաստանում, հանդերձ մի շարք արտօնութիւններով:

Հրովարտակից երեւում է, որ եղբարք Ապրօեանները, «բնակիչք Ջմիւռնիոյ, մեծ վաճառականութիւն ունեն Արեւելեան երկիրների հետ եւ այս կողմերու Եւրոպական թագաւորութեանց մէջ, եւ իրենց վաճառականութեան մեծ մասը մետաքս է եւ ուրիշ Պարսից եւ Օսեթից բերքեր[7]»:

Նման հրովարտակներ տրուած են եղել նաեւ 1711 ապրիլ 13ին, 1719 յունիս 6ին եւ 1723 մայիս 14ին եւ յունիս 3ին ընդհանրապէս հայ առեւտրականներին:

Վերջին հրովարտակի մէջ ասուած է նաեւ, որ իրաւունք է տրւում Հայերին ընդունել Ռուսաց հպատակութիւն, «զկնի որոյ — ասում է Ն. Ջուղայի յիշեալ պատմիչը — բազումք յերեւելի վաճառականաց Ջուղայու գրեցան ի հպատակութիւն ռուսաց, եւ ոմանք եւս ընտանեօք գաղթեցան ճանապարհաւ Մա—

[7] Վ. Գ. Զարդարեան, «Յիշատակարան: Հայ երեւելիներու կենսագրութիւնները» եւ այլն, էջ 273—275: Հրովարտակի լրիւ թարգմանութիւնը բերուած է «Յիշատակարանում», որտեղից եւ յիշեալ երկտող քաղուածքն է արուած:

զանդարանի, Գիլանու յԱստրախան. ուրանօր եւ ընկալան զմեծամեծ արտօնութիւնս, զորս վայելեն մինչեւ ցայսօր ժառանգք նոցա[8]» :

1723, նոյեմբեր 10ի հրովարտակով, ուղղուած Գանձասարի Եսայի կաթուղիկոսին, իշխաններին եւ ամբողջ հայ ժողովրդին, իրաւունք էր տրուած բնակութիւն հաստատել Գիլանում, Մազանդարանում, Բաքւում եւ Դերբենդում, որոնք գրաւուած էին 1722 եւ 1723 տարիներին :

1724, նոյեմբեր 10ի հրամանագրի մէջ, ուղղուած զօրավար Կրոպոտովին, տուած էին, ի միջի այլոց, հետեւեալ նշանակալից խօսքերը·

«Հրամայում եմ քեզ, որ այն Հայերին, որոնք կը գան Ս. Խաչ ամրոցը, անմիջապէս տրամադրես յարմար եւ արգաւանդ հողեր, ուր նրանք կը ցանկանան, որպէս զի նրանք բնակութիւն հաստատեն. ցոյց տուր նրանց ամէն տեսակ օժանդակութիւն, ամէն պաշտպանութիւն եւ այնպէս վարուիր, որպէս զի որեւէ դժգոհութիւն ու գանգատների տեղիք չտրուի, վասն զի յիշեալ հայ ժողովուրդը մենք առել ենք մեր մասնաւոր կայսերական հովանաւորութեան ու ողորմածութեան ներքոյ[9]» :

---

[8] Յարութիւն Տէր-Յովհաննեանց, «Պատմութիւն Նոր Ջուղայու», Ա., էջ 177:

[9] Ճառեր եւ հաշուետուութիւն, արտասանուած հանդիսաւոր հաւաքոյթին Լազարեան Ճեմարան Արեւելեան լեզուաց 50ամեակի առթիւ (ռուսերէն), Մոս-

*Պակաս նշանակալից չէր Պետրոս Մեծի 1723, յունիս 3ի նամակը, ուղարկուած Յովհաննէս Կարապետ Հայի միջոցով եւ ուղղուած* «Ազնիւ հայ ժողովուրդին, որ բնակւում է Պարսկաստանում»:

*Այս գրութեան մէջ կայսրը յայտարարել էր, որ «նա կ՚ազատագրի Հայերին անհաւատների լուծից, հէնց որ Ռուսաստանը կ՚ամրանայ Կասպից ծովի ափերին: Իսկ եթէ այդ լուծը անհանդուրժելի է, թող հայ երեւելիները գաղթեն այն քաղաքները, որոնք արդէն գրաւուած են Ռուսների կողմից. իսկ ժողովուրդը թող համբերութեամբ սպասի, մինչեւ որ ռուս զօրքը պատրաստ լինի նրանց ազատագրելու*[10]»:

*Պոտտօն իր յիշեալ աշխատանքի մէջ այս առթիւ ասում է, որ հայ ու վրացի գաղթականներ* 700 *հոգու չափ անմիջապէս մտան Ռուսաց զինուորական ծառայութեան մէջ եւ կազմեցին երկու առանձին գնդեր, Հայերը՝ դրագոնի եւ Վրացիք՝ հուսարի գունդ*[11]:

*Այնուհետեւ նոյն Պոտտօն աւելացնում է հետեւեալ ուշագրաւ տողերը. «Բայց այն ինչ Հայոց մի աննշան մասը ապաստան էր գտել Ռուսաց սահմաններում, ամբողջ ազգաբնակութիւնը հեծում էր նեղութեան մէջ.*

---

*կուա, տպ. Լազարեան ճեմարանի,* 1865, $4^{0}$, *էջ* 154:
*Տեսուչ Գէորգ Քանանեանի ճառը, էջ* 6:

[10] *Անդ, էջ* 6: *Ծանօթութեան մէջ բերուած է ամբողջ հրամանագիրը:*

[11] *Այս գնդերը լուծուեցին* 1764 *մայիս* 4*ի բարձրագոյն հրամանով Եկատերինա Բ. կայսրուհու օրով:*

*նրա ուժերից վեր էր կռուել մահմեդականութեան հետ եւ նա օգնութիւն էր խնդրում ։ «Մինչեւ ցայսօր — գրում են հայերը Պետրոսին — չորս կողմից շրջապատուած լինելով թշնամիներով, մենք պաշտպանուում էինք, որքան մեր ուժը ներում էր, իսկ այժմ Տաճիկները մեծ զօրքով եկել տիրել են պարսկական շատ քաղաքների…»։*

*«Դժբախտաբար — նկատում է հեղինակը — այս վերջին պատգամաւորութիւնը կենդանի չգտաւ Ռուսաց հանճարեղ կայսերը…»*[12]*։*

*Կանգ չենք առնում* Իսրայէլ Օրիի, *նրա յաջորդ* Մինաս վարդապետի, *ապա* Շահամիրեանի *եւ* Յովսէփ Էմինի *թափած ջանքերի նկարագրութեան վրայ, որոնք նոյնպէս աշխատում էին Ռուսաստանի օժանդակութեամբ եւ հովանաւորութեան ներքոյ ստեղծել ազատ Հայաստան. այդ ամէնը նախ ծանօթ են հայ ընթերցող հասարակութեան եւ բացի այդ մեզ շատ կը շեղէր մեր բուն նիւթից ։*

*Ասենք միայն այսքանը, որ Հայերի ազատագրութեան ժամը դեռ չէր խփել…։*

*Ռուսաստանը* 18*րդ դարի առաջին կէսին*

---

[12] *Տես հեղինակի վերոյիշեալ աշխատանքը, էջ* 6*: Պետրոս Մեծը վախճանուեց* 1725 *յունուար* 28*ին։ Հետաքրքրուողները աւելի մօտիկից ծանօթանալու համար Պետրոս Մեծի հայ ժողովրդի հետ ունեցած յարաբերութիւններին, կարող են դիմել* Կ. Եզովի *հայակապ աշխատանքին ռուսերէն լեզուով՝ «Պետրոս Մեծի յարաբերութիւնները հայ ժողովրդի հետ»։*

դեռ եւս պատրաստ չէր ոչ մի տեսակէտից նուաճելու Անդրկովկասն եւ իր սահմանները տարածելու մինչեւ Արաքս:

Արեւելեան Հայաստանն էլ իր հերթին, կոտորակուած ու մատնուած անվերջ ներքին երկպառակութիւնների, այդ ժամանակաշրջանում, միանգամայն անընդունակ ու անկարող էր սկսելու եւ յաջողութեամբ վարելու ազգային ազատագրութեան ընդհանուր շարժում՝ օտարների ծանր լուծը թօթափելու համար:

Այսու հանդերձ հայ ազատագրական մեծ պայքարի այդ առաջին ռահվիրաների գործունէութիւնը, թէեւ գործնական ու շօշափելի դրական արդիւնքներ չտուեց, բայց ի զուր չանցաւ. նա ունեցաւ բարոյական հսկայ նշանակութիւն, վասն զի նա վառ պահեց հայ ժողովրդի մէջ ազատ հայրենիքի վեհ գաղափարը, թոյլ չտուեց որ ժողովուրդը յուսահատութեան մատնուի ու ի սպառ լքուի իր անսահման թշուառութեան մէջ: Եւ արդարեւ, հայ ժողովուրդը շարունակեց իր հայեացքները սեւեռած պահել դէպի Ռուսաստանն եւ նրանից ակնկալել իր փրկութիւնը:

Բացի այդ՝ նրանց գործունէութիւնը ունեցաւ նաեւ պատմական մեծ արժէք. նրանց սկսած ազատագրական պայքարը աւանդաբար անցաւ 18րդ դարի վերջերքի հայ քաղաքական գործիչներին Յովհաննէս Լազարեանին եւ Յովսէփ կաթողիկոս Արղու-

թեանին *եւ ապա 19րդ դարի առաջի կէսին բերեց Արեւելեան Հայաստանի ազատութիւնը մահմետական բռնակալների անարդ լուծից։*

*Ճիշտ է, որ այդ ազատութիւնը այն չէր, որի մասին երազում էին 18րդ դարի յիշեալ բոլոր քաղաքական գործիչները, բայց եւ այնպէս նրանց քաղաքական ծրագրի գլխաւոր մասն էր, որ վերջապէս իրականութիւն ստացաւ ։*

*Պետրոս Մեծի անարժան յաջորդների ժամանակ էլ Հայերը չարունակեցին իրենց քաղաքական ու տնտեսական կապը՝ Ռուսաստանի հետ, բայց որեւէ արդիւնքի չհասան։ Իրար արագօրէն յաջորդող վեց միապետները, զուրկ լինելով Պետրոս Մեծի պետական հանճարից, ոչ միայն չշարունակեցին նրա քաղաքականութիւնը, այլ եւ յետ նահանջեցին։*

*Այսպէս, օրինակ, յայտնի է, որ կայսրուհի Աննայի (1730—1740) օրով Կասպից ծովի ափերին գտնուած Բաքու եւ Դերբենտ քաղաքները, որոնք Պետրոս Մեծի օրով նուաճուած էին, վերադարձրին Պարսիկներին։*

*Իրերի այս վիճակը Պետրոս Մեծից յետոյ մինչեւ Եկատերինա Բ. կայսրուհու օրերը, գեղեցիկ կերպով նկարագրում է նոյն Ռուս անուանի պատմաբան Պօտտօն իր յիշեալ աշխատանքի մէջ։ Խօսքը տալիս ենք նրան.*

«Ֆելդմարշալ իշխան Դոլգորուկովն ինքն է վկայում այն արխական ճակատամարտների մասին, որ մի ժամանակ ունեցան Հայերը Տաճկաց, Պարսից եւ Լեռնականաց հետ: Այդ մի հերոսական պատերազմ էր: Մի բուռն հայեր ութ օր շարունակ դիմադրում էին սարասկեար Սարի–Մուստաֆայի 10·000 տաճկական արիւնռուշտ բանակին:

«Նոյն Դոլկորուկովն իր զեկուցագրի մէջ աւելացնում է, թէ Հայերը պահանջում են շօշափելի եւ իրական օգնութիւն զէնքի զօրութեամբ, եւ եթէ այժմէն իսկ այդ օգնութիւնը նոցա զլացուի եւ չտրուի, արդէն ուշ կը լինի ապագայումը գրաւել նոցա մեր կողմը:

«Եթէ քաջեռանդն իշխան Դոլգորուկով մնար Կովկասում, շատ կարելի է այս երկրի վիճակն այլապէս տնօրինուէր:

«Բայց Դոլգորուկովն ընկաւ. կայսրուհի Աննա Յովհաննովնան անուշադիր գտնուելով պաշտպանելու Մեծ Պետրոսի նպատակի իրագործումը, վճռում է միանգամայն ձեռնաթող անել նորա նուաճած երկիրները այսինքն Դերբենդն ու Բաքուն:

«Ռուսաց զօրքը նահանջում է դէպի Թերեքի ափունքը, իսկ Հայերը կրկին Տաճիկների ձեռքից ընկնում են Պարսից իշխանութեան ներքոյ:

«Նոր տիրապետողների երկիւղը ստիպում է շատ հայերի Ղարաբաղի սքանչելի բնութիւնը, նորա օդն ու ջուրը փոխել Թե–

*ըեքի ճահճային ափերի հետ: Այնտեղ են ձգտում անմիջապէս զօրքի ետեւից նոքա եւս, որոնք ընակութիւն էին հաստատել Գիլանումն եւ Սուրբ Խաչի բերդումը: Այսպէսով է ահա կազմակերպւում* Ղզլարի Հայ Գաղթականութիւնը *Թերեքի ափին:*

*«Գուցէ չափազանց կ'աւելանար գաղթականների թիւը, եթէ կայսրուհի Աննա Յովհաննովնան ի հաճոյս Նադիր Շահի մի հրովարտակ չհրատարակէր* 1734 *մայիս* 29*ին, որով ի նշան բարեկամութեան առ Շահն եւ բարեհաճութեան առ Պարսից ազգն հրամայում էր, Պարսկաստանից դուրս եկած բոլոր Վրացիներին, Հայերին եւ ուրիշ օտարազգիներին վերադարձնել կրկին Շահին, մինչեւ անգամ նոցա եւս, որոնք վերադառնալու ցանկութիւն չունին* [18]:

*«Եւ թէպէտ կայսրուհի Աննայի կառավարութեան այս անբացատրելի սխալմունքը մի քանի տարուց յետոյ փոքր ի շատէ ուղղուեցաւ մի առանձին հրովարտակի շնորհիւ, որով արգելւում էր ռուսահպատակութիւն ընդունող Հայերէն Պարսիկներին յանձնելու, բայց առաջին կարգադրութեան տպաւորութիւնը երկար ժամանակ չէր ջնջւում հայ մտքերից:*

---

13 *Պատմաբանը դժբախտաբար, չի ասում, թէ այդ հրամանը գործադրուեց թէ ոչ կամ եթէ գործադրուել է, ապա ի՞նչ չափով, քանի՞ հոգի վերադարձան: Մեր ձեռքի տակ եղած աղբիւրներում էլ չգտանք տեղեկութիւն այդ մասին:*

«Այսպէս թէ այնպէս, Հայերի յոյսը միակ յենակէտը, այնու ամենայնիւ, Ռուսաստանը պէտք է լինէր. նա միայն իր հովանաւորութեամբ կարող էր պաշտպան հանդիսանալ հայերի շահերին:

«Եւ ահա մի քանի տարուց յետոյ, 1760 Անգլիայից Ս. Պետերբուրգ է գալիս Էմին Յովսէփեան[14] անուամբ հարուստ հայը, որ Հնդկաստանում ահագին միլիոններ էր դիզել: Նա խնդրում էր օգնել Հայերին իրենց անկախութիւնը ձեռք բերելու, իսկ այս բանի համար առաջարկում էր իր ամբողջ կարողութիւնը:

«Բայց կայսրուհու (Ելիզավետա Պետրովնայի, 1741—1761) կառավարութիւնը նպատակ չունէր այդ ժամանակ Կովկասի գործերում էապէս խառնուելու: Այդպիսով

---

[14] Անշուշտ, անուան վրիպումն կայ. պիտի լինի Յովսէփ Էմին: Յայտնի է որ Յովսէփ Էմինն էր, որ այդ թուականներին 1759—1769 թթ. գործում էր Ռուսաստանում ու Կովկասում նպատակ ունենալով վերականգնել հայ ժողովրդի անկախութիւնը Ռուսաստանի օգնութեամբ:

Յովսէփ Էմինի մասին Երեւանի երիտասարդ գիտնական Ա. Ռ. Յովհաննիսեանը հրատարակել է յատուկ ուսումնասիրութիւն, որը, դժբախտաբար, մեր ձեռքի տակ չունենք: Այս գրքի մասին Մոսկուայի «Օկտեաբր» ամսագրի մէջ, 1946 թ. 11—12 համարում զետեղուած է Պրոֆ. Բ. Զախոտերի քննադատական յօդուածը: Ա. Ռ. Յովհաննիսեանի աշխատասիրութիւնը առաջին փորձն է գիտնականօրէն, պատմական վաւերագրերի վրայ հիմնուած, լուսաբանելու այդ հայ քաղաքական գործչի գործունէութիւնը մեր նորագոյն պատմութեան ամենահետաքրքրական ժամանակաշրջանում: Յովսէփ Էմինը հանդիսանում է Իսրայէլ Օրիի ամենաարժանաւոր յաջորդը:

Նմինի առաջարկութիւնը համակրութիւն չգտաւ[15]»:

*Յիշեալ երկու կայսրուհիները, շատ քիչ էին հետաքրքրւում պետական գործերով եւ նրանց փոխարէն երկիրը կառավարում էին պատահական իշխանաւորներ* (временщик) *որոնք չէին յիշում Պետրոս Մեծին եւ նրա քաղաքականութեան բնոյթն եւ ուղղութիւնը. հետեւաբար, թէ արտաքին եւ թէ ներքին քաղաքականութեան մէջ մեծապէս շեղուեցին հանճարեղ կայսեր գծած ճամբից...:*

*Յամենայն դէպս երկու կայսրուհիների օրով էլ Ռուսաստանում գտնուած հայ առեւտրականներին շարունակում էին հովանաւորել, տալ առեւտրական արտօնութիւններ, թոյլատրում էին հիմնել մետաքսի ու կտաւի գործարաններ, զբաղուել շերամապահութեամբ ու բամբակի մշակոյթով: Այդ երեւում է այն հրովարտակներից, որոնք հրատարակուած էին* 1736 *օգոստոս* 5*ին*, 1740 *սեպտեմբեր* 17*ին*, 1741 *յունիս* 15*ին*, 1746 *օգոստոս* 5*ին եւ այլն:*

*Արեւելահայութեան խղձերի ու ձգտումների մի նոր ժամանակաշրջան է բացւում* Եկատերինա Բ. կայսրուհու (1762—1796) *օրով, որը ներշնչում է հայերին մօտալուտ ազատագրութեան եւ անկախութեան վառ յոյսեր ու մեծ ակնկալութիւններ:*

*Նախ, որովհետեւ այս կայսրուհին միան—*

---

[15] *Պոտտո*, էջ 6—7:

*դամայն խւրացրել էր Մեծն Պետրոսի արտաքին քաղաքականութիւնը՝ ընդլայնելու Ռուսաստանի պետական սահմանները մինչեւ Սեւ ու Կասպից ծովերը եւ այդպիսով ճանապարհ հարթել Ռուսաստանի առեւտուրի համար Արեւելքի եւ առաջին հերթին Հնդկաստանի հետ:*

*Երկրորդ, այս կայսրուհին ապրում էր մի ժամանակ, երբ ամբողջ Եւրոպան ողողուած էր Ֆրանսական մտաւոր շարժման նոր գաղափարներով՝ Վոլտերի, Մոնտեսկիոյի, Ժ. Ժ. Ռուսոյի վարդապետութիւններով: Յայտնի է, որ կայսրուհին նամակագրութիւն ունէր Վոլտերի հետ եւ յափշտակուած էր նրա բանականութեան քարոզչութեամբ: Կայսրուհին եւս, բոլոր «լուսաւորիչներին» հետեւելով, համոզուած էր, որ պետական բարձրագոյն իշխանութիւնը կարող է արմատականօրէն փոխել պետական կառուցուածքն ու հասարակական կարգերը համաձայն բանականութեան թելադրանքների:*

*Վերջապէս, կայսրուհին շրջապատուել էր իր կարող ու տաղանդաւոր պետական գործիչներով, ինչպիսիք էին՝ կոմս Պանինը, նուրբ դիւանագէտ, կոմս Բեզբորոդկօ, Օրլով եղբայրները, կոմս Պոտեմկինը, իշխան Վեազեմսկին, կոմս Սիվերսը, Բէցկի, կոմս Ռումեանցեւ, կոմս Սուվորով եւ այլն:*

*Այս շքեղ փաղանգին էին պատկանում նաեւ հայազգի երկու հռչակաւոր գործիչներ* կոմս Յովհաննէս Ղազարեան Լազարեանն

*եւ Ռուսաստանի Հայոց թեմի առաջնորդ* Յովսէփ արքեպիսկոպոս Արղութեան-Երկայնաբազուկը, *հետագայում ամենայն Հայոց կաթողիկոսը*:

*Այս երկուսն էլ ներշնչուած էին ու խանդավառուած Արեւելահայութեան ազատագրութեան եւ Հայաստանի անկախութեան գաղափարներով: Ինչպէս Իսրայէլ Օրին եւ Յովսէփ էմինը, սրանք եւս համոզուած էին, որ միայն Ռուսաստանի օժանդակութեամբ եւ հովանաւորութեան տակ հնարաւոր է վերականգնել Հայաստանի անկախութիւնն ու ապահովել նրա յարատեւ գոյութիւնը: Եւ իրենց ամբողջ կեանքի ընթացքում չդադարեցին այդ ուղղութեամբ մտածել ու գործել*[16]:

*Այս երկու հռչակաւոր հայ մարդկանց գուծունէութիւնը դարգանում էր համընթաց Ռուսական նուաճումներին Ռուսաստանի Հարաւ-Արեւելքում:*

*Այս սկզբնական ժամանակաշրջանում սրանք աշխատում էին Պարսկաստանից եւ Տաճկաստանից Ռուսաստան գաղթեցնել հայերին եւ գաղթականներին ամէն կերպ օգնել, լայն արտօնութիւններ ստանալով կայսրուհուց եւ նիւթապէս ու բարոյապէս օժանդակելով գաղթական Հայերին:*

1768 *թ. Տաճկաստանը պատերազմ յայտարարեց Ռուսաստանին. այդ պատերազմը*

---

[16] *Այս մասին աւելին կոմս Յովհաննէս Լազարեանի կենսագրականի մէջ:*

վերջացաւ Թուրքերի փայլուն յաղթանակով 1774 թ. Քուչուկ–Քայնարջիի[17] դաշնագրով: Ըստ այս դաշնագրի, Ռուսաստանը ստացաւ Ազով եւ Կերչ քաղաքները, ուրիշ խօսքով Դոն, Բուգ եւ Դնեպր մեծ գետերի բերաններն ու Կերչ նեղուցը: Բացի այդ Ղրիմի խանութիւնը, որ գտնւում էր Թիւրքիայի գերիշխանութեան ներքոյ, այդ դաշնագրով ստացաւ իր «անկախութիւնն ու ազատութիւնը», բայց արդէն 1783 Ղրիմը միացուեց Ռուսաստանին, որպէս նրա մի նահանգը: 1787 սկսուեց երկրորդ ռուս–տաճկական պատերազմը, որը վերջացաւ 1791 կրկին ռուսների յաղթանակով ու Եասսայի դաշնագրով, ըստ որի Դնեստր եւ Բուգ գետերի միջեւ եղած ամբողջ տարածութիւնը անցաւ Ռուսների ձեռքը:

Այդպիսով Ռուսաստանի ամբողջ հարաւային մասը՝ Սեւ ծովի եզերքը, Դնէստր գետից մինչեւ Դօն գետը, մի հսկայ տարածութիւն իր արգաւանդ սեւահողովը, անցաւ Ռուսների ձեռքը: Կայսրուհին այդ շրջանը անուանեց «Նոր Ռուսաստան» եւ նրա կառավարութիւնը յանձնեց կոմս Պոտեոմկինին փոխարքայի կոչումով: «Նոր Ռուսաստանը» գրեթէ ամայի էր. պէտք էր շէնացնել, գրաւել ժողովուրդ ու կենդանութիւն տալ նրան:

Այս հանգամանքից օգտուեցին Յովհան–

---

[17] Քուչուկ Քայնարջին փոքրիկ քաղաք է Բուլղարիայում:

*նէս Լազարեանն եւ Յովսէփ արքեպ. Արղութեանը:*

*Յովհաննէս Լազարեանը, որ նշանակուած էր իշխան Պոտեոմկինի մօտ, որպէս քաղաքական գործերի խորհրդատու ու տնօրէն եւ որը մեծապէս օգտակար եղաւ իշխանին իր այդ պաշտօնի մէջ, խորհուրդ տուեց Արղութեանին դիմել Ղրիմի հայերին եւ յորդորել նրանց գաղթել հարաւային Ռուսաստան: Արղութեանը մեծ յաջողութեամբ գլուխ բերեց այդ գործը:*

*Եւ Ղրիմի Հայերի գաղթը սկսուեց* 1778 *յուլիս* 18*ին եւ վերջ գտաւ միայն նոյն թուի սեպտեմբեր* 28*ին, երեք նուագով: Ըստ Լէօի գաղթեցին* 12·370 *հոգի, իսկ ըստ ռուս պատմաբան Պօտտօի՝* 20·000 *Հայեր:*

*«Արժան չնստաւ Հայերին այս գաղթականութիւնը — նկատում է Պօտտօն — ահագին կորուստ, զրկանք ու զոհողութիւններ բաժին ընկաւ նրանց: Երկու տարի չարունակ*[18] *թափառում էին Հայ գաղթականները, վրաններին տակ, համբերութեամբ տանելով ցուրտը, տօթը եւ քաղցը. նրանցից շատերը չդիմացան թափառականութեան ծանր հարուածներին եւ մեռան աղեկէզ՝ յիշելով իւրեանց հայրենի Ղրիմը, նրա վանքերն ու եկեղեցիները, իսկ մնացածները այնու ամենայնիւ հաստատուն քայլերով դիմեցին դէպի իւրեանց նպատակը եւ վերջապէս Դօն գետի*

---

[18] *Ստորեւ կը տեսնենք, որ ճիշտ չէ* երկու *տարին, այլ* մի *տարի միայն:*

ափին հիմնեցին Նախիջեւան քաղաքը, ուր կառավարութիւնը անխնայ շռայլեց նրանց արտօնութիւններ, օգուտներ եւ իրաւունքներ[19]»:

Արդարեւ, 1779 նոյեմբեր 14ի հրովարտակով կայսրուհին, շնորհիւ Յովհաննէս Լազարեանի եւ Արղութեան արքեպիսկոպոսի միջնորդութիւնների, հետեւեալ մի շարք արտօնութիւնները տուեց Ղրիմից գաղթած եւ Նոր Նախիջեւանում բնակութիւն հաստատած հայերին.

ա. Տալ 12.000 դեսեատին հող. բ. ազատ կացուցանել հայերին ամէն տեսակ հարկերից եւ տուրքերից 10 տարի. գ. առեւտրի ազատութիւն. դ. իրաւունք կառուցելու եկեղեցիներ. ե. իրաւունք կառավարուելու իրենց ներքին կեանքի մէջ իրենց հին օրէնքներով եւ սովորութիւններով[20]:

Նոր Նախիջեւանի հիմքը դրել է 1779 հանդիսաւոր ծխակատարութեամբ Յովսէփ արքեպ. Արղութեանը եւ կնքել Նոր Նախիջեւան անունով: Ղրիմի քաղաքներից եկած բնակիչները տեղաւորուեցին նորաշէն քաղաքում, իսկ գիւղացիները՝ նորակառոյց հինգ գիւղերում՝ Ձալթըր, Մեծ Սալա, Սուլթան-Սալա, Թոփտի եւ Նեսվիթա[21]:

---

[19] Տես Պօտտօի յիշեալ աշխատանքը, էջ 7—8:

[20] Այս արտօնութիւնները վերահաստատուեցին Պաւել կայսեր կողմից 1797 յուլիս 4ի եւ 1799 յունուար 4ի հրովարտակներով, կրկին նոյն երկու հայ գործիչների միջամտութեան շնորհիւ:

[21] Նոր Նախիջեւանի հիմնարկութեան թուականի վերաբերմամբ էլ կան տարբերութիւններ աղբիւր-

Մի քանի տարի անց, այն է 1784 նոյն Արղութեանը հիմք դրեց նաեւ Նոր Նախիջեւանի Ս. Խաչ վանքի ի յիշատակ Ղրիմի Հայոց Ս. Նշան հին վանքի եւ հաստատեց այնտեղ տպարան:

Քերովբէ Քուչներեանը իր յօդուածաշարքում հետեւեալ տեղեկութիւններն է տալիս Ս. Խաչի մասին.

«Ս. Խաչ Նախիջեւանու հիւսիսային կողմը, քաղաքէն եօթ վերստ հեռաւորութեամբ, ապառաժ լերին վրայ շինուած է. դիրքը վայելուչ է: Սորա հիմը օրհնած է 1784 Յովսէփ Արղութեանց. վանքը կամ առաջնորդարանն անշուք սենեակներով է. ապառաժէն քաղցրահամ ջրոյ աղբիւր կը հոսի դէպ ի վար, ուր շինուած է ընդարձակ պարտէզ: Վանքիս եկեղեցւոյն մօտից աջակողմեան պատին վրայ այս յիշատակարանս կարդացի.

«Շնորհօքն Աստուծոյ կառուցի զՍուրբ Խաչ վանքս, ի սմա դպրոց եւ զտպարան, ես Սանահնեցի Արղութեանց Շիօշ-Բէկի որդի, եւ սուրբ Էջմիածնայ նուիրակ, Ռուսաց

ների մէջ: Պոտտօն համարում է, որ հիմքը դրուել է 1780 թուին, քանի որ Ղրիմից հայերի գաղթը սկսել է 1778 թ. եւ երկու տարի գաղթականները թափառել են այս ու այն կողմ: Ուրիշ աղբիւրներում մատնանշուած է 1781 թ.: Հ. Քերովբէ Քուչներեանը իր «Ճամբորդութիւն ի Նոր Նախիջեւան» յօդուածաշարքում (Բազմավէպ, 1887) մատնանշում է 1779 թ.: Այս թուականը պէտք համարել աւելի վաւերական, քանի որ կայսրուհու վերը յիշուած հրովարտակը տրուած է Նոր-Նախիջեւանցիների անունով 1779 թ. նոյեմբեր 14ին:

երկրի Հայոցս առաջնորդ Յովսէփ արքեպիսկոպոս, ի կայսրութեան ամենայն Ռուսաց Եկատերինէ Ալէքսէյօվնայի երկրորդի, եւ ի հայրապետութեան Հայոց Տեառն Ղուկասու, աշխատութեամբ հոգեւոր որդւոյ իմոյ Բայազիտցի Կարապետ վարդապետի: Օծեալ եղեւ յամի Տեառն 1791 եւ ի Հայոց թուականի 1240, ի սեպտեմբերի[22]»:

Երկրորդ ռուս-տաճկական պատերազմից յետոյ ծնունդ առաւ նաեւ մի ուրիշ Հայոց քաղաք՝ Գրիգորիոպոլը:

Իսմայիլ բերդից, Աքերման, Քոլչան ու Բենդէր քաղաքներից Հայերը գաղթեցին Ռուսաստան: Այս Հայերի համար Արղութեանը 1792 յուլիս 25ին նոր քաղաքի հիմը դրեց եւ անուանեց այն Գրիգորիոպոլ ի յիշատակ Գրիգոր Լուսաւորչի եւ նոր վախճանուած իշխան Գրիգոր Պոտեմկինի[23]: Արղութեանը նոյն ժամանակ հիմնեց եւ երկու գիւղ՝ Իոսիֆովկա, իր անունով եւ Վասիլեւկա՝ իր եղբօր որդու անունով:

Գրիգորիոպոլի նորաբնակ Հայերն էլ ստացան նոյն արտօնութիւններն եւ առանձնաշնորհումները կայսրուհուց, ինչ որ ստացել էր Նոր Նախիջեւանը[24]: Բացի այդ

---

[22] Բազմավէպ, 1887, էջ 193—194:

[23] Այդ արտօնութիւնները վերահաստատուեցին Պաւել կայսեր կողմից 1799 թ. հոկտեմբեր 28ի հրովարտակով:

[24] Տե՛ս այս մասին կայսրուհու 1794 թ. հոկտեմբ. 12ի հրովարտակը եւ Լէօի «Յովսէփ կաթողիկոս Արղութեանը», էջ 89:

նրանց տրուեց նաեւ դրամական օժանդակութիւն պետական գանձարանից 185·781 ռուբլի:

Եկատերինա կայսրուհու օրով խնամք էր տարւում ոչ միայն «Նոր Ռուսաստանը» շէնցընելու հայ գաղթականներով ու հայ գաղթավայրեր ստեղծելով, այլեւ շռայլելով նրանց բազում արտօնութիւններ, ինչպէս նաեւ խրախուսելով հայ անհատներին ծաղկեցնելու Ռուսաստանը նոր արդիւնաբերական ձեռնարկներով, ինչպէս օրինակ, մի ոմն Մովսէսի, Աստապատի գիւղացու, շերամաբուծութեան արհեստով զբաղուելու եւ տարածելու այն ռուսների մէջ[25]:

Նորին Կայսրուհու շրջապատում, մանաւորապէս իշխան Պոտեոմկինի շրջանում, շատ աւելի հեռուներն էին գնում եւ որոճում էին նաեւ լայն քաղաքական ծրագիրներ հայերին ու վրացիներին ազատութիւն եւ անկախութիւն շնորհելու մասին:

Այս ծրագրի իրականացումը մօտիկ ապագայում այնքան հաւանական էր թւում նրա հեղինակներին, որ Պոտեոմկինի եւ Զուբովի շրջանում արդէն մշակուել էին Հայոց Թագաւորութեան գինանշանը, Հայոց Թագաւորի օծման հանդիսաւոր արարողութեան ծրագիրը, ինչպէս եւ սահմանել էին երեք շքանշանների նախագիծը. մէկը պիտի ներկայացնէր Նոյի տապանը ծիածանի գոյնի ժապաւէնով, միւսը՝ Քրիստոսի անձեռագործ

[25] Տե՛ս «Դիւան Հայոց Պատմութեան», էջ ճԻԶ—ճԻԷ:

դաստառակը եւ երրորդը՝ Գրիգոր Լուսաւորչի նկարը:

Այս ծրագիրների մասին Պոտտօն իր վերոյիշեալ աշխատանքի մէջ տալիս է հետեւեալ շատ հետաքրքրական տեղեկութիւնները:

«1783 թուին Ռուսաց զօրքը գրաւում է Վրաստանը եւ այն օրից նա դառնում է Ռուսաստանի աւատական թագաւորութիւն:

«Այդ ժամանակ ահա ծրագիրներ են կազմւում Հայաստանի ազատութեան համար եւ ամենահզօրն Պոտեոմկինը սկսում է ջերմ հաղորդակցութիւններ շարունակել Հայոց Յովսէփ Արքեպիսկոպոսի հետ Ասիայում Հայաստանը մի հզօր քրիստոնեայ տէրութիւն դարձնելու մասին Ռուսաց բարձրագոյն հովանաւորութեան ներքոյ:

Այսպէս նորից Հայոց խնդիրը ասպարէզի վրայ է դրւում:

Պաշտօնական շատ փաստերով ապացուցուած տեղեկութիւններ կան, որ ինքն իշխան Պոտեոմկինը ձգտում էր թագաւորել վերածնուած Հայաստանում, որը սահմանակից պիտի լինէր Պարսկաստանին, Տաճկաստանին եւ Ռուսաստանին եւ ունենար Կասպից ծովում իր նաւահանգիստը:

Արդէն արտասահմանում — Հնդկաստանում եւ Չինաստանում — նա ոսկեզօծ ամանեղէններ էր պատրաստել տուել հայ թագաւորական զինանշաններով[26]:

---

[26] Մի այսպիսի յախճապակեայ սափոր հայ դրօշը վրան պահւում է Տփղիսի թանգարանում: Պոտտօ:

Այն միջոցում տպագրուած Հայոց գրքերի վերայ տպուում էին հայ Թագաւորաց դրօշները:

Յովսէփ արքեպիսկոպոսը նամակներ գրում էր էջմիածնի կաթողիկոսին եւ շատ երեւելի Հայերին՝ ուրախ լինել եւ Աստուծուն փառք տալ. նա աղօտ կերպով մատնացոյց էր անում մի նշանաւոր փոփոխութեան վերայ, որ պատրաստուում էր Հայերի համար մեծահռչակ Հիւսիսի հովատարութեան շնորհիւ:

Բանը նորանումն է, որ Յովսէփ Արքեպիսկոպոսին առաջարկեցին կազմել այն դաշնագրի ծրագիրը, որը պէտք է կապուէր նախապէս Ռուսաց կայսրութեան եւ Հայ ազգի մէջ:

Այս հետաքրքիր դոկումենտի մէջ առաջին տեղը բռնում էր Հայ եկեղեցւոյ լիակատար անկախութիւնն եւ ազատութիւնը եւ Հայաստանի ընտրեալ Թագաւորը — լինէր նա Հայ, թէ կայսրուհու մերձաւոր անձնուէրներից մէկը — պարտաւորուում էր դաւանել Հայ կրօնը եւ պահպանել հայ օրէնքները:

Թագաւորի Թագադրութիւնը առաջարկուում էր կատարել Ս. էջմիածնի մէջ, ըստ օրինաց Հայոց նախկին Թագաւորաց: Մայրաքաղաքը որոշուում էր Անին կամ էջմիածինը: Հայ Թագաւորութեան դրօշը պէտք է կազմուէր Հայոց նախկին երեք դրօշներից, այն է Արշակունեաց միագլուխ Արծիւը,

Քրիստոնէութեան ժամանակի Գառն Աստուծոյ եւ Փոքր Հայոց երկու արծիւները[27]:

---

[27] Մի այլ տեղում (էջ 22) նոյն հեղինակը Պոտտօ, աւելի մանրամասն կանգ առնելով Հայկական դրօշի նկարագրութեան վրայ, տալիս է հետեւեալ հետաքրքրական տեղեկութիւնները.

«Իրաւաբանութեան նախարարութեան մէջ (խմ' Արդարադատութեան նախարարութիւն), 1833 թուին մի խնդիր զարթնեցաւ հայկական նախկին դրօշների մասին եւ այդ խնդրի հետամտութիւնը յանձնուեցաւ գիտնական Պրոֆ. Ջրպետին»:

«Ջրպետը Հայոց հին մատենագիրների վկայութեան համաձայն պատասխանեց, որ Կիւրոսին ժամանակակից Տիգրանի օրով Հայոց դրօշն էր եօթնգլխանի վիշապ. վերջերում՝ Արշակունեաց հարստութեան ժամանակ՝ վիշապը փոխուեցաւ միադլուխ արծուի: Քրիստոնէութեան մուտ գործելովը հայ դրօշակների վերայ նկարուում էր փրկչական անձեռագործ պատկերը, յետոյ դատաստակի տեղ դրին Գառն Աստուծոյ՝ խաչը ձեռքին: Վերջապէս, Ռուբինեանների դրօշն եղաւ առիւծ: Այս բոլոր գինանշաններից միասին առած, կամեցան Հայոց նահանգի համար մի ընդհանուր դրօշ կազմել: Բայց չգիտեմ ինչպէս փոխուեցաւ բանը, որ դրօշի վերջնական նկարը հետեւեալը եղաւ. կապոյտ տեղի վերայ մի արծաթեայ վահանի մէջտեղումը նկարուած է Մասեաց ձիւնապատ գագաթը. սպիտակ ամպերը նորան չրջապատել են. լեռան կատարին նոյեան ոսկեայ տապանն է դրուած:

Դրօշի ներքին մասը երկուսի է բաժանուած. աջ կողմում, կարմիր տեղի վերայ Հայոց նախկին թագաւորաց թագն է. թագն ամբողջ ոսկեայ է, արծաթեայ ատղերով եւ մարգարիտներով զարդարուած, իսկ թագակապը եւ ատտառը կապտագոյն են: Ձախ կողմում կանաչ տեղի վերայ էջմիածնի վանքն է ամբողջ արծաթեայ, իսկ կաթուղիկէներն իւրեանց խաչերով՝ ոսկեայ են:

Դրօշի վերի մասումը՝ ոսկի տեղի վերայ՝ նկարուած է Ռուսաց երկգլխեան արծիւը: Նա դրկած, բռնած ունի իւր ճանկերի մէջ վերոյիշեալ վահանը: Իսկ այս ամենի գլխին դրուած է կայսերական թագը:

Վերջերումը, երբ Հայոց նահանգը միացաւ նոր հաստատուած Երեւանեան կոչուած նահանգի հետ, դրօշն էլ ուրիշ կերպ փոխուեցաւ: Մի կապտագոյն

Ի յիշատակ Հայաստանի հաստատուում էր երեք չքանչան, առաջինը Նոյեան տապանի անունով՝ ծիածանին նմանեցրած երեք գոյնով՝ կարմիր, կանաչ եւ կապոյտ. երկրորդը՝ Սուրբ Գրիգոր Լուսաւորչի անունով եւ երրորդը՝ ի պատիւ փրկչական անձեռագործ դաստառակի:

Քաղաքականապէս տնօրինուում էր, որ Հայաստանը գտնուի Ռուսաստանի հովանաւորութեան ներքոյ: Մի փոքրաթիւ ռուսական բանակ պէտք է մնար Հայաստանի մէջ նորա սահմանները Տաճկաց եւ Պարսից արշաւանքներից պաշտպանելու աղագաւ, իսկ Հայ Թագաւորների որդկերանցից մէկը մնալու էր չարունակ կայսեր պալատումը: Հայոց Թագաւորութիւնը պարտաւորուում էր իւր հանքերից արտահանած ոսկուց եւ արծաթից մի որոշ մասն յատկացնել Ռուսաստանին: Պատերազմական դէպքերում երկու պետութիւններն եւս պարտական էին միմեանց օգնութիւն տալ:

Այս դաշնագրութեան մի ամենահետաքրքիր յօդուածն այն էր, որ Հայերը պահանջում էին, որ իւրեանց աշխարհի մէջ ստրկութիւն (իմա՛ ճորտութիւն) չը ներմտնէր, ինչպէս իւրեանց ազգային բնաւո—

---

վահանի վերայ նկարուած է մի արծաթեայ ժայռ. վահանի գլուխը պսակում է մի Ռուսական ոսկի խաչ, իսկ վահանի վերայ դրուած է կայսերական Թագը:

Բայց ռուսաց կայսերական բուն դրօշի վերայ մնացել է մի առիւծ, որպէս Ռուբէնեան հարստութեան դրօշ»:

րութեան մի տարօրինակ եւ հակառակ երեւոյթ: Այս մասին նոքա մատնացոյց էին անում իւրեանց պատմութիւնից այն դէպքը, որ երբ Յոյները տիրելով Հայաստանին կամեցան Հայերից ստրուկներ տալ իւրեանց իշխաններին, Հայերը թողին նորանց եւ մտան Բաղդատու խալիֆների հպատակութեան ներքոյ, առաւել գերադաս համարելով խալիֆների ծանր քաղաքական ճնշումները իւրեանց ներքին ընտանեկան ազատութեան կորուստից:

Այս ծրագիրն իրագործելու համար մեծ զօրութիւն եւ դրամական ոյժ էր հարկաւոր. միակ յոյսը բնականապէս Էմին Յովսէփեանի (Յովսէփ Էմին) առաջարկութիւնն էր, որ մի քանի տարի առաջ նուիրում էր իւր միլլիոնները Հայաստանի ազատութեան գործին: Սակայն Էմինը կենդանի չէր այժմ եւ նորա հարստութիւնը՝ ժառանգական ցեղի վերջանալու օրէնքին համաձայն՝ մնացել էր Օստ-Ինդիական բանկին:

Այս անգամին եւս գտնուեցաւ ոմն Շամիր-խանն՝ նոյնպէս Հնդկահայ, որ իւր լիքը քսակը առաջարկեց Հայաստանին: Սակայն ըստ նորա կարծեաց պատերազմ սկսելու կարիք չկար. հարկաւոր էր ոսկով գնել Հայաստանը Տաճկաստանից եւ Պարսկաստանից[28]:

---

[28] Այս Մադրասցի հայ ազգայինը՝ Շամիր-խանը մի նամակ էր ուղղել ժամանակի Ղուկաս կաթողիկոսին (1780—1799), որը վարում էր չափազանց զգուշաւոր քաղաքականութիւն եւ յատուկ աշխատանքներ չէր տանում Պոտեմկինի եւ Արղութեանի յիշեալ քաղա-

*Այս մեծահարուստ անձը առաջարկում էր Բորչալուում, Լոռում եւ Երեւանի նահանգում մշակել լեղակ, շաքարի եղէգն, բամբակ եւ սուրճ, հիմնել գործարաններ եւ այդպիսով դարերով աւեր ու քարուքանդ աշխարհին միանգամից վերակենդանութիւն տալ:*

*Ուրեմն դրամագլուխն ի նկատի եւ պատրաստ էր եւ մնում էր գործ սկսելը:*

*Վճռուեցաւ սկսել Ղարաբաղի խանութիւնից — այն է գահավէժ անել Իբրահիմ խանին եւ նորա տեղը հայ կառավարիչ կարգել: Բուն ձեռնարկութիւնը դիտաւորութիւն կար սկսել առաջիկայ 1784 թուի ամառը եւ զօրքն արդէն պատրաստւում էր:*

*Բայց այն ինչ ծրագիրը գրւում էր եւ իրագործութեան պատրաստութիւններ տես-*

---

*քական ծրագրի իրագործման համար, եւ կշտամբում էր վեհափառին, ասելով՝* «Կ'երեւի թէ հաճիք ընդ ծառայութիւն այլազգեաց եւ ո՛չ սիրէք զազատութիւն»: *Տե՛ս այս մասին «Սիոն», 1947, Թիւ 3, էջ 111: — Շամիր-խանի, Յովսէփ էմինի երեւան գալը հայ ժողովրդի կեանքի այդ մռայլ օրերին իրենց ազատանենչ ձգտումներով ու պատրաստակամութեամբ ամէն զոհաբերութեան, չափազանց նշանակալից երեւոյթ է ինքնըստինքեան եւ միաժամանակ փայլուն ապացոյց է, թէ որքան խոր ու ծաւալուն է եղել հայ հասարակութեան մէջ, նոյն իսկ վերին խաւերում, Հայաստանի ազատութեան եւ անկախութեան գաղափարը: Իբերի այս հողերանական վիճակի հանդէպ ակամայ համեմատութեան պահանջ է զգացւում 19րդ դարի վերջերին եւ 20րդ դարի սկզբներին մեր հայ կեանքի մէջ տեղի ունեցած ահաւոր դէպքերի հանդէպ մեր հասարակութեան վերին խաւերի կողմից ցուցադրած վերաբերմունքն ու բռնած դիրքը:*

նում էին, քաղաքական հանգամանքները խիստ խճճուեցան։

Օմմար խանը աւերում է Վրաստանը, չնայելով որ Ռուսաց զօրքն այդ ժամանակ նստած էր այնտեղ եւ պատրաստւում էր դիմել Ղարաբաղի վերայ։ Ռուսաստանը այդ ժամանակ երկրորդ Տաճկական պատերազմն էր սկսում եւ էլ հնարաւորութիւն չի ունենում Վրաստանը պաշտպանելու։ Հայաստանը նորից բարձի թողի մատնւում է իր ճակատագրին եւ իւր ձգտումների համար ենթարկւում է վրէժխնդրութեան հարուածներին։ Պարսիկներն ու Իբրահիմ խանը սարսափելի հալածանքներ եւ բռնութիւններ են գործ դնում Հայերի դէմ։ Հայաստանը նորից արիւնաշաղախ է լինում, Ռուսաստանին հաւատարիմ եւ անձնուէր մնացած բոլոր մէլիքները կոտորւում են եւ ի սպառ ջնջւում են եւ մի քանիսին միայն յաջողւում է փախչել Տփխիս՝ Հերակլ Թագաւորի մօտ։

Ոչ Հայերն եւ ոչ Ռուսաց կառավարութիւնը չէին կարողանում այնու ամենայնիւ հրաժարուել այն նուիրական գաղափարից, այն նպատակից, որ պատմական հանգամանքների ընթացքներին ստեղծել էին եւ Պետրոս Մեծը նախատեսել էր» (էջ 8—10)։

Արդարեւ, յետագայ պատմական իրադարձութիւնները իրենց աստիճանական զարգացմամբ բերին ի վերջոյ Արեւելեան Հայաստանի ազատութիւնը Պարսիկների ու Տաճիկների դաղանաբարոյ տիրապետութիւնից։

Շարունակենք հետեւելու այդ պատմական դէպքերի ընթացքին:

⁂

Պաւել կայսեր օրով (1796—1801) թէեւ շարունակուեց Ռուսաստանում եղած Հայ առեւտրականների եւ նոր գաղթող Հայերի նկատմամբ բարեհաճ վերաբերմունքը, բայց կանգ առաւ նուաճողական քաղաքականութիւնը դէպի Անդրկովկաս. դեռ աւելին, նա անակնկալ կերպով յետ կանչեց իր զօրքերը, որի հետեւանքով երկիրը Աղայ Մահմատ խանի բարբարոսութիւններին զոհ գնաց:

1797 հոկտեմբեր 7ի հրամանագրով կայսրը թոյլատրեց հայ մելիքներին իրենց հպատակ ժողովուրդով՝ 11·000 ընտանիք, ընդունել Ռուսաց հպատակութիւն եւ բնակչութիւն հաստատել — ինչպէս ասուած է բնագրի մէջ — «Կովկասեան սահմանագծի» շրջանում, այսինքն՝ Կովկասեան լեռնաշղթայի այս կողմը:

Սակայն ամենանշանաւոր դէպքը, որ այս կայսեր օրով տեղի ունեցաւ եւ ապահովութիւն բերեց նաեւ հարիւրաւոր հայ ընտանիքներին, դա Վրաստանի միացումն էր Ռուսաստանին 1801 թ.:

Վրաստանին սահմանակից Պարսից խանութիւններից հարիւրաւոր հայեր դիւրութեամբ փախչում էին եւ ապաստան գտնում իրենց հայրենակիցների մօտ, որոնք հնուց բնակութիւն էին հաստատել Վրաստանում:

Ալէքսանդր Ա. կայսեր *օրով* (1801—1825) *նոյնպէս նուաճողական քաղաքականութիւնը դէպի Արեւելեան Հայաստան երկար ժամանակ կանգ առաւ։ Յայտնի է, որ այս կայսեր ամբողջ ուշադրութիւնը ուղղուած էր դէպի Արեւմտեան Եւրոպա, դէպի Նապոլէոն Ա. կայսեր նուաճումները Միջին Եւրոպայում, որոնք ի վերջոյ հանգեցին* 1812 *թ. ռուս-ֆրանսական պատերազմին։*

*Այսու հանդերձ այս կայսրն էլ շարունակեց արդէն պատմական աւանդութիւն դարձած քաղաքականութիւնը՝ հովանաւորութիւն ու բարեհաճ վերաբերմունք դէպի Հայերը։ Այս տեսակէտից ուշադրաւ է այն հրովարտակը, որը նա ուղղել էր Վրաստանի հայերին* 1813 *թ. սեպտեմբեր* 16*ին։*

*Այս հրովարտակը արդիւնք էր հետեւեալ դէպքերի.*

1804 *թ. իշխան Ցիցեանովն ու զօրավար Գուդովիչը յարձակում գործեցին Գանձակի վրայ ու ջարդ տուին պարսիկներին։ Այս յաղթանակով* Գանձակի խանութիւնը անցաւ ռուսական իշխանութեան ներքոյ։

*Այնուհետեւ* 1804—1813 *թ. մի շարք կռիւներ մղուեցին Երեւանի խանութեան դէմ, Երեւանը նուաճելու նպատակով. դժբախտաբար, ակնկալուած յաջողութիւնը չունեցան այդ կռիւները։*

*Այս բոլոր կռիւների ժամանակ Հայերը ոչ միայն մնացին հաւատարիմ Ռուսաստա-*

*նին, այլ եւ զէնքով բերին իրենց թանկագին օժանդակութիւնը:*

*Թէ՛ Ցիցեանովը, — վկայում է Պոտտօն — որ «առանձին մեծ ատելութիւն էր զգում դէպի հայերը», եւ թէ՛ բոլոր Ռուս զօրավարներն ու հրամանատարները «միաձայն վկայեցին իրանց օրով Հայոց կատարած մեծամեծ յաղթութիւնների մասին»: Բոխչչեւը գրում է, որ Կախէթիի խռովարար ապստամբութիւնների ժամանակ, հայ Ազգը, որ Վրաստանի մարդաբնակութեան նշանաւոր մասն է կազմում, անյողդողդ մնաց հաւատարմութեան մէջ եւ զոհելով իր կարողութիւնը, մինչեւ կեանքն եւս, կռուեց ապստամբների դէմ եւ բազմիցս ապացուցեց իւր քաջութիւնն եւ անկեղծ անձնուիրութիւնը» (Պոտտօ, էջ 12):*

*Այս զեկուցումների հիման վրայ էր, որ կայսրը յիշեալ հրովարտակը յայտարարեց եւ որի մէջ ասուած էր.*

*«Վրաստանում բնակուած իմ սիրելի եւ հաւատարիմ հպատակ Հայ Ազգին: Հայերը ցոյց են տուել իրենց մշտական խաղաղասիրութիւնն եւ հաւատարմութիւնը, երբ թեթեւամտութիւնն ու չարամտութիւնը ջանում էին ի զուր տեղ խախտել մեր կողմից Վրաստանում հաստատուած հանդիստն, ու խռովայոյզ պայմաններում մնացին ամուր եւ անսասան իրենց պարտաճանաչութեան մէջ դէպի մեզ եւ դէպի մեր գահը, զոհաբերելով*

իրենց ստացուածքը, իրենց կարողութիւններն եւ նոյն իսկ իրենց կեանքը յօգուտ մեր ծառայութեան եւ ընդհանուրի բարիքի: Նման պարտաճանաչութիւն Վրաստանի Հայերի, նրա բոլոր դասակարգերի կողմից ցուցադրուած, նրանց ծառայութիւններն ու սխրագործութիւնները մեզ վրայ դնում են հաճելի պարտականութիւն վկայելու ամբողջ աշխարհի առաջ մեր արդարացի երախտագիտութիւնն ու բարեհաճութիւնը: Թո՛ղ այս վկայութիւնը պահպանուի ի փառս եւ ի պատիւ նրանց եւ ի յիշատակ գալոց սերունդների»:

Այնուհետեւ 1813 թ. հոկտեմբեր 12ի Գիւլիստանի դաշնագրով Պարսկաստանը զիջեց Ռուսաստանին՝ Նուխին, Շամախին, Ղարաբաղի, Թալիշի, Բաքուի, Ղուբայի ու Դերբէնդի խանութիւնները: Այս շրջաններում հայութիւնը կազմում էր տեղական ազգաբնակութեան ստուար մասը:

Միաժամանակ նոյն այդ դաշնագրով հաստատուեց, որ Ռուսաստանի սեփականութիւնն են կազմում Դաղստանը, Վրաստանը, Իմերեթիան, Գուրիան, Աբխազիան եւ Շօրագեալը, այսինքն՝ գրեթէ ամբողջ Անդրկովկասը, բացի Երեւանի ու Նախիջեւանի խանութիւններից:

Նշանակալից է մանաւորապէս հերոսական Ղարաբաղի ազատագրութիւնը, այն Ղարաբաղի, որ մի դարուց աւել կատաղի կռիւ-

ներ էր մղել Պարսկաստանի դէմ, անթիւ զոհեր տուել ու աննկարագրելի տառապանքներ կրել․․․։

Պատմութիւնը ունի իր առեղծուածական երեւոյթները։

Անդրկովկասի ազատագրութիւնը վիճակուեց կատարելու Ռուսաստանի մի կայսեր՝ Նիկոլայ առաջինին (1825—1855), որ հոգով, սրտով ու մտքով հակառակ էր ամէն ազատութեան եւ որը իր երկրում եղաւ ամէն ազատութեան դահիճը․․․։

Հետեւաբար, բնական էր, որ նա եւ Անդրկովկասի ազատութիւնը չարդարացրեց Հայ ազատագրական շարժման ռահվիրաների՝ Իսրայէլ Օրիի, Յովսէփ Էմինի, Յովհաննէս Լազարեանի, Յովսէփ Արղութեանի փայփայած վառ երազները՝ ունենալ ազատ եւ անկախ Հայաստան Ռուսաստանի հովանաւորութեան ներքոյ։

Ճիշտ է, որ Հայ ժողովրդի սիրտը շահելու համար այդ նոյն կայսրը հրամայեց Երեւանի եւ Նախիջեւանի խանութիւնները անուանել «Նահանգ Հայոց եւ մուծանել զայն ի մականունս մեր», բայց եւ այնպէս, նախ, դա չափազանց քիչ էր համեմատած ամբողջ մի դար Հայերի ակնկալած ազատութեան հետ, երկրորդ, այդ «Հայոց Նահանգը» իր վարչական կարգերով ոչնչով չէր տարբերւում մի Վորոնէժի նահանգում տիրող ոստիկանական կարգերից․․․։

Նիկոլա կայսրը երկու պատերազմներից յետոյ Պարսկաստանի հետ՝ 1826—1828 թ. եւ Տաճկաստանի հետ՝ 1828—1829 թ. միայն նուաճեց ամբողջ Անդրկովկասը:

Ռուս–պարսկական պատերազմը, կոմս Պասկեւիչի գլխաւոր հրամանատարութեան ներքոյ, սկսուեց ու տարուեց շատ յաջող: Պարսկաստանը, որ Նադիր–Շահից յետոյ մխրճուել էր ներքին երկպառակութիւնների մէջ, արդէն վաղուց կորցրել էր իր դիմադրական ույժը. պետութեան հիմերը արդէն փտել էին ու քայքայուել: Ռուս–հայկական ուժեղ գրոհի տակ՝ նախ 1827 թ. հոկտեմբեր մէկին ընկաւ Երեւանը, որ համարուում էր մի անառիկ բերդ, այնուհետեւ Պարսիկները նահանջեցին մինչեւ Թեհրան: Ռուս զօրքը հետապնդեց եւ պատրաստ էր արդէն անցնել մինչեւ Թեհրան ու այն եւս գրաւել, երբ Պարսիկները հաշտութիւն խնդրեցին, որը եւ կնքուեց Թուրքմանչայում 1828 թուին: Ըստ այս դաշնագրի Պարսկաստանը զիջեց Ռուսաստանին Արաքս գետի ձախակողմեան ամբողջ հողամասը, ուրիշ խօսքով՝ Երեւանի եւ Նախիջեւանի խանութիւնները:

Մեր այս ներածական համառօտ տեսութեան սահմաններից ի հարկէ դուրս է այդ պատերազմի մանրամասն նկարագրութիւնը, բայց եւ այնպէս չենք կարող չնկատել, որ հայ ժողովուրդը, Ներսէս Աշտարակեցու անձնազոհ առաջնորդութեամբ եւ յորդորնե–

րով[29] նետուեց պատերազմի դաշտը մեծ խանդավառութեամբ եւ բերեց մեծ օժանդակութիւն Ռուսաց զօրքին պատերազմի ամբողջ ընթացքում, չխնայելով ոչ իր գոյքն եւ ոչ էլ իր կեանքը: Հայ ժողովուրդը խորապէս գիտակցում ու զգում էր, որ հասել է ժամը, երբ վերջապէս պիտի խորտակուի Ասիական բռնապետութիւնների իշխանութիւնը եւ պիտի թօթափի իրենից դարերի դաժան լուծը...: Նա պարզ նախատեսնում էր, որ ապրում է մի վճռական պատմական մոմենտ, որից յետոյ նրա կեանքը հիմնովին պիտի փոխուի եւ պիտի սկսի մի նոր դարաշրջան՝ խաղաղ ու ապահով կեանքի ժամանակաշրջան: Եւ հետեւելով իր հոգեւոր մեծ առաջնորդին, ոչինչ չխնայեց Ռուսական զէնքի յաջողութեան համար: Յայտնի է նաեւ, որ Ներսէսի կողքին գործում էր նաեւ Գրիգոր Մանուչարեանց եպիսկոպոսը իր հեծելադունդով եւ ցուցադրել էր մեծ քաջագործութիւններ, որոնց համար ստացել էր Ս. Գէորգի, Ս. Վլադիմիրի եւ Ս. Աննայի շքանշանները:

Այս պատերազմը ունեցաւ նաեւ մի այլ խոշոր հետեւանք. Պարսկաստանից Արեւելեան Հայաստան գաղթեցին 40·000 Պարսկա–

---

[29] Դեռ 1826 թ. Ներսէս Աշտարակեցին գրում էր պատերազմաշունչ շրջաբերականներ ժողովուրդի մէջ, ասելով՝ «Դիմադրեցէք թշնամուն եւ սորա արբանեակներին, կամ Ռուսաց զօրքի հետ միասին եւ կամ թէ ուրիշ կերպ, որ աւելի յարմար կը լինի. իսկ եթէ հարկ լինի մի խնայէք ձեր արեան վերջին կաթիլը»:

հայեր զնդապետ Ղազար Լազարեանի առաջնորդութեամբ եւ հաստատուեցին գլխաւորապէս Երեւանի եւ Նախիջեւանի նախկին խանութիւններում:

Այս գաղթի ընդհանուր նկարագրութիւնը տրուած է ստորեւ՝ գնդապետ Ղազար Լազարեանի կենսագրականի մէջ, ուստի այս տեղ կանգ չենք առնում այդ նշանաւոր դէպքի վրայ:

Ռուս-Տաճկական պատերազմը 1828—1829 թ. մղւում էր երկու ճակատներում՝ Բալկաններում՝ զօրավար Դիբիչի հրամանատարութեան տակ, եւ Արեւելեան Հայաստանի ռուս-տաճկական սահմանագծում՝ կոմս Պասկեւիչի հրամանատարութեան ներքոյ:

Երբ զօրավար Դիբիչը գրաւեց Վառնա եւ Շումլա ամրոցները եւ յետոյ Ադրիանուպոլիս քաղաքը, իսկ կոմս Պասկեւիչը նուաճեց Կարս եւ Ախալցխա ամրոցներն եւ ապա Էրզրում քաղաքին տիրեց, Տաճկաստանը հարկադրուեց տեղի տալ եւ հաշտութիւն խնդրել: 1829 թ. Ադրիանուպոլիս քաղաքում կնքուեց հաշտութեան դաշնագիրը, ըստ որի Դանուբ գետի ստորին հոսանքի ձախ կողմը եւ Սեւ ծովի արեւելեան ափերը (Կուրան գետի բերանից դէպի հարաւ եւ Ախալցխա իր շրջանով), այսինքն՝ Անապան եւ Փոթին եւ ապա Ախալցխան ու Ախալքալաքը անցան Ռուսների ձեռքը:

Բացի այդ Մոլդաւիան, Վալախիան ու Սերբիան հռչակուեցին ինքնավար երկիրներ Ռուսաստանի հովանու տակ․ Յունաստանը յայտարարուեց անկախ թագաւորութիւն։

Այս պատերազմի ընթացքում Հայերը իբր 100·000 հոգի գաղթեցին Կարինի (Էրզերում) շրջանից, Կարինի Կարապետ եւ Կարսի Ստեփան եպիսկոպոսների առաջնորդութեամբ։ Այս գաղթականութիւնը լցրեց Արաքսի ամայի ու աւեր հովիտը աշխատասէր եւ ստեղծագործ կորովով օժտուած խաղաղ հայ ազգաբնակութեամբ։

Կարինից մասնաւոր գաղթը սկսուեց 1829 թ․ հոկտեմբեր 14ին, իսկ ընդհանուր գաղթը՝ 1830 թ․ մայիսից։

Այդ գաղթով Կարինի ամբողջ շրջանը գրեթէ դատարկուեց հայ ազգաբնակութիւնից, ամայացաւ ու մատնուեց տնտեսական տաղնապի։

Ռուս կառավարութիւնը եւ զինուորական իշխանութիւնը ամէն կերպ օգնում էին ու խնամք տանում դիւրացնելու եւ անվտանգ պահելու Հայերի ելքը․ տրամադրեցին որոշ զօրամասեր ուղեկցելու գաղթողներին եւ պաշտպանելու նրանց Քրդերի հաւանական յարձակումներից, տուին սայլեր փոխադրելու անկարողներին եւ նրանց գոյքը, բաժանում էին հաց․ տուին նաեւ դրամական օժանդակութիւն՝ իբր 20·000 ոսկի փոխարինաբար, հետագայում մաս–մաս վերադարձնելու պայմանով։

Ըստ Ա. Երիցեանի տուած տեղեկութիւնների[30], Տաճկահայաստանից գաղթել էին.

| | | |
|---|---|---|
| Արզրումի Փաշայութիւնից . . . . . | 7·298 | գերդաստան |
| Արդահանից . . . . | 67 | ,, |
| Կարսի Փաշայութիւնից . . . . . | 2·467 | ,, |
| Բայազէթի Փաշայութիւնից . . . . . | 4·215 | ,, |
| ընդամէնը | 14·047 | գերդաստան: |

Եթէ հաշուելու լինենք, որ ամէն մի գերդաստան բաղկացած էր 8 հոգուց, որ չի կարելի այն ժամանակուայ հայ նահապետական ընտանիքի համար համարել բարձր թիւ, կը ստանանք՝ 112·352 հոգի, որը միանգամայն համապատասխանում է բոլոր մեր պատմիչների մատնանշած ընդհանուր թուին՝ հարիւր հազար հոգու:

Արզրումցիք բնակուեցին Ախալցխա եւ Ախալքալաք քաղաքներում եւ նրանց շրջակայ գիւղերում:

Կարսեցիք ընտրեցին Գիւմրի (Ալէքսանդրոպոլ—Լենինականը), Արագածի լանջերը, Ապարանն ու Թալինը:

---

[30] Տես Ա. Երիցեան, «Ամենայն Հայոց կաթողիկոսութիւնը եւ Կովկասի Հայք 19րդ դարում»: Հատոր Ա. եւ Բ.: Թիֆլիս 1895 թ.:

*Բայազէթցիք՝ Սեւանայ լճի կողմերը, Դարաչիչագ եւ մասամբ Սուրմալու գետեղուեցին*[31]:

*Այս պատերազմի ժամանակ էլ հայ ժողովուրդը բերել էր իր գործօն մասնակցութիւնն եւ ցուցաղրել մեծ քաջագործութիւններ:*

*«Հէնց որ ռուս-տաճկական պատերազմը սկսուեց, գրում է մի ռուս հեղինակ, Տաճկահայերի մէջ ծնունդ առաւ ուրախութեան յուզմունք: Բարձր Դուռը (Թիւրքիան) սահմանակից շրջաններից Հայերին փոխադրեց հեռաւոր վայրեր, բայց դրանով դժուար էր արգելք լինել Հայերին արտայայտելու իրենց համակրանքը Ռուսաստանին: Որքան ռուս զօրքերը առաջ էին ընթանում, այնքան աւելի վճռական կերպով էին Հայերը արտայայտում խօսքով ու գործով իրենց համակրանքն ու աջակցութիւնը: Հայերից կազմուել էին կամաւոր գնդեր, որոնց վրայ մի առանձին կատաղութեամբ էին յարձակուում տաճիկ գինուորները: Բայց Հայերը չարունակում էին անխախտ արտայայտել իրենց ջերմ համակրանքը Ռուսաստանին: Ի դէմս Հայերի, կոմս Պասկեւիչի վկայութեամբ, ռուս զօրքերը գտան* «քաջ զինակիցներ եւ ջերմեռանդ մասնակիցներ»: *Նրա պաշտօնական հաղորդագրութիւնից երեւում է, որ Բայազէթում 2000 Հայեր կռուել են ռուս զօրքի շարքերում. Ղարսում 800 հոգի ձիա-*

---

[31] *Անդ:*

ւորներ պաշտպանում էին ռուսական սահմանը եւ, վերջապէս երբ ռուս զօրքերը հասան Էրզրում, ամբողջ հայ ազգաբնակութիւնը ընդունեց նրանց խանդավառ ցոյցերով[32]»:

*

Անդրկովկասի նուաճումով, Սեւ, Ազով ու Կասպից ծովերի եզերքի գրաւումներով, որոնք տեւեցին մէկ դարուց աւելի, Ռուսաստանի պետական ծաւալումը դէպի Հարաւ–Արեւելք կանգ առաւ: Այժմ հերթը հասել էր Հիւսիսային Կովկասի լեռնականներին՝ Ջերքէզներին, Չէչէններին եւ այլոց խաղաղացնելու: Նիկոլա Ա.ի ամբողջ թագաւորութեան ընթացքում անընդհատ կռիւներ էին մղւում նրանց դէմ:

Հիւսիսային Կովկասը խաղաղուեց, ըմբոստ լեռնականների դիմադրութիւնը զըսպուեց միայն Ալէքսանդր Բ.ի օրով 1864 թ., երբ լեռնականների առաջնորդ հռչակաւոր Շամիլը անձնատուր եղաւ 1859 թ. եւ ապստամբութեան թափը հետզհետէ կոտրուեց եւ երկիրը վերջնականապէս խաղաղուեց:

Նիկոլա Ա. կայսրը, Անդրկովկասի նուաճումից յետոյ, անմիջապէս ձեռնամուխ եղաւ այդտեղ ռուսական պետական կարգերն հաստատելու եւ օրէնքներ մտցնելով, կազմակերպելու վարչութիւնը:

[32] Տե՛ս Ջանշեանի «Եղբ. Օգնութիւն», էջ 653:

Այդ աշխատանքների մէջ ամենից նշանաւորը եղաւ 1836 թ. «Պօլօժենիէն[33], որը կայսրը հաստատեց յատուկ հրովարտակով նոյն թուի մարտ 11ին եւ ապա անմիջապէս գործադրութեան դրուեց:

Պիտի ասել, որ նման մի վարչական կանոնագրի մշակման անհրաժեշտութեան գաղափարը Հայ լուսաւորչական եկեղեցու համար առաջին անգամ յղացել էր աղա Մինաս Լազարեանը՝ Դաւիթ–Դանիէլեան տխուր վէճի ծանր տպաւորութեան տակ, մի վէճ, որ տեւեց մօտ վեց տարի՝ 1801 թուից մինչեւ 1807 թ. եւ որը Ա. Երիցեանի վկայութեամբ, «ազգիս ընդհանրապէս, եւ Աթոռին գլխաւորապէս, մեծամեծ վնասներ պատճառեց»:

1805 թ. Մինաս Լազարեանը գրել էր Աստրախան Եփրեմ եպիսկոպոսին եւ Թիֆլիս Յովհաննէս Գեղարդակրին եւ առաջարկել, որ սրանք համոզեն Դանիէլ կաթուղիկոսին, որպէս զի էջմիածնում մի «սիւնհոդոսարան» հաստատէ իր նախագահութեամբ եւ որոշ կանոններով կառավարէ Եկեղեցւոյ վարչական գործերը եւ այդպիսով վերջ տրուի այն տխուր ու խայտառակ անցքերին, որոնք կատարւում էին էջմիածնում[34]:

Այժմ, երբ ամբողջ Արեւելեան Հայաս–

[33] «Պօլօժենիէ»ի լրիւ վերտառութիւնն է՝ «Բարձրագոյն կանոնադրութիւն յաղագս կառավարութեան գործոց լուսաւորչական Հայոց Եկեղեցւոյ ի Ռուսաստան»:

[34] Տե՛ս Երիցեան, Հ. Բ., էջ 267:

տանը սկսել էր իր խաղաղ կեանքը եւ գտնուում էր կոմս Պասկեւիչի վերին կառավարութեան ներքոյ, նոյն մտքին է գալիս նաեւ ինքը Պասկեւիչը եւ առանց յապաղելու Հայոց եկեղեցւոյ վարչական կանոնագրի մշակման գործը դնում է գործնական գետնի վրայ եւ նրա ջանքերը պսակուում են 1836 թ. «Պօլօժենիէյով»:

Այս «Պօլօժենիէն» իր բազում խոշոր պակասներով հանդերձ, անշուշտ մի դրական երեւոյթ էր հայ կեանքի մէջ, որի բնական կեանքը միանգամայն խաթարուած էր Պարսից ու տաճկական իշխանութիւնների ժամանակ: «Պօլօժենիէն» յամենայն դէպս մտցնում էր հայ հոգեւոր կեանքի մէջ մի որոշ կարգ ու կանոն, կանխում էր անձնական բռնազբօսիկ ելոյթները, որոնք անցեալում յաճախ տեղի էին ունենում, մասնաւորապէս էջմիածնի միաբանութեան շարքերում. Մայր աթոռի դրամական գործերը որոշ հսկողութեան տակ էր դնում ու կանոնաւորում, եւ վերջապէս, որ գլխաւորն է, իրաւունք էր տալիս հոգեւոր բարձր կառավարութեան բաց անելու ծխական ու թեմական դպրոցներ: Մի խօսքով, հայ ժողովուրդը ստանում էր եկեղեցական-կրթական ինքնավարութիւն, ազատութիւն իր ներքին գործերի մէջ, բայց մերժուում էր ազգային պետականութիւն ստեղծելու իրաւունքը:

«Ճիշտ է, ասում է Լէօն, Պօլօժենիէն միմիայն լուսաւորչական Հայոց եկեղեցուն

էր վերաբերուում եւ միմիայն զուտ եկեղեցական հարցեր էր շօշափում, բայց եւ այնպէս, եթէ ի նկատի առնենք Հայ եկեղեցու կազմակերպութիւնը, նրա ոգին, դա միաժամանակ եւ ժողովրդական օրէնք էր, որ ահագին ազդեցութիւն ունեցաւ մեր պատմական ճակատագրի վրայ, սկսած իր գործադրութեան ժամանակից, շուռ տուեց, կարելի է ասել, մեր պատմութեան անիւը: Ռուսաց օրէնսդրութեան մէջ Պօլօժենիէի միջոցով ընդունուում եւ պաշտօնական վաւերացում էր ստանում մի ամբողջ ժողովուրդ — «Հայկական ժողովուրդը» — որ ունի իրաւունքներ, ընտրողական քուէ, սեփականութեան իրաւունք: Բայց այս բոլորը լոկ Հայ լուսաւորչական եկեղեցու շուրջը, լոկ իբրեւ մի եկեղեցական համայնք[35]»:

Այսպէս, թէեւ — կրկնում ենք — մեր պատմագրութեան ռահվիրաների փայփայած երազները՝ ստեղծել ազատ ու անկախ Հայաստան, չիրականացաւ. հայ ժողովուրդը ճանաչուեց Նիկողայոս կայսեր օրով լոկ որպէս մի կրօնական համայնք, Երեւանի նահանգում, որի տակ հասկացւում էր ամբողջ Անդրկովկասի հայութիւնը, այսու հանդերձ Պարսից ու Տաճիկների գազանաբարոյ իշխանութեան կործանումը եւ հայ ժողովրդի դարաւոր անհուն տառապանքների վերջ դնելը

[35] Լէօ, Պատմութիւն Երեւանի Հայոց Թեմական հոգեւոր դպրոցի, 1837—1912. Թիֆլիս 1914, էջ 116:

1828—1829 թթ. Ռուսաստանի տիրապետութեամբ, պատճառեց ամբողջ հայութեան աննկարագրելի ուրախութիւն ու խանդավառութիւն:

Լէօն իր յիշեալ աշխատանքի մէջ բերում է ընդարձակ պատմական վկայութիւններ, որոնք ցոյց են տալիս, թէ ինչ ստիճանի էր հասել այդ օրերին Հայոց հրճուանքը՝ սկսած Խաչատուր Աբովեանից, Մեսրովբ Թաղիադեանից մինչեւ Հնդկահայերը:

Եւ քանի որ մեր այս համառօտ տեսութեան նեղ սահմաններից դուրս է ընդարձակ նկարագրութիւնը այդ խանդավառութեան, ուստի սահմանափակուում ենք միայն հետեւեալ մի—երկու փոքրիկ մէջբերումներով այդ վաւերագրերից, մի գաղափար տալու համար հայ ժողովրդի վրայ թողած տպաւորութեան մասին՝ Անդրկովկասի նուաճումից յետոյ Ռուսների կողմից:

Երեւանի 10 գիւղերի եւ Երեւան քաղաքի «առաջաւոր անձանց» գրութեան մէջ, ուղղուած «Առ սուրբ Էջմիածնի բարձրագոյն կառավարութիւնն» 1828 թ. յուլիսին, ասուած է ի միջի այլոց.

«...ի սրբազան հարցդ եւ ի նախնի պատմչաց մերոց լուեալ եւ ընթերցեալ եմք թէ Հայոց ազգն երեւելի թագաւորութիւն մի էր, ուրեմն ըստ բաւականին զօրք եւ ժողովուրդք պարտէին ունիլ, զի կառավարեսցէին զայնպիսի թագաւորութիւն: Այժմ բոլոր ի մէջ Հայաստանու Ատրպատականի հա—

զիւ յիսուն հազար տնօրք գտանին ի Հայոց, մնացեալքն ցիր ու ցան եղեալ են ընդ ոլորտս տիեզերաց»։

*«...Գոհանամք զԱստուծոյ եւ զսուրբ Պատկերէ Նորին Կայսերական Մեծութեան ամենայն Ռուսաստանու Նիկոլայ Պաւլովիչէն որ մենք, ի ներկայիս գտանեցեալ անարժան ծառայքս Աստուծոյ եւ հաւատարիմ հաւատացեալքս սուրբ կայսրութեան Նորին անգրաւ ուրախութեամբ տեսաք եւ վայելեմք զյաւիտենական ազատութիւն մեր եւ որդւոց մերոց ի յանտանելի բռնութեանց եւ յապօրինաւոր հարկապահանջութեանց բարբարոսացն. ուստի մնացեալ Հայքս ի սահմանու Երեւանու գրով եւ բանիւ ձայն տամք ցրուեալ ազգիս մերոյ ի զանազան իշխանութիւնս եւ ի գաւառս բանիւ Սաղմոսին. Այսօր է զոր արար Տէր, եկեալ ժողովեցարուք, եղբարք մեր, ընդ հովանեաւ զայխօնի Քրիստոսասէր Ռուսաց կայսերութեանն, ցնծասցուք եւ ուրախ լիցուք, զի այց արար մեզ Բարձրեալն, ազատեցաք ի գերութեանց եւ դրոշակքն Թագաւորութեանց մերոց ի ձեռս որդւոցն Հայկազնէից զարհուրեցուցանեն զնախաչար թշնամիս նոցին» եւ այլն։*

*Կալկաթահայերի գրութեան մէջ,* 105 *ստորագրութեամբ, ուղղուած Ներսէս Աշտարակեցուն, ասուած է հետեւեալը.*

*«...Զիարդ հեռաւորութիւն տեղւոյ խափան լիցի մեզ խոստովանել զերախտագիտութիւն մեր առ երկնակառոյց հզօր տէ–*

րութիւնն Մոսկովայ՝ որք ի սիրոյ բնութեան եւ քրիստոնէական կարեկցութեամբ չարժեալ՝ յառաջ մատեան առ անկեալս յիւրեանց նախնական չքեղութեանց, եւ ձեռն տուեալ նոցա հանին զնոսա ի խաւարչտին գրոյ անյոյս դերութեան ի լուսանորոգ վայրս ցանկալի ազատութեան . . . [36]»:

Բաց ենք թողնում Մադրասի հայերի, Թաղիադեանի գրութիւնները, որոնք նոյն ոգւով եւ ոչ պակաս խանդավառութեամբ են գրուած:

Հայ ժողովրդի այս հրճուանքն ու խանդավառութիւնը, որ ազատութիւն էր գտել դարաւոր ստրկութիւնից, ի զուր չէին. նրա չկանդուած հոգեւոր եւ մտաւոր կարողութիւնները չղթայազերծուելով ու խաղաղ աշխատանքի հնարաւորութիւններ ձեռք ձգելով, զարմանալի կարճ ժամանակամիջոցում, ընդամենը 20—30 տարուայ ընթացքում, ձեռք բերեցին տնտեսական շօշափելի բարգաւաճում ու ցուցադրեցին մշակութային վերելք:

1855 թուի Ղրիմի պատերազմից յետոյ, յայտնի է, որ Ռուսաստանում, Ալէքսանդր Երկրորդ կայսեր օրով, սկսուեց մեծ բարենորոգումների մի սքանչելի ժամանակաշրջան, երբ գիւղացիութիւնը 1861 թ. փետրուար 19ին կայսերական հրովարտակով ազատագրուեց ճորտութիւնից, երբ մեծ բա-

[36] Անդ, էջ 102 եւ 105:

րենորոգումներ կատարուեցին դատաստանական կազմակերպութեան մէջ, երբ ժողովուրդը ստացաւ ներքին ինքնավարութիւն ի դէմս զեմստվոյական հաստատութիւնների, եւ երբ, վերջապէս, մամուլն ու գրականութիւնը մի որոշ չափով ազատութիւն ստացան արտայայտելու ու տարածելու ամենայառաջադէմ գաղափարներ:

Այս մտաւոր ազատարար շարժումը ունեցաւ իր փրկարար ազդեցութիւնը նաեւ հայ կեանքի վրայ: Բաւական է միայն մատնանշել, որ 1850ական թուականների երկրորդ կէսից սկսուեց այն մտաւոր մեծ շարժումը ամբողջ ռուսահայութեան մէջ, որ յայտնի է Վերածնութեան շրջան անունով եւ որի գլխաւոր ներկայացուցիչներն եղան՝ Ստ. Նազարեանը, Միք. Նալբանդեանը, Սմբատ Շահազիզը, Գամառ-Քաթիպան եւ նրանց շրջապատող մի փայլուն փաղանգ մտաւորականների, որոնք մեծ զարկ տուին հայ լեզուի, հայ գրականութեան, հայ հրապարակախօսութեան զարգացման ու 19րդ դարի յառաջադէմ գաղափարների տարածման հայ կեանքի բոլոր ասպարէզներում:

Այս երեւոյթի պատճառների շարքում խոշոր դեր ունի թէ հայ ժողովրդի բնածին աշխատասիրութեան եւ տոկունութեան ստեղծագործ ոգին, եւ թէ այն հանգամանքը, որ Անդրկովկասը, ամայի ու խոպան Պարսից ու Տաճկաց իշխանութեան մռայլ օրերին, լցուեց հայ ազգաբնակութեամբ, մի

ազգաբնակութիւն, որի բնական աճման թափն էլ միշտ եղել է զօրեղ։

Իսկ ազգաբնակութեան թիւն ու աճումը, յայտնի է, որ հանդիսանում է մի ժողովուրդի ընկերային, տնտեսական եւ մշակութային զարգացման ու յառաջադիմութեան գլխաւոր ազդակներից մէկը։

Այս տեսակէտից Արեւելեան Հայաստանը 1830 թուից յետոյ ներկայացնում էր մի շատ ուշագրաւ պատկեր։

Ըստ Դաւիթ Անանունի ուսումնասիրական տուեալների[37], 1830ական թուականներին միայն Անդրկովկասը ունեցել է շուրջ 300·000 հայ բնակչութիւն բնիկ եւ նորեկ գաղթականների հետ միասին։

Ըստ Մխիթար վարդապետի բերած վիճակագրական տեղեկութիւնների[38], 1902 թուին Հայերի թիւը Անդրկովկասի հինգ նահանգներում՝ Երեւանի, Կարսի, Գանձակի, Թիֆլիսի եւ Բագուի, կազմում էր մի պատկառելի քանակութիւն, այն է 1,292·00 հոգի կլոր թուով. ասել է թէ հազիւ 65—67 տարուայ ընթացքում Հայերի թիւը քառապատկուել էր։

Եզրափակելով մեր խօսքը ռուսական թափանցումի մասին դէպի Անդրկովկաս,

---

[37] Տե՛ս էջ 108· Դ. Անանունի, «Ռուսահայերի հասարակական զարգացումը 19րդ դարում, Հ. Ա. 1916։

[38] Տե՛ս էջ 135· Մխիթար վարդապետի, «Հայերը Ռուսաստանում», Վաղարշապատ 1906։

մատնանշելով հայ ժողովրդի ունեցած գործօն մասնակցութիւնն այդ թափանցումի ընթացքին, եւ ապա նրա ազդեցութիւնը հայ կեանքի զարգացման վրայ, ասենք եւ այն, որ ռուս եւ հայ ժողովրդի այդ մերձեցումը միայն Հայերի համար չէր, որ մեծապէս շահաւէտ եղաւ, այլ եւ ռուս պետութեան եւ ռուս ժողովրդի համար:

Այս հանգամանքը դեռ 1865 թուին պարզել էր գեղեցիկ կերպով Լազարեան Ճեմարանի այն ժամանակի տեսուչ (հետագայում համբաւաւոր վերատեսուչ) Գէորգ Քանանեանը իր ընդարձակ ճառի մէջ, տուած Լազարեան Ճեմարանի 50ամեակի առթիւ կայացած հանդիսաւոր հաւաքոյթում:

«Ռուս եւ Հայ ժողովրդների մերձեցումը, տուած է այդ ճառի մէջ, արդիւնք էր մի կողմից ներքին ու կրօնական պատճառների, միւս կողմից քաղաքական ու սօցիալական նկատառումների:

«Հին Հայաստանի կարեւորագոյն կենտրոնները, կրօնական ու պետական — Արմաւիրն ու Արտաշատը, Սիւնիքը, Դուինը, Վաղարշապատն ու Էջմիածինը — ընկան պատմական ճակատագրի կամքով, ռուս միապետների իշխանութեան տակ: Հայ ժողովուրդը, որ 5 դար առաջ կորցրել էր իր քաղաքական անկախութիւնը, ընդմիշտ անքակտելի կապերով կապեց իր գոյութիւնը մի հզօր երկրի հետ, որի վեհութեան ու բար-

*դաւաճման համար նա բերեց իր հետ բաւականաչափ պայմաններ:*

*«Ի սկզբանէ գերադասելով քաղաքացիական կեանքի յառաջադիմութիւնը ռազմական սխրագործութիւնների փայլից, ի սկզբանէ սիրելով ֆիզիքական ու մտաւոր աշխատանքն ու նրա բարի արդիւնքները, նա իր նոր հայրենիքի մի շարք մասերում երեւան բերեց այն ոյժերը, որոնցից կախում ունի ամէն մի երկրի բարգաւաճումը: Նա իրանով բազմապատկեց այն տարրերը, որոնցով պայմանաւորուած է ամէն պետութեան կայունութիւնը: Հայ գանգուածները, որոնք մի դարի ընթացքում լցնում էին Ռուսաստանի սահմանները, չէին հանդիսանում մի պարզ քանակութիւն, երկրորդական արժէք ունեցող յաւելում չէր գոյութիւն ունեցող ժողովրդական ոյժերին:* Նա բերեց իւր հետ նիւթական ու բարոյական հարստութիւն:

«Հայ գաղթականութիւնը ստրկութեան մէջ տանջուած մասսաների հետ միասին Ռուսաստան բերեց նաեւ իր լաւագոյն ոյժերը:

«Տառապող, տուն եւ ապաստան փնտռող գաղթականների հետ, Ռուսաստան հոսեցին հարստութիւն, ձիրք, առեւտրական փորձառութիւն եւ գործնական գիտելիքներ:

*«Կարելի է շատ օրինակներ բերել այդ լաւագոյն ոյժերի հոսանքի դէպի Ռուսաստան: Բայց ամենապայծառ օրինակը մեր աչքի առջեւն է՝ կեանքն ու գործունէու–*

*թիւնը այն տոհմի, որ իր անունը կապել է մեր դպրոցի հետ*[39]»։

*Ահա՛ այս տոհմի ներկայացուցիչների առաքինի ու փայլուն գործունէութեան պատմութեան էլ նուիրուած է մեր ներքոյ համեստ աշխատասիրութիւնը։*

*Լազարեանները իրենց ջերմ հայրենասիրութեան ոգով տոգորուած մի գործունէութիւն են ունեցել, որով անջնջելի հետքեր են թողել Հայոց պատմութեան փայլուն էջերում. էջեր, որոնց ընթերցումը լցնում է մարդու սիրտը ազգային պարծանքի վեհ զգացումով ու ակամայ մղում դէպի երախտագիտութիւն նրանց անմահ յիշատակի հանդէպ։*

---

[39] *Տե՛ս էջ* 14—15 *«Ճառեր եւ հաշուետուութիւն, արտասանուած հանդիսաւոր հաւաքոյթում Լազարեան ճեմարանի* 50*ամեակի առթիւ» Գ. Քանանեանի ճառը։ (Ռուսերէն լեզուով։) Մոսկուա* 1865։

Բ.

## ԱՐԵՒԵԼԵԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՏԽՈՒՐ ՎԻՃԱԿԸ 19ՐԴ ԴԱՐԻ ՍԿԻԶԲՆԵՐԻՆ ԵՒ ՊԱՅՔԱՐԸ ՆՐԱ ԴԷՄ

*Թուրք–պարսկական դաժան տիրապետութեան տակ հայ ժողովուրդը, որ չունէր կեանքի ու գոյքի ապահովութիւն, ոչ էլ տնտեսական բարգաւաճ վիճակ, որ միշտ ենթակայ էր չարքաշ աշխատանքի իր օրուայ հացն հայթայթելու ու իր բազում կեղեքիչների անկուշտ ախորժակներին բաւարարելու, որպէս զի մի կերպ կարողանայ իր ողորմելի գոյութիւնը պահպանել, — բնականաբար չէր կարող զարգացնել ազգային մշակոյթը: Նա չունէր ո՛չ դպրոց, ո՛չ տպարան, ո՛չ գրականութիւն եւ ո՛չ մամուլ:*

*Ազգային մշակոյթի օջախները վառ էին միայն գաղութներում՝ Հնդկաստան, Վենետիկ, Վիեննա, Մոսկուա, Պոլիս, Զմիւռնիա եւայլն:*

*Հայ եկեղեցին իսկ Արեւելեան Հայաստանում ու նրա հոգեւոր սպասաւորներն եւս գրեթէ ոչնչով չէին տարբերւում բուն ժո–*

*ղովրդից. նոյնքան տգէտ էին, նոյնքան խաւարամիտ եւ նոյնքան մխրճուած նախապաշարումների մէջ...*

«Հայ եկեղեցին, *ասում է Դաւիթ Անանունը*, որպէս միակ կազմակերպուած ույժ, մի կազմակերպուած դիակ էր[1]»։

*Մ. Թաղիադեանցը իր* «ճանապարհորդութիւն ի Հայս» *գրքի մէջ նկարագրում է հայ ժողովրդի հոգեւոր կենտրոնի՝ Ս. Էջմիածնի, որ հայ ժողովրդի սրտի ու մտքի վառարանն էր, կրթական վիճակը ամենամռայլ գոյներով...*

*«Ուսման եղանակը Էջմիածնի մէջ, ասում է նա,* 1813—1816 *թթ. երկու տեսակ էր՝ խցի ու վարժատան։ Նա, որ խցի աշակերտ էր, միաժամանակ եւ սպասաւոր էր. սովորում էր այն, ինչ որ գիտէր իր վարդապետը, մեծ մասամբ փոխեր, երգեր, Սաղմոս եւ Շարական։ Սակայն այդ վարդապետներից աւելի մարդասէրները, թէեւ իրենք անտեղեակ էին ազատական արուեստներին (իմա՛ աշխարհիկ գիտութիւնները), բայց եթէ գտնում էին մէկին, որ գիտէր այն, խնայողութիւն չէին անում, ուղարկում էին իրենց մանուկներին նրա մօտ սովորելու։ Եւ այսպիսով նրանցից ոմանց ուսումը լինում էր շատերին նախանձելի, իսկ տկարներին եւ*

[1] *Դ. Անանուն, «Ռուսահայերի հասարակական զարգացումը ԺԹ. դարում, Ա.,* 1916։

*աղքատներին յուսահատութեան իրաւացի պատճառ:*

*«Իսկ վարժատան ուսումն էր մէկ ծերունի վարդապետի հսկողութեան տակ: Վարժարանը հաւաքուած էին խառն ի խուռն հարիւրաւոր մեծ ու փոքր մանուկներ, 5 տարեկանից մինչեւ 20 տարեկան հասակ ունեցող: Վարժապետը չէր յոգնեցնում իրեն առանձին–առանձին ամէն մի աշակերտին հարցուփորձ անելու: Նա հաղորդում էր ինչ որ գիտէր, իսկ աշակերտները միմեանցից էին քաղում, ինչ որ խւրացնում էին:*

*«Գիշերուայ ժամը 3ին, հաւախօսից առաջ, վեր էին կենում նրանցից մեծերը եւ ազդարարում աղօթքի կանգնելու: Եթէ մանուկները դժուարանում էին վեր կենալ կամ դանդաղում էին, ապա նրանց թիկունքներին իջնում էին ցուպերի հարուածներ: Ժամերգութիւնը տեւում էր շատ երկար: Անդրաճանաչ մանուկները, քնաթաթախ եւ յոգնած, ստիպուած էին լինում երբեմն 3—4 ժամ ոտքի վրայ կանգնել: Եւ չէին դիմանում. յաղթահարուած քնից ընկնում էին մէջքի վրայ, քաշւում էին մի ապահով անկիւն կամ սեղանատան մի խորշը եւ թաց ու ցուրտ սալայատակի վրայ խրմփացնում: Եւ ահա՛ վրայ էր հասնում բարեգութ վարժապետը եւ իր աքացիով փախցնում նրա քունը եւ իրան էլ քաշում ապաշխարելու սառցատանը: Նրանք սովորում էին առհասարակ*

*փոխեր եւ եկեղեցու չարականներ, Նարեկի աղօթքներ, մասնաւորապէս աղօթքներ առ սուրբն կոյս Մարիամ եւ առ այն սուրբը, որի անունը աշակերտը կրում էր իր վրայ[2]»:*

*Թիֆլիսը հանդիսանում էր հայութեան մի երկրորդ մտաւոր կենդրոնը, ուր կարելի էր սպասել աւելի մխիթարական վիճակի. բայց այստեղ եւս նոյն դրութիւնն էր, ինչ որ Ս. Էջմիածնում էր տիրում...*

*Ա. Երիցեանը, իր վերոյիշեալ պատմական աշխատասիրութեան մէջ[3] գծում է կրթական գործի պատկերը Վրաստանի մայրաքաղաքում.*

*«Ամբողջ քաղաքիս մէջ, քաջ հայերէն իմացողը համարւում էր միմիայն Նորաշէն եկեղեցւոյ երկու ոտքով կաղ ժամկոչ Եղիազար Գալստեանը, որ իր կաղութեան պատճառով մնացել էր առանց ձեռնադրուելու: Եկեղեցուց ոչ հեռու Խարազխանայում (կօշկակարների թաղը) սա վարձած ունէր մի դուքան, ուր գետնի վրայ չոքած էին 13 հոգի մոնթեր, ապագայ քահանայացուք, եւ տաւարի ոսկրէ՛ թիակի վրայ՝* բէճի *անուանեալ, գրում եւ կարդում էին բարձրաձայն: Ուսուցանողն էր նոյն ժամկոչ Եղիազարը փալախայով հանդերձ: Դուքանը դռներ չունէր, բաց էր, եւ փողոցում անցուդարձ անողները կանգնում նայում էին որպէս մոնթերի*

---

[2] *Անդ.* էջ 111—113:
[3] «*Կովկասահայք*», *Ա.*, էջ 78—79:

իմաստութիւն ուսանելուն, նոյնպէս նոցա վարվախայ ուսելիս. «վա՛յ վա՛յ» գոռալուն: Դաստատութիւնն էլ կանոնաւոր չէր: Շաբաթը երկու անգամ այդ դպրոցում խալիֆայ Եղիազարը թանաք էր եփում եւ կաւեղէն ամաններով ուղարկում էր մոնթերին ծախելու փողոցէ փողոց: Օր չէր անցնիլ, ժամ չէր անցնիլ, որ ծանօթները, բարեկամները եւ առ հասարակ խալիֆայի «պատիւը» ճանաչողները չգային խնդրելու մէկը թէ «մերոնք (գերդաստանը) այսօր բաղնիք են գնում ամբողջ օրով, մի կամ երկու մոնթեր բաճ տուր՝ լուացքի բողչէքը տանեն ու բերեն», միւսը խնդրում էր թէ՝ «կտուրս կաթում է, թող մոնթերը գան՝ ոտքով տափտափեն կտուրը», երրորդը թէ՝ «սանամէրդ (կնիկս) այսօր հաց է թխում, թող մոնթերից մէկը գայ ծըծի երեխային օրօրելու» եւայլն:

«Եւ մեծահոգի խալիֆան վեհանձնաբար բաւականութիւն էր տալիս ամէնքին՝ ում «խաթրը» որ ունէր, ուղարկելով մոնթերին լուացքը բաղնիք տանելու, կաթող կտուրները տափտափելու եւ կամ երեխային օրօր կարդալու»:

Թիֆլիսի հայ հոգեւորականութեան կրթական վիճակն էլ նոյնքան ողբալի է եղել: Փողոցներում, Երիցեանի ասելով, վխտում էին անգործ քահանաներ, որոնք «առաւօտից մինչեւ երեկոյ դատարկ շրջում էին ու դուարճախօսութիւն անում...»:

30ական թուականներին անգամ, երբ Թիֆլիսում 1824 թ. արդէն բացուած էր Ներսիսեան դպրոցը, իսկ Մոսկուայում աւելի վաղ՝ 1815 թ. Լազարեան ճեմարանը, այնուամենայնիւ Ա. Երիցեանի վկայութեամբ՝

«Էջմիածնի կացութիւնը չատ տխուր էր մտաւոր զարգացման կողմից: Բացի քանի մի վարդապետներից, մնացած միաբանները եպիսկոպոսներով հանդերձ, խոր տգիտութեան մէջ էին ընկղմուած: Վանքն ուսումնարան չունէր, տպարան չկար, եւ տպարանին յատկացեալ չինութեան մէջ պահում էին վանքի ժողոված բուրդը[4]»:

Դ. Անանունը, վերոյիչեալ տեղեկութիւնները հաղորդելով, պնդում է, որ «չնայած դրան (հոգեւորականութեան տգիտութեան) հոգեւորականութիւնը հեղինակութիւն էր»:

Ինչո՞ւ: Որովհետեւ, ասում է նա, «եթէ տգէտ էր հովիւը, աւելի եւս տգէտ եւ կոյր էր հօտը[5]»:

Իրերի այս տխուր վիճակում էլ, սակայն, հայի մտաւոր անդաստանը զուրկ չէր մնում խայտառ տաղանդաւոր, եռանդուն, լուսամիտ ու ջերմ հայրենասէր մշակներից: Ժամանակ առ ժամանակ հանդէս էին գալիս

[4] Տե՛ս անդ Հ. Բ., էջ 126:
[5] Տե՛ս Դ. Անանուն, «Ռուսահայերի հ. գ. ժԹ. դարում», էջ 100:

աշխարհական եւ հոգեւորական մեծ դէմքեր, որոնք, որպէս մի–մի փայլուն աստղեր լոյս էին սփռում իրենց խաւար միջավայրի վրայ եւ ճանապարհ հարթում դէպի հայ ժողովրդի յառաջադիմութիւն:

Այսպէս էին, օրինակ, Սիմէօն կաթողիկոսը (1753—1780), Յովհաննէս Լազարեանը (1735—1801), Յովսէփ եպիսկոպ. Արղութեանը (1743—1801), Ալամդարեան վարդապետը (1796—1834), Մ. Թաղիադեանը (1803—1858), Ներսէս Ե. Աշտարակեցին (1770—1857), Խաչատուր Աբովեանը (1804—1848) եւ ուրիշները:

Բայց մի ժողովրդի յառաջադիմութեան, նրա լուսաւորութեան միակ յարատեւ գործօնը՝ ի վերջոյ դպրոցն է, հայ դպրոցը՝ հայ լեզուի, հայ պատմական աւանդների, հայ գրականութեան, հայ մտքի զարգացման հաստատուն պատուանդանը: Դպրոցը՝ այն անփոխարինելի հնոցն է, ուր կռում ու կոփւում են ազատութեան, խաւարամտութեան դէմ պայքարող ոյժերը:

Եւ ահա՛ 18րդ դարի վերջերքին եւ 19րդ դարի սկիզբներին երկու հայ մեծ դէմքեր, երկու ազգանուէր ականաւոր հայ գործիչներ գրեթէ միաժամանակ յղանում են դպրոց հիմնելու միտքը: Դպրոց, որ ունենար յարատեւ կեանք եւ ուր կրթական գործը դրուած լինէր լուրջ հիմունքների վրայ համաձայն դարու լուսաւոր գաղափարների:

*Մէկը՝ հեռաւոր հիւսիսում՝* Մոսկուայում, *միւսը՝ Անդրկովկասի սրտում, Վրաստանի մայրաքաղաք* Թիֆլիսում: *Երկուսն էլ պարսկական տիրապետութեան սահմաններից դուրս, ռուս պետութեան հովանու տակ:*

*Առաջինը՝* կոմս Յովհաննէս Ղազարեանն Լազարեանն էր, *Լազարեան հոյակապ տոհմի ամենաշողշողուն ներկայացուցիչը, միւսը՝ Թիֆլիսի առաջնորդ* Ներսէս արքեպիսկոպոս Աշտարակեցին, *հետագայում մեծահամբաւ կաթողիկոսը:*

*Լազարեան ճեմարանի հիմերը դրուեց* 1815 *թ., իսկ Ներսիսեան դպրոցինը՝* 1824 *թ.:*

*Այս երկու դպրոցները եղան մի մի կրթական հնոցներ, մի մի լուսատու ջահեր, որոնց ճառագայթները թափանցեցին Արեւելեան Հայաստանի ամենախուլ անկիւնները, եղան ռուսահայութեան մտաւոր զարգացման, մշակութային կեանքի յառաջադիմութեան մեծագոյն ազդակները:*

*Այս դպրոցները եղան առաջինները, որոնք ուսումն ու կրթութիւնը աշխարհականացրին, դրին մանկավարժական հիմունքների վրայ եւ առաջնորդուեցին եւրոպական յառաջադիմութեան լուսաւոր գաղափարներով:*

*Ահա՛, օրինակ, թէ ի՞նչ կարծիք ունէր Լազարեաններից մէկը՝* Խաչատուր Լազարեանը *դպրոցական ուսման մէջ կիրառելիք*

մանկավարժական մեթոդների մասին, այդ օրերին․

1811 թ․ իր մի նամակի մէջ, ուղղուած Եփրեմ կաթողիկոսին, նա գրել էր․

«Դպրոցում ուսուցումը պիտի լինի համեստ թարց (առանց) խիք ցաւման, բարկութեան եւ գանից պատժոյ հմտեցուցանել, զի բարկութիւն, սպառնալիօք ահացուցանելն եւ խիստ պատժելն բարբարոսական է գործ, միշտ խռովեցուցիչ եւ յուսահատեցուցիչ աշակերտի . . . [6]»:

Ներսիսեան դպրոցի պատմութեան երկու ականաւոր հեղինակները՝ Ա․ Երիցեան եւ Ստ․ Մալխասեանը շատ հիմնաւոր ու շատ ցայտուն կերպով ներկայացրել են Ներսիսեան դպրոցի կատարած մշակութային հսկայ դերը մեր ազգային-հասարակական կեանքի զարգացման եւ յառաջադիմութեան համար:

Լազարեան ճեմարանը, դժբախտաբար, չի ունեցել իր ականաւոր պատմիչներն կամ պատմիչը:

Մենք փորձում ենք մեր ներկայ աշխատասիրութեան երկրորդ մասում այդ բացը լրացնել մեր շատ համեստ ուժերով եւ չափազանց աննպաստ պայմաններում: Ճեմարանի պատմութիւնը՝ որ ընդգրկում է 103 տարուայ մի ժամանակաշրջան, անշուշտ կը պարզի նրա կատարած անգնահատելի դերը հայ ազգային-հասարակական ու մշակու-

[6] Լէօ, «Պատմութիւն Երեւանի թեմ․ դպրոցի», էջ 92:

*թային կեանքի մէջ. բայց մինչ այդ, քանի որ խօսքը հայ դպրոցների նշանակութեան, եւ նրանց տարած պայքարի մասին է 19րդ դարի սկզբներին հայ կեանքում իշխող տգիտութեան դէմ, հարկ ենք համարում առաջ բերել մի երկու վկայութիւն, Լազարեան ճեմարանի մասին:*

Գէորգ Բանանեանը *Լազարեան ճեմարանի 50ամեակին խօսած իր ճառի մէջ*[7] *հակիրճ կերպով եւ շատ ընդհանուր գծերով պարզում է ճեմարանի նշանակութիւնը հայ մտաւոր սերունդի կրթութեան գործում:*

*«Ռուսաստանի կենդրոնում, ասում է նա, Հայերի համար ծնունդ առած դպրոցի համբաւը տարածուեց ո՛չ միայն լայնածաւալ Ռուսաստանի բոլոր ծայրերը, այլ եւ նրա սահմաններից դուրս՝ զանազան երկիրներում բնակութիւն հաստատած հայերի մէջ: Պարսկաստանի Հայերը, Ասիայի Թուրքական գաւառների եւ նոյն իսկ հեռաւոր Հնդկաստանի հայերը սկսեցին նայիլ ճեմարանի վրայ որպէս լաւագոյն կրթական հաստատութեան վրայ իրենց երեխաների համար: Ճեմարանը դարձաւ մի տեսակ բարձրագոյն դպրոցական կենդրոն Ռուսաստանի զանազան քաղաքների եւ Ասիայի զանազան երկիրների համար: Ամեն կողմից սկսեցին գալ դէպի այդ կենդրոնը հայ երիտասարդ ույժեր եւ ստանալով նրա մէջ իրենց մտաւոր ու բարոյական վե-*

---

[7] *Տե՛ս այդ ճառի էջ 21:*

րածնութիւնը եւրոպական կրթութեան ազդեցութեան տակ, տարածեցին այնուհետեւ նրա սերմերը այն բոլոր վայրերում, ուր Ռուսաց յաղթական զէնքը գործեց: Հայ ընիկները ո՛չ միայն Կովկասի եւ Անդրկովկասի ամենահեռաւոր տեղերից, այլ եւ Սպահանից, Կալկաթայից, Էրզրումից եւ նոյն իսկ Պոլսից շտապում են օգտուելու կրթութեան բարիքներից իրենց երեխաների համար, այն կրթական հաստատութեան մէջ, որը ծնունդ է առել Լազարեան տոհմի առատաձեռն բարեգործութեամբ: Ճեմարանի ուսումնական եւ դաստիարակչական գործի յաջող զարգացումը միաժամանակ սկսում է գրաւել նաեւ ռուս երեխաներին: Եւ Ճեմարանը այս ուղղութեամբ էլ լրացնում է մի որոշ չափով ռուս դպրոցական հաստատութիւնների պակասը»:

Անդրկովկասի քաղաքակրթութեան գործում պատկառելի դեր է կատարել Լազարեան Ճեմարանը, վկայում է Լ. Մանուէլեանը «Ռուսահայ գրականութեան պատմութեան» մէջ: — «Դորպատի նման մի մտաւոր կենդրոն էր Լազարեան Ճեմարանը, ուր տեղ 40ական Թուականներին Թագաւորում էր «հայկական ոգին» եւ մշակւում էր աշխարհիկ լեզուն»: «Լազարեան Ճեմարանն էր գրեթէ բացառապէս մատակարարում ընտիր ուսանողներ Դորպատի համալսարանին [8]»:

[8] Տե՛ս Լեւոն Մանուէլեան, Ռուսահայ գրականութեան պատմութիւն, Հատոր Ա, Բ, Գ եւ Դ, 1909:

*Լէօն իր* «Պատմութիւն Երեւանի թեմական դպրոցի» *մէջ, մատնանշում է Լազարեան ճեմարանի մի այլ մեծ ծառայութեան վրայ, որ նա կատարել է հայ դպրոցի եւ հայ մշակութային կեանքի մէջ.*

*«Եթէ մենք, Ռուսահայերս կարող ենք ցոյց տալ, որ 19րդ դարի համարեա երկրորդ տասնամեակից մեզանում սկսում են* դասագրքեր կազմել [9], *այս բանը մենք պարտական ենք այն հզօր դրդիչներին, որոնք հէնց այդ ժամանակներից էլ առաջ եկան մեր կեանքի մէջ: Յայտնի է, որ իրերի կարգի մէջ անխուսափելին է պահանջ եւ բաւարարութիւն: Առաջին հզօր պահանջը ծնեցնում էր* հայկական առաջին բարեկարգ դպրոցը — Լազարեան Ճեմարանը: *Պահանջ առաջադրելու հետ նա կարողութիւն ունէր եւ բաւարարութիւն տալու այդ պահանջին, քանի որ ապահովուած դպրոց էր, քանի որ նրան կեանք տուած եւ նրան կառավարող մեկենասները, շնորհիւ հէնց իրանց մեծ հարստութիւնների եւ իշխանական ձգտումների,* մեծ ոյժ էին հանդիսանում հայութեան համար թէ քաղաքական եւ թէ մտաւոր ասպարէզներում: *Լազարեանների տունը, անկասկած, մի խոշոր կուլտուրական կենտրոն էր մանաւանդ այն ժամանակ, երբ հայութիւնը խորասու–*

---

[9] *Մեր խօսքը, ասում է Լէօն ծանօթութեան մէջ, նոր դասագրքերի մասին է եւ մենք նկատի չունենք հին աւանդական դասագրքերը, Այբբենարան, Սաղմոս եւայլն»:*

*զուած էր տգիտութեան խաւարի մէջ։ Լազարեան ճեմարանը ուսում էր տալիս հայ երեխաներին եւ այդ գործը հեշտացնելու համար տալիս էր եւ* դասագրքեր, որոնք արդէն բոլոր հայ դպրոցներին էին հարկաւոր։ Մոսկվան, գլխաւորապէս շնորհիւ այդ հիմնարկութեան, դառնում է Ռուսահայերի մտաւոր կենտրոնը, ամենաառաջաւորը եւ ամենաեռանդունը ռուսահայ գաղութների մէջ, ուր համախմբւում է հայ մտաւորականութիւնը եւ հաստատւում է հայ գրականութեան եւ գիտութեան բարձր ներկայացուցչութիւնը։ — *Այս դերի մէջ Մոսկվան մնում է մինչեւ* 60*ական թուականների երկրորդ կէսը եւ այդ ժամանակամիջոցում էլ հայ դասագրքերի մեծագոյն մասը կապ ունէին ճեմարանի հետ թէ իբրեւ դասատուներ եւ թէ իբրեւ աշակերտներ*[10]»։

*Եթէ այս բոլորի վրայ աւելացնելու լինինք այն անժխտելի փաստը, որ Լազարեան ճեմարանն ու Լազարեանններն իրենց բեղուն բազմաճիւղ գործունէութեամբ եղան այն ամուր պատուանդանը, որի վրայ կառուցուեց* 50*ական–*60*ական թուականների մեր Վերածնունդի շքեղ շէնքը, — մենք, անշուշտ, արձանագրած կը լինենք մի պատմական ճշմարտութիւն, սակայն ո՛չ լրիւ, քանզի Լազարեան ճեմարանը այնուհետեւ էլ՝ իր գոյութեան երկրորդ յիսունամեակում,*

[10] *Տե՛ս Լէօ, «Երեւանի թեմ. դպր. պատմ.»,* էջ 227—228։

*շարունակել է իր մշակութային եւ հասարակական մեծ դերը կատարել բովանդակ հայութեան մէջ եւ հայութեան համար: Անհնարին է չափ ու կշիռ գտնել այն անսահման օգուտների, որ նա բերել է իր հարիւրամեայ գոյութեան ընթացքին:*

*Զնայած որ Լազարեան ճեմարանը* 1918 *թ. աշնանից սկսած գոյութիւն չունի, այսու հանդերձ մեր ազգային կեանքի բոլոր մարզերում դեռ այսօր էլ գործում են բազմաթիւ ճեմարանաւարտներ: Այն սերմերը, որ նա ցանել է առատօրէն հայ կեանքի, հայ մշակոյթի անդաստանում, տուել են ու տալիս են դեռ իրենց բազմարդիւն պտուղները:*

*Անկեղծ ու ջերմ յարգանքի, պատկառանքի ու երախտագիտութեան խօսք ունին ասելու ներկայ ու գալոց սերունդները Լազարեան շքեղ տոհմին ու Լազարեան ճեմարանին:*

*

*Նախ քան եզրափակելը մեր խօսքը այս համառօտ պատմական տեսութեան մէջ, պարզաբանենք մի խնդիր եւս, որ ժամանակին զբաղեցրել է հայ հասարակութեան միտքը եւ կարող է այսօր եւս յարուցել ու տարակուսանքների ու թիւր կարծիքների տեղիք տալ: Այդ խնդիրը հետեւեալն է.*

Ինչո՞ւ համար Լազարեաններն իրենց դպրոցի համար ընտրեցին Մոսկուան, որ այնքա՛ն հեռու էր հայկական շրջաններից

եւ ոչ թէ, օրինակ, Թիփլիսը կամ Էջմիածինը:

*Ժամանակին այս հարցումի պատասխանը տուել է Լազարեան Ճեմարանի տեսուչ Գէորգ Քանանեանը եւ վերջ տուել բոլոր տարակուսանքներին եւ առարկութիւններին, իսկ ժամանակն ու կեանքը եկան փայլուն կերպով ապացուցելու, որ Ճեմարանի հիմնադիրներն եղել են չափազանց իրատես ու հեռատես իրենց որոշման մէջ, եւ չեն սխալուել ընտրելով Մոսկուան որպէս վայր իրենց դպրոցի համար:*

*— «Կեանք տալով այս դպրոցին, ասել էր Գ. Քանանեանը վերը յիշուած իր ճառի մէջ Ճեմարանի 50ամեակի առթիւ (էջ 17—18), նրա հիմնադիր Յովհաննէս Լազարեանն ու նրա կազմակերպիչ Յովակիմ Լազարեանն ի նկատի ունէին թէեւ մի համեստ, բայց շատ պարզ ու յստակ կերպով գիտակցուած ու միանգամայն արդիւնաշատ նպատակ: Կամենալով բաւարարել Ռուսաստանում ապրող հայ ազգաբնակութեան կենսական պահանջին, նրանք ուզում էին նուիրել իրենց հայրենակիցներին մի դպրոց, ուր նրանց երեխաները կարողանային ստանալ սկզբնական ընդհանուր կրթութիւն, որից յետոյ, ստանալով անհրաժեշտ մտաւոր զարգացում ու բարոյական դաստիարակութիւն, ի վիճակի լինէին ժամանակի ընթացքում լինել օգտաւէտ քաղաքացիներ հասարակութեան ու պետութեան համար: Պէտք է նկատել նաեւ,*

որ տեղի ընտրութեան խնդրում իրենց դպրոցական հաստատութեան համար, նրանք առաջնորդուել են նոյնքան ողջամիտ ու ճշմարիտ մտքով: Մոսկուան գերադասելի էր կայսրութեան բոլոր միւս վայրերից: Մոսկուան, ներկայացնելով բազում նպաստաւոր պայմաններ, հաւասարապէս բաւարարում էր ծնունդ առնող դպրոցի պահանջներին: Հակառակ այն կարծիքի, որ սխալ էր համարում հիմնադիրների միտքը՝ հիմնել դպրոց հեռու հայ ժողովրդի բնակավայրերից, մենք ընդհակառակը համարում ենք վայրի ընտրութեան մէջ ամենաերջանիկ ու էական պայմանն նրա կայունութեան ու բարգաւաճման: Եթէ այդ պահանջը ներկայ ժամանակներում կարող էր ունենալ բանաւոր հիմունքներ, նա բոլորովին ընդունելի չէ մի կրթական հաստատութեան համար 50 տարի առաջուայ պայմաններում: Եթէ չխօսենք այն հանգամանքի մասին, որ հիմնադիրներն ու հետագայ բոլոր հոգաբարձուները Լազարեան տոհմից անմիջականօրէն մասնակցում էին դպրոցի ընթացիկ կեանքի կարգաւորման մէջ, մի մասնակցութիւն, որ կենարար կերպով ազդում էր նրա յաջող ընթացքի վրայ, կային բազմաթիւ մղիչ պատճառներ ընտրելու Մոսկուան:

«Այն քաղաքները, ուր Հայերը կազմում էին չօչափելի թիւ, գտնւում էին Կովկասում եւ Անդրկովկասում, ուր այդ ժամանակ տիրում էր կատարեալ քաօսական վի-

ճակ, մի հանգամանք, որ չէր կարող նպաստել դպրոցի կանոնաւոր զարգացման ու բարգաւաճման: Մինչդեռ Մոսկուան միանգամից բաւարարում էր դպրոցի բոլոր պահանջներին: Այստեղ վաղուց ի վեր գոյութիւն ունէր հայկական գաղութ. Մոսկուան, որպէս առեւտրական կենտրոն, անընդհատ գրաւում էր նորանոր հայ եկւորներ: Բաց ի այդ, որպէս ռուսական կրթական կենտրոն, իր հոչակաւոր համալսարանով, տրամադրում էր բոլոր այն միջոցներն ու առաւելութիւնները, որոնք անհրաժիշտ են ամէն մի դպրոցի յաջող զարգացման համար: Լազարեան ճեմարանը Մոսկուայում ընձեռնում էր իր սաներին նաեւ մի այլ անգնահատելի պայման՝ ծանօթացնում էր նրանց լեզուի, կեանքի ու բարքերի հետ այն հասարակութեան ու պետութեան, որի քաղաքացիները նրանք պիտի լինէին ապագայում»:

Թէեւ այս մէջբերումի մէջ Գ. Քանանեանը սպառիչ կերպով լուծում է խնդիրը, այսու հանդերձ նրա բերած նկատառումները չեշտուած են շատ ընդհանուր գծերով եւ բացի այդ նկատի չի առնուած հիւս. Կովկասում, Կովկասում եւ Անդրկովկասում բացուած հայ դպրոցների կեանքն ու վիճակը:

Եթէ մի վայրկեան նկատի առնելու լինենք նաեւ այդ հանգամանքները, չենք կարող չընդունել, որ 19րդ դարի ոչ միայն սկզբում, այլ եւ հետագայում, աւելի ուշ ժամանակներում գոյութիւն չունէին հայ կեանքի

մէջ նպաստաւոր պայմաններ մի դպրոցի յաջող զարգացման ու անխախտ յառաջադիմութեան համար։

Ամենից առաջ, երբ 1815 թ. Լազարեան ճեմարանի հիմը դրուեց, Անդրկովկասն գտնւում էր Պարսից իշխանութեան ներքոյ, որ արդէն ինքնին անհնարին էր դարձնում կանոնաւոր կրթական գործ վարելը։

Վրաստանը, ճիշտ է, որ 1801 թ. միացուեց Ռուսաստանին, այսուհանդերձ այնտեղ էլ դեռ եւս չկար որեւէ ապահովութիւն։

Անգամ Ռուսաստանի հարաւում 19րդ դարի առաջի կէսին հիմնուած դպրոցները չունեցան այն յարատեւութիւնն ու յաջողութիւնը, որ ունեցաւ Լազարեան ճեմարանը։

Ի՞նչ վիճակում էին եւ ի՞նչ ճակատագիր ունեցան, օրինակ, Նոր-Նախիջեւանի դպրոցը, որ հիմնել էր Յովսէփ արքեպ. Արղութեանը եւ հետագայում Գաբրիէլ քահ. Պատկանեանի ուսումնարանը նոյն Նոր-Նախիջեւանում, բացուած 40ական թուականներին. կամ Ս. Խաչի տպարանն ու դպրոցը նոյն Յովս. արքեպ. Արղութեանի կողմից ծնունդ առած. կամ Աստրախանի Աղաբաբեանների դպրոցը, բացուած 19րդ դարի առաջին տասնամեակում եւ, վերջապէս, Թէոդոսիայի Խալիպեան ուսումնարանը, որի հիմը դրել էր Գաբրիէլ արքեպ. Այվազեանը 1858 թ. եւ որը փակուեց արդէն 1871 թուին...։

*Ի հարկէ, չի կարելի ժխտել, որ այդ դպրոցները ժամանակին բերել են մեծ օգուտներ հայ մատաղ սերունդի կրթութեան գործին եւ առ հասարակ մեր ազգային մշակոյթին, բայց եւ չի կարելի չխոստովանել, որ նրանք չարդարացրին այն բոլոր յոյսերն եւ ակնկալութիւնները, որոնք կապուած էին այդ դպրոցների հետ եւ որ նրանց կրթական դերը եղաւ չատ սահմանափակ:*

*Այնուհետեւ գալով Անդրկովկասի մեր թեմական դպրոցներին, մենք կը տեսնենք, որ նրանք եւս չափազանց աննախանձելի վիճակ են ունեցել:*

*Աղ. Երիցեանն ու Ստ. Մալխասեանը իրենց Ներսիսեան դպրոցի պատմութեամբ եւ Լէօն Երեւանի թեմական դպրոցի պատմութեամբ ցուցադրում են նրանց կեանքի մի պատկեր, որ խորապէս յուզիչ է...: Ի՛նչ տառապանքների, ի՛նչ զրկանքների, ի՛նչ ներքին ու արտաքին ցնցումների են ենթարկուած եղել նրանք իրենց ծննդեան օրից իսկ սկսած:*

*Ներքին անվերջ խռովութիւնները արգելք են եղել յարատեւ բնականոն կրթական կեանք ստեղծելուն այդ դպրոցներում...: Մի ներքին տագնապ յաջորդել է միւսին...:*

*Հոգաբարձութիւնների ու տեսուչների չարունակական ընդհարումներն ու պայքարները, որոնց հետեւանքով կրթական գործի պատասխանատու վարիչ–տեսուչները արագ–*

օրէն փոփոխուել են, հոգեւոր իշխանութեան եւ ապա ռուս բիւրոկրատիայի անտեղի ու բռնազբօսիկ միջամտութիւնները, աշակերտութեան ըմբոստութիւնները տեսուչների եւ ուսուցիչների դէմ՝ անընդհատ խախտել են դպրոցի խաղաղ կեանքը, իսկ երբեմն էլ պատճառ եղել դպրոցի փակման տարիների ընթացքում . . . :

Լէօի կարծիքով մեր Թեմական դպրոցների տխուր վիճակի գլխաւոր պատճառը եղել է այն հանգամանքը, որ նրանք ծնունդ են եղել 1836 թ. «Պոլոժենիայի», իսկ այդ Պոլոժենեան «բացարձակապէս հոգեւորականութեան ձեռքն էր տուել Ռուսահայոց ազգային դատախարակութիւնը եւ հայ հոգեւորականութիւնը հարիւրաւոր փաստերով ցոյց էր տալիս թէ որքան անօգնական եւ անկարող է նա այդ դերի մէջ»:

Արդ Լազարեանները, հիմնելով իրենց դպրոցը Մոսկուայում, ցանկացել էին խուսափել հէնց այդ հոգեւորականութեան միջամտութիւնից: Նրանք չատ լաւ ծանօթ էին[11], թէ ինչ է կատարւում Ս. Էջմիածնում 18րդ դարի վերջերքին, ինչքա՜ն անա–

11 Ցայտնի է, որ Լազարեանները սերտ կապ էին պահպանում Ս. Էջմիածնի հետ եւ դանւում էին մշտական Թղթակցութեան մէջ: Այդ Թղթակցութիւնից երեւում է, որ նրանք լաւատեղեակ էին Ս. Էջմիածնի գործերի ու վիճակի մասին: Նրանց նամակների միայն մի փոքր մասն է, որ հրատարակուած են Ա. Երիցեանի «Կովկասահայք»ում եւ Գիւտ աւ. քահ. Աղանեանի «Դիւան Հայոց պատմութեան» մէջ:

պահով էր Ս. Էջմիածնի վիճակը, նրանք գտնում էին Դաւիթ–Դանիէլեան կաթողիկոսների կռուի տխուր օրերի ծանր տպաւորութեան տակ եւ հոգեպէս տառապում էին, տեսնելով թէ որքա՜ն մեծ վնասներ է կրում ազգն ու իրենց պաշտած հայ եկեղեցին....:

Եւ նրանք կամեցան միանգամայն զերծ պահել իրենց դպրոցը ամէն կողմնակի միջամտութիւնից, կամեցան միշտ իրենց աչքի առաջ ունենալ այն, վարել դպրոցական գործը իրենց հասկացողութեամբ, որը շատ աւելի բարձր էր, քան այն ժամանակի հայ կղերի կրթական գործի ըմբռնումները: Եւ նրանք, իրօք, դրին Ճեմարանի կրթական գործը այնպիսի բարձր մակարդակի վրայ, որ դարձաւ մի առաջնակարգ դպրոց նոյն իսկ ռուսական դպրոցների շարքում. Նրանք կամեցան ապահովել նրա իրաւական վիճակը, այնպէս, որ նա զերծ մնայ պատահականութիւններից ու ամէն կարգի ցնցումներից: Այս նպատակով տասնեակ տարիների ընթացքում նրանք մեծ ջանք թափեցին, մինչեւ որ հասան իրենց նպատակին ու տուին Ճեմարանին հաստատուն դպրոցական ծրագիր եւ վարչական կանոնագիր, հաստատուած կառավարական բարձրագոյն իշխանութեան կողմից. վերջապէս, նրանք կամեցան պահել ճեմարանը իրենց անմիջական հսկողութեան տակ, որպէս զի կարողանան միշտ վերահասու լինել նրա կարիքներին ու

*պահանջներին։ Եւ իրօք նրանք գուրգուրում ու խնամում էին ճեմարանը որպէս մայրը իր որդուն, եւ անընդհատ մեծ գումարներ էին նուիրաբերում ճեմարանին լրացնելու նրա պակասները, բաւարարելու նրա պահանջներին։ Ո՞ւմ կարող էին նրանք վստահել այդ խոշոր գումարները, եթէ ճեմարանը հիմնուած լինէր Կովկասում կամ Անդրկովկասում։*

*Զէ՛, Լազարեանները իրենց պայծառատեսութեան ու իրատեսութեան մէջ չէին վրիպել, ընտրելով Մոսկուան որպէս ճեմարանի վայր։* Եւ կեանքն ու պատմութիւնը լիովին արդարացրին այդ ընտրութիւնը։

---

# ԱՌԱՋԻՆ ՄԱՍ

*Ոչինչ այնպէս նշանաւոր առնէ զմարդ,*
*Որպէս առաքինութեանց հանդէս:*
*Թէ անմոռաց են առ մեզ Հայկ եւ Տիգրան*
*եւ Արամ,*
*Եւ Լազարեանցըն բարիք ո՛չ մոռացին յա-*
*ւիտեան:*

*Խալիպեան ուսումնարանի աշակերտ-*
*ների ձօնը 1865 թ. ճեմարանի 50ա-*
*մեակի առթիւ:*

## ԳԼՈՒԽ Ա.

## ԼԱԶԱՐԵԱՆ ՏՈՀՄԻ ՑԵՂԱՊԵՏ՝ ՂԱԶԱՐ ՆԱԶԱՐԵԱՆ ԼԱԶԱՐԵԱՆՑ

(1700—1782)

*Հայ ազգը կորցրեց իր անկախ պետականութիւնը 1393 թ. Ռուբինեանց հարստութեան անկումով:*

*Այնուհետեւ Հայաստանը բաժանուեց մի շարք մանր իշխանութիւնների, որոնցից շատերը մեծ նախանձախնդրութեամբ պահեցին ու պաշտպանեցին իրենց անկախ կամ կիսանկախ գոյութիւնը մինչեւ 18րդ դարը, բայց անզօր եղան բարձրանալու* համազգային պետականութիւն ստեղծելու անհրաժեշտութեան գաղափարին: *Կենդրոնախոյս*

ձգտումներն ու հակումները առաջ բերին նրանց միջեւ փոխադարձ հակառակութիւն ու թշնամութիւն, որոնց մէջ նրանք խապառ ջլատեցին ու քայքայեցին իրենց ֆիզիքական ու բարոյական ոյժերը․․․։

Կենտրոնական հակումների գերակայութիւնն եւ համազգային պետականութեան գաղափարի թուլութիւնը հայ իշխանաւորների մէջ եղել են նաեւ հնում՝ հայ նախարարների մէջ, որի հետեւանքով Հայաստանը յաճախ դարձել է ասպարեզ նրա թշնամիների համար արեւելքից եւ արեւմուտքից։ Հայաստանը այդ ժամանակներում աւերուել է ու մոխրակոյտի վերածուել․ բայց եւ այնպէս հայ ժողովրդի ո՛չ ստեղծագործ ոգին, ո՛չ էլ ազատատենչ ձգտումները երբեք չեն խորտակուել ի սպառ․ նա չարունակել է մի կողմից շէնացնել իր երկիրը, իսկ միւս կողմից մշակութային կոթողներ կանգնեցնել, սակայն պետականօրէն մնացել է կտորակուած ու ջլատուած։

Ինչո՞ւ․ ինչո՞ւմն է այս պատմական աւեղծուածի գաղտնիքը։

Նիկոլ Աղբալեան այսպէս է պարզաբանում այդ երեւոյթը[1]։

«Ցեղական կենցաղն ու մտայնութիւնը

---

[1] Պատմութիւն Հայոց գրականութեան, էջ 106։

շատ աւելի արմատացան ու զօրաւոր եղան քան *պետաչէն մղումը*։ Այս մղումի լիակատար զարգացման արգելք դարձան *երկրի կազմութիւնը*, որ դիւրութիւն չէր տալիս մերձաւոր շփումների եւ փոխազդեցութեան. *ինքնարաւ տնտեսութիւնը*, որ չէր ստեղծում տնտեսական զօրաւոր կախում երկրի տարբեր մարզերի միջեւ. *երկրի չուրջ ստեղծուած մեծ պետութիւնները*, որ մեծապէս գնահատում էին մեր լեռնաշխարհը իբրեւ ռազմական դիրք թշնամու դէմ եւ իբրեւ ապահով անցք դէպի հակառակորդի աշխարհը, ուստի եթէ չէին զօրում գրաւել երբեմն, սակայն միշտ քայքայում էին ներքին զօրացման ու միութեան ձգտումը»։

*Մատնանշուած բոլոր հանգամանքները ի զօրու են եղել նաեւ 18րդ դարում Արեւելեան Հայաստանում, ուր գոյութիւն ունէին մի չարք առանձին իշխանութիւններ Սիւնիքում, Ուտեաց աշխարհում, Գուգարքում, Գողթնում եւ մի չարք այլ գաւառներում*[2]։

*Այս իշխանութիւնները՝ մէկը միւսի ետեւից, ոչնչացան մահմեդական բռնակալների անողոք հարուածների տակ կամ զոհ գնացին իրենց փոխադարձ թշնամութեան*։

*Արեւելեան Հայաստանի այդ անկախ իշ–*

---

[2] *Տե՛ս՝ «Պատմութիւն Հայոց» Ջամչեանի, հատոր Գ*։

*խանաւորներից մէկն է եղել նաեւ* իշխան Մանուկ Լազարեանը:

«Սրա որդին էր — *պատմում է Մսեր Մսերեանը* — Ղազար. ի Ղազարայ ծնան Մանուկ եւ Սափար. ի Մանուկայ՝ Նազար (կամ Նազարէթ) եւ ի սմանէ միւս Ղազար (կամ Եղիազար), այն, որ Պետ եւ Գլուխ եկաց հռչակաւոր տոհմին Լազարեանց [3]»:

*Բայց ինչպէ՞ս պատահեց, որ Լազարեան տոհմի այս շառաւիղը եկաւ Ռուսաստան, ստացաւ Եկատերինա Բ. կայսրուհուց ռուսաց ազնուականութեան իրաւունք եւ ապա հիմք դրեց Լազարեան հռչակաւոր տոհմի երկու սերունդներին, որոնց ներկայացուցիչները ի յայտ բերեցին փայլուն գործունէութիւն յօգուտ իրենց խեղճ Հայրենիքին եւ հզօր Ռուսաստանին:*

*Այդ մասին պատմուած է յիշեալ կայսրուհու 1774 թ. մայիս 20ի բարձրագոյն հրովարտակի մէջ, որը գրեթէ ամբողջութեամբ առաջ ենք բերում, քաղելով այն Մ. Մսերեանցի «Յիշատակարան»ից:*

...«Հաւաստի լեալ է մեզ, զի որ զտանի

---

[3] *Տե՛ս էջ 2 «Յիշատակարան կենաց եւ գործոց մեծանուն պայազատաց Լազարեան տոհմի: Շարադրեալ ի Մսերայ մագիստրոսէ եւ ապետէ Գրիգորեան Մսերեանց: Ի Մոսկուա ի տպարանի Արեւելեան լեզուաց ճեմարանի Տեարց Լազարեանց:* 1856. *ՌՅԵ: էջ* 60 + 109 + 159 = 328:

արդէն ի Մերում Կայսրութեան՝ Ղազար (Նազարեան) Լազարեանց ընդ որդւոց իւրոց, է՛ յԱզնուական սերնդոց ի Հայս. որում վկայեն եւ մատուցեալքն առ ի նմանէ վաւերականն վկայագիրք տուեալք յԱրքայէն Վրաց ի Թէյմուրասայ[4] եւ ի ծայրագոյն Պատրիարգէն Հայոց. եւ զի նախահաւ նոցա Մանուկ Լազարեան, յետ սպառելոյ ի Հայաստան Արքայական զարմի, եւ յետ բաժանման նոյն թագաւորութեան ի մասունս, է՛ր մի ի Պայազատացն՝ որք տիրէին յառանձին առանձին գաւառս: Շահաբաս Առաջին (արքայ Պարսից)[5] ոչինչ օգտեալ յերկարատեւ յանյաջող պատերազմացն՝ զորս մղէր ընդդէմ նոցա, հարկեցաւ զիջանիլ ի հաշտութիւն, եւ սկսաւ վարիլ ընդ նոսա շողոմիւք եւ քաղցրութեամբ, այնպէս՝ զի բազումք յականաւոր եւ ի մեծահարուստ գերդաստանաց յօժարեցան ունել բնակութիւն ի մայրաքաղաքի անդ նորա (այն է յԱսպահան), ընկալեալ զազատութիւն յամենայն զինուորականն ծառայութեանց: Իսկ Շահաբաս ի մտի եդեալ զոմանս ի նոցանէ յինքն յանկուցանել, շնորհեաց նոցա քաղաքական ինչ աստի–

---

[4] *«Թուի՝ թէ Թամրազն իցէ սա՝ Հայր Մեծի իշխանին Վրաց Հերակլեայ. որ թագաւորեաց յամէն* 1724—1762»: *Մ. Մսերեանց:*

[5] *Շահաբաս Ա.* — 1586—1629. *Շահաբաս Բ.* — 1642—1666. *Նադիր Շահ* — 1736—1747:

ճանս՝ առ ի պատիւ եւեթ: Ի թիւ Աստիճա-նաւորացն այնոցիկ՝ էր եւ նա ինքն Մանուկ Լազարեանն: Է՛ր նորա որդի մի Լազար անուն, որ յաւուրս Երկրորդին Շահաբասայ կարգեցաւ վերատեսուչ փողերանոցի եւ Գանձապետ Արքունի: Ի նմանէ ծնան Մանուկ եւ Սափար. ի Մանուկայ՝ Նազարէթ. եւ ի սմանէ միւս Լազար, որ մինչ էրն ի Պարսս, ծանօթ գոլով Արքունի Դրանն կատարեաց զբազում պաշտամունս յանձնարարութեամբ Նատիրշահայ. կացուցաւ եւս Հրամանատար կամ Պետ ի վերայ ժողովըրդեան Ջուղայ քաղաքի: Այլ ապա ի պատճառս աղմկացն յուզելոց ի Պարսս՝ ել անտի, եւ եմուտ ի սահմանս Կայսերութեան մերոյ հանդերձ որդւովք եւ ստացուածովք իւրովք. ուր եւ կանգնեաց զերեւելի գործարանս, եւ եցոյց մեզ հանապազ ընդ որդւոց իւրոց բազմապիսի ծառայութիւնս: Որոյ վասն շնորհեցաք Մեք նմին Լազարայ Լազարեանց եւ որդւոց նորա զիրաւունս Ազնուականութեան Ռուսաց, ի 20 մայիսի 1774 ամի [6]»:

*Այսպիսով Լազարեանների տոհմագրութիւնը ներկայացնում է հետեւեալ պատկերը.*

---

[6] *Տե՛ս Մ. Մսերեանցի «Յիշատակարանի» մաս Բ., էջ 1—2. ուր բերուած են թարգմանութիւնները բոլոր բարձրագոյն հրովարտակների, տրուած Լազարեան տոհմի անդամներին:*

Իշխան Մանուկ Ա. Եղիազարեան (*Լազարեան*),
*նահապետ Լազարեան տոհմի։*
(*Տարագրուել է Հայաստանից Սպահան Շահ-Աբբաս Ա. օրով*)

Ղազար (Լազար) Առաջին
(*Շահ-Աբբաս Բ.-ի օրով վերատեսուչ արքունի փողերանոցի եւ գանձապետ*)

Մանուկ Բ. եւ Սափար

Նազար կամ Նազարէթ

Ղազար կամ Լազար Բ.
(*Յետապետ Լազարեան տոհմի։ Նադիր Շահի օրով Ն. Ջուղայի Պետ կամ Տեղակալ։ Նադիրշահի մահից յետոյ տարագրուեց Ռուսաստան* 1749 *կամ* 1750 *Թ.*)

| | | | |
|---|---|---|---|
| Յովհաննէս, (1735—1801) | Մինաս, (1737—1809) | Խաչատուր *եւ* (1741—1774) | Յովակիմ (1743—1826) |

| | | | |
|---|---|---|---|
| Յարութիւն, (1791—1813) | Յովհաննէս, (1786—1858) | Ղազար, — | Խաչատուր (1789—1871) |

Մանուկն Յովհաննէս, *վերջին շառաւիղ*
(1844—1850)

*Մանուկ Լազարեանի, տոհմի նահապետի, տարագրութեան մասին Պարսկաստան հաղորդում է նաեւ ռուս պատմաբան Սերգէյ Գլինկան մատնանշելով միաժամանակ այն յարգանքի եւ հեղինակութեան*

*վրայ, որ նա վայելել էր իր հայրենակիցների կողմից տարագրութեան ընթացքին եւ Ն. Ջուղայում.*

«Շահ-Աբաս ի նմանութիւն Ջուղայոյն հայոց՝ զաւանն շինեալ յիւրմէ առ երի Ասպահանայ անուանեաց «Նոր Ջուղայ»։ Յամին 1605 Մանուկ Լազարեանց զուարճացեալ յուսով վերածնութեան Հայաստանի, նախ առաջին ի Հին Ջուղայոյ անապարեաց ի Նորն. եւ հորդեաց ճանապարհ փութալոյ անդր իւրոցն հայրենակցաց, որք ի յարգանս ունէին զնա՝ ո՛չ վասն իշխանական աստիճանի, եւ ո՛չ վասն հարստութեանն, այլ միայն վասն անձնանուէր փութոյն ի կազդուրել եւ ի քաջալերել զվհատեալ ոգիս որդւոցն Հայաստանի։ Վեհանձն ոգիք անպատում զգան երկրութիւն ի բերկրեցուցանելն զիւրեանց չարչարակիցս [7]»։

*Եկատերինա Կայսրուհու յիշեալ հրովարտակի մէջ միայն հարեւանցօրէն է ակնարկ արուած Լազարեանի Ռուսաստան փոխադրուելու պատճառի վրայ՝ «այլ այս ի պատճառս աղմկացն յուզելոց ի Պարս»։ Բայց յայտնի է, որ հէնց Նադիր Շահի կենդանութեան ժամանակ Ն. Ջուղայի հայերը*

*[7] Այս հատուածը թարգմանաբար բերել է Մ. Մսերեանցը իր «Յիշատակարան»ում (էջ 92, Մասն Գ), քաղելով Սերգէյ Գլինկայի յայտնի հեղինակութիւնից՝ «Պատմութիւն Հայոց», տպագրուած 1832 թ., որը, սպառուած լինելով վաղուց, մենք չունէինք մեր ձեռքի տակ.*

*ենթարկուել են անսահման կեղեքումների ու խժդժութիւնների, իսկ նրա մահից յետոյ Պարսկաստանում տեղի են ունեցել մեծ խռո-վութիւններ, ստեղծուել է մի կատարեալ քաոս, միանգամայն անհանդուրժելի մա-նաւորապէս հայերի համար:*

*Նոր–Ջուղայեցիների այդ օրերին կրած տառապանքների մանրամասն նկարագրու-թիւնը տալիս է Նոր Ջուղայի համբաւաւոր պատմիչ Յարութիւն Տէր–Յովհանեանցը. մի փոքրիկ հատուած նրա աշխատասիրու-թիւնից, գաղափար տալու համար ստեղ-ծուած կացութեան մասին:*

«Նադէրշահը ունենալով բնաւորութիւն յոյժ ընչասէր եւ ագահ, եւ յաղագս զօրա-կանացն հարկ լինելով նմա պատրաստել զռոճիկս, ջուղայաքնակ վաճառականացն Հայոց հասոյց զմեծամեծ տառապանս, ստա-նալով ի նոցանէ բազում գումարս:

···«Արկանէ հարկս ի վերայ նոր Ջու-ղայեցւոցն ի թուոյն 1739 մինչեւ ց1747, պահանջելով ամ ըստ ամէ անընդհատ ո՛չ պակաս քան զտասն հազար թումանս մինչեւ ց45·000 թումանս՝ զորս յամի միում միայն···: Երկու ամօք նախ քան զմեռա-նիլն իւր յամի 1745 էարկ ի վերայ Ջուղայեց-ւոց զտուգանս 65·000 Նադիրի [8] եւ յանձն

[8] *Պատմիչը ինքն եւս չգիտէ, թէ «Նադիրին» թուման էր թէ մի այլ արծաթադրամ, քանզի ա-սում է՝ «չիք նշանակութիւն յօրինակ հրովարտակին եւ ի ստացագիրն»:*

արար Մահմադղուզաբէկ ախոռապետի իւրում ստանալ զայն. որոյ եկեալ ի Ջուղայ բազում տանջանօք ստացաւ յընթացս միամսեայ ժամանակի զմեծաքանակ զայն գումար ի իշխանաց (Հայոց) [9]»:

*Այս իշխանների թւումն էր եւ մեր Խօջա Աղազարը կամ Ղազարը:*

*Եւ ահա՛ Խօջա Ղազար Լազարեանցը. որ առաջ ազատուելու համար շատ աւելի անախորժ ու վատթար անակնկալներից, մանաւանդ որ Նադիրշահի սպանութիւնից յետոյ ստեղծուեց միանգամայն խառնաշփոթ կացութիւն, հաւաքում է իր ընտանիքը, վերցնում իր հետ խոշոր դրամագլուխ եւ թանկագին հազուագիւտ իրեր ու գնում Ռուսաստան 1749 կամ 1750 թուին, ձգելով իր սեպհական ապարանքն ու կալուածները* [10]:

---

[9] *Տես էջ* 250, *Հ. Ա. յիշեալ հեղինակի «Պատմութիւն Նոր Ջուղայու որ յԱսպահան»: Ն. Ջուղա, Տպարան Ամենափրկչեան Ս. Վանաց:* 1880, *Հ. Ա.* 1881, *Թ. Հ. Բ.:*

[10] *Լէօն Խօջա Ղազար Լազարեանի գաղթի թուականը դէպի Ռուսաստան համարում է* 1747 *թ., իսկ Մ. Մսերեանը՝* 1749 *կամ* 1750 *թ. յենուելով հետեւեալ հանգամանքների վրայ. նախ, որ տեղափոխութիւնը կատարուել է Նադիրշահի մահից յետոյ, իսկ այդ շահը սպանուել է* 1747 *թ., երկրորդ, որ գաղթի ժամանակ Խօջա Ղազարի կրտսեր որդին՝ Յովակիմը* 6 *տարեկան է եղել, իսկ սա ծնուել է* 1743 *թ.: Մենք, համարելով Մ. Մսերեանցի տուեալները աւելի հաւանական ու ճշմարտութեան մօտ, ընդունել ենք նոյնպէս* 1749 *կամ* 1750 *թ.:*

*Երկու խօսք նաեւ Լազարեանների տան մասին Սպահանում ու Ն. Ջուղայում:*

*Նոր Ջուղայի պատմիչը իր յիշեալ աշխատասիրութեան մէջ (Հ. Ա., էջ* 107*) հաղորդում է, որ*

Խօջա Ղազար Լազարեանը նախ քան Ռուսաստան տարագրուելը ունեցել է չորս տղայ զաւակ՝ Յովհաննէս, ծն. 1735 թ., Մինաս, ծն. 1737 թ., Խաչատուր, ծն. 1741 թ. եւ Յովակիմ, ծն. 1743 թ. ամէնքն էլ ծնուած Ն. Ջուղայում:

Խօջա Ղազարի Ռուսաստան փոխադրու-

---

Մանուկ Լազարեանցը 1605 թ. Հին Ջուղայից փոխադրուելով Սպահան, բնակութիւն է հաստատում Սպահանի Շամսապատ թաղում, ապա 51 տարի անց, Լազարեանները փոխադրւում են Ն. Ջուղայ եւ Դաշտ թաղամասում շինում են նոր տուն: Այս տունը գոյութիւն է ունեցել մինչեւ 1880 թ. եւ յայտնի Նազարէթեանց տուն անունով՝ «յանուն Նազարէթ որդւոյ Աղազարի թոռին Մանուկայ: Տունն նոցա կայ այժմ (այսինքն՝ երբ հեղինակը գրելիս է եղել իր պատմութիւնը 1880 թ.) ի ձեռս ժառանգացն Զաքարիա Կրէտեանց, որոյ մեծութիւնն եւ պայքանիցն վայելչութիւն վկայէ պայծառութեան նոյն տոհմի: Կից այնմիկ տան՝ տուն որ կայ այժմ ի ձեռս Տէր Մարտիրոս քահանայի Տէր-Յովակիմեան, եղեալ կանանոց նոցա, տուն Կիրակոսի Տէր-Յարութիւնեան՝ ասպատանոց (ախոռ ձիերի համար) նոցին, եւ տունն Մկրտչի Ծատուր Անդրէասեան՝ տեղի բնակութեան ծառայից նոցուն»:

Այս առթիւ յիշատակենք նաեւ մեր հայրենակից Մուշեղ Սարգսեանի (այժմ հանգուցեալ) տուած տեղեկութիւնները, քաղելով նրա ձեռագիրներից, մահուանից յետոյ մեզ հասած:

Պ. Մուշեղ Սարգսեանը, մասնագիտական կրթութեամբ հմուտ գիւղատնտես, իր Ն. Ջուղա եղած ժամանակ հետաքրքրուել է Լազարեան տոհմի պատմութեամբ, այցելել է վերը յիշատակուած տները, լուսանկարել նրանց ներսի մասերը, մասնանշել շէնքի մէջ տեղի ունեցած փոփոխութիւնները: Ի միջի այլոց բացատրում է Դաշտ թաղամասի անուան ծագումը: Այդ թաղամասը, ասում է նա, Դաշտ է կոչւում, որովհետեւ այնտեղ են բնակութիւն հաստատել Ներքին-Ագուլիսից տարագրուած բնակիչները՝ զօկերը, խսկ յայտնի է, որ Ներքին Ագուլիսին տեղական բնակիչները Դաշտ անունն էին տալիս:

*թեան հանգամանքները Ն. Ջուղայի յիշեալ պատմիչ Յարութիւն Տէր-Յովհանեանը հետեւեալ կերպով է նկարագրում.*

«Այլ մինչ ի ժամանակս թագաւորութեանն Նադիրշահի զօրացաւ բռնակալութիւնն ի Ջուղայ, եւ վաճառականք Ջուղայու մատնեալ տուժից եւ տուգանաց անհանգիստ լինէին. իշխանապետն Աղազար (Ղազար) խոհական մտախոհութեամբ յամի 1743 զանդրանիկ որդին իւր աղայ Յովհաննէս առաքեաց ի Ռուսաստան զի թերեւս եթէ ի դէպ համարեսցէ նա հաստատել յայնմ օտար սահմանի զբնակութիւնս իւրեանց, տեղափոխեսցին ի Ջուղայոյ՝ յաղագս զերծ մնալոյ յանկոպար հարստահարութեանցն այնր ժամանակի» (էջ 95)։

*Այս վարկածը գրեթէ բառացի կրկնում է նաեւ Լէօն իր «Հայկական տպագրութեան» Բ. հատորի մէջ, էջ 439.*

*Մենք միանգամայն անհաւանական ենք համարում, որ Խօջա Ղազարը նման մի լուրջ յանձնարարութիւն տուած լինի իր աւագ որդի Յովհաննէսին, որ այդ ժամանակ՝ 1743 թուին ընդամէնը 8 տարեկան մի մանուկ էր եւ այն էլ այն ժամանակուայ խառնակ օրերին եւ հաղորդակցութեան ծանր, իսկ շատ անգամ անապահով պայմաններում։*

*Լէօն դեռ աւելացնում է իր կողմից, որ «Յովհաննէսը լաւ լուր է բերում եւ Աղազարը 1747 թ. ընդ միշտ թողնում է Ջուղան եւ ընտանիքով գնում Ռուսաստան»։*

Ավելացնենք, որ Լազարեանների քաջահմուտ կենսագիր Մսեր Մսերեանցը նման բան չի գրում իր «Յիշատակարան»ում:

Այսպէս թէ այնպէս Խօջա Ղազարը, ապահով հասնելով Հաշտարխան, հաստատուն բնակութիւն չի հաստատում այնտեղ. նա մնում է այնտեղ միայն երկու տարի. այդ ժամանակամիջոցում նա պտտում է Ռուսաստանի զանազան քաղաքներ եւ ի վերջոյ ընտանիքով փոխադրւում է Մոսկուա եւ այնտեղ մշտական բնակութիւն հաստատում:

Այն փողոցը, ուր Խօջա Ղազարը բնակութիւն է հաստատում եւ ուր հետագայում նրա զաւակները կառուցեցին Ս. Խաչ Հայոց եկեղեցին եւ Լազարեան ճեմարանը, մինչեւ այսօր էլ ի յարգանս Լազարեանների յիշատակին կոչւում է՝ Հայոց Փողոց:

Խօջա Ղազար Լազարեանը, փոխադրուելով Մոսկուա, ձեռքերը ծալած չի նստում, այլ անմիջապէս գործի է անցնում, շահեցնելու իր բերած դրամագլուխը եւ ընդ միշտ ապահովելու իր ընտանիքը, իր զաւակներին:

Եւ արդարեւ, արդէն 1753 թ. Մոսկուայի շրջակայքում, մայրաքաղաքից 60 վերստ հեռաւորութեան վրայ, Բօգօրօդսկի գաւառում, Ֆրեանովօ գիւղում, նա գնում է մի կալուած 500 շունչ ճորտ գիւղացիներով հանդերձ: Այստեղ նա կառուցում է կտաւի ու կերպասի գործարաններ, հրաւիրում ար-

*տասահմանից (Եւրոպայից) հմուտ վարպետներ ու գործաւորներ:*

*Ցուտով նա այնպիսի կատարելագործութեան է հասցնում իր գործարանների արտադրոյթները, որ նրա պատրաստած մետաքսեայ գործուածքները ստանում են մեծ հռչակ ոչ միայն Ռուսաստանում, այլ եւ արտասահմանում: Ժամանակակիցները վկայում են, որ Խօջա Ղազարի պատրաստած մետաքսը իր որակով, իր նրբութեամբ ու գեղեցկութեամբ ոչնչով պակաս չէր Ֆրանսիայի Լիօն քաղաքի հռչակաւոր մետաքսից: Եկատերինա Բ. կայսրուհու պալատի մետաքսի բոլոր պէտքերը հոգացւում էին Լազարեանի գործարանների արտադրոյթներից: Կայսրուհին այդ մետաքսը ուղարկում էր որպէս նուէր նաեւ արտասահմանի բարեկամ արքունիքներին:*

«Դիպակք ոսկեթելք — գրում է Մ. Մսերեանցը — կերպասք մետաքսեայք, թաւրինջք («բարխատ», թաւիշ) եւ այլ պէս-պէս գործածք որ ի գործարանաց անտի ելանէին՝ ընտիրք յոյժ էին, գեղեցիկք եւ ազնուագոյնք, ոչինչ ընդհատք ի Գաղղիացւոցն եւ յԱնգղիացւոց, մինչեւ Արքունեացն անգամ փեթերպուրկայ ի պէտս գալ» (*էջ* 6)[11]:

---

[11] *Նոյն տեղեկութիւնները տալիս է նաեւ ռուս պատմաբան Սերգէյ Գլինկան «Հայ ժողովրդի պատմութեան» մէջ ինչպէս եւ յիշատակուած են «Ակտերի ժողովածուի» մէջ, որոնցից եւ օգտուել է «Յիշատակարանի» հեղինակը՝ Մ. Մսերեանցը:*

Ղազար Լազարեանի գործարանները պատրաստում էին նաեւ պատաթ-ղթ-եր կամ «թ-ուղթ-f նկարէնf» (ռուս. «օբօի») «որոնք պատեալ զարդարեցան բազում սենեակք յԱրքունիս Փեթերպուրկայ՝ յանուանեալս Զիմնիյ եւ Թավրիչէսքիյ» (էջ 96, Մ. Գ.)։

Ղազար Լազարեանը հռչակ ստացաւ ու մեծ դիրք գրաւեց եւ ապա ազնուականութեան իրաւունք ստացաւ կայսրուհուց իր եւ իր զաւակների համար ո՛չ միայն իր գործարանային արդիւնաբերութեամբ, որը նա հասցրեց կատարելագործութեան. ճիշտ է, այդ ձեռնարկներով աշխատանք հայթայթեց բազմաթիւ ռուս բանուորներին, արհեստաւորներին ու գիւղացիներին եւ միաժամանակ տարածեց Ռուսաստանում մետաքսագործութիւնը. այս ամէնը գնահատուեց թէ կառավարութեան եւ թէ բարձր հասարակական շրջանների կողմից, բայց դրանով չսահմանափակուեց նրա գործունէութիւնը։ Լաւ ծանօթ լինելով Արեւելքի կեանքին, նա թանկագին տեղեկութիւններ ու խորհուրդներ էր տալիս կառավարութեան, օգտագործում էր իր առեւտրական կապերն ու ծանօթութիւնները գարկ տալու Ռուսաստանի առեւտուրի զարգացման Արեւելքի, մանաւորապէս Պարսկաստանի հետ։

Խօջա Ղազարի համբաւը հասել էր մինչեւ արտասահման։ Մ. Մսերեանցը «Գաղ–

*ղիական ընդհանուր թատարան արուեստից եւ գիտութեանց» հրատարակութիւնից առաջ է բերում հետեւեալ երկտող վկայութիւնը.*

«Զարդարեալ գոլով երկնապարգեւ ձրիւք Ղազար Եղիազարեան (Նազարեան) ունէրապաքէն զայնպիսի ինչ սպաս ծառայութեան մատուցանել Ռուսիոյ, որ ի-րախտապարտ նմին կացուցանելոց էր զազգս յոլովս» (*էջ 7. Ա. Մաս*)։

*Լազարեան տոհմի այս համբաւաւոր ցեղապետը, որ հայ առեղծագործող հանճարի մի ներկայացուցիչը հանդիսացաւ այդ վաղ ժամանակներում, օտար երկնքի տակ, վախճանուել է խոր ծերութեան հասակում՝ 82 տարեկան, 1782 թ. յունուար 8ին Մոսկուայում եւ թաղուել է Մոսկուայի Վաղանկովի Հայոց Գերեզմանատանը՝ Ս. Յարութիւն եկեղեցում։ Նա ծնուել էր 1700 թ. ապրիլ 3ին Ն. Ջուղայում։*

*Տապանագիրը հայերէն եւ ռուսերէն լեզուներով հետեւեալ պարզ վերտառութիւնն ունի.*

«Աստանօր հանգչին ոսկերք առն բարեպաշտի՝ Ազնուականին Ղազարայ Նազարեան Լազարեանց, ծնելոյ ի 1700 ամի, յԱպրիլ 3, եւ փոխելոյ յաստեացս յ8 յունուարի 1782 ամի, ի Մոսկով»։

*Ղազար Լազարեանի կինը՝* ԱՆՆԱ ՅՈՎԱԿԻՄԵԱՆ, *որի հայրը Ջուղայեցի ականաւոր դէմքերից է եղել, վախճանուել է* 1770 *թ. յունուար* 13*ին*, 60 *տարեկան հասակում, եւ թաղուել է Մոսկուայի Պրեսնեա թաղամասի գերեզմանատան՝ Ս. Աստուածածնի Հայոց եկեղեցում* :

---

## ԳԼՈՒԽ Բ.

## ԿՈՄՍ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՂԱԶԱՐԵԱՆ ԼԱԶԱՐԵԱՆՑ
(1735—1801)

*«Հաստարակական կարիքները պիտի բաւարարուեն իր հաստարակութեան լաւագոյն ներկայացուցիչների միջոցներով»:*

*Գէորգ Քանանեան:*

### Ա.

*Յովհաննէս Լազարեանցը՝ ցեղապետ Ղազար Նազարեան Լազարեանի աւագ որդին էր, ծնուած Ն. Ջուղայում 1735 թ. նոյեմբեր 23ին:*

*Յովհ. Լազարեանը բնութիւնից օժտուած էր մեծ շնորհքներով ու առաքինութիւններով՝ տաղանդաւոր, եռանդուն, գործունեայ, բնաւորութեամբ՝ բարեհամբոյր, մեծ տակտով ու քաղաքագէտ: Նա կարողացաւ համեմատաբար իր կարճ կեանքի ընթացքին՝ Եկատերինա Բ. կայսրուհու եւ Պաւել Ա. կայսեր ժամանակ հասնել մեծ պաշտօնների եւ արժանանալ նրանց մշտական վստահութեան, հովանաւորութեան ու բարեկամութեան:*

*Մ. Մսերեանցը նրա մասին ասում է.*

«...Եւ թուէր ինձ, թէ առանձին ինչ ոգի հանճարոյ յերկնից պարգեւելոյ առաջնորդէ նմա յամենայնի»։

*Լազարեան ճեմարանի տեսուչ (հետագայում՝ վերատեսուչ) Գէորգ Քանանեանը իր ճառի մէջ, տուած ճեմարանի 50ամեայ յոբելեանի առթիւ կայացած հանդիսաւոր հաւաքոյթին, հետեւեալ կերպով է բնութագծում ճեմարանի հիմնադիր կոմս Յովհ. Լազարեանին.*

*«Եկատերինա կայսրուհու ժամանակակից կոմս Յովհաննէս Լազարեանը, աւագագոյնը իր եղբայրների մէջ, բռնում է պատուաւոր տեղ իր դարաշրջանի հռչակաւոր մարդկանց շարքում։ Նա փայլում էր նոյն բարձր շնորհքներով, ներշնչուած էր նոյն վեհ գաղափարներով, որոնք զարդարել էին ու խանդավառել պետական մեծ մարդկանց սերունդը։ Նրա լայն ծանօթութիւնը Արեւելեան աշխարհի հետ, նրա հմտութիւնը ֆինանսական ու պետական գործերում, փայլուն ընդունակութիւնները, նրա նուիրումը իր նոր հայրենիքի շահերին՝ բաց արին նրա առջեւ գործունէութեան լայն ասպարէզ։ Նրա բազում կարեւոր ծառայութիւնները, մատուցուած պետութեան, արժանացան Մեծ Կայսրուհու բարեհաճ վերաբերմունքին դէպի նա, իսկ նրա խորհուրդներն Արեւելքի գործերի մասին ստացան մեծ կշիռ ու արժէք կառավարական շրջաններում։*



Յովհաննէս Լազարեան

«Միաժամանակ կենդանի պահելով իր հոգու մէջ ջերմ զգացմունքներ ու նուիրում դէպի իր հայրենակիցները, որոնք տառապում էին մահմեդական լծի տակ, նա իր կեանքի նպատակը դրեց թեթեւացնել նրանց վիճակը։ Այդ մեծահոգի միտքը զուգադիպեց պետութեան շահերին, որոնց նա ծառայում էր։ Եւ նա նուիրուեց նրա գործադրութեան իր բոցավառ սրտի ամբողջ զօրութեամբ, չխնայելով ո՛չ նիւթական միջոցներ, ո՛չ աշխատանք եւ ոչ էլ եռանդ։ Նրա ջանքերով, նրա նիւթական միջոցներով ու բարոյական օժանդակութեամբ էր, որ ծնունդ առին Սեւ եւ Ազով ծովերի ափերին առեւտրական կայաններ, ուր եւ ապաստան գտան Ասիայից եկող հայ գաղթականները։ Առատաձեռն նուիրատուութիւնները յօգուտ այդ քաղաքների եւ մշտական խնամքը նրանց բնակիչների հասարակական կարիքների մասին հանդիսանում են լաւագոյն յուշարձաններ այդ հռչակաւոր մարդու գործունէութեան։ Բայց ապրելով ու գործելով իր ամբողջ կեանքի ընթացքում հասարակութեան եւ իր հայրենակիցների օգտին, կոմս Յովհաննէս Լազարեանը կամեցաւ իր փառաւոր գործերի շարքը պսակել մի այնպիսի սրբագործութեամբ, որ միանգամայն համապատասխանում էր նրա վեհ հոգուն։ Նա՛ աւելի քան որ եւ է մէկը շատ լաւ հասկանում էր, որ հասարակական կարիքները պէտի բաւա-

*բարուէն իր հասարակութեան լաւագոյն ներկայացուցիչների միջոցներով: Այս գիտակցութեամբ ներշնչուած, նա վճռեց իր կարողութեան մի խոշոր մասը յատկացնել իր հայրենակիցների մտաւոր ու բարոյական վերածնութեան գործին: Նրա մէջ հաստատուաւ մի վսեմ միտք՝ կառուցել մի դպրոց հայերի համար ռուսական կայսրութեան կենտրոնում եւ մահուանից առաջ նա իր ուխտը յանձնեց իր կրտսեր եղբօր, պատուադրելով նրան իր կամքի իրագործումը այն միջոցներով, որ նա կտակով թողնում էր*[1]»:

*Այդ կտակով կոմս Յովհ. Լազարեանը թողել էլ* 200·000 *ռուբլի թղթադրամ կամ* 57·142 *ռուբլի արծաթ, ի յիշատակ իր վաղամեռիկ որդի* Յարութիւն Լազարեանի:

*Այդ գումարով էլ, համաձայն հանգուցեալի կտակի,* 1815 *թ. հիմնուեց Մոսկուայում Լազարեան ճեմարանը, որ եւ դարձաւ հայ չքաւոր երեխաների մտաւոր կրթութեան ու բարոյական դաստիարակութեան վառ օջախը:*

*Լէօն իր երկու հեղինակութիւնների մէջ՝* «Հայկական Տպագրութիւն» *եւ* «Յովսէփ կաթողիկոս Արղութեան», *յաճախ է յիշա–*

[1] *Տե՛ս էջ* 15—16 *«Ճառեր եւ հաշուետուութիւն, արտասանուած հանդիսաւոր հաւաքոյթում Լազարեան ճեմարանի Արեւելեան Լեզուաց* 50*ամեակի առթիւ»: Մոսկուա. Տպարան Լազ. Ճեմարանի:* 1865, 4°, *էջ* 38 + 91 + 6 + 8 + 12 = 155. *Ռուսերէն լեզուով:*

*տակում Լազարեաններին ու դրուատում նրանց գործունէութիւնը:*

*Վերջին գրուածքի մէջ նա հետեւեալ կերպով է բնութագծում Յովհաննէս Լազարեանին.*

*«Յովհաննէս Լազարեանը ունէր բնական մեծ խելք, իսկ Ռուսաստան անցնելուց յետոյ, ստացաւ լաւ կրթութիւն: Մոսկուայում, իր հօր ընտանիքում ապրելը չէր կարող բաւարարութիւն տալ նրա սրտին, ուստի նա փոխադրուեց Պետերբուրգ. մշտական բնակութիւն հաստատեց այնտեղ եւ միանգամից մօտեցաւ պետական բարձր շրջաններին: Մեծ հարստութեան տէր էր Յովհաննէսը, բայց եւ այնպէս մտաւ պետական ծառայութեան մէջ. ստացաւ բարձր աստիճաններ: Նա պետական բանկի վարչութեան անդամներից մէկն էր եւ իբրեւ հմուտ ֆինանսագէտ՝ նշանաւոր ծառայութիւն էր մատուցել ռուսաց կառավարութեան»:*

*Այդ ծառայութիւններից մէկը հետեւեալն էր.*

*Ռուսաստանը այդ ժամանակներում չունէր հաղորդակցութեան յարմար ճանապարհներ ու միջոցներ: Պերմ հեռաւոր նահանգից եւ Սիբիրից պղնձէ դրամների փոխադրութիւնը Պետերբուրգ (այժմ՝ Լենինգրադ) եւ Ռուսաստանի գաւառական քաղաքները կապուած էր մեծ դժուարութիւնների հետ: Եւ ահա՛ արքունի գանձարանի պետ իշխան*

Վեազեմսկին առաջարկում է Յովհ. Լազարեանին ստանձնել այդ գործը գոնէ 12 տարով: Յովհաննէսը յանձն է առնում, կազմակերպում է դրամի փոխադրութեան գործը եւ մեծ յաջողութեամբ գլուխ բերում այն, որով աւելի եւս մեծ վստահութիւն ու յարգանք ներշնչում Արքունիքին իր հանդէպ[2]:

Լէօն շարունակելով իր խօսքը, ասում է.

«Հարուստ, փարթամ հայ ազնուականը այնպիսի աստիճանի հասաւ, որ այլ եւս ոչինչ չէր կարող պահանջել բախտից: Ոչինչ չէր պակասում նրան: Եկատերինայի թագաւորութեան բոլոր աստղերը, բոլոր հռչակաւոր պետական մարդիկ նրա մօտիկ ծանօթներն ու բարեկամներն էին. այսպէս էին՝ իշխան եւ կոմս Օրլով եղբայրները, իշխան Պօտեոմկինը, կանցլէր իշխան Բէզբորոդկօ, գլխաւոր դատախազ իշխան Վեազեմսկին, կոմս Սիվերսը, կոմս Ռումեանցեւը, իշխան եւ կոմս Զուբովները, իշխան Սուվորովը, Կուրակինները եւ ուրիշ շատերը:

«Սակայն այսքան փառքն ու բարեկեցութիւնը Յովհաննէս Լազարեանին չդարձրին անմատչելի, հպարտ իշխանաւոր, մանաւանդ մոռացնել չտուին նրան, որ նա խեղճ, ցիրուցան մի ազգի զաւակ է: Այդ ազգի բարօրութիւնը նրա մշտական հոգսերի առարկան էր. եւ պերճ իշխանաւորը իր

[2] Այս դէպքի մասին պատմում է Մ. Մսերեանցը իր «Յիշատակարան»ում, էջ 10:

բարձր դիրքով, իր մեծ հարստութեամբ աշխատում էր ամէն կերպ օգտակար լինել իր ազգակիցներին: Նա էր, որ հաղորդում էր կառավարութեան տեղեկութիւններ արեւելեան գործերի մասին, պաշտպանում էր հայերի դատը, խնդրում էր նրանց համար շնորհներ եւ արտօնութիւններ: Նա էր, որ հայերին Ռուսաստան գաղթեցնելու միտքն էր արծարծում պետական բարձր շրջաններում, համոզուած լինելով, որ իր ազգակիցները այդ ճանապարհով կ՚ազատուին ասիական բռնակալների ճանկերից եւ խնայող ու ապահով կեանք կը գտնեն: Հայրենիքում մնացող հայութեան մասին էլ նա մտածում էր եւ եռանդուն կերպով աշխատում էր, որ հայերը քաղաքական ազատութիւն գտնեն:

«Յովհաննէս Լազարեանը նշանաւոր է եւ իր լայն ու գեղեցիկ բարեգործութիւններով: Զրկուածների, չունեւորների մտաւոր ու նիւթական պակասութիւնները հնար եղածին չափ վերացնելու գործում նա ղեկավարւում էր լայն մարդասիրական հասկացողութիւններով: Միայն իր ազգին չէր նա նուիրաբերութիւններ անում: Առանձնապէս պատիւ է բերում նրա անուան ու սրտին այն հանգամանքը, որ նա իր գիւղերում ու գործարաններում ռուսաց եկեղեցիներ էր կառուցանում, դպրոցներ էր բաց անում: Գիւղացիներին նա չէր ծանրաբեռնում զանազան տուրքերով, այլ խնայելով նրանց, աշխա-

*տում էր խելացի տնտեսութեամբ բարեկարգել իր կալուածները[3]»:*

*Յովհաննէս Լազարեանի այս միանգամայն ճիշտ բնութագրութիւնից պարզ երեւում է, որ բացի իր բնական շնորհքներից ու տաղանդից, անշուշտ, մասամբ ժառանգած հօրից ու պապերից, նա գտնուել է նաեւ ժամանակի յառաջադէմ գաղափարների ազդեցութեան տակ:*

*Չպիտի մոռանալ ու միշտ պիտի յիշել, որ Յովհաննէսը ապրում էր ու գործում* 18*րդ դարի երկրորդ կէսին, իսկ այդ ժամանակ ամբողջ Եւրոպան ողողուած էր Ֆրանսիացի լուսաւորիչների՝ Վոլտէրի, Մոնտեսկիոյի, Ժան Ժակ Ռուսոյի, հանրագէտների փիլիսոփայական ազատամիտ վարդապետութիւններով: Անհատի ազատութիւնը, բողոքը ամէն կարգի բռնութիւնների դէմ, մի խօսքով հումանիտար գաղափարները տարածուել էին ամենուրեք սկսած գիւղական խրճիթներից մինչեւ Թագաւորական պալատները: Գահակալ միապետներն անգամ վարակուած էին դարաշրջանի լուսաւոր եւ ազատատենչ հովերով: Ինքը՝ կայսրուհի Եկատերինա Բ.ը իր Թագաւորութեան առաջին երկու տասնամեակներում խանդավառուած էր նոյն ազատամիտ գաղափարներով ու ձգտումներով: Իր կառա-*

---

[3] *Տե՛ս Լէօ, «Յովս. կաթ. Արղութեան», էջ* 57—81, *յապաւումներով:*

վարական գործերի, օրէնսդրական փորձերի ու գրական աշխատանքների մէջ կայսրուհին ջանում էր զարկ տալ սկսուած մտաւոր շարժման զարգացման ու տարածման իր միջավայրում, մասնաւորապէս ազնուականութեան վերին խաւերում: Մի խօսքով, Պետերբուրգի օդն եւս խտացած էր դարաշրջանի լուսաւոր գաղափարներով եւ ազատամիտ ձգտումներով: Ֆրանսիական Մեծ Յեղափոխութիւնը միայն (1783—1794) սկիզբ դրեց ռէակցիայի, որը սաստկանում էր նոյն չափով, ինչ չափով յեղափոխական սարսափներն էին ուժեղանում...: Այսու հանդերձ ազատամիտ գաղափարների ցանած սերմերը իսպառ չմեռան, այլ ժամանակի ընթացքում տուին իրենց բարի պտուղները:

Յովհաննէս Լազարեանը հօրից ստացած հարուստ ժառանգութիւնը՝ կալուածներն ու գործարանները, խելացի տնտեսութեամբ բարեկարգեց ու ընդարձակեց, նոր կալուածներ գնելով: Համաձայն ժամանակի ոգուն ու իր լայնախոհութեան ու բարեսրտութեան, նա բարելաւեց իր գիւղացիների ու բանուորների ապրուստի պայմանները. աչքաթող չարաւ նաեւ նրանց երեխաների կրթութեան գործը, ամենուրեք բաց արեց գիւղական դպրոցներ, կառուցեց եկեղեցիներ, հիւանդանոցներ, ապաստարաններ: Շնորհիւ իր ձեռնարկած բարենորոգչական աշխատանքների, նա բարձրացրեց իր կալուածների ու

գործարանների արտադրական կարողութիւններն ու կրկնապատկեց իր եկամուտները եւ դարձաւ մեծ հարստութեան տէր մարդ:

1778 եւ 1784 թթ. նա գնեց Պերմ նահանգում կոմս Ստրոգանովներից մի ընդարձակ դաստակերտ իր գործարաններով: Այդ կալուածը 700·000 դեսեատին ունեցող մի շատ մեծ հողամաս էր, ուր կային չորս գործարաններ, որոնք արտադրում էին՝ տարեկան՝ 500·000 փութ թուջ (չուգուն), 230·000 փութ երկաթ, 700·000ից մինչեւ 1,000·000 փութ աղ:

Բացի այդ, իշխան Գրիգորի Օրլովի առաջարկով նա գնեց Պետերբուրգի շրջակայքում, 40 վերստ հեռաւորութեան վրայ մայրաքաղաքից, Ռոփշա արքունական աւանը հոյակապ ապարանքներով, ծաղկանոցներով, կտորեղէնի գործարանով եւ 1200 հոգի բնակիչներով:

Ռոփշայում էին հիւրընկալւում ռուս արքայական տան անդամները՝ իշխան–իշխանուհիները եւ պետական մեծ դէմքերը· այստեղ էր Յովհաննէսը ընդունել արեւելեան մեծ շքեղութեամբ եւ հիւրասիրութեամբ Պետերբուրգ ժամանած Աւստրիայի կայսր Յովսէփ Բ.ին, որ հռչակուած էր իր ազատախոհութեամբ, Շվէդիայի թագաժառանգին, Ֆրանսիայի թագաւոր Լիւդովիկոս XVIրդի տարագիր եղբօր՝ կոմս դ'Արտուային իր

Հքախմբով (1793 թ.) եւ ապա զանազան դուքսերին եւ իշխաններին։

«Ամէնքն էլ, — ասում է Մ. Մսերեանցը — ընդունում էին արեւելեան շքեղութեամբ, ըստ արժանի պատույն մեծութեան եւ համբաւոյ»։

Ինքը՝ Յովհ. Լազարեանը յաճախ հրաւիրւում էր սեղանակից լինելու Եկատերինա կայսրուհուն ու Պաւել կայսրին Գատչինոյի արքայական պալատում։

Կայսերական հրովարտակներից[4] մենք իմանում ենք, որ Յովհ. Լազարեանը իր պետական ծառայութեան ընթացքին ստացել է մեծամեծ շնորհներ, աստիճաններ, շքանշաններ։ Յիշատակենք միայն մի քանիսը։

1786 մարտ 12ին ստանում է Աւստրիայի կայսր Յովսէփ Բ.ից բարոնի կոչում, իսկ 1788 մարտ 30ին՝ կոմսութիւն։ Երկու անգամ էլ այդ շնորհների նուիրումին կցուած են ընդարձակ գրութիւններ, ուր մատնանշուած են Յովհաննէսի մատուցած ծառայութիւնները։

1791 դեկտ. 1ին Եկատերինա կայսրուհին շնորհում է Ատենական Խորհրդականի աստիճան (Կոլլեժսկի սովետնիկ)։

1800 յունիս 3ին Պաւել կայսրը շնորհում

[4] Այդ հրովարտակների բնագրերը բերուած են թէ «Լ. Ճ. 50ամեակին» նուիրուած ժողովածուի մէջ եւ թէ Մ. Մսերեանի «Յիշատակարան»ում։

է նրան ներդործական Պետական խորհրդականի աստիճան:

1801 փետրուար 24ին Պաւել կայսրը շնորհում է Շքանշան Հրամանատար Կարգի Ս. Յովհաննու Երուսաղէմացւոյ, որը համարւում էր մին ամենաբարձր շքանշաններից:

Եարոսլաւլի եւ Ս. Պետերբուրգի նահանգների ազնուականութիւնները, յենուելով Յովհաննէսի հօրը Կայսրուհի Եկատերինա Բ.ի կողմից տրուած ազնուականութեան իրաւունքի վրայ, առնում են նրան իրենց շարքերը:

Յովհ. Լազարեանը, որպէս բարեպաշտ հայ մարդ, նուիրուած հայ Եկեղեցուն եւ ազգին, ի նկատի առնելով, որ Պետերբուրգի հայ գաղութը եկեղեցի չունի եւ, փոքրաթիւ լինելով, ի վիճակի չէ իր միջոցներով եկեղեցի շինել, ինքն է ձեռնարկում մայրաքաղաքում եկեղեցի կառուցելու իր սեփական միջոցներով: Եւ 1779 թ. Պետերբուրգի գլխաւոր փողոցում, Նեւսկի պրոսպեկտի վրայ, բարձրանում է Ս. Կատարինէ (կոմսի կնոջ անունով) Հայոց հոյակապ եկեղեցին, որն իր կից շէնքերով բռնում է 1395 քառ. սաժէն[5] տարածութիւն:

1791 թ. Յովհ. Լազարեանը կրկին իր սեփական միջոցներով կառուցում է մի երկրորդ Հայոց եկեղեցի, այս անգամ մայ–

---

[5] Մէկ սաժէնը = 2 մետրի:

րաքաղաքի Վասիլեւսկի Թաղամասում, Հայոց գերեզմանատանը, իր վաղամեռիկ որդու Յարութիւնի անունով, որն իր պարտէզով բռնում է 10·000 քառ. սաժէն տարածութիւն: Այս երկու եկեղեցիների շինութեան վրայ իրենց յարակից շէնքերով բարերարը ծախսել էր 120·000 ռուբլի:

1784 եւ 1789 թթ. նա կառուցում է նաեւ չորսյարկանի քարաշէն տներ բնակութեան համար Ս. Կատարինէ եկեղեցու գաւթի առաջեւի մասում ու Նուիրում եկեղեցուն: Այդ տներից ստացուելիք եկամուտներն էլ յատկացնում է եկեղեցուն:

Հիմնադիրը, որպէս մի իրատես ու հեռատես մարդ, կամենալով կանխել ապագայում ծագելիք ամէն թիւրիմացութիւն, եկեղեցու եւ տների կառավարութեան գործում, մշակում է յատուկ պայմանագիր, ուր մանրամասն կարգադրութիւններ է անում երկու եկեղեցիների կառավարութեան ու տների օգտագործման եղանակի ու պայմանների մասին: Այդ պայմանագիրը այնուհետեւ հաստատում է Ռուսաստանի Թեմակալ առաջնորդ Յովսէփ արք. Արղութեանը:

Այս պայմանագրի մէջ, ի միջի այլոց, ուշագրաւ է այն, որ հեղինակը չի մոռանում կարգադրելու, որ եկեղեցին պիտի ունենայ փոքրիկ դպրոց հայ երեխաների համար եւ ապա իր եկամուտներից եկեղեցին օգնի հայ չքաւորներին:

Հանգստարանի եկեղեցւոյ մասին նոյն պայմանագրի մէջ ասուած է.

«Ի միջի Ս. Յարութիւն տաճարին, որ առ հանգստարանաւ, միայն արինակիցք իմ թաղեսցին, իսկ այլք՝ ի Հանգստարանի [6]»:

Յովհ. Լազարեանը իր բարեգործ ձեռքը չէր կարկառում միայն կարօտեալներին օգնելու համար. նա միշտ պատրաստ է եղել նաեւ ամէն կերպ աջակցելու հայ մշակոյթի, հայ գրի ու գրականութեան զարգացման գործին, եւ այդ ո՛չ միայն դպրոցներ հիմնելով, այլ եւ տպագրելով իր դրամական միջոցներով հայ հեղինակների արժէքաւոր գործերը:

Դժբախտաբար պատմութիւնը չի պահպանել մեծ բարերարի նման գործերի յիշատակը: Գոնէ մեր ձեռքի տակ եղած բազմաթիւ աղբիւրների մէջ մենք գտանք միայն մի դէպք արձանագրուած. այդ դէպքի մասին հաղորդում է Լէօն իր «Հայկական Տպագրութեան» մէջ:

«Մարգար Խօջէնց Երեւանցին, — պատմում է Լէօն, — թարգմանել էր «Թէլեմաքը»: Դա Ֆենելոնի աշխարհահռչակ «Տելեմաք»ի թարգմանութիւնն է, որ երեւում էր մեր մէջ առաջին անգամ եւ հէնց այդ պատճառով էլ առանձին պատիւ էր Նոր Նախիջեւանի տպարանի համար: Գիրքը բաղկացած է երկու հատորից, պարունակում է

[6] Տե՛ս Մ. Մսերեանց, «Յիշատակարան», Գ. մաս, էջ 7 եւ 8:

իր մէջ 500ից աւելի երեսներ. տպուած է 1794 թ. Յովհաննէս Լազարեանի ծախսով ի յիշատակ նրա Յարութիւն որդու»։

Ընդհանրապէս Յովհ. Լազարեանի բարեգործութիւնները այնքա՛ն շատ են եւ այնքա՛ն բազմապիսի, մատուցած հայ եւ ռուս ժողովուրդներին, մանաւորապէս Ռուսաստանի նորահաստատ հայ գաղթավայրերին, որ նրանց մանրամասն տեսութիւնը պահանջում է յատուկ աշխատանք ու ժամանակ, մի բան, որ մեր թէ հնարաւորութիւններից եւ թէ ներկայ աշխատանքի սահմաններից դուրս է։

Տկարութիւնը ստիպում է Յովհ. Լազարեանին, կայսեր թոյլտուութեամբ մեկնել Կովկասի հանքային ջրերը բուժուելու։ Բայց նա դեռ չէր հասել Հաշտարխան, երբ հասնում են կայսեր սուրհանդակները եւ բերում կայսեր հրամանը անմիջապէս վերադառնալ Պետերբուրգ....։

Վերադառնալով մայրաքաղաք, Լազարեանը իսկոյն ներկայանում է կայսեր։ Վերջինս առաջարկում է նրան ծախել իրեն Ռոփշայի ապարանքը։ Լազարեանը, ի հարկէ, տալիս է իր համաձայնութիւնը։ Կայսրը առաջարկում է նշանակել գինը։ Լազարեանը հրաժարւում է, յայտնելով, որ ապարանքն էլ, իր բոլոր ունեցածն էլ պատկանում են կայսեր։ Այնուհետեւ միջամտում են կոմս Կուտայիսոֆն ու իշխան Բէզբորոդկօն, եւ

*կայսրը ինքն է նշանակում արժէքը՝ 500·000 ռուբլի թղթադրամ, մինչդեռ ժամանակակիցների վկայութեամբ ապրանքը արժէր ո՛չ պակաս քան մէկ միլիոն ռուբլի:*

*Լազարեանը առանց տարկութեան տալիս է իր համաձայնութիւնը եւ բացի այդ 100·000 ռուբլի էլ գումարից նուիրում մայրաքաղաքի ուսումնարաններին ու հիւանդանոցներին:*

*Այս առթիւ Մ. Մսերեանը նկատում է. «Եւ այս՝ ո՛չ ազնուական միայն՝ այլ եւ ուշիմագոյն հանճարոյ համարելի է գործ, եւ կիրթ քաղաքականութեան անժխտելի հաւաստիք»:*

*Լազարեանի այդ վեհանձն ժեստը շատ յաւ տպաւորութիւն է թողնում կայսեր վրայ եւ նա շնորհում է նրան Ս. Յովհաննու Երուսաղէմացւոյ շքանշանը 1801 թ. փետրուար 24ին:*

*Արդարեւ, որ Յ. Լազարեանը եղել է նուրբ քաղաքագէտ ու մեծ տակտով պետական գործիչ: Ամենափայլուն ապացոյցը դրան ծառայում է այն պատմական իրողութիւնը, որ երբ Պաւել կայսրը, յաջորդելով Եկատերինա Բ.ին, գահ բարձրացաւ, անմիջապէս հեռացրեց իրենց պաշտօններից իր մօր բոլոր մերձաւորներին, որոնցից իւրաքանչիւրը բարձր դիրքի ու պաշտօնի տէր պետական անուանի գործիչ էր: Յովհ. Լազարեանը այն բացառիկ անձնաւորութիւններից*

էր, որ կարողացաւ պահպանել ո՛չ միայն իր դիրքը, այլեւ վայելել կայսեր անխախտ վստահութիւնն ու հովանաւորութիւնը: Դա մի հազուադիւտ երեւոյթ էր այդ ջղագրգիռ, անհաւասարակշռուած, հիւանդագին պոռթկումների ենթակայ բռնակալ միապետի օրով:

Հարիւրաւոր մարդիկ, պաշտօնեաներ, զինուորականներ առանց դատ ու դատաստանի, կայսեր մի խօսքով, ուղարկւում էին բանտ կամ աքսոր Սիբիր...:

Եւ իր հէնց այդ բնաւորութեան էլ նա զոհ գնաց... Պալատական դաւադրութիւնը վերջ տուեց նրա կեանքին 1801 թ. մարտ 11ին:

Ալէքսանդր Ա. կայսրը, որ անմիջապէս յաջորդեց հօրը, շտապեց ներում տալ բոլոր անմեղ զոհերին: Այդ ներումից օգտուեցին՝ ազատուելով բանտարկութիւնից եւ վերադառնալով աքսորից՝ 536 հոգի քաղաքացիներ եւ 12·000 հոգի սպաներ ու պաշտօնեաներ:

Բայց արդէն հաշուած էին նաեւ կոմս Յովհաննէս Լազարեանի կեանքի օրերը: Զրկուելով հնարաւորութիւնից գնալ Կովկասի հանքային ջրերը բժշկուելու, նրա առողջութիւնը աստիճանաբար վատթարացաւ եւ վերջապէս 1801 թ. հոկտեմբեր 24ին նա կնքեց իր մահկանացուն 66 տարեկան հասակում:

Մեծ շուքով կատարուեց նրա յուղար-

կաւորութիւնն ու թաղումը Ս. Պետերբուրգի Հայոց գերեզմանատան Ս. Յարութիւն տաճարում:

Մեծ հայ պետական եւ ազգային հասարակական անզուգական գործիչի մահը սգացին ո՛չ միայն երկու մայրաքաղաքների հայ եւ ռուս հասարակութիւնները, ոչ միայն Ռուսաստանի նորաբնակ հայ գաղութները՝ Հաշտարխանի, Ղզլարի, Մոզդոկի, Գրիգորիօպոլի, Ղրիմի, Նոր Նախիջեւանի, Դարբանդի հայ հասարակութիւնները, այլ եւ Նոր Ջուղան, Ս. Էջմիածինը եւ առհասարակ բովանդակ հայ ժողովուրդը:

Ամէնքը զգում ու գիտակցում էին, որ կորուստը չափ մեծ էր. յաւիտենականութեան գիրկն անցաւ այն մեծ հայ մարդը, որ միշտ նախանձախնդիր իր ազգի բարօրութեան, ապահովել էր նրանց նիւթական գոյութիւնն եւ ձեռք բերել ռուս հզօր պետութեան հովանաւորութիւնը:

Հանգուցեալը ժառանգ չթողեց. նրա 2 դուստրները՝ Աննա եւ Մարիամ վախճանուել էին մանուկ հասակում, իսկ միակ որդին՝ Յարութիւնը, որ ծառայում էր ռուսաց զօրաբանակում եւ երկրորդ ռուս-տաճկական պատերազմի ժամանակ գտնւում էր իշխան Պօտեմկինի հրամանատարութեան ներքոյ, վախճանուել էր 1791 թ. յունուար 12ին, 23 տարեկան ծաղիկ հասակում. նա ծնուել էր 1768 թ. յուլիս 24ին:

Յովհաննէս Լազարեանը իր ամբողջ
հարստութիւնը, կալուածներն ու գործա-
րանները, կտակով թողեց իր կրտսեր եղ-
բօր՝ Յովակիմին, պատուիրելով մի որոշ
գումար յատկացնել կնոջն ու եղբօր Մինա-
սին մինչեւ նրանց մահը:

Յովհաննէս Լազարեանի տապանագիրը
հայերէն եւ ռուսերէն լեզուներով՝

«Առաջի տապանագրիս հանգչի մարմին
յառուցանողի տաճարիս՝ բարեգործ առն՝
ներգործական պետական խորհրդականի՝ եւ
Ս. Յովհաննու Երուսաղէմացւոյ նշանակիր
հրամանատար Ասպետի, Յովհաննու Լազա-
րեան Լազարեանց, փառաւորելոյ բազմօրի-
նակ օգտակար գործովք եւ բարեպաշտ կե-
նօք, ծնելոյ ի Ջուղայ յամի 1735, ի 23 նոյեմ-
բերի, եւ հանգուցելոյ ի Տէր ի 1801 ի 24 հոկ-
տեմբերի»:

Յովհաննէս Լազարեանի կինը՝ Կատա-
րինէ Յովհաննիսեան Լազարեանց (Միրզա-
խանեան տոհմից) իր մահից յետոյ՝ 1819 թ.
օգոստոս 18ին, կտակով թողել էր Լազա-
րեան ճեմարանին՝ 2·857 ռուբլի արծաթ
(չուրջ 8·600 ռուբլի թղթադրամ):

Լազարեան ճեմարանը, յարգելով իր
հիմնադրի անմահ յիշատակը, իր տարեկան
գրրոցական հանդէսը կատարում է նրա մա-
հուան տարեդարձին՝ հոկտեմբեր 24ին:

Այդ օր Մոսկուայի Ս. Խաչ եկեղեցում,

որ գտնւում է Հայոց փողոցում, դէմ յանդիման ճեմարանի, կատարւում է հանդիսաւոր Ս. Պատարագ եւ ապա հոգեհանգիստ թէ հիմնադրի եւ թէ Լազարեան ամբողջ տոհմի բոլոր անդամների յիշատակին:

Պատարագին եւ հոգեհանգստին ներկայ են լինում՝ ժողովրդական լուսաւորութեան նախարարութեան Մոսկուայի կրթական շրջանի հոգաբարձուն իր օգնականի հետ, ճեմարանի վերատեսուչը, տեսուչը, ամբողջ ուսուցչական ու դաստիարակչական կազմերը, ճեմարանի ամբողջ աշակերտութիւնը, ինչպէս եւ Մոսկուայի հայ հասարակութեան ականաւոր դէմքերը ու նախկին սաները: Ամէնքը իրենց տօնական նշանազգեստներով, զարդարուած շքանշաններով, մեդալներով:

Եկեղեցական արարողութիւնից յետոյ, վերատեսչի հրաւէրով, ամէնքը հաւաքւում են ճեմարանի Հարցաքննութեան շքեղ դահլիճը (Актовая зала) Պետական հիմնից յետոյ, որ երգում է ճեմարանի երգչախումբը, կազմուած աշակերտներից, վերատեսուչը կարդում է իր ընդարձակ զեկոյցը ճեմարանի կրթական ու ֆինանսական վիճակի մասին եւ վեր հանում նախկին ուսումն. տարուայ ընթացքում ճեմարանի ունեցած յաջողութիւնները, նրա կարիքները եւ անհրաժեշտ բարեփոխութիւնների պահանջը:

Շրջանաւարտներին ու յառաջադէմ աշակերտներին բաժանում են իրենց վկայա-

կանները, մեդալները (ոսկի եւ արծաթէ) ու նուէրները։

Այդ օր գիշերօթիկ աշակերտների ամենամեծ տօն օրն է։ Նրանց տրւում են տօնական թէյ, նախաճաշ, ճաշ եւ ընթրիք, իսկ երեկոյեան ամբողջ աշակերտութեան տանում են թատրոն կամ ցիրկ։

## Բ.

### ԿՈՄՍ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԼԱԶԱՐԵԱՆԻ ԱԶԳԱՅԻՆ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ–ՔԱՂԱՔԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ

Յովհաննէս Լազարեանը, շնորհիւ իր մեծարժէք, բեղուն ազգային հասարակական–քաղաքական գործունէութեան, պատուաւոր տեղ է բռնում 18րդ դարի հայ քաղաքական ազատագրական շարժման ռահվիրաների շարքում։ Նա հանդիսանում է շարունակողը Իսրայէլ Օրիի, Յովսէփ էմինի սկսած աշխատանքների Հայաստանի ազատագրութեան համար ասիական բարբարոս իշխանութիւնների անարգ լծի տակից։

Բայց Յովհաննէս Լազարեանը, որպէս նուրբ քաղաքագէտ ու մեծ տակտի տէր գործիչ, ձեռնամուխ չի լինում իր ազգային նպատակների իրագործման մէկէն ի մէկ, այլ իր աշխատանքները տանում է աստիճանաբար, միշտ յարմարուելով ժամանակի պայմանների եւ իր դիրքի ամրապնդման։

Նրա հասարակական–քաղաքական գործունէութեան դրդապատճառները պիտի փնտռել ամենից առաջ նրա մանկութեան

օրերին ստացած տպաւորութիւնների մէջ, որոնք անջնջելի հետքեր են թողել նրա հոգու վրայ։

Մանուկ հասակում նա ականատես է եղել այն խժդժութիւններին. որոնց ենթակայ է եղել իր ծննդավայրի, Ն. Ջուղայի, հայ հասարակութիւնը, ի մէջ առեալ նաեւ իր հարազատներին ու ազգականներին։ Այնուհետեւ նա յաճախ լսել է իր հօրից այն բոլոր հալածանքների տխուր պատմութիւնները, որոնց մէջ վառ գոյներով նկարագրուած են եղել հայ ժողովրդի քաշած տառապանքները մահմեդական իշխանութիւնների ծանր լուծի տակ։ Այս ամէնը մանուկ Յովհաննէսի վառ յիշողութեան մէջ խորապէս տպաւորուած, հանգիստ չեն տուել նրան երբեք։

Ապա կրթութեամբ ձեռք բերած ծանօթութիւնը Եւրոպական քաղաքակրթութեան ու մշակոյթի, ու նաեւ Ռուսաստանի պատմութեան հետ, ինչպէս եւ իր դարաշրջանի լուսաւոր գաղափարների իւրացումը, — գաղափարներ, որոնք խօսում էին ո՛չ միայն մարդ-անհատի անկապտելի իրաւունքների, այլ եւ ազգերի ազատութեան մասին, — ստեղծում են այն հաստատուն պատուանդանը, որի վրայ եւ հիմնւում է Յովհ. Լազարեանի ապագայ քաղաքական գործունէութիւնը։

Գտնուելով Ռուսաստանի քաղաքական կեանքի կենտրոնում, մշտական շփուելով

*ռուս եւ եւրոպական քաղաքական գործիչների ու դիւանագէտների հետ, աչալուրջ հետեւելով ժամանակակից քաղաքական կեանքի իրադարձութիւնների ընթացքին, նա առիթ չէր փախցնում իր նպատակների ու բաղձանքների իրագործման համար հող պատրաստելու, իսկ այդ նպատակներն ու բաղձանքները միշտ էլ ուղղուած են եղել մի բանի՝* թեթեւացնել իր ազգի կրած տառապանքները ու տալ նրան խաղաղ ապրելու եւ աշխատելու հնարաւորութիւններ:

*Եւ պիտի ասել, որ Եկատերինա Բ. կայսրուհու օրով առիթների պակասութիւն չկար:*

*Ռուս-տաճկական երկու պատերազմները, հարաւային Ռուսաստանի՝ «Նովորոսիայի»՝ նուաճումը մինչեւ Ազով ծովի ափերը Ղրիմի գրաւումը· լաւագոյն առիթները եղան Յովհ. Լազարեանի համար:*

*Օգտագործելով իր բարձր դիրքը, իր սերտ կապերը ու բարեկամութիւնը պետական ականաւոր եւ ազդեցիկ գործիչների հետ, ապա յենուելով կայսրուհու անխախտ բարեհաճ վերաբերմունքի վրայ դէպի իրեն, նա քարոզում ու համոզում էր ամենքին, որ* Ռուսաստանի պետական կենսական շահերը պահանջում են խրախուսել տանկահայերի ու պարսկահայերի գաղթը դէպի Ռուսաստան:

*Հայերը, ասում էր նա, խաղաղ եւ աշխատասէր ժողովուրդ են, բնակութիւն հաս-*

տատելով Ռուսաստանի նորանուած հարաւային ընդարձակ, բայց ամայի ու խոպան տափաստանները, կարճ ժամանակամիջոցում կը շէնացնեն երկիրը, կառուցելով քաղաքներ ու գիւղեր, զարկ կը տան արդիւնաբերութեան եւ ներքին ու արտաքին առեւտուրին, մանաւորապէս Արեւելքի երկիրների հետ, որոնք նրանց լաւ ծանօթ են եւ ուր ունին կապեր. այդպիսով նրանք մեծապէս կը նպաստեն ո՛չ միայն իրենց նոր հայրենիքի տնտեսական բարգաւաճման, այլ եւ տարածելով Ռուսաստանի քաղաքական ազդեցութիւնը, կը բարձրացնեն ռուս պետութեան հմայքը ամբողջ Արեւելքում:

Յովհ. Լազարեանի այս քարոզչութիւնը նպաստաւոր հող գտաւ Եկատերինա Բ. կայսրուհու վարած արտաքին քաղաքականութեան մէջ, որն ո՛չ այլ ինչ էր, եթէ ոչ Պետրոս Մեծի արտաքին քաղաքականութիւնը. կայսրուհին իրեն համարում էր Պետրոս Մեծի գործի շարունակողը, իսկ այդ գործը ունէր մի գերագոյն նպատակ՝ նուաճելով Կասպից, Սեւ եւ Ազով ծովերին կից հողամասերը, ճանապարհ հարթել դէպի Արեւելք, դէպի Ովկիանոսները, դէպի իր առասպելական հարստութիւններով հռչակուած Հնդկաստանը՝ Ռուսաստանի արտաքին առեւտուրի համար:

Եւ Յովհաննէս Լազարեանի քարոզչութիւնն ու այդ ուղղութեամբ թափած ջան-

քերը ո՛չ միայն ի դուր չանցան, պատկուեցին կատարեալ յաջողութեամբ, այլ եւ տուին մեծ արդիւնքներ:

Եւ սկսուեց տաճկահայերի ու պարսկահայերի, ինչպէս եւ Արեւելեան Հայաստանից հայերի գաղթը դէպի Ռուսաստան, ուր նրանք սիրով հիւրընկալւում էին: Մի–երկու տասնեակ տարիներում ծնունդ առան մի շարք հայկական առեւտրական կայաններ՝ քաղաքներ ու գիւղեր:

Բայց բաւական չէր ժողովրդին գրաւել ու բնակեցնել ամայի ու խոպան վայրերում: Անհրաժեշտ էր նաեւ նոր բնակիչներին տալ հնարաւորութիւններ ապրելու եւ աշխատելու:

Եւ Յովհաննէս Լազարեանը ջանք չխնայեց ձեռք բերելու կառավարութիւնից բացառիկ առանձնաշնորհումներ ու արտօնութիւններ, երբեմն նաեւ դրամական օժանդակութիւն: Զբաղականանալով այդքանով, նա ինքն էլ իր առատաձեռնութեան մէջ բերեց մեծ օգնութիւն նրանց, կառուցելով եկեղեցիներ, դպրոցներ, հիւանդանոցներ եւ հոգալով նրանց անհրաժեշտ կարիքները դրամական նուիրատուութիւններով:

Եւ արդիւնքը եղաւ այն, որ այդ գաղթավայրերի հայ ժողովուրդը կարճ ժամանակամիջոցում ստեղծեց իր համար տնտեսական բարգաւաճ վիճակ եւ արդարացրեց կառավարութեան ակնկալութիւնները, դարկ

*տալով տեղական արդիւնաբերութեան, արհեստներին եւ ներքին ու արտաքին առեւտուրին։*

*Այնուհետեւ այդ գաղթավայրերը դարձան նաեւ հայ ազգային մշակոյթի մի-մի վառ հնոցներ։ Բացուեցին մեծ ու փոքր դպրոցներ, տպարաններ, ծաղկեց հայ գիրն ու գրականութիւնը։ Ծնունդ առաւ մի մտաւորականութիւն, որ հազիւ 50 տարի անց, նա կերտեց Հայկական Վերածնութեան փայլուն դարաշրջանը, միշտ համախորհուրդ ու համագործակից Արեւելեան Հայաստանի մտաւորական գործիչների հետ։*

*Իսկ այդ մտաւորականութիւնը ստեղծեց այն լուսաւոր ջահերը, որոնք վառուեցին ամենուրեք. Մոսկուայում՝ Լազարեան ճեմարանը, Հաշտարխանում՝ Աղաբարեան եղբայրների դպրոցը, Ս. Խաչում՝ վանքի դպրոցն ու տպարանը, հիմնուած Յովսէփ արքեպ. Արղութեանի ձեռքով. Թէոդոսիայում՝ Խալիպեան վարժարանը, հիմնուած Գաբրիէլ արքեպ. Այվազեանի ջանքերով. Նոր Նախիջեւանում՝ Գաբրիէլ քահ. Պատկանեանի դպրոցը, ուր, ի միջի այլոց, իր սկզբնական կրթութիւնը ստացաւ 19րդ դարի ամենամեծ հայ գրական-քաղաքական գործիչներից ամենակարկառուն դէմքը՝ Միքայէլ Նալբանդեանը։*

*

Պատմութեան առաջ մեղանչած չլինելու համար, յիշատակենք, որ Յովհաննէս Լազարեանը իր գործունէութեան մէջ ունեցաւ մի մեծ ու անփոխարինելի գործակից եւ աջակից ի դէմս Ռուսաստանի թեմի առաջնորդ Յովսէփ արքեպ. Արղութեանի:

Յովհաննէս Լազարեանը, թէ իր բարձր դիրքի հետեւանքով եւ թէ իր պաշտօնների հոգսերով ծանրաբեռնուած լինելով, որ եւ է հնարաւորութիւն չունէր անմիջականօրէն շփուելու ժողովրդի հետ եւ իր նպատակներն ու ծրագիրներն իրագործելու: Եւ ահա՛ պատմութեան անհասանելի կամքով հանդէս եկաւ մէկը, որ եղաւ նրա մտերիմ բարեկամն ու գործակիցը, եւ որի միջոցով նա կարող էր գործել, յաճախ ինքը մնալով ստուերում, եւ առաջ քաշելով նրան, որի հոգեւորական կոչումը միայն արդէն մեծ առաւելութիւններ էր ներկայացնում:

Բայց Յովսէփ Արղութեանը սովորական հոգեւորականներից չէր. նա պատկանում էր մեր մեծ հոգեւորական դէմքերի շարքին: Բուռն խառնուածքով, անսպառ եռանդով, բնական սուր խելքով, խոր ու անկեղծ հայրենասիրութեամբ, մեծ տակտով ու ճարտար խօսքով նա թողնում էր մեծ տպաւորութիւն իր շրջապատի վրայ: Նա ոչ միայն վայելում էր իր հօտի սէրն ու յարգանքը, այլ եւ ձեռք էր բերել մեծ հեղինակութիւն պետական բարձր շրջաններում, ուր նա մտաւ

*Յովհաննէս Լազարեանի միջոցով։ Նրա ողեւորունչ քարոզները արտասուք էին խլում նոյն իսկ ռուս ականաւոր անձանց աչքերից։*

*Ո՞վ էր Ղրիմի գաղթի կազմակերպողն ու գաղթականների առաջնորդը. ո՞վ էր Նոր Նախիջեւանի եւ Ս. Խաչ վանքի (1791 թ.) հիմնադիրը. ո՞վ էր Գրիգորիոպոլի (1792 թ.) հիմնադիրն ու նրա գաղթական բնակիչների խնամատարը. միշտ եւ ամէն տեղ Յովսէփ արքեպ. Արղութեանը։*

*Բայց այս մեծ հոգեւորականի գործունէութեան պատմութիւնը մեր նիւթից դուրս է։ Ընդգծենք միայն, որ հայ ժողովրդի բախտից էր, որ այդ երկու ժամանակակից հայ գործիչները երբեք չկորցրին իրենց արժանապատուութեան զգացմունքը եւ տեղիք չտուին անհամաձայնութիւնների. միշտ համերաշխ, միշտ իրար նեցուկ, միշտ գիտակից ամէն մէկը իր դերին, նրանք փոխադարձաբար լրացնում էին մէկը միւսի գործը։ Հայի նախանձն ու սնոտի սնափառութիւնը երբեք տեղ չգտան նրանց մեծ սրտերում։ Հաւասարապէս ոգեւորուած հայ ժողովրդի բարօրութեան վեհ գաղափարով, նրանք մի մտահոգութիւն ունէին՝ օգտագործել լաւագոյն կերպով ու մեծագոյն չափով իրենց բարձր դիրքն ու հեղինակութիւնը յօգուտ իրենց բազմաչարչար ժողովուրդի, իրենց «խեղճ» ազգի։*

*Լէօն գեղեցիկ ու միանգամայն իրակա–*

նութեան համապատասխանող կերպով լուսաբանել է այդ երկու հայ մեծ գործիչների փոխյարաբերութիւնները, եւ մենք հաճոյքով խօսքը տալիս ենք նրան՝ հայ գրականութեան ու պատմութեան այդ անխոնջ պրպտողին:

«Յովսէփ արքեպ. Արղութեանին, — ասում է Լէօն — թեւ տուողը, նրա համար բոլոր յարմարութիւններ ստեղծողը, նրա խորհրդատուն՝ Յովհաննէս Լազարեանն էր: Չպէտք է մոռանալ այս անունը. պէտք է միշտ աչքի առաջ ունենալ, որ Արղութեանը, ինչպէս վկայում է ժամանակակիցներից մէկը (Մարգար Խօջենց Երեւանցին), մի քայլ անգամ չէր անում առանց Լազարեանի: Այս երկու անձնաւորութիւնները կատարելապէս յափշտակուած, անխոնջ եռանդով նուիրւում են Պարսկական Հայաստանի ազատութեան գործին:

«Լազարեանն էր, որ մտցրեց առաջնորդին իր բարձրաստիճան ծանօթների շրջանը. նրա միջոցով Արղութեանը ծանօթացաւ ու բարեկամացաւ պետական մարդկանց հետ, ընդունուեց կայսերական պալատում, ուր արժանացաւ Եկատերինայի առանձին բարեհաճութեան եւ ուշադրութեան: Յովսէփ արքեպիսկոպոսի համար մի առանձին բախտ էր, որ իր հօտի մէջ ունէր Յովհաննէս Լազարեանի պէս մի նշանաւոր եւ հայրենասէր հայ: Առանց այդ հայի աջակցութեան նա չէր կարող այնքան առաջ գնալ, այնքան աչքի

*ընկնող դիրք գրաւել: Ի հարկէ, եթէ Արղութեանը չունենար իր մէջ բնական ձիրք, ընդունակութիւններ, Լազարեանի ծանօթութիւնները ոչինչ օգնութիւն չէին անի նրան: Յովսէփին հարկաւոր էին նպաստաւոր հանգամանքներ, շրջան. Մնացածը նա ինքը գիտէր, թէեւ այս էլ պէտք է ասել, որ Լազարեանը համարեա ամէն մի գործի մէջ նրա հետ էր*[1]»:

*

Թէ Յովհաննէս Լազարեանը, թէ Յովսէփ արքեպիսկոպոսը չէին լինի այն մեծ ազգային դէմքերը, եթէ չմտածէին ու չնուիրուէին նաեւ Մայր Հայրենիքում օտար լուծի տակ տառապող հայ ժողովրդի քաղաքական ազատագրութեան գործին:

*Եւ նրանք շատ լաւ էին գիտակցում, որ միայն ազատ ու անկախ Հայաստանի ստեղծումով էր, որ հայ՝ ազգը կարող էր փրկուել ու լծուել խաղաղ ստեղծագործ աշխատանքների եւ բերել իր լուման համամարդկային քաղաքակրթութեան ու մշակոյթի տաճարին: Եւ նրանք, իրօք յափշտակուած այդ իդէալով, գործի անցան:*

*Իսրայէլ Օրին, Յովսէփ Էմինի նման, որոնք եւս այն համոզումն ունէին, որ իրենց*

---

[1] *Լէօ*, «*Յովսէփ կաթողիկոս Արղութեան*», *էջ* 61—62 *եւ* 101—102:

ազգային իղձային կարող են հասնել միայն հզօր Ռուսաստանի միջամտութեամբ ու օգնութեամբ: Բայց այդքանով էլ խնդիրը չէր լուծւում վերջնականապէս եւ ամբողջութեամբ: Նրանք չատ լաւ էին ըմբռնում, որ Հայաստանը ազատագրուելով, չի կարող յարատեւ գոյութիւն ունենալ, շրջապատուած լինելով մահմեդական հոծ ազգաբնակութեամբ ու մահմեդական մեծ պետութիւններով, որոնք պատրաստ էին ամէն վայրկեան վերջ տալու նրա անկախութեան: Նրանք ուզում էին, որպէս զի Հայաստանը միշտ վայելէ հզօր Ռուսաստանի հովանաւորութիւնը եւ դրա մէջ էին տեսնում միակ երաշխիքը:

Մեր ներածութեան մէջ մենք արդէն տեսանք, որ իշխան Պոտեոմկինի ժամանակ Հայաստանի ազատութեան եւ անկախութեան ծրագիրը, ներշնչուած նոյն Լազարեանի կողմից, հէնց այդ երկու հիմնական սկզբունքների վրայ էր դրուած:

Դժբախտաբար, չատ բան մեզ յայտնի չէ — գոնէ մեր ձեռքի տակ եղած աղբիւրների մէջ չկան տեղեկութիւններ Լազարեանի քաղաքական գործունէութեան մասին, բայց պատմութիւնը, բարեբախտաբար, պահպանել է մի չատ կարեւոր ու չափազանց ուշադրաւ փաստաթուղթ, որ որոշ չափով լոյս է սփռում Լազարեանի այդ ուղղութեամբ ունեցած գործունէութեան վրայ, ինչպէս նաեւ որոշ գաղափար է տալիս Լազարեանի քա-

ղաքական հայեացքների ու այն միջոցների մասին, որոնցով նա ուզում էր լուծել հայկական հարցի կնճիռը:

1780 թ. յունուար 10ին Յովհաննէս Լազարեանը ներկայացնում է հռչակաւոր զօրավար Սուվորովին մի յուշագիր, որի մէջ հեղինակը նկարագրում է Արեւելեան Հայաստանի վիճակը եւ ապա ցոյց տալիս այն միջոցները, որոնցով կարելի է վերականգնել Հայաստանի անկախութիւնը:

Այդ յուշագիրը կրում է հետեւեալ վերտառութիւնը.

«Յիշատակագիր պ. Յովհաննէս Լազարեանի՝ Հայաստանի ներկայ դրութեան եւ նրա վերականգնելու միջոցների մասին»:

Լէօն, օգտուելով ռուս պատմիչ Բուտկովի «Նիւթեր Կովկասի պատմութեան համար» հեղինակութիւնից, առաջ է բերում այդ «Յիշատակագրի» հայերէն թարգմանութիւնը իր «Յովսէփ կաթողիկ. Արղութեան» գրքի մէջ (էջ 111—114).

«Հայաստանը — գրում է Յովհաննէս Լազարեանը, — մի քանի դար է ինչ զրկուել է իր թագաւորից եւ առանձին կառավարութիւնից. շատ տեղերի տիրել են թուրքերն ու պարսիկները, իսկ մի փոքր մասը, այսինքն Ղարաբաղը, այժմ էլ մնում է անկախութեան մէջ: Բայց եթէ ազգից մի որ եւ է գլխաւոր դուրս գայ, շատ հեշտ միջոցով կարող է Հայաստանը նորից վերականգնել

եւ մի կարճ միջոցում տեղի կ'ունենայ ժողովրդի մի ո՛չ փոքր հոսանք դէպի Հայաստան: Բնութիւնից ամուր տեղերը բաւական լաւ միջոց կարող են դառնալ ինքնապաշտպանութեան համար. հողի յատկութիւնը եւ կլիման, առանց որ եւ է պակասութեան, կարող են տալ բոլոր հարկաւոր մթերքները, նոյն իսկ սեփական վառօդ, երկաթ եւ արճիճ էլ կարող են ունենալ: Ղարաբաղի մելիքները թէեւ ոչոքից կախում չունեն, բայց իրանց անհամաձայնութեամբ պատճառ են դարձել, որ նրանց ոյժերը ջլատուել են:

«Բացի դրանից, այդ տիրողների ողիտութիւնը բոլորովին անպէտք է դարձնում նրանց թէ իրանց եւ թէ ամբողջ ազգի համար: Միւս տեղերի հայերը, լինելով պարսիկ խաների իշխանութեան տակ, հարստահարուած են եւ նրանց մեծ մասը փախել է Թիւրքիա: Եթէ ժողովրդի ընտրութեամբ կամ բարձրագոյն (կայսերուհու) բարեհաճութեամբ ազգից մի գլխաւոր դուրս գար, առաջին անգամի համար բաւական կը լինէր, որ նա կարողանար հաստատուել Դերբենդում եւ նրան օգնութիւն տրուէր տիրելու Շամախուն եւ Գանձակին. այն ժամանակ Ղարաբաղից եւ Սղնախից, որոնք անկասկած կը միանան, բաւականաչափ զօրք հաւաքելով, կարող է Երեւանն եւ ուրիշ քաղաքներ գրաւել: Դրա համար հարկաւոր է երկու կամ երեք հազարից ո՛չ աւել զօրք երկու տա–

րուայ ընթացքում, մինչեւ որ այդ գլխաւորը կը գրաւէ Երեւանը. գրաւելուց յետոյ, հայկական գաւառների եկամուտներով առանց որ եւ է պակասութեան կարելի է պահել զօրքերի մի մեծ քանակութիւն: Բայց Հայոց գլխաւորը սկզբում պիտի ունենայ մի քիչ թնդանօթաձիգ եւ հետեւակ զօրք, որպէս զի կարողանայ պաշտպանուել եւ ապահով լինել, մինչեւ որ ազգային զօրքը կը սովորէ կանոնաւոր կրթութիւն եւ այնուհետեւ նա ինքը կարող կը լինի ամրացնել իր սահմանները եւ պաշտպանուել Թիւրքիայի եւ Պարսկաստանի յարձակումներից:

«Այսպիսի մի ձեռնարկութիւն կարող է կայսերական մի խօսքով եւ ամենահեշտ միջոցով, առանց ամենափոքր կասկածի անգամ, գլուխ գալ եւ նրա (կայսերուհու) հովանաւորութեամբ մի կարճ միջոցում ո՛չ միայն կ'ամրապնդուի ի յաւիտենական փառս Ռուսաստանի, այլ եւ ապագայում կարող է ծառայել Թիւրքիան եւ Պարսկաստանը ճնշելու համար, որովհետեւ երբ հայ ժողովուրդը կը համախմբուի իր կառավարութեան իշխանութեան տակ եւ մի քիչ էլ կը տարածէ իր սահմանները, այն ժամանակ կը ստանայ աւելի մեծ եկամուտներ, քանի որ կ'ունենայ առատ բերքեր տուող շատ տեղեր եւ ընդ միշտ կը պահէ 15ից մինչեւ 20 հազար զօրք, իսկ Թիւրքերի կամ Պարսկաստանի դէմ պատերազմ լինելու դէպքում՝

*ժամանակով կարող կը լինի գործածել մին-չեւ վախթսուն հազար եւ աւել։ Բայց ի դրա-նից նոյն ազգը պարտաւորուել կարող է, հարկաւոր դէպքերում, Ռուսաստանին տալ զօրք այնքան, որքան կարող կը լինի խուռ-քանչիւր ժամանակ, եւ միշտ երախտապարտ կը լինի Ռուսաստանին իր փրկութեան ու վերականգնման համար, իսկ Թիւրքաց պե-տութիւնը ժամանակով այս փոփոխութիւնից առաջացած մեծ վնաս կը նկատէ թէ իր ժո-ղովրդի եւ թէ իր եկամուտների մէջ»։*

*Անկախ եւ ազատ Հայաստանի այս ծրա-գիրը առանձին մեկնաբանութիւնների կա-րօտը չունի. պարզ երեւում է, որ հեղինակը ջանացել է, մի կողմից, ցոյց տալ իր ռուս բարեկամներին եւ մասնաւորապէս զօրավար Սուվորովին, որոնք միանգամայն անծանօթ են եղել մեր երկրին ու նրա պատմութեան հետ, թէ որքան շահաւէտ է Ռուսաստանի համար Հայաստանի ազատագրութիւնը, եւ, միւս կողմից, որ այդ գործը որ եւ է դժուա-րութիւն չի ներկայացնում. նա ո՛չ մեծ ծախս է պահանջում եւ ոչ էլ զինուորական մեծ ույժ, այլ բաւական է միայն կայսրուհու մի խօսքը, որպէս զի ձեռնարկը հեշտու-թեամբ ի կատար ածուի եւ այն էլ մի շատ կարճ ժամանակամիջոցում...։*

*Այս ծրագրի մանրամասն քննադատու-թեան էլ կարիք չկայ, քանզի նա կազմուած է մի վեհ նպատակով, որն ինքնին արդարաց-*

նում է հեղինակի բոլոր դատողութիւնները,
անկախ նրանից, թէ այդ դատողութիւն-
ները որքան են համապատասխանում իրա-
կանութեան եւ թէ որքան գործադրելի են:

Այսու հանդերձ այս «Յիշատակագիրը»
նշանաւոր է նաեւ այն տեսակէտից, որ ա–
դերասանի բնոյթ չի կրում, որ նրա հեղի-
նակը ջանացել է շահագրգռել Ռուսաստանին
իր ծրագրի գործադրութեան մէջ: Այս կող-
մից Լազարեանը հետեւել է աւելի Իսրայէլ
Օրիի մեթոդին, քան Սիմէօն ու Ղուկաս կա-
թողիկոսներին, որոնց դիմումները մի–մի
աղերսագիր են եղել:



Յովհաննէս Լազարեանի ջանքերն էլ Ռու-
սաստանի օգնութեամբ փրկել իր ազգը,
ստեղծել ազատ եւ անկախ Հայաստան Ռու-
սաստանի հովանաւորութեան ներքոյ յաջո-
ղութիւն չունեցան...: Եւ, ի հարկէ, նրա
մեղքը չէր, նրա ժամանակակից Ռուսաս-
տանը (ինչպէս վերը նկատել էինք), իր սո-
ցիալ–քաղաքական պայմանների մէջ, դեռ ես
այն հզօր Ռուսաստանը չէր, որ ի վիճակի
լինէր նուաճել Արեւելքը:

Պետրոս Մեծի սկսած ներքին բարենորո-
գութիւնները դեռ վերջացած չէին. դեռ չատ
անելիքներ կային ստեղծելու համար մի հզօր
պետութիւն: Բաց ի այդ Եկատերինա Բ.ի
օրով Ռուսաստանի արտաքին քաղաքական
յարաբերութիւնները չափազանց բարդացել

էին ու խճճուել: Լեհաստանի բաժանումները՝ 1773, 1793 եւ 1795 թ., Ֆրանսիական Մեծ յեղափոխութեան բռնկումը եւ նրա հետեւանքով առաջ եկած ռէակցիոն տրամադրութիւնները միապետական երկրներում, Ռուս-տաճկական երկու պատերազմները՝ 1768—1774 թթ. եւ 1787—1791 թթ., Շվեդական պատերազմը՝ 1788—1790 թթ., իսկ ներքին կեանքում՝ 1771 թ. ժանտախտը իր յարակից ժողովրդական ըմբոստութիւններով, այնուհետեւ Պուգաչեւի ապստամբութիւնը 1773 թ., վերջապէս իշխան Պոտեմկինի մահը 1791 թ., որ հայ ժողովրդի ազատագրութեան պաշտպանն էր, — այս ամէնը ստեղծեցին այնպիսի մի ծանր կացութիւն, որ Լազարեանի ծրագրի իրագործումը անհնարին դարձրեց:

Մի խօսքով 18րդ դարում կատարուած ազատագրական քայլերը՝ Իսրայէլ Օրի, Յովսէփ Էմինի, Լազարեանի կողմից ժամանակավրէպ ձեռնարկներ էին, ներշնչուած, մի կողմից նրանց հեղինակների վառ ու անկեղծ հայրենասիրական զգացումներից ու լաւատեսութիւնից, իսկ միւս կողմից՝ այն անյուր տառապանքներից, որոնց ենթակայ էր իրենց «խեղճ» ազգը...:

Բայց եթէ հայ ազատագրութեան այդ ռահվիրաները չհասան գործնահետեւանքների, չտեսան իրենց աչքերով հայի ազատութիւնը, այնուամենայնիւ միանգամայն ա-

*պարզին չանցան, նրանց ջանքերն ու փոր- ձերը.* Նրանց ձեռնարկների բարոյական ու պատմական արժէքը շատ մեծ եղաւ:

*Ո՞վ գիտէ, եթէ այդ անձնուէր, Փանատիկոս-հայրենասէրների թափած ազատագրական ջանքերը տեղի ունեցած չլինէին, եթէ նրանց հայ ժողովրդին ներշնչած վառ յոյսերն ու հաւատը լաւագոյն ապագայի չլինէին, ո՞վ գիտէ, թերեւս, հայ ժողովուրդը իր անհուն տառապանքների մէջ կորցնէր իր դիմադրական ոյժը, մատնուէր յուսահատութեան ու վհատութեան եւ Փիզիքապէս ու բարոյապէս քայքայուէր, լքուէր ու փչանար...:*

*Հայաստանի մռայլ երկնակամարի վրայ ժամանակ առ ժամանակ երեւացող այդ փայլուն աստղերն են եղել, որ լուսաւորել են հայ ժողովրդի դժուարին ճամբան դէպի իր ազատագրութիւնը եւ միշտ վառ պահել լաւագոյն ապագայի յոյսերը*[2]*:*

---

[2] *«Յովսէփ Արղութեանի գործողութիւնները — ասում է Եր. Շահազիզը — երջանկայիշատակ Եկատերինէ Կայսրուհու բարեհաճ ուշադրութիւնը դէպի Հայոց ազգը, իշխան Պոտեոմկինի դիտաւորութիւնները Հայաստանի վերաբերութեամբ քաղցր յոյսեր էին զարթեցնում հայերի մէջ հեռաւոր Հնդկաստանում եւ տոփում էին նոցա սրտերը եւս բաբախելու ընդհանուր հայրենեաց սիրով եւ պատրաստում են նորա շահերի համար նուիրելու իրենց ունեցած-չունեցածը: Հնդկարնակ Շամիր աղա Շահրիմանեանը իր անրաւ ոսկիներով մտածում է գնել Հայաստանը Օսմանցւոց եւ Պարսից ձեռքից. Հնդկարնակ Ամիր խանը դարձեալ նոյն նպատակին հասնելու համար առաջարկում է իր ոսկիները երջանկայիշատակ Նիկողայոս կայսեր,*

Եւ նրանց անունները գրուած են Հայոց պատմութեան մէջ ոսկի տառերով ու մնում են յաւէրժ յիշատակելի:

Նրանց ձեռնարկները եղան մի-մի օղակ հայի ազատատենչ ձգտումների ոսկէշղթայի մէջ, որի մի ծայրը գտնւում է անհուն ժամանակներում, իսկ միւսը հասել է մինչեւ մեր օրերը...:

Փա՛ռք այդ օղակների դարբնողներին...

## ՅԱՒԵԼՈՒԱԾ

### ՅՈՎՀԱՆՆԷՍ ԼԱԶԱՐԵԱՆԻ ԿԵՆՍԱԳՐԱԿԱՆ ՈՒՐՈՒԱԳԾԻՆ

Յիշատակենք նաեւ մի երկու պատմական վաւերագրեր Յովհաննէս Լազարեանի ազգային հասարակական գործունէութեան վերաբերեալ:

Այդ վաւերագրերը ուշագրաւ են եւ արժէքաւոր ո՛չ միայն, որպէս երեւոյթներ նրա յիշեալ գործունէութիւնից, այլ եւ նրա համար, որ գրուած են եղել այն ժամանակ, երբ նա ծանր հիւանդ, գրեթէ մերձ ի մահ վիճակում է եղել...: Ասել է թէ մինչեւ իր վերջին շունչը փչելը չի դադարել հետաքրքրուել ազգային գործերով եւ իր հնարաւորն անել յօգուտ իր սիրեցեալ ազգի:

որ եթէ նա չկամենայ իւր զէնքը գործ դնել, իւր փողով թարեհաճի գնել Այրարատեան աշխարհը Պարսից ձեռքից»: Տե՛ս Եր. Շահազիզ — «Մկրտիչ Յովսէփեան Էմինի», էջ 10—11:

*Այդ վաւերագրերը բերուած են Գիտ քահ. Աղանեանցի* «Դիւան Հայոց Պատմութեան» *մէջ (Գիրք Ա.—Բ., էջ* 103—106) *եւ վերաբերում են Դաւիթ–Դանիէլեան կաթողիկոսական վէճին։*

Առաջին վաւերագիր

*«Յովհաննէս աղայ Լազրով գրում է Եփրեմ եպիսկոպոսին.*

*«Պարոն Կնորինդն եկաւ աստ. Թէպէտ յառաջ ոչ էր ծանօթ ընդ նմա, իսկ ի գալն նորա բարեկամացայ ընդ իւրն եւ ունէաք բաղում խօսակցութիւն ի վերայ ընտրութեան կաթուղիկոսին եւ Գրիգոր վարդապետին, եւ ի յայտ եղեւ որ Գրիգոր վարդապետն հնարագիտութեամբ իւրով բոլորովին այլապէս է հասկացուցեալ նմա զամենայն բանն. եւ յորժամ ունկնդիր եղեւ զիս՝ իսկոյն փոշիմանեաց զհաւատալոյն իւրոյ բանից նորա. եւ խոստացաւ ըստ ամենայնի հետեւել ճշմարտութեան։ — Վասն ընտրութեան եւ հաստատութեան Դաւիթ կաթուղիկոսին՝ եցոյց նա գիր ստացեալ Ստամբօլու ի Տամարէն, որ զեկուցանէ զնա, թէ վասն հաստատութեան Դաւիթ կաթուղիկոսին ֆերմանին ի Սուլթանէն եւ հաւանութեան մահսարք ի բոլոր ազգէն ջանայ փութով ի դուրս հանել. ահա՛ տեսանեմք որ յորժամ մեծի կայսերն մերում ասացեալ են վասն կտակի հանդուցելոյն է օգուտ եւ հարկաւոր*

*վասն ազգի, հաճեալ է զի լինիցի այնպէս... միայն ես որքան կարող եմ, հետեւիմ դարձուցանել զմիտս մեծամեծաց ի կողմն ճշմարտութեան: Իսկ եթէ խիք կերպիւ Գրիգոր վարդապետն կարացու կացուցանել ինքեան սա առաջնորդ ընդդէմ ցանկութեան բոլոր ազգին եւայլն: 1801 9 օգոստոս ի Ս. Բ.:»*

Երկրորդ վաւերագիր

*Այս վաւերագիրը ունի, հետեւեալ նախաբանը, որից յետոյ բերուած է Յովհաննէս Լազարեանի նամակը իր երկու եղբայրներին՝ Մինաս եւ Յովակիմ Լազարեաններին:*

*«...Այլ այսուցիկ ամենայն վերոյգրեալ եղելութեանց համբաւք*[1] *հասեալ ի Ռուսաստան առ տէրութիւնն, մանաւանդ զիր եւ կոնդակ Դաւթի, եւ ընդդէմ նորին ազատակ միաբանիցն էջմիածնի եւ զրութիւնք բողոքանացն Դանիէլի ի Սանկտ Պետերբուրգն Թագաւորանիստ եւ ի Մոսկով առ պերճափառ հարազատսն երեսին Յովհաննէս, Մինաս եւ Յովակիմ վեհազնեայ ազայսն Եղիազարեան, որոց մեծ եղբայր Աղայ Յովհաննէս վեհազն իշխան գտանելով անդ ի Սանկտ Պ'' ծանուցանէ ի դուռն Կայսեր եւ ամենայն իշխանաւորացն տէրութեան զանարժան արարսն Դաւթի եւ Գրիգորի Աղքերմանցւոյ, զտարագրութենէն Դանիէլի եւ*

[2] *Լուրեր Դաւիթ–Դանիէլեան կաթողիկոսների վէճի մասին. հետագայ տողերում պարզւում է, թէ այդ «համբաւք» ինչ դէպքերի մասին էին:*

պատասպանաց միարանիցն. եւ դայլ ինչ ինչ հարկաւորաց ըզը սակս եւ ի քաղաքէ անտի դրէ ի Մօսկով առ երկոսին հարազատսն իւր՝ հոգ տանել ընդ նուիրակ եւ առաջնորդ Եփրեմ արքեպիսկոպոսին ի դալ անդր ի Մօսկով Ալէքսանդր Պավլովիչ կայսերն յօծումն թագընկալութեան եւ զիրաւունսն ի լոյս հանել: Ձի գոլով ինքն ի ծերութեան եւ անձամբ իսկ տկար ի մահիճի, անկար էր ամենայնի անձամբ լինել հոգացող. այլ միայն ի Ս. Պ. հոգացաւ զհարկաւորսն կանխաւ. այս օրինակ.

«Ազգասէրեան Մինաս եւ Յովակիմ

Սիրեցեալ եղբարք իմ:

«Յուսամ որ սրբազան Եփրեմ արքեպիսկոպոսն ժամանեալ իցէ ի Մօսկով՝ առել նմա, որ նորին Կայսերական Մեծութիւնն հաստատեալ է ըստ ըղձի ազգին. եւ գրէ իսկ ի մեծն Պօլիս առ Թամարով դեսպանն, զի մի թողցէ հանել ֆէրման վասն Դաւթին, թէ հանեալ եւս իցէ՝ փոխարկել: Եւ այժմ պարտ է սրբազանին Դանիէլի իմացումն առնել՝ որ այսուհետեւ զնմանէ է կախեալ պատրիարգական իշխանութիւնն:

«Նաեւ հրաման է Երեւանու խանին մի ըստ ձեռնամուխ լինել արգելման ի յառաջ մատչումն Դանիէլին. զի նմա ոչինչ գոյ գործ: Իսկ Եփրեմ արքեպիսկոպոսն հա–

*առնեալ է լինել առաջնորդ Հայոցս Ռուսաստանու․ ուրեմն խնդրեմ ի ձէնջ՝ որ յամենայն գործառնութիւնս եւ յամենայն պատահմունս նպաստ եւ ձեռնտու լինիք դորին սրբազնութեան կացուցանելով զդա առաջի նորին բարձր Սրբազնութեան տեառն Ամբրոսիոսի միտրապօլտին, նաեւ Տրօշինսկոյն, ենարալ պրօգօրօրին կնեազ Ալէքսէյ Պօրիսիչ Կուրակինին, եւ այլոց ում եւ պատկանի․ որ եւ մնամ բարեաց ձերոց եւ* բոլոր ազգին[2] *իմոյ բաղձացող խոնարհ եղբայր ձեր*

*Յովհաննէս Ազատարեան*:

1801 *սեպտ*․ 6:

*Ի Ս․ Պ*․:»

*Այս նամակի ամսաթուից երեւում է, որ նամակը գրուած է կոմս Յովհաննէս Լազարեանցի կողմից նրա մահուանից մի ամիս* 18 *օր առաջ․ նա վախճանուել է յաջորդ ամսին՝ հոկտեմբեր* 24*ին*:

*

*Նա իր ծանր մահամերձ վիճակում չէր դադարում կարգադրելու ազգային գործերը, չէր մոռանում նոյն իսկ իր մասնաւոր նամակում իր լաւագոյն բարեմաղթութիւններն անելու ազգին*․․․:

---

[2] *Ընդծումը մերն է*:



Մինաս Լ․ Լազարեանց

## ԳԼՈՒԽ Գ.

## ՄԻՆԱՍ ՂԱԶԱՐԵԱՆ ԼԱԶԱՐԵԱՆՑ
(1737—1809)

*Մինաս Լազարեանը ցեղապետ Ղազար Նազարեան Լազարեանցի* երկրորդ *որդին էր, ծնուած Ն. Ջուղայում* 1737 *թ. եւ հօր ու միւս երեք եղբայրների հետ տեղափոխուած Ռուսաստան փոքր հասակում:*

*Կենսագրական տեղեկութիւնները շատ պակասաւոր են:*

*Մ. Մսերեանցն անգամ նրա կենսագրականին նուիրել է ընդամէնը մի էջ, իսկ Պրոֆ. Ա. Ջինովեւը՝* 10 *տող...:*

*Ըստ ընդունուած սովորութեան Մինաս Լազարեանն եւս մտնում է պետական ծառայութեան մէջ, որը, ըստ երեւոյթին, չի բաւարարել նրան բարոյապէս եւ անհամապատասխան է եղել նրա հեզ բնաւորութեան, ուստի Պալատական Խորհրդականի (Նադվորնի սովետնիկ) աստիճանին հանելով, թողնում է ծառայութիւնը ու նուիրւում ազգային հասարակական ու բարեգործական աշխատանքների:*

*Մինաս Լազարեանի պետական ծառայութիւնից յայտնի է, որ ռուս-տաճկական երկրորդ պատերազմի ժամանակ եղել է իշխան Պօտեոմկինի քաղաքական գործերի խորհրդատուն, իր մեծ եղբօրից յետոյ:*

1800 *եւ* 1806 *թթ. Մոսկուայի Ս. Խաչ եկեղեցու բակում կառուցել է երկու քարա—*

չէն եւ երկու փայտաշէն տներ, իսկ 1815 թ., նրա մահից յետոյ, բայց նրա ծախսով, նրա եղբայր Յովակիմը, աւելացնելով որոշ գումար, կառուցում է մի փոքրիկ, բայց գեղեցիկ եկեղեցի Ս. Յարութիւն Քրիստոսի անունով Հայոց Վագանկովսկի հանգստարանում, իսկ այդ եկեղեցու կողքին փայտաշէն տուն Գերեզմանատան պահապանների եւ գերեզմանատուն եկող յուղարկաւորների հանգստեան համար:

Մ. Մսերեանցը հետեւեալ կարճ խօսքերով է բնութագրում Մինաս Լազարեանին. «Սա գառաջինն ի ծառայութեան կայր յԱրքունի. զՊալատական խորհրդականի ունելով զաստիճան: Կամակա՛ր ապա հրաժեշտ ի պաշտամանէն տուեալ, եւ ամենայնիւ գործոց բարեպաշտութեան զանձն նուիրեալ մինչ ցվախճան իւր, անուն ժառանգեաց արժանապէս զառն բարեյաւի՝ իմաստնոյ եւ հայրենասիրի. զի (որպէս եւ ականատեսացն վկայեն բանք) զամենայն աւուրս իւր նշանաւորս կացոյց նա՝ յօգուտ ազգին եւ հայրենեացն անխոնջ վաստակեալ, եւ յոլով կրեալ աշխատութիւն ի դէպս կարեւորագոյն գործոց քաղաքայնոց եւ եկեղեցականաց, մանաւանդ ի բնակեցուցանելն ի Ռուսաստան զմերազգեայ ժողովուրդս» (էջ 18):

Մոսկուայի Փրեսնեա թաղամասի Ս. Աստուածածին Հայոց եկեղեցուց, կառուցուած դեռ 17րդ դարում, փոխադրում է իր

հանդուցեալ ազգականների մարմինները եւ ամփոփում Վաղանկովսկի Հայոց գերեզմանատանը:

Այնուհետեւ Ալ. Երիցեանն է, որ իր մի շարք պատմական ուսումնասիրութիւնների մէջ տալիս է մեզ թանկագին տեղեկութիւններ Մինաս Լազարեանի ազգային հասարակական գործունէութեան մասին: Այդ տեղեկութիւններից երեւում է, որ Մ. Մսերեանցի վերոյիշեալ խօսքերը, թէ «յօգուտ ազգին եւ հայրենեացն անխոնջ վաստակեալ» որ եւ է չափազանցութիւն չեն պարունակում կամ սին գովասանք չէ, եւ որ Մինաս Լազարեանը, իրօք, շատ գործօն մասնակցութիւն է ունեցել իր ժամանակի ազգային, մանաւանդ թէ եկեղեցական գործերում:

Խօսքը տալիս ենք Ա. Երիցեանին:

«Դեռ նոր էր սկսւում Դաւիթ–Դանիէլեան կռիւը[1], երբ 1801 թ. հոկտեմբերին վախճանուեց Լազարեանց աւագ եղբայր Յովհաննէսը, — նա որ այնքա՛ն նպաստեց Արղութեանց Յովսէփի կաթողիկոսանալուն: Վախճանուածին յաջորդեցին Մինաս եւ Յովակիմ եղբայրներն եւ նոյնքան եռանդով խառնուեցին ազգային գործերում: Յայտնի է, որ սկզբում, երբ Յովսէփի եւ

[1] Դաւիթ–Դանիէլեան կաթողիկոսների վէճը տեղի է ունեցել 1801—1807 թթ. եւ տեւելով ամբողջ վեց տարի մեծամեծ փնասներ է տուել — բարոյական ու նիւթական — էջմիածնին եւ ազգային ընդհանուր շահերին:

Դանիէլի մէջ վիճակ պիտի ընկնէր՝ թէ նոցանից ո՞վ լինի կաթուղիկոս, Լազարեանք Յովսէփին կամեցան եւ Դանիէլին աքսոր ուղարկել տալով՝ յաղթանակ տարան յօգուտ Արղութեանի: Բայց Յովսէփի վախճանուելուց յետոյ, երբ ազգը կրկին անգամ ընտրեց Դանիէլին, Լազարեանք ո՛չ միայն սորա ջերմ կուսակիցք դարձան, այլ եւ կայսերական հրովարտակով հաստատել տուին կաթողիկոսական աստիճանում»:

Դաւիթ – Դանիէլեան վէճը չափազանց ծանր տպաւորութիւն է թողնում Լազարեան եղբայրների վրայ: Սրանք չափազանց մտահոգուած Ս. Էջմիածնում տիրող ծանր դրութիւնով, խորհում են, թէ ի՞նչ միջոցներով հնարաւոր է Էջմիածնի կեանքը բարելաւել ու դնել հաստատուն, օրէնքով որոշուած հիմունքների վրայ: Այս մասին Երիցեանը պատմում է հետեւեալը.

«Վշտանում էր մայրաքաղաքում նստած ազգասէր եղբարց սիրտը, երբ նոցա ականջին էին հասնում Էջմիածնում կատարուող տխուր ու խայտառակ անցքերի համբաւները: Լազարեաններն այդ բոլորը վերագրում էին Էջմիածնում կարգ ու կանոն չլինելուն, որից, ի հարկէ, օգուտ էին քաղում վանքի անզուսպ միաբանները: Հետեւաբար նոքա այն համոզմունքին էին գալիս, որ եթէ Հայոց հոգեւորականութիւնը մի հաստատ վարչական կանոնադրութիւն ունենայ, վերջ

կը դրուի բաղդախնդիրների կամայականութեանցը: Միւս կողմից՝ համեմատելով Հայոց հոգեւոր բարձրագոյն վարչութեան անմխիթար դրութիւնը ռուսաց եկեղեցւոյ վարչական կազմակերպութեան հետ, որի Սինոդը կարողանում է խաղաղութեամբ կառավարել իւր բազմաթիւ հօտը, Լազարեանք կարծում էին, թէ անհրաժեշտ է մի սինոդական կառավարութիւն հաստատել եւ այս մտքի ի կատար ածելն առաջարկում էին Դանիէլ կաթողիկոսին:

«Մինաս Լազարեանցը իւր այս ցանկութեան մասին 1805 թուին գրեց Հաշտարխան — Եփրեմին, եւ Թիֆլիզ — Յովհաննէս Գեղարդակրին, առաջարկելով սոցա, որ համոզեն Դանիէլ կաթողիկոսին, որպէս զի էջմիածնում մի սինոդասարան հաստատէ եւ իւր նախագահութեամբ ու որոշ կանոններով կառավարէ Եկեղեցւոյ վարչական գործերը[2]»:

Երիցեանը այնուհետեւ հաղորդում է, որ կաթողիկոսը ընդառաջեց Մինաս Լազարեանի առաջարկին եւ համապատասխան դիմում կատարեց ռուսաց կառավարութեան, բայց վերջինս հրաժարուեց ընթացք տալ այդ դիմումին պատճառաբանելով, որ էջմիածինը գտնւում է Պարսից տիրապետութեան ներքոյ եւ ռուս կառավարութիւնը չի կարող

[2] Ալ· Երիցեան, «Կովկասահայք», Հ· Ա·, էջ 264—267· ու նաեւ նոյն հեղինակի՝ «Ներսէս եպիսկոպոսը Դանիէլ կաթողիկոսի ժամանակ», էջ 9:

մի օտար պետութեան ներքին գործերին մի-ջամտել:

Ինչպէս յայտնի է, Մինաս Լազարեանի այդ մտայնացումը 31 տարուց յետոյ իրականութիւն ստացաւ:

1828—1829 թթ. ռուս-պարսկական պատերազմի յաջող վախճանից յետոյ, երբ ամբողջ Արարատեան աշխարհը «Հայոց Նահանգ» անուան տակ կազմեց Ռուսաստանի մի մասը, նոյն մտքին եկաւ նաեւ Պասկեւիչը, բայց, ի հարկէ, բոլորովին տարբեր շարժառիթներից մղուած: Նա խնդիրը անմիջապէս դրեց գործնական գետնի վրայ: Երկար բանակցութիւններից յետոյ կենտրոնական իշխանութեան հետ, ի վերջոյ մշակուեց մի Կանոնագիր, որը կայսեր հաւանութիւնը ստացաւ եւ ապա կայսեր յատուկ հրովարտակով այդ Կանոնագիրը գործադրութեան մէջ դրուեց. դա՝ համբաւաւոր 1836 թ. «Պոլոժէնիէն» էր. որի մասին խօսեցանք արդէն:

Երիցեանը իր մի այլ աշխատասիրութեան մէջ՝ «Նիւթեր Ներսէս Ե.ի կենսագրութեան համար» պատմում է, որ Մինաս Լազարեանը եղել է մշտական սերտ յարաբերութիւնների մէջ Ս. էջմիածնի հետ՝ թէ կաթողիկոսի եւ թէ միաբաններից ոմանց հետ: Նա յիշատակում է մի շարք նամակներ, որոնք գրուած են եղել Ներսէս Աշտարակեցու կողմից, նրա դեռ արեղայ եւ վարդապետ եղած ժամանակաշրջանում (1794, 1800—1808 թթ.) ազա

*Մինաս Լազարեանին եւ վերջինից ստացած պատասխանները: Երիցեանը առաջ է բերում նաեւ այդ նամակների բովանդակութիւնը: Այդ նամակները արժէքաւոր են ոչ միայն նրա համար, որ լոյս են սփռում մեր եկեղեցական կարգերի վրայ, այլ եւ վկայում են, թէ որպիսի՜ մեծ ջերմեռանդութեամբ ազա Մինասը նուիրուած է եղել իր ազգին եւ ազգային եկեղեցուն:*

*Երիցեանը իր* «Ներսէս եպիսկոպոսը Դանիէլ կաթողիկոսի ժամանակ» *գրքոյկում հաղորդում է մի ուրիշ փաստ եւս.*

*«... Դանիէլ կաթողիկոսը դեռ եւս օգոստոս ամսին դարձաւ ռուսաց կայսեր՝ խընդրելով Եփրեմի կաթողիկոսացնելու մասին: Կաթողիկոսի նամակը կայսերական դրանը հասցնողն եղաւ ազա Մինաս Լազարեանը, վերջինս իւր կողմից եւս միեւնոյն մաքի մի խնդրագիր ներկայացրեց արքային»:*

*Յայտնի է, որ այդ դիմումները անհետեւանք չմնացին եւ որ Դանիէլ կաթողիկոսի մահից յետոյ Ռուսաստանի Հայոց թեմի առաջնորդ Եփրեմը՝ կաթողիկոս ընտրուեց:*

*Երիցեանը իր «Կովկասահայք»ի Բ. հատորի մէջ հետեւեալ դնահատանքն է տալիս ընդհանրապէս Լազարեաններին ու նրանց ազգանուէր գործունէութեան.*

*«Գուցէ ո՛չ Արղութեանց Յովսէփ արհին, ո՛չ Դանիէլը եւ ոչ խակ Եփրեմը երբեք*

*չատանալին Ռուսիոյ կայսրից իւրեանց կաթողիկոսական հաստատութեանց հրովարտակները, եթէ այնքան ջանք գործ չդնէին Լազարեան Յովհաննէս, Մինաս եւ Յովակիմ եղբայրները: Այս պայազատ ու մեծատուն անձինք կշիռ եւ նշանակութիւն ունէին Ռուսական Արքունեաց առաջ, եւ սիրելի լինելով մայրաքաղաքների մեծամեծաց աչքում, միշտ լսելի էին անում իւրեանց ձայնը Հայոց վերաբերեալ խնդիրներում:*

*«Նոքա ջերմ եւ անկեղծ սիրում էին իւրեանց մայրենի եկեղեցին եւ ազգը, եւ հաւատարմութեամբ պաշտպանելով ազգիս շահերը, նիւթապէս եւ բարոյապէս նախանձախնդիր էին Հայոց յառաջադիմութեանը: Սահմեղական բռնակալութեան տակ ճնշուող հայերի աչքերը դարձած էին առ Լազարեան եղբայրները, որոնք նոցա համար մի լուսատու աստղ էին հեռաւոր հիւսիսում: Սիմէոն եւ Ղուկաս կաթողիկոսների ժամանակներից Լազարեանց կայսերական դրան առաջ Հայոց հայրապետի «վէքիլ» (հաւատարմատարն) էին ճանաչուած եւ սոցա օգնութեանն էին դիմում, ով որ եւ է ակնկալութիւն ունէր Ռուսիոյ տէրութիւնից: Այս վեհանձն եւ ազգասէր եղբարց բազմաճիւղ գրագրութիւնները կուտակուած են Մոսկուայի Լազարեան ճեմարանի մատենադարանում, որոնք մի օր լոյս աշխարհ գալով, պիտի*

լուսաբանեն նոցա բազմակողմանի գործունէութիւնը յօգուտ իւրեանց ազգի[3]»:

⁂

Մինաս Լազարեանը անզաւակ վախճանուել է 72 տարեկան հասակում՝ 1809 թ. յունուար 18ին. թաղուել է Ս. Պետերբուրգի Հայոց հանգստարանում եւ ունի հետեւեալ պարզ տապանագիրը.

«Յայսմ վայրի հանգչին ոսկերք առն բարեպաշտի՝ խորհրդականի Արքունի դրան Մինասայ Լազարեան Լազարեանց, ծնելոյ ի Ջուղայ, եւ փոխելոյ ի յաւիտենական կեանս ի հասակի եօթանասուն երկուց ամաց՝ ի 18 յունուարի 1809 ամի»:

## ԽԱՉԱՏՈՒՐ ՂԱԶԱՐԵԱՆ ԼԱԶԱՐԵԱՆՑ
(1741—1774)

Ցեղապետ Խօջա Ղազար Նազարեան Լազարեանցի երրորդ որդին էր Խաչատուր Լազարեանը. ծնուել է Ն. Ջուղայում 1741 թ. դեկտեմբեր 12ին:

Սա չի ունեցել աչքի զարնող ազգային հասարակական գործունէութիւն, մանաւանդ որ վախճանուել է շատ վաղ՝ 32 տարեկան հասակում:

Խաչատուր Լազարեանի ամենամեծ գործը, որով անմահ յիշատակ է թողել եւ

[3] Տե՛ս Հ. Բ., էջ 264—265:

*որին ինքն էլ դոհ գնաց, դա՝ Մոսկուայի Հայոց վերացման Ս. Խաչի քարաշէն եկեղեցու կառուցումն է իր սեփական նիւթական միջոցներով: Այդ եկեղեցին մինչեւ այսօր էլ կանգուն է եւ Մոսկուայի հայ համայնքի կրօնական կարիքներին է բաւարարում: Գտնւում է Հայոց փողոցում, Լազարեան ճեմարանի դէմ-դիմաց:*

*Եկեղեցու կառուցումը աւարտուել է* 1779 *թուին. նրա շինութեան աշխատանքներին Խաչատուր Ղազարեանցը անձամբ հսկել է եղել, որի ժամանակ էլ ցրտառութիւն է ունենում, հիւանդանում է ու վախճանւում, առանց տեսնելու եկեղեցու շինութեան աւարտումը,* — 1774 *թ. Յունիս* 11*ին: Թաղուած է Մոսկուայի Հայոց Վագանկովսկի Գերեզմանատանը:*

*Տապանագիրն է.*

*«Յանդիման վիմիս ամփոփեալ կան ոսկերք Ազնուատոհմիկ առն՝ Խաչատրոյ Լազարեան Լազարեանց, որ ծնեալ ի Նոր Ջուղայ մերձ յԱսպահան յամի* 1741, *ի* 12 *դեկտեմբերի, փոխեցաւ ի կեանսն յաւիտենից ի* 11 *յունիսի* 1774 *ամի, ի Մոսկով»:*

## ԳԼՈՒԽ Դ.

### ՅՈՎԱԿԻՄ ՂԱԶԱՐԵԱՆ ԼԱԶԱՐԵԱՆՑ
(1743—1826)

Յեղապետ Խօջա Ղազարի չորրորդ՝ կրտսեր որդին էր Յովակիմ Լազարեանը. նա ծնուել է Ն. Ջուղայում 1743 թ. սեպտեմբեր 5ին:

Լազարեան մեծահամբաւ տոհմի առաջին եւ երկրորդ սերունդի բոլոր անդամների կեանքի ու գործունէութեան մասին տեղեկութիւնները, ցաւօք սրտի, չափազանց պակասաւոր են, մինչդեռ կարելի էր սպասել, որ նրանց երկու կենսագիրները՝ Մ. Մսերեանցն ու Պրոֆ. Ալ. Զինովեւը, որոնք իրենց աշխատութիւնները գրել են 1856 եւ 1863 թթ. այսինքն՝ երբ դեռ կենդանի էին տոհմի երկու նշանաւոր ներկայացուցիչները՝ Յովհաննէս եւ Խաչատուր Յովակիմեան Լազարեանները, երբ ողջ էին նաեւ շատերը նրանց ժամանակակիցներից, երբ դեռ թարմ էին յիշողութիւնները, կը տային աւելի հարուստ եւ աւելի արժէքաւոր տեղեկութիւններ նրանց մասին, բայց իրականին մէջ այդպէս չէ. երկուսն էլ շատ համառօտ եւ նոյն իսկ շատ ժլատ են...:

Մեզ օգնութեան է գալիս կրկին Ալ. Երիցեանը իր մի շարք ուսումնասիրական պատմական մեծարժէք գործերով, որոնց մէջ գրուած են արժէքաւոր տեղեկութիւններ Լազարեանների մասին։

Յովակիմ Ղազարեան Լազարեանցը ունեցել է թէ պետական եւ թէ ազգային հասարակական բեղուն գործունէութիւն, սակայն նրա մեծագոյն գործն եղել է ամենից առաջ ի կատար ածել իր մեծ եղբօր՝ կոմս Յովհաննէս Լազարեանցի կտակը՝ հիմնել Մոսկուայում հայ չքաւոր մանուկների համար Հայոց դպրոց, հանգուցեալի թողած 200·000 ռուբլի դրամագլխով։

Եւ արդարեւ, Յովակիմ Լազարեանի ամբողջ կեանքը կապուած է եղել այդ դպրոցի՝ Լազարեան Ճեմարանի հիմնադրութեան նախապատրաստական եւ կառուցման աշխատանքների, նրա կրթական գործի լաւագոյն կազմակերպութեան, նրա նիւթական ապահովութեան եւ իրաւական վիճակի բարեկարգման մեծամեծ ու տանջող հոգսերի հետ։ Ճեմարանի առաջին տասնամեակի պատմութիւնը՝ պատմութիւնն է այդ Յովակիմի թափած ջանքերի, նրա բարոյական ու նիւթական զոհաբերութիւնների։ Նա եղել է կառավարութիւնից հաստատուած Ճեմարանի առաջին հոգաբարձուն եւ de facto նաեւ նրա առաջին վերատեսուչ (Դիրեկտորը)։

Նրա պետական ծառայութեան մասին գրեթէ ոչինչ չգիտենք. գիտենք, որ Մոսկուայի նահանգի ռուս ազնուականութիւնը ընդունել է նրան իր շարքերի մէջ 1792 թ. որ ստացել է 1812 թ. Հայրենական պատերազմի առթիւ կայսերական հրովարտակով սահմանուած Ոսկեպղնձեայ Շքադրամ Վլադիմիրեան ժապաւէնով. որ 1816 թ. ստացել է Ասպետական շքանշան Հրամանատար կարգի Ս. Յովհաննու Երուսաղէմացւոյ:

Այս Յովակիմը ունեցել է Տուլա քաղաքից 45 վերստ հեռաւորութեան վրայ կալուած՝ Պօկրովսկոյէ գիւղը:

Այս կալուածում Յովակիմ Լազարեանը 1787 թ. ընդունել է Եկատերինա Բ. կայսրուհուն իր մեծ շքախմբով, բաղկացած 21 երկսեռ հոգուց, երբ մեկնելիս է եղել այցելութիւն տալու նորանուաճ Նոր Ռուսիային՝ Խերսօն քաղաքին ու Ղրիմին: Այս Յովակիմը ընդունել է կայսրուհուն մեծ պատիւներով, սրտագին ու շքեղ հիւրասիրութեամբ: Կայսրուհին մնացել է երկու օր, հանգստացել եւ ապա շարունակել իր ճամբորդութիւնը: Եկատերինան եւ նրա շքախումբը մնացել են այնքան գոհ հիւրասիրութիւնից, որ կայսրուհին նուիրել է նրան՝ «մատանի մեծագին եւ տուփ ադամանդեայ», հաղորդում է Մ. Մսերեանցը:

Գէորգ Քանանեանը իր վերը յիշատակուած ճառի մէջ, տասուած ձեմարանի 50ամեակի առթիւ կայացած հանդէսին, տալիս է Յովակիմ Լազարեանի հետեւեալ բնութագիրը․

«Մեծահոգի կատակարար կոմս Յովհաննէս Լազարեանը չէր կարող գտնել աւելի լաւ գործադրող իր բարի կամքի, քան էր նրա կրտսեր եղբայրը՝ Յովակիմ Լազարեանը։ Սա ստեղծուած էր հասարակութեան օգտին ծառայող գործերի համար։ Յովակիմ Լազարեանը պատկանում է այն փոքրաթիւ մարդկանց շարքին, որոնց համար կեանքը յարատեւ սխրագործութիւնների մի ամբողջ շարան է։ Յովակիմ Լազարեանը անարատ բնաւորութեան տէր մարդ էր, վեհ հոգով ու լուսաւոր մտքով։ Աշխարհի ունայն հրապոյրները ոչինչ արժէք ունէին նրա աչքում։ Մնուցանելով իր մէջ քաղաքացիական զգացումներ, ունենալով խոշոր նիւթական կարողութիւն, նա վարում էր նահապետական պարզ կեանք․ նա վզրուկ էր (вельможа — «վելմոժա» — «ջենտըլմէն» Յ․ Թ․) բառիս լաւագոյն իմաստով։ Այն խոր յարգանքը, որ տածում էին դէպի նրա հայրենակիցները, մի բնական ու ակամայ տուրք էր, որ տրւում էր նրան նրա բարձր բարեմասնութիւնների համար, իսկ նրա բարոյական ազդեցութիւնը իր հայրենակիցների վրայ՝ անսահման էր։ Ի հարկէ, նրա ձգտումների միակ նպատակն

էր՝ հանրային շահը: Քրիստոնէական բարեգործութիւնը նրա հոգու պահանջ էր: Այդ իսկ պատճառով իր հանգուցեալ եղբօր միտքը՝ կառուցել դպրոց հայ երեխաների համար, կենդանի արձագանգ գտաւ նրա սրտում. զարմանալի չէ, եթէ այդ միտքը դարձաւ նրա սեփական գուրգուրալից միտքը: Նա նուիրուեց նրա իրագործման իր ազնիւ սրտի ամբողջ թափով. նա նուիրեց նրան իր բոլոր բարոյական կարողութիւնները, իր ամբողջ երկարատեւ կեանքը, իր հարստութեան մի խոշոր մասը: Այս առաքինի քաղաքացին իր մեծագումար նուիրատուութեամբ, իր անխոնջ աշխատանքներով ու խնամքով կառուցեց մեր այս դպրոցը, որը այսօր ապրում է իր 50ամեակը» (էջ 16—17):

Իսկ Պրոֆ. Ալ. Ջինովեւը իր կողմից հետեւեալ կերպով է բնութագրում աղա Յովակիմին.

«Յովհաննէս Լազարեանը իր առողջամիտ նախատեսութեան մէջ եւ իր ընտանիքի անդամների ընդհանուր համաձայնութեամբ, նախապատուութիւն տուեց իր կրտսեր եղբօր՝ Յովակիմին, ընտրելով իրեն յաջորդ, եւ չսխալուեց այդ ընտրութեան մէջ:

«Յովակիմ Լազարեանի բոլոր ձեռնարկները եւ այն դիրքը, որ նա կարողացաւ ստեղծել իր համար, այդ անմոռանալի մարդը, ապացուցեցին, որ նա պատուով եւ արժանաւորութեամբ կատարեց եղբօր կտակը:

«Յովակիմ Լազարեանը պատկանում է այն մարդկանց շարքին, որոնք գիտեն լինել կենտրոնական դէմք եւ չենթարկուել բազմազան հանգամանքներին, որոնք անխուսափելի են հասարակական կեանքի ու գործունէութեան մէջ: Գիտակցելով իր բարոյական ոյժը, նա յարմարեցնում էր նրա հետ իր գործառնութիւնները, դրա համար էլ նրանք միշտ ճիշտ էին, հիմնաւոր էին ու բարեյաջող: Որպէս քրիստոնեայ եւ իր ընտանիքի բարի հայր, նա շատ ծառայութիւններ է մատուցել Եկեղեցուն եւ դաստիարակել իր երեխաներին աստուածավախութեան ոգով. որպէս բարի կալուածատէր եւ հարուստ դրամատէր՝ մխիթարում էր իր գործերի ծաղկեալ վիճակով. որպէս առաքինի քաղաքացի, ամենքից յարգուած էր, եւ որպէս մարդկութեան բարեկամ, նա իր կենդանութեան ժամանակ եւ մահուանից յետոյ մեծ բարեգործութիւններ է արել ու չահել բարի յիշատակ եւ օրհնութիւն: Այդպիսի մի կեանք հարուստ չէ արկածներով, բայց նրա ամբողջ կեանքը նման է մի լուսապայծառ օրուան, որ իր արեւմուտից յետոյ էլ թողնում է լուսաւոր յիշողութիւններ[1]»:

⁂

[1] Տե՛ս Պրոֆ. Ջինովեւ, էջ 18:

*Ինչպէս իր մեծ եղբայրները, աղա Յովակիմն էլ միշտ բերել է իր հեղինակաւոր աջակցութիւնն ազգային գործերի կարգադրութեան մէջ. Նրա տան դռները, ինչպէս նաեւ հետագայում իր որդիների տան դռները, միշտ բաց են եղել հիւրընկալելու թէ Հայոց կաթողիկոսներին եւ թէ հայ ազգային գործիչներին:*

*Այսպէս, օր., Ալ. Երիցեանը հաղորդում է.*

*«...Օգոստոս մէկին Եփրեմը հանդիսաւոր մուտք գործեց կայսերական մայրաքաղաքը եւ իջաւ Յովակիմ Լազարեանի պատրաստած ապարանքում: «Աստուած կեանք տածէ — գրում էր կաթողիկոսի ուղեկից Ոսկէթէոս եպիսկոպոսը Էջմիածնայ — որ հոգաց գծախս ամին 300 րուբլի յինքենէ տալով... եւ միշտ աղա Յովակիմն փոյթ է չուտով հոգալ զգործ մեր ի դարձուցանել...*[2]*»:*

*Շնորհիւ Յովակիմ Լազարեանի ջանքերի նոյն օգոստոս 20ին կայսրը՝ Ալէքսանդր Ա.նը ընդունում է Եփրեմ կաթողիկոսին, որին ուղեկցել էին յիշեալ Ոսկէթէոս եպիսկոպոսը, երկու վարդապետներ եւ ինքը Յովակիմ Լազարեանը:*

*Ա. Երիցեանը հաղորդում է մի այլ ուշագրաւ դէպքի մասին.*

---

[2] *Տե՛ս Ա. Երիցեան, «Կովկասահայք», Հ. Ա., էջ 49: Յիշատակենք, որ Եփրեմը կաթողիկոս է եղել* 1809—1830 *թթ.:*

«1817 *թ․, երբ Ներսէս արքեպիսկոպոսը (հետագայում կաթողիկոս) արդէն միտք էր յղացել Թիֆլիսում հիմնել մի դպրոց եւ մտահոգուած էր նիւթական միջոցներ հայթայթելու խնդրով, ուրախութեամբ իմանում է, որ դեռ* 1801 *թուին վախճանուած Յովհաննէս Լազարեանը, Լազարեան ճեմարանի հիմնադիրը, կտակել է, որ երբ Թիֆլիսում Հայոց ուսումնարան լինի, իր ժառանգներից ստանան* 3000 *ռուբլի*»։

*Ապա Երիցեանը հաղորդում է, որ* 1818 *թ․ Յովակիմ Լազարեանը վճարել է այդ գումարը, աւելացնելով նրա տոկոսները՝* 2000 *ռուբլի եւ իր կողմից էլ նուիրաբերելով նոյն նպատակին* 2100 *ռուբլի․ ընդամէնը՝* 7100 *ռուբլի*։

*Այս տեղեկութիւնները չափազանց արժէքաւոր են․ ի հարկ է ո՛չ թէ նրա համար, որ Լազարեան երկու եղբայրները դրամական օգնութիւն են տուել Ներսիսեան դպրոցին, քանզի նման բարեգործութիւններ բազմաթիւ են եւ միշտ էլ յատուկ են եղել այդ գարմանալի տոհմի բոլոր անդամներին, — այլ նրա համար, որ այդ փաստը վկայում է, թէ Յովհաննէս Լազարեանը, նախ, որքա՜ն մտահոգուած է եղել ազգային կրթական գործին զարկ տալու գործով, եւ ապա թէ որպիսի՜ պայծառատեսութիւն է ունեցել նա ըմբռնելու ու նախատեսելու մի Հայոց դպրոցի անհրաժեշտութիւնը նաեւ Թիֆլիսում, այդ ժա-*

մանակուայ մի հայաշատ կենտրոնում, պայքարելու այն անսահման տգիտութեան ու խաւարի դէմ, որ այդ օրերին իշխել է Անդրկովկասում եւ, վերջապէս, որ այդ նախատեսութիւնը նա ունեցել է դեռ իր մահից առաջ (1801 թ.), երբ Ներսէս արքեպիսկոպոսը, թերեւս, դեռ չի ունեցել դպրոց հիմնելու մտադրութիւնը: Եթէ ընդունելու լինենք, որ այդ մտադրութիւնը Ներսէս եպիսկոպոսն էլ ունեցել է նոյն ժամանակաշրջանում, դա միայն մի նոր ապացոյց է, որ երկու մեծ հայրենասէրների, երկու մեծ լուսամիտ հայ գործիչների մտաւոր մտահոգութիւնները՝ լոյս ու կրթութիւն տարածել իրենց ժողովրդի մէջ, զուգադիպել են իրար:

Յովակիմ Լազարեանի բարի գործերից է եղել նաեւ Մոսկուայի Հայոց եկեղեցու բակում կառուցել 1782 թ. երկու տուն այդ եկեղեցու պաշտօնեաների համար եւ ապա իր ծախսով նորոգել տալ Եկեղեցու շէնքը 1821 թ.:

1818 թ. Յովակիմ Լազարեանը, տեսնելով, որ ինքը արդէն ծերացել է եւ Ճեմարանի հոգաբարձուի պատասխանատու ու բազմապիսի աշխատանքները այլեւս ի վիճակի չէ վարելու, նոյն թուի յունիս 15ին յանձնում է այդ պաշտօնը իր աւագ որդի Յովհաննէսին, իսկ կրտսեր որդուն՝ Խաչատուրին նշանակում նրան օգնական:

1826 թ. յունուար 26ին Յովակիմ Լազա-

*րեանը կնքում է իր մահկանացուն 83 տարեկան խոր ծերութեան հասակում, մեծ վշտի մատնելով իր հարազատներին, ճեմարանի աշակերտութեան, ուսուցչական կազմին եւ ողջ հայ հասարակութեան:*

*Գէորգ Քանանեանը հանդիսանում է լաւագոյն արտայայտիչը այդ զգացումների*[3].

*«Անփոխարինելի կորուստը առաքինի քաղաքացու խոր դառնութեամբ լցրեց իր բոլոր հայրենակիցների սրտերը: Ցատերը ի դէմս նրան կորցրին իրենց անձնական հովանաւորին, մտերիմ բարեկամին եւ բարեգործին: Ամենքը միասին զրկուեցին իրենց լաւագոյն եղբայրակցից: Հասարակութիւնների կեանքի մէջ, որոնք ուժեղ են իրենց բարոյական չահախնդրութիւններով, երբեմն երեւան են գալիս երջանիկ ընտրեալներ: Նախախնամութիւնը նրանց վրայ չռայլում է իր լաւագոյն չնորհները: Նա առաջնորդում է նրանց բարուոյ ու պատուի պայծառ ուղիով, եւ կեանքը այդ ընտրեալների մնում է մի թանկագին կտակ քաղաքացիների եւ հետագայ սերունդների համար: Այդպիսին էր կոմս Յովհաննէս Լազարեանը, այդպիսին էր Յովակիմ Լազարեանը: Լիակատար իրաւունքով կարելի է ասել նրանցից իւրաքանչիւրի մասին Տակիտոսի խօսքերով՝* posteritati narratus et traditus superstes erit»:

---

[3] *Տե՛ս նրա ճառը, ճեմարանի 50ամեակի առթիւ արտասանած, էջ 24:*

Յովակիմ Ղազարեանի աճիւնը ամփոփուած է Մոսկուայի Վագանկովսկի Հայոց հանգստարանում. Նրա շիրիմի վրայ փորագրուած է չափածոյ արձանագիր, բաղկացած 20 տողից, որից առաջ ենք բերում միայն հետեւեալ չորս տողը.

«Ղամբար լուսափայլ, Արփի Հայրենեաց,
Վըճիտ հայելի վարուց քոց նախնեաց,
Ընդէ՞ր յայդ անլոյս ղագաղ ստուերամած
Խաւարեալ հանգչիս ի սուգ Հայկազնեաց»:

Յովակիմ աղայի յուղարկաւորութեան ժամանակ էլ ասուած են բանաստեղծութիւններ եւ յուզիչ դամբանականներ:

Ոմն Մարգար Իօրալեանը արտասանել է իր մի ընդարձակ բանաստեղծութիւնը, որի մէջ կարդում ենք այսպիսի տողեր.

«Զի՛ք մեր Հայր քաղցրագութ, չի՛ք անգոյգ բարերար.
Մեր լապտեր բարութեան՝ որբ մանկանց ապիկար.

. . . . . . . . . . . . . .

Ցնդեցաւ ցրուեցաւ իշխանիս ցօղ բարեաց.

. . . . . . . . . . . . . .

Թօթափեա՛ գծիրանի, գգեցիր գքուրձ ողբոց,
Զի չիջաւ քոյդ արփի՝ ուղփաճեմ ճրագարան...»:

Իսկ Դաւիթ Օտապաշեանցը իր դամբանականի վերջում ասում է.

«Արդ, ո՛վ լծակցեալ եղբարք, ի ժամուս, յորում ի մուտս դարձաւ արեւն կենաց մերոց, բարձաւ ի գլխոցս թագն պարծանաց, պակասեցաւ ի մէնջ բոլոր բարեաց օթեւանն, աւաղ որդւոցս սիրեցեալ եւ կարօտեալ ի քաղցր հօրէն...» եւայլն[4]:

***

Յովակիմ Լազարեանցի ամուսինը՝ Աննա Սարգսեանը վախճանուել է 1820 թ. մարտ 11ին: Ունեցել են հինգ զաւակներ՝ Յովհաննէս, Խաչատուր, Յարութիւն, Ղազար Առաջին եւ Ղազար Երկրորդ, ու նաեւ վեց աղջիկ: Սրանք կազմում են Լազարեան տոհմի երկրորդ սերունդը:

Ղազար Ա. եւ աղջիկներից երկուսը վախճանուել են վաղահաս մահով:

## II

## ՄԻ ԷՋ

### ՅՈՎԱԿԻՄ ԼԱԶԱՐԵԱՆՑԻ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԻՑ

Մ. Մսերեանը, որպէս Յաւելուած, Յովակիմ Լազարեանի այնքան ժլատ կենսագրութեան, առաջ է բերում ամբողջութեամբ մի շատ թանկագին ու արժէքաւոր փաստաթուղթ, որի մէջ արտացոլուած է Յովակիմ

[4] Տես Մ. Մսերեանց, Գ. մաս, էջ 144—145:

Լազարեանի նախ հոգեկան տաքինութիւնները՝ նրա հայրենասիրութիւնը, նրա սէրը դէպի ուսումն ու կրթութիւնը, նրա ձգտումները գիտութիւն տարածելու բովանդակ հայ ժողովրդի մէջ, տեսնելով դրա մէջ միակ զօրաւոր զէնքը փրկելու ազգը այն խաւարից, որի մէջ նա ընկղմուած է, — եւ ապա այն մեծ մտահոգութիւնները՝ լաւագոյն կերպով կազմակերպելու իր կառուցած դպրոցի կրթական գործը, որի վրայ նա գուրգուրացել է իր ամբողջ կեանքի ընթացքին, ինչպէս մայրը իր հարազատ երեխայի վրայ։ Այդ փաստաթուղթը վկայում է նաեւ, որ աղա Յովակիմը աղա չէր իր լիքը դրպանի հետեւանքով, այլ եւ աղա էր իր լուսաւոր գաղափարներով, իր մտաւոր պատրաստականութեամբ։

Այդ պատմական փաստաթուղթը կրում է հետեւեալ խորագիրը՝

«Տ. Յովակիմայ Լազարեանց Յայտարարութիւն առ իւր համազգիս»։

Այս Յայտարարութիւնը մի ընդարձակ գրութիւն է, որ կրում է 1820 թուականը։ «Հանդէս Ամսօրեայ»ի սուղ էջերը թոյլ չեն տալիս առաջ բերելու այն ամբողջութեամբ, ուստի մենք մի քանի կարեւոր մէջբերումներով ենք բաւականանում։

Հեղինակը սկզբում խօսում է ու ջանում ապացուցանել այն մեծ օգուտները, որ ունին

եւ բերում են ուսումն ու կրթութիւնը ընդհանրապէս ամէն մի ժողովրդի համար: Իր այս հիմնական միտքը լուսաբանելու համար բերում է պատմութիւնից օրինակներ եւ մատնանշում է հին յոյների, հռովմայեցիների, անգլիացիների, Ֆրանսիացիների վրայ եւ ապա «ի յետնումս գիտուս իսկ»:

Այնուհետեւ նա անդրադառնալով մեր ժողովրդի անցեալին եւ ներկային, ասում է. «Ահա՛ այս է եւ այսչափ շահեկանութիւն եւ պիտանութիւն դպրութեան. զորոյ յարգն մինչդեռ աշխարհահամբաւ հարք մեր ճանաչէին, եւ ի հայրենիս մեր մուծանել նկրտէին՝ մեք եւս զօրէն այնց լուսաչաւիղ ազգաց ազատաքայլ ճեմէաք, եւ վեհապանծ փառօք երկրամիտ կենցաղավարէաք: Բայց բարէ՛ թշուառութեան մերում. երբ դպրութիւնն ի մէնջ անդոսնեցաւ, եւ ուսումնականութիւնն տեղի տուեալ դադարեցաւ, սկսաք այնուհետեւ զօրինօք բարուօք կենցաղավարութեան ապախտ առնել, եւ զազատականութիւն մեր յանարգանս մատնել, յանձանց մերկացեալ մինչ իսպառ զամենայն զպարծանս տիեզերասաստ մերոց նախահարցն, որով առ սակաւ սակաւ ընտելացաք զստրկութիւնն յօժարակամ յանձն առնուլ, եւ նախամեծար համարել զայն քան զշքեղաշուք վեհանձնութիւն նախնի Հայկազանց»:

Ցիշատակելով այն պատմական իրողութիւնը, որ 17րդ դարում մեզ մօտ հանդէս

եկան գիտնական հոգեւորականներ, որոնք խաղաղ ապաստան գտան Եւրոպացիների մօտ, նրանք ձեռնամուխ եղան «լուսաւորել զմիտս մեր թարգմանութեամբ եւ տպագրութեամբ օգտակար իմաստալից ինչ ինչ գրեանց», բայց իրենց նպատակին չհասան «վասն անփարթամ՝ անպաշտպան եւ սակաւաթիւ գոլոյ նոցա՝ յետ սակաւուց լքեալ ակարացան, եւ ակամայ կամօք հրաժեշտ տուեալ յաստուածահրաւէր խորհրդոց իւրեանց՝ տեսին դառնութեամբ սրտի զայնքան աշխատանս իւրեանց յանարգանս մատնեալ եւ յումպէտս կարգեալ: Սոքա էին անմահական յիշատակաց արժանի գերաշուք Ոսկան վարդապետն, Թովմաս եպիսկոպոսն, Ղուկաս Դպիրն Վանանդեցի, եւ այլք ոմանք»:

Այնուհետեւ հեղինակը դարձնում է իր հայեացքը դէպի Մխիթարեանները: Սկզբում նա գովաբանում է նոցա աշխատասիրութիւնը, որի շնորհիւ «հետազօտութեամբ իւրեանց երեւելի ընծայեցուցին զանձինս ի նորոգումն բազմահարուստ Հայկական բարբառոյ մերոյ, որպէս եւ ի ձեռն ազգի ազգի յոգնիմաստ մատենից շարագրութեամբ եւ թարգմանութեամբ՝ քաջագիտութեամբ իմն յառաջադէմ մատուցան ըստ կարի յարդարել զմիտս մեր յըմբռնումն կարեւոր մակացութեանց (գիտութիւնների)», — բայց դառնութեամբ նկատում է.

«Բայց սակայն բաժանեալք ի մէնջ, եւ

յարեալք յեկեղեցին Հռովմայ՝ դուն գործեցին (ջանք դրին) ի սկզբանէ անտի եւ այսր՝ աշալուրջ ճարտարութեամբ առ սակաւ սակաւ եւ զմեզ օտարացուցանել յուղղադաւան սրբոյ Եկեղեցւոյ մերմէ եւ ի շաւղաց մերոց լուսաւորուխ աստուածահաճոյ Հայրապետաց»։

Կրօնական խտրութեան զգացմունքը ընդգրկում է բարեպաշտ հայ լուսաւորչական Յովակիմ Լազարեանցի հոգին եւ նա հրաժարւում է տեսնել Մխիթարեանների կրթական–ուսումնասիրական աշխատանքների մէջ որեւէ օգուտ հայ ազգի համար․․․։

Այսպէս, ուրեմն, հայ ազգի ներկան շատ անմխիթար է երեւում հեղինակին, ուստի լցուած դառն վշտով, բացականչում է՝

«Տեսէ՛ք, ուրեմն՝ թէ քանի ողբալի է վիճակ Հայրենեաց մերոց․․․»։ Այս ընդհանուր տեսութիւնից յետոյ, հեղինակը անցնում է ճեմարանի հիմնարկութեան խնդրին եւ յայտնում է, որ իր եղբայրը «Աղա Յովհաննէսն Եղիազարեանը» իր ազգի եւ Հայրենիքի այդ իսկ տխուր պայմաններից մղուած, դեռ շատ տարիներ առաջ, քան իր մահը, միտք էր յղացել հիմնելու մի դպրոց՝ «համբուրելի հիմնարկութիւն», բայց նա իր բաղձում «յող-նախուռն» զբաղմունքների հետեւանքով, ի վիճակի չէր եղել, ուստի մահուանից առաջ կտակել էր իրեն՝ «նուաստութեան իմում կատարել զբաղձանս սրտի իւրոյ լաւագոյն իմն եղանակաւ»։

«Յաղագս այսորիկ յամի 1814 եկեալ իմ ի Ս. Պետերբուրգայ աստ ի Մոսկով՝ օգնականութեամբ Աստուծոյ, եւ բարեհաճութեամբ օրհնեալ ազգախնամ Տէրութեանս՝ ձեռն արկի շինել զկայնանիստ հոյակապ Համալսարան[1]. եւ յետ ծախելոյ աւելի քան զ200 հազար ռուբլի ի սեփական գոյից իմոց՝ բաց յայնմ գումարէ, զոր ընկալայ յարքունական գանձանակէ (այն է զտոկոսիս բարդեալս ի բազում ամաց հետէ ի մայր գումարէ անդր մուծելոյ յինէն, ըստ զօրութեան կտակի գերազանց եղբօր իմոյ Աղայ Յովհաննէսի), հազիւ թէ հաստուցի զայն յիւր աւարտ ի 1816 եւ ի սկզբան յետագայ ամի ժողովեցի զՀայկածին մանկունս յամենայն շրջակայ նահանգաց, եւ սկիզբն կալայ ի ձեռն քաջակիրթ դաստիարակաց վարժել զնոսա ի փառս մարդասիրին Աստուծոյ»:

Այնուհետեւ յայտնում է, որ եղբօր կտակած 200 հազար ռուբլին թողել է արքունի գանձանակում, որ տարեկան բերում է 10 հազար ռուբլի տոկոս, եւ աւելացնում է՝

«Բայց յայսմանէ ես յարդեանց իմոց յաւելեալ եմ զայն մայր գումար․ մինչեւ կարողանալ պահպանել ըստ ամենայն հանդամանաց բարեկարգութեան զ30 Հայ մանկունս որբոց եւ աղքատաց»:

---

[1] «Համալսարանդ անուն՝ ի թղթի աստ եւեթ տեսանի ընծայեալ ճեմարանին Լազարեանց, եւ այն՝ յայտ է թէ՝ ըստ կամս կարծեաց կամ ըստ առանձին ինչ հաճոյից չարագրողի բանիցդ»: Մ. Մսերեան:

*Ի վերջոյ աղա Յովակիմը յայտնում է, որ եթէ դրամական նուիրատուութիւններ լինեն ճեմարանին, այն ժամանակ կարելի կը լինի 30ից աւելի աշակերտներ ընդունել, իսկ եթէ գտնուեն Հայորդիք, որոնք կը բարեհաճեն նուիրաբերել ճեմարանին՝*

*«...Զտպագիր կամ գձեռագիր մատեանս, եւ կամ գտետրակս․ որպիսի են Պատմագրութիւնք, Ճառընտիրք, Մեկնութիւնք, եւ այլն, հաւաստի կարէ լինել՝ գի մեք պահպանեսցուք խնամով ի բազմահարուստ գրատան մերում (յորոյ վերայ արդէն ծախեալ եմ աւելի քան զ20 հազար ռուբլի)․ արձանացուցանելով զանուն նորա ի ճակատ ընծայեալ մատենին․ եւ հանդերձ Խորհրդարանաւ իմով չնորհակալ եղէց զնմանէ յատուկ նամակաւ: Նոյնպէս որ կտակաւ ախորժեսցէ աւանդել զնուէրս ինչ յընդարձակութիւն եւ յառաւելութիւն աշակերտաց Համալսարանի* [1]*, ընկալցի չնորհակալութիւն ի մէնջ, եւ յանուն նորա յիշատակեսցի յազգաց յազգս»:*

*Հետագայում, մեր ներկայ աշխատասիրութեան երկրորդ մասում՝ ճեմարանի բուն պատմութեան մէջ, կը տեսնենք, որ աղա Յովակիմի այս դիմումը հայ հասարակութեան անարձագանք չմնաց․ եղան դրամով նուիրատուներ, որոնք իրենց անունով մէկերկու որդեգիրներ էին պահում ճեմարա–*

նում, եղան նաեւ ձեռագիրներ եւ Թանկարժէք գրքեր նուիրողներ:

Այս յայտարարութեան մէջ ասուած է նաեւ, որ ի նկատի առնելով իր ծերութիւնն եւ բազում զբաղմունքները, լիովին յանձնարարում է Ճեմարանի կառավարութիւնը իր երկու աւագ որդիներին՝ Յովհաննէսին եւ Խաչատուրին:

«Սոքա — ասում է հեղինակը — զարգացեալ խսկ յերեւելի Ճեմարանս Ռուսիոյ՝ քաջայարմարք են յուղղել զընթացս սորա ի բարին եւ ի կատարեալն: Եւ ունին յօգնականութիւն ինքեանց զՄորհրդարան բազկացեալ յերեւելի յաստիճանաւոր եւ ի գիտնական ոմանց ազնուականաց երկրիս, եւ ի Թագաւորական Պռօֆէսորաց Ճեմարանիս Մոսկովու. ընդ որս է եւ գերապատիւ Սերովբէ գիտնական վարդապետն մեր, առաքեալ յատկապէս ի Սրբազնակատար եւ ի Ծայրագոյն Քահանայապետէ Սրբոյ Էջմիածնի՝ յԾփրեմայ, լինել գործակից որդւոց իմոց, եւ Տեսուչ Համալսարանիս»:

Աղա Յովակիմ խօսում է նաեւ Ճեմարանում աւանդուող առարկաների մասին, ուսման վարձի մասին, մի խօսքով տեղեկութիւններ է տալիս Ճեմարանի մասին. քանի որ այս ամէնի մասին խօսք լինելու է հետագայում, ուստի զանց ենք առնում «Յայտարարութեան» այդ մասը:

⁂

Յովակիմ Լազարեանը յղացել էր նաեւ մի ուրիշ շատ գեղեցիկ միտք, որ կարող էր մեծ օգուտներ բերել հայ պատմութեան եւ հնութիւնների ուսումնասիրութեան գործին, եւ որին նա ձեռնամուխ է լինում անմիջապէս գործադրելու, բայց որը, դժբախտաբար, երկար կեանք չի ունենում. Նա մեռնում է իր նախաձեռնողի մահուան հետ միասին...:

1823 թ. օգոստոս 4ին, — պատմում է Գէորգ Քանանեանը իր ճառի մէջ, ասուած ճեմարանի 50ամեակին, — ճեմարանին կից կազմուեց «Հայկական հնութիւնների սիրողների ընկերութիւն», նախաձեռնութեամբ Յովակիմ Լազարեանի եւ նրա անմիջական մասնակցութեամբ: Թէեւ այդ Ընկերութեան ծրագիրն ու գործունէութիւնը, նրա կարճատեւ գոյութեան ընթացքին չէին կարող ստանալ իրենց պատշաճ զարգացումը, բայց նպատակը որին պէտք էր ձգտել, դրուած էր միանգամայն պարզ եւ խոստանում էր բեղմնաւոր արդիւնքներ տալու: «Հայաստանի հետազօտութիւնները, — ասուած էր Ընկերութեան որոշումների մէջ, — բաց կանեն հնութիւնների հետաքրքրական հետքեր»: Ընկերութիւնը մտադիր էր գործի հրաւիրել ո՛չ միայն հայ, այլ եւ օտար գիտնական ուժերին՝ զբաղուելու հայկական եւ արեւելեան հարուստ հնութիւնների հետազօտութիւններով: Ընկերութիւնը դիմելով նրանց ասում

էր՝ «Թախանձագին կերպով հրաւիրում են մասնակցելու Ընկերութեան գործունէութեան, ուղարկելով գրքեր, ձեռագիրներ, հրովարտակներ եւ յօդուածներ զանազան լեզուներով, որոնք վերաբերում են հին Հայկական Թագաւորութեան պատմութեան եւ արժէքներին»։

Փանանեանը յիշատակում է նաեւ մի քանի յօդուածներ Ընկերութեան կանոնագրից, որոնք լոյս են սփռում ընկերութեան անելիքների վրայ եւ միաժամանակ ի յայտ են բերում Յովակիմ Լազարեանի ազգային մտքի լուսաւորութեան մշտական մտահոգութիւնները։

Յօդ. 1. Ընկերութեան աշխատակիցները պիտի զբաղուեն թարգմանութիւններով զանազան յօդուածների, համաձայն Ընկերութեան Նախագահի ցուցմունքների։

Յօդ. 2. Այն յօդուածները, որոնք կը ստանան Նախագահի եւ Ընկերութեան հաւանութիւնը, կը թարգմանուեն զանազան լեզուներից միայն ռուսերէնի ու կը զետեղուեն Մոսկուայի եւ Պետերբուրգի ամսագիրներում։ Ժամանակով, ըստ Ընկերութեան հայեցողութեան, բոլոր տպագրուած յօդուածները կը հրատարակուեն միասին «Հայաստանի Ֆենիկս» անուան տակ։

Յօդ. 3. Ընկերութիւնը պիտի ունենայ իր զբաղմունքների արձանագրութիւնները, որպէս զի տարեվերջին երեւան գայ, թէ ինչ օգտաւէտ ու կարեւոր գործեր են կատարուած ի փառս եւ ի պատիւ Հայաստանի։

«Տարակոյս չկայ, — նկատում է Գ. Փանանեանը, չարունակելով իր խօսքը, որ այդ ընկերութիւնը, ձեռք բերելով աստիճանաբար նոր եւ գործունեայ աշխատակիցներ,

կարող էր հիմք դնել Հին Հայաստանի դպրութեան լուրջ գիտական ուսումնասիրութեան, կարող էր պսակուել շատ կարեւոր արդիւնքներով ընդհանրապէս Արեւելքի հետ ծանօթութեան գործում, ինչպէս եւ նրա գրականութեան ու դպրութեան հետ: Բաց ի այդ, ընկերութիւնը չափազանց բարերար ազդեցութիւն կ՚ունենար Ճեմարանի սաների վրայ եւ կը մղէր նրանցից լաւագոյններին ու տաղանդաւորներին դէպի մի շահաւէտ եւ բարձր նպատակի, կը զարգացնէր նրանց մէջ սէր դէպի լուրջ ու հիմնաւոր ուսումնասիրութիւն հին լեզուների, ինչպէս նաեւ եւրոպական եւ արեւելեան լեզուների»: (Տես Գ. Քանանեանի ճառը, էջ 20—21:)

Ճառախօսը այսպէս ծանօթացնելով Ընկերութեան ծրագրի հետ ու պարզելով նրա գիտական մեծ արժէքը, ցաւ է յայտնում, որ Ընկերութիւնը շատ կարճատեւ կեանք ունեցաւ. ցանկանում է, որ հիմնադրի գեղեցիկ միտքը իր յաջորդներն ու շարունակողներն ունենայ, որպէս զի Ճեմարանի երկրորդ յիսնամեակը պսակուի նման մի հիմնարկութեան բեղմնաւոր արդիւնքներով:

Անշուշտ, շատ ցաւալի է, որ այդ բաղձանքներն եւ յոյսերը չարդարացան ու արձագանգ չգտան ժամանակակից հայ մտաւորականների ու գիտնականների մէջ...:

---



Յովհաննէս Լազարեանց

# ԳԼՈՒԽ Ե.

## ՅԱՐՈՒԹԻՒՆ ՅՈՎԱԿԻՄԵԱՆ ԼԱԶԱՐԵԱՆՑ
(1791—1813)

*Յարութիւն Լազարեանը աղայ Յովակիմի* երրորդ *որդին էր. ծնուել է* 1791 *թ. փետրուար* 15*ին:*

*Մ. Մսերեանը այսպէս է բնութագրում.*

*«Մնաց՝ զարգացաւ եւ հրահանգեցաւ ընդ ձեռամբ բարեկիրթ դաստիարակաց:*

*Առողջ էր նա անձամբն, հաստակազեղ, ուարթ, հեզ բարուք, եւ զմօք պայծառ»:*

*Պատանեկական հասակում Յարութիւնը մտնում է զինուորական ծառայութեան մէջ, ուր նա ցուցադրում է արտակարգ ռազմական ընդունակութիւններ: Այնուհետեւ մասնակցել է* 42 *կռիւների, մեծ քաջագործութիւններ արել եւ իր զինուորական մեծ տաղանդը ի յայտ բերել: Անշուշտ, նա կ՛ունենար շատ փայլուն ապագայ, կը հասնէր մեծամեծ աստիճանների ու փառքի, եթէ անողոք ճակատագիրը այնքա՜ն վաղ չկտրէր նրա երիտասարդական ծաղիկ կեանքի թելը՝* 22 *տարեկան հասակում . . . :*

*Իր այդ մատաղ հասակում արդէն ունեցել է Թիկնապահ գնդի շթաբս-ռիտմիստրի աստիճան, ստացել է Ս. Աննայի Բ. աստիճանի եւ Ս. Վլադիմիրի չորրորդ աստիճանի շքանշաններ «հանդերձ փնջով», իսկ Կուլմայի պատերազմում Նապոլէոն Ա.ի դէմ ցոյց*

տուած արտակարգ քաջագործութիւնների համար՝ Սուր եւ Խաչ, «այլ եւ Տքագրամ արծաթի, եւ Բրուսաց անուանեալ Տքանչան. ի վարձ արժանաւորագոյն վաստակոց»:

Ծառայել է կայսերական թիկնապահ գնդի մէջ, իսկ 1805 թ. օգոստոս 29ին կայսերական հրովարտակով նշանակուել է Թարգման Արտաքին գործոց Կայսերական Ատեանում:

Հաւատարիմ իր տոհմային աւանդներին Յարութիւնն էլ, որպէս նախանձախնդիր հայ ժողովրդի կրթական գործի յառաջդիմութեան, եւ բացի այդ, որովհետեւ նաեւ «ի մատաղ տիոցն սիրող էր նա իմաստից, եւ Հայրենակցացն լուսաւորութեան առաւել յոյժ փափագող», ուստի եւ նուիրում է Լազարեան ճեմարանին 50·000 ռուբլի թղթադրամ [1]:

Յարութիւն Լազարեանը վախճանուել է 1813 թ. հոկտեմբեր 4ին Լայպցիկի հռչակաւոր արիւնահեղ ճակատամարտում Նապոլէոն Բոնապարտի դէմ, ստանալով մահացու հարուած թնդանօթային ռումբից:

1815 թ. կայսեր հրամանով Յարութիւնի մարմինը փոխադրում են Լայպցիկից Պետերբուրգ եւ ամփոփում Հայոց Հանգստարանի Ս. Յարութիւն եկեղեցում:

Վշտահար ծնողները բազում նուիրատուութիւններ են անում նրա յիշատակին եւ

---

[1] Պրոֆ. Ջինովեւի ասելով, այդ գումարը նուիրել են ծնողները ի յիշատակ իրենց վաղամեռիկ սիրեցեալ զաւակի: Տե՛ս էջ 22:

ի մէջի այլոց նաեւ Ն. Ջուղայի Ամենափրկչեան վանքին, որպէս զի ամէն տարի հոգեհանգիստ կատարեն նրա յիշատակին:

Հանգուցեալի շիրիմն ունի հետեւեալ տապանագիրը·

«Աստանօր ամփոփեալ կայ մարմին Թիկնապահ Գուսարեան Գնդի Շթապրօթմիսթրի եւ զանազան նշանաց կրող Ասպետի՝ Յարութիւն Յովակիմեան Լազարեանց, ծնելոյ յամի 1791, եւ անկելոյ յարինահեղ պատերազմին որ առ Լէյփցիկաւ ի 4 հոկտեմբերի 1813 ամի, ի 22ամայ հասակի»:



Ուշագրաւ է Մոսկուայի մի ռուս լրագրի (որի անունը Մ. Մսերեանցը չի յիշատակում) հետեւեալ գրութիւնը, նուիրուած Յարութիւն Լազարեանի յիշատակին:

Այդ գրութիւնը, որ հրատարակուած է 1817 թ. փետրուար 28ին, պարունակում է իր մէջ նաեւ մի քանի կենսագրական թանկագին տեղեկութիւններ:

«Վաշտապետ եւ Ասպետ կայսերական Անձնապահ Գնդի՝ Յարութիւն Յովակիմեան Լազարեանց, քաջասիրտ այս պատանի եմուտ ի ծառայութիւն ի սկզբան անդ հռչակաւոր պատերազմին Ռուսաց, որ եղեւ յամի 1812, կցորդելով յինքեան ընդ ողեկան կատարելութեանց զարտաքինն զեղեցկութիւն դիմաց, եւ ընդ զինուորական հրահանգաց՝ զհմտութիւնն բազում արուեստից եւ լե—

*զուաց, ի ժամանակի ահաւոր ճակատամարտին որ առ Լէյփցիգաւ՝ զմահարերն ընկալու հարուած, որով զրկեցաւ յարեւէ ծաղկափթիթ կենացն ի քսաներկուամեայ հասակի: Էր նա զարդարեալ բազում նշանօք՝ զորս ստացեալն էր ի վարձ զովանի ծառայութեանցն եւ այրական քաջութեանցն ի մարտս. էր եւս սիրելի յաչս իւրոց մեծաւորաց եւ ընկերաց: Զգալով լիապէս զմեծութիւն կորստեանս՝ որո՞վ իւիք կարեմք պատուել զյիշատակ քաջի զօրականիս, եթէ ոչ զայս արձակելով առ նա բարբառ ի սրտէ «խաղաղութի՛ւն քոյոց ոսկերաց, օրհնեա՛լ ծնունդ հօր բարեպաշտի»* [2]:

## ԳԼՈՒԽ Զ.

### ՅՈՎՀԱՆՆԷՍ ՅՈՎԱԿԻՄԵԱՆ ԼԱԶԱՐԵԱՆՑ
(1786—1858)

### I.

*Յովհաննէս Լազարեանը՝ աղա Յովակիմի աւագ որդին էր. ծնուել է* 1786 *թ. փետրուար մէկին:*

*Կենսագրական տեղեկութիւնները Լազարեանների երկու կենսագիրների մօտ էլ չափազանց պակասաւոր են եւ վերաբերում են գլխաւորապէս նրա ստացած չքանշաններին ու պետական պաշտօնների յիշատակութեան...*

---

[2] *Տե՛ս Մ. Մսերեանցի «Յիշատակարան», մաս Գ.,* *էջ* 93:

*Բարձրագոյն հրովարտակների թարգմանութիւններն են, որոնցից կարելի է առնել մի շարք թանկագին տեղեկութիւններ: Այսպէս, այդ հրովարտակներից իմանում ենք, որ Յովհաննէսը իր սկզբնական կրթութիւնը ստացել է Պետերբուրգի գերմանական մի դպրոցում եւ ապա անցել Մոսկուայի համալսարանը, որն աւարտել է* 1821 *թուին*[1]*: Իր գինուորական ծառայութիւնը կատարել է Կայսերական Թիկնապահ գորագունդի մէջ (Գվարդիա):* 1801 *Թ. յուլիս* 3*ին նա մտել է պետական ծառայութեան մէջ Մոսկուայի «Արտաքին գործոց Կայսերական Ատեանի Դիւանում»:*

1801 *Թ. հոկտեմբեր* 9*ին նշանակուել է թարգման Աղէքսանդր Ա. կայսեր թագադրութեան հանդէսի ժամանակ:*

1815 *Թ. մայիս* 3*ին ստանձնել է Լազարեան Ճեմարանի հոգաբարձուի պաշտօնը*[2]*:*

1831 *Թ. Մոսկուայում եւ շրջակայքում տարածուել է խօլերայի համաճարակը: Յով–*

---

[1] *Պրոֆ. Ջինովեւի ասելով, Յովհաննէսը իր սկզբնական կրթութիւնը ստացել է իր ծնողների ընտանիքում, այնուհետեւ քննութիւն տալով, մտել Մոսկ. Համալսարանը (էջ* 19*): Մենք հետեւել ենք Մ. Մսերեանցին:*

[2] *Պիտի ընթադրել, որ Մ. Մսերեանցի այս հագորդագրութեան մէջ (էջ* 27*) սպրդել է տպագրական սխալ, քանզի ըստ Պրոֆ. Ջինովեւի Յովհաննէսը նշանակուել է Ճեմարանի հոգաբարձու հօր կողմից, որն եղել է Ճեմարանի առաջին հոգաբարձու* 1815 *Թ. սկսած,* 1818 թուին յունիս 15*ին, իսկ եղբայրը՝ Խաչատուրը՝ նրա օգնական նոյն* 1818 *թուին: Տե՛ս Ջինովեւ, էջ* 33*:*

Հաննէս Լազարեանը հրաւիրում է խօլերայի տարածման դէմ պայքարի գործին բերել իր մասնակցութիւնը։ Եւ Յովհաննէս Լազարեանը ցուցադրում է այնպիսի եռանդուն ու խելացի գործունէութիւն, որ վարձատրւում է մայիս 22ին Ս. Աննայի երկրորդ աստիճանի շքանշանով, զարդարուած կայսերական թագով։

1834 թ. հոկտեմբեր 22ին ստանում է Ս. Վլադիմիրի 3րդ աստիճանի շքանշան «ի տրիտուր գովանի եւ ջերմեռանդն ծառայութեան եւ սեպհական աշխատութեանց», որ ցոյց էր տուել Մոսկուայի Յաղթական Կամարի կառուցման գործում։

Աւելացնենք մեր կողմից, որ այս կամարը իր գեղեցկութեամբ ու հնութեամբ կազմում է Մոսկուայի պատմական շէնքերից մէկը։

1835ին Մոսկուայում տեղի է ունենում Ռուսական ձեռագործների եւ արուեստների ցուցահանդէս։ Յովհաննէս Լազարեանը բերում է իր եռանդուն եւ օգտաշատ մասնակցութիւնը, նախ ցուցահանդէսի շէնքի կառուցման եւ ապա կազմակերպութեան գործում։ Այդ առթիւ նա ստանում է կայսրից ադամանդեայ մատանի, վրան գրուած կայսեր անունը, եւ ապա «Նորին Կայսերական Մեծութեան Դրան Սենեկապետի» (Կամերհեր) կոչումը։

Այնուհետեւ գալիս են մի շարք բարձրագոյն հրովարտակներ ու հրամանագրեր, որոնցով գնահատուած են նրա բազմազան այլ ծառայութիւնները, մատուցած պետութեան եւ մասնաւորապէս Լազարեան ճեմարանին՝ «ի արխուր յարատեւ ջերմեռանդութեան յօգուտ Լազարեան ճեմարանի» եւ «յաղագս մեծամեծ նուիրանացն» յօգուտ նոյն ճեմարանի: Ի մէջի այլոց այդ առթիւ տացել է «ոսկեայ ադամանդայեա տուփ պնչաղեղոյ հանդերձ քանդակաւ փակագրի անուան Ն. Կ. Մեծութեան»:

41 հրովարտակներից ու հրամանագրերից, որոնցով գնահատուած են Յովհաննէս Լազարեանի բազմազան մարզերում ցոյց տուած ծառայութիւններն ու կատարած աշխատանքները, մենք առաջ բերինք միմիայն մի քանիսը, կարեւորագոյնները, մի գաղափար տալու համար Յովհաննէս Լազարեանի կեանքի ու գործունէութեան մասին, ինչպէս եւ այն մեծ դիրքի մասին, որ նա նուաճել էր ռուսաց կառավարական բարձր շրջաններում, եւ այն էլ մեծ մասամբ Նիկողայոս Ա. կայսեր բռնապետական իշխանութեան մռայլ օրերին...

Յիշատակենք նաեւ, որ 1854 թ. սեպտեմբեր 10ին տացել է Պարսից Շահից «Առիւծի եւ Արեգակի» առաջին աստիճանի շքանշանը: Այս առթիւ Մոսկուայի Պարսից Դեսպանի Յովհաննէս Լազարեանին ուղղած

*նամակի մէջ հետեւեալ ուշագրաւ պատճառաբանութիւնն է բերուած.*

*«...Ըստ հաստատուն համաձայնութեան եւ սերտ յարակցութեան՝ զոր ունին ի մէջի իւրեանց երկոքին հզօրագոյն Պետութիւնք՝ Պարսից եւ Ռուսաց, կառավարութիւնն Պարսից պարտ վարկանի յայտնել զիւր երախտագիտութիւն իւրաքանչիւր հպատակի Ռուսաց՝ որ օգտակար ինչ վաստակս ցուցանէ վասն Պարսկաստանի:*

*«Ձերդ Գերազանցութիւն, որպէս հոգաբարձու Լազարեան ճեմարանի եղելոյ ի Մոսկուա, յարաջան հոգողութեամբ հանապազ փոյթ եւ խնամ կալաք դաստիարակելոյն ի նմա՝ հպատակաց նորին Մեծութեան Շահի» եւայլն:*

*Այս նամակից երեւում է, որ Լազարեան ճեմարանը եղել է նաեւ պարսկահայութեան համար մի լուսատու կանթեղ, որի ճառագայթները թափանցել են նաեւ Պարսկաստանի հայ ժողովրդի ամենախուլ անկիւնները, լուսաւորել այն ու տուել չօշափելի արդիւնքներ: Ճեմարանի բուն պատմութեան մէջ մենք կը տեսնենք, որ արդարեւ մի շարք պարսկահայ մանուկներ են սովորել ճեմարանում, ապա աւարտելով այն, վերադարձել են Պարսկաստան, մտել պետական ծառայութեան մէջ, ամենայն հաւատարմութեամբ ծառայել, հասել մեծ պաշտօնների ու մեծապէս օգտաւէտ եղել թէ Պարսից կա-*

սովորութեան ու ժողովրդին եւ թէ իրենց ազգին:

Յովհաննէս Լազարեանը զանազան ժամանակներում եւ տարբեր հանգամանքներում վարել է նաեւ թարգմանի պաշտօն պետական հիմնարկներում. ի միջի այլոց նաեւ Ալէքսանդր Ա. կայսեր թագաւորութեան ժամանակ: Այս հանգամանքը ցոյց է տալիս, որ նա տիրապետել է մի շարք եւրոպական եւ արեւելեան լեզուների: Եւ արդարեւ, 1821 թ. ապրիլ 4ին նա ստացել է Մոսկուայի համալսարանի աւարտման վկայական, որից երեւում է, որ նա ստացել է լաւ կրթութիւն եւ բացի այդ Ռուսերէն, Գերմաներէն ու Ֆրանսերէն լեզուների մէջ ցոյց է տուել մեծ յառաջադիմութիւն եւ հմտութիւն:

Յովհաննէս Լազարեանը եղել է Պետերբուրգի Բանտերի Խնամատար Կոմիտէի անդամ:

1847 թ. ընտրուել է անդամ Գրականութեան եւ Հնութիւնների Փարիզի Ասիական ընկերութեան:

Վերջապէս, եղել է պատուոյ անդամ Պետերբուրգի Բնագննաց Ընկերութեան եւ Պետերբուրգի ու Մոսկուայի Տնտեսական Ազատ Ընկերութեան, որը, ի դէպ, այնքան մեծ հռչակ ստացաւ 19րդ դարի վերջերքին, մանաւանդ Ալէքսանդր Ա. կայսեր յետադէմ օրերին իր ազատախոհ գործունէութեամբ:

*Մենք կարեւոր չհամարեցինք մի առ մի թուելու այն բարձր պաշտօններն ու ստացած աստիճաններն ու շքանշանները։ Իր երկարատեւ պետական ու կրթական գործունէութեան ընթացքին՝ արձանագրենք միայն, որ նա հասել է ներգործական պետական խորհրդականի աստիճանին եւ ստացել շքանշաններից մեծագոյնները՝ Ս. Յովհաննու Երուսաղէմացւոյ եւ Ս. Նախակոչ Առաքելոյն Անդրէի։*

*Յովհաննէս Լազարեանը ունեցել է կալուածներ՝ Պերմ նահանգում 19·222 շունչ ճորտ գիւղացիներով. Սոլիկամսկում՝ աղահանքեր, երկաթի եւ թուջի (չուգուն) գործարաններ։ Մոսկուայում մի փայտաշէն եւ Նիժնի Նովգորոդում՝ մի փայտաշէն եւ մի քարաշէն տուն, իսկ Եարոսլաւսկի նահանգի Դանիլեւսկի գաւառում մի փոքրիկ հողամաս 27 շունչ ճորտ գիւղացիներով։*

*Յովհաննէսն եւ իր եղբայր Խաչատուրը 1853 թ. նուիրել են ճեմարանին իրենց սեփական տունը Մոսկուայում «հանդերձ ամենայն շինուածովքն՝ որ առ նմին եւ գետնով՝ որոյ տարածութիւնն է 2983½ քառ. սաժէն»։*

*Բացի այդ՝ երկու եղբայրները զանազան ժամանակներում եւ զանազան առիթներով մինչեւ 1864 թ. արել են դրամական նուիրատուութիւններ ճեմարանին, որոնք կազմում են մի պատկառելի գումար՝ 502·437 ռուբլի*

արծաթ կամ թղթադրամով աւելի քան մէկուկէս միլիոն։

Յովհաննէս Լազարեանը վախճանուել է կաթուածից, անզաւակ, 1858 թ. փետրուար 6ին, 72 տարեկան հասակում եւ թաղուել է Պետերբուրգի Հայոց Գերեզմանատան Ս. Յարութիւն եկեղեցում։ Յուղարկաւորութիւնը կատարուել է մեծ շուքով։ Ի միջի այլոց, ներկայ են եղել ճեմարանի սաներից 20 հոգի իրենց Դաստիարակ-վերակացուների հետ, որոնք յատկապէս այդ նպատակով բերուել են Մոսկուայից եղբօր՝ Խաչատուր Յովակիմեան Լազարեանցի հաշուով եւ 5 օր հիւրընկալուել նրա տանը։

Մահից առաջ կտակով նա թողել էր ճեմարանին 50·000 ռուբլի արծաթ. եղբայրը՝ Խաչատուրը իր կողմից աւելացնում է ի յարգանս եղբօր յիշատակի 10·000 ռուբլի արծաթ, որպիսի գումարը թղթադրամով կազմում է շուրջ 200·000 ռուբլի։

*

Լազարեաններին նուիրուած են բազում ներբողներ թէ ճեմարանի աշակերտների եւ ուսուցիչների եւ թէ ուրիշ ազգայինների կողմից։ Մի մասը բերուած է Մ. Մսերեանի «Յիշատակարան»ում։ Այդ ներբողները՝ արձակ թէ չափածոյ, գրուած են գրաբար եւ ճոռոմ ոճով, թէեւ ներշնչուած ջերմ զգացումներով։

Ի մէջի այլոց, Լէօն իր «Ստեփան Նազարեանցի կենսագրութիւն» աշխատանքի մէջ հրատարակել է երկու բանաստեղծութիւններ, որոնց հեղինակը ինքը մեր մեծ հրապարակախօսն է. մէկը գրուած է 1841 թ. մարտ 30ին եւ ապրիլ 19ին: Առաջինը նուիրուած է ընդհանրապէս Լազարեան տոհմին, միւսը՝ յատկապէս Յովհաննէս Լազարեանցին: Առաջ ենք բերում այդ նշխարները:

Թէ ունի ի Հայս արժանաւոր անմահութեան
Սոյդ արդեամբք, ընտիր գոհիւք ի շահ ազգի
Այդ վեհ մատոյց քաջ փայլել է ո՞ր այլ անուան,
Թէ ոչ Ձերում, Տեարք Լազարեան, շքեղ տոհմի:

Ուրա՛խ լերուք, ուրա՛խ լերուք, զՁեզ Աստուած
Կոչեաց լինել փառք եւ պարծանք Հայաստանի.
Այն Մոսկովեան ԱԹէնք Հայոց որո՞յ ստեղծուած,
Այո՛, մտաց, սրտի ձերոյ ազգասիրի:

Լէօն հետեւեալ բացատրութիւնն է տալիս այդ ոտանաւորի գրութեան շարժառիթի մասին:

«... Երեւում է, ասում է նա, — որ Նազարեանցը գնացել էր շնորհաւորելու Լազա-

*րեանների Զատիկը եւ, ինչպէս սովորութիւն էր, մատուցեց նրանց այդ տօնախմբութեան ուղերձը»:*

*Երկրորդ բանաստեղծութիւնը, որ նուիրուած է յատկապէս Յովհաննէս Լազարեանին, ըստ երեւոյթին, թելադրուած է երախտագիտական զգացմունքից, այն բարիքների համար, որ «վայելել է նա Լազարեան Ընտանիքից», — ասում է Լէօն:*

*Մի՛ տարադէպ թուեսցին Քեզ ազգի պաշտպան*
*Ծնորհաձանաչ սրտի գեղմունք, նուագ արդար.*
*Քանի՛ արդէն տուատ բարիք այլերացան*
*Յիս բաղդաւորս Քո յընտանեաց գերամեծար:*

*Զքեզ այսօր գովեմ երգեմ,*
*Իմ Յովհաննէս աստեղապարդ,*
*Կեցցե՛ս Դու լոյս Հայոց մաղթեմ*
*Կեցցես անշէջ, փայլե՛լ գուարթ*[3]:

*

*Յովհաննէս Լազարեանի մահուանից յետոյ, 1859 թ. Մոսկուայում լոյս էր տեսել նրա յիշատակին նուիրուած մի գիրք՝* «Յիշատակարան բազմերախտ հոգաբարձուի[4]... Յովհաննու Լազարեանց» *խորագրով:*

---

[3] *Տե՛ս Լէօ, «Ստ. Նազ. Կենս.», էջ* 112—113:
[4] *Բաց ենք թողնում նրա բոլոր աստիճանների ու տիտղոսների յիշատակութիւնը:*

Այս գիրքը մենք ունէինք մեր ձեռքի տակ, բայց ցաւում ենք ասելու, որ գրեթէ ոչինչ նոր ու արժէքաւոր տեղեկութիւններ չի պարունակում իր մէջ, որպէս զի լրացնէինք հանգուցեալի կենսագրականը:

Բերուած են հայերէն եւ ռուսերէն լեզուներով այն դամբանականները, որոնք ասուած են եղել նրա յուղարկաւորութեան ժամանակ. յօդուածներ, որոնք նոյն առթիւ լոյս էին տեսել հայ եւ ռուս մամուլի մէջ. յիշատակուած է, որ հոգեհանգիստներ են կատարուած Ս. Էջմիածնում, Ն. Ջուղայում, Կ. Պոլսում եւ այլ տեղերում. յիշուած են ցաւակցական նամակներն եւ բարձրագոյն հրովարտակները հանգուցեալի ստացած շքանշանների ու աստիճանների մասին:

Կայ միայն մի յօդուած, որ տպագրուած է եղել Պետերբուրգի մի ռուս թերթում, որի անունն էլ չի յիշատակուած, եւ որի մէջ կան մի–երկու արժէքաւոր տեղեկութիւններ:

Այդ յօդուածի խորագիրն է՝ «Թարգմանութիւն յօդուածոյն հրատարակելոյ ի ռուսերէն լրագրի Ս. Փեթերպուրկայ՝ յաղագս վախճանի Տ. Յովհաննու Յովակիմեան Լազարեանց»:

«Ի 6 փետրուարի — գրում է յօդուածագիրը — վախճանեցաւ յետ կարճժամանակեայ ծանր հիւանդութեան, ի հասակի 72 ամաց, ներգործական Պետական Խորհրդական, Սենեկապետ Յովհաննէս Յովակիմեան

*Լազարեանց, Հոգաբարձու եկեղեցեաց Լուսաւորչական Հայոց Ս. Փեթերբուրգայ եւ Մոսկուայ, Լազարեան Ճեմարանի Արեւելեան Լեզուաց՝ որ ի Մոսկուա,* պատուաւոր անդամ Կայսերական Հասարակական Մատենադարանի [5], *անդամ ժողովոյ սահմանելոյ ի Փեթերբուրգ յաղագս բանից եւ զանազան ուսումնական ընկերութեանց:*

*«Բովանդակ կեանք նորա էր անընդհատ շղթայ իմն գործոց բարեաց: Սիրելով նա զբարեվայելչութիւն տաճարաց Աստուծոյ, նուիրէր նշանաւոր գումարս ի հիմնարկութիւն եւ ի պահպանութիւն եկեղեցեաց:*

*«Որք յայց ելանէին կալուածոց նորա ի Փերմ նահանգի, զարմանային ընդ հոյակապութիւն տաճարացն կանգնելոց ծախիւք նորա: Լազարեան Ճեմարանն՝ հիմնեալն ի հօրեղբօրէ նորա եւ ի հօրէն՝ պատկանի նոյնպէս նմա իւրովն ընդարձակութեամբ եւ միջոցօքն յաղագս պահպանութեան բազմաթիւ մանկանց աղքատ ծնողաց: Ի տպարանի, որ կառուցեալն է առընթեր Ճեմարանիս այսորիկ,* նմանապէս եւ յայլ տեղիս [6], *տպագրեալ են ծախիւք նորա բազում օգտակար մատեանք: Ի լսել նորա զվիշտս տառապելոց՝ ո՛չ երբէք հրաժարէր յօգնելոյ նոցա.*

---

[5] *Այս տեղեկութիւն էլ նոր է. մենք ուրիշ աղբիւրներում չենք հանդիպել նման յիշատակութեան:*

[6] *Որ Լազարեանը հիմնել է տպարաններ նաեւ այլ վայրերում, մենք չգտանք մեր ձեռքի տակ եղած աղբիւրների մէջ ո՛չ մի յիշատակութիւն:*

*տոտանց ամենեւին խառնելոյ զկրօն նոցին եւ զազգ։ Առաւելապէս հոգ տանէր նա զլա–րութենէ սակաւաթիւ եղբարց իւրոց ի Քրիս–տոս, զորս Աստուած յանձնեաց հոգաբար–ձութեան նորա. կանգնէր վասն ստրուկ (իմա՝ ճորտ. Յ. Թ.) շինականաց դպրոցս, հիւանդանոցս, աղքատանոցս. վճարէր զպար–քունի հարկսն վասն չքաւորաց.* յօժարու–թեամբ տայր զազատութիւն ի ստրկական կոչմանէ եւ երեւեցուցանէր ուրախութիւն ի սրտէ՝ ի լինել մեծի կերպարանափոխու–թեանն ի կեանս ստրկացն կալուածատեարց, որ սկսաւ ի վերջին ժամանակս [7]։

---

[7] Այս տեղեկութիւնը շատ արժէքաւոր է Յով–հաննէս Լազարեանի նկարագրի ամբողջացման տեսա–կէտից. նա վկայում է, որ Յովհաննէսը ո՛չ միայն եղել է մարդասէր մէկը, այլ եւ որ նա գործել է ժա–մանակի յառաջադէմ ու ազատամիտ գաղափարների համընթաց։ Յայտնի է, որ չնայած Նիկոլայ Ա. կայ–սեր ընդհանրապէս յետադէմ քաղաքականութեան, նա ցանկութիւն էր ունեցել եւ եկել էր այն համոզման, որ ճորտութիւնը պէտք է վերացնել, բայց չէր վստա–հանում այդպիսի մի վճռական քայլ անելու, մասամբ Եւրոպայում բռնկուած 1830 թ. յեղափո–խութեան տպաւորութեան տակ։ Եթէ կառավարական շրջաններում տիրում էր տարտամ վիճակ, մատնուած էին մեծ տարակուսանքների, հասարակութեան վերին խաւերում, մանաւանդ յառաջադէմ մտաւորա–կանների շրջանում միանգամայն տարբեր տրամադրու–թիւններ էին իշխում։ Ճորտութեան վերացումը հա–մարւում էր ժամանակի հրամայական պահանջ։ Ընդ–հանուր ազատախոհ գաղափարական շարժման ազդե–ցութեան տակ ազնուականներից շատերը իրենց յօժար կամքով անձնական ազատութիւն էին տալիս իրենց այն ճորտ գիւղացիներին, որոնք ցանկութիւն էին յայտնում։ Այս շարժումը օր աւուր ուժեղանում էր ամբողջ 30ական եւ 40ական թուականներին։ Յիշեալ

*«Ցրնտանեկան կենցաղավարութեանն եւ առհասարակ ի յարաբերութիւնսն առ եղեալսն շուրջ զինեւ՝ երեւելի հանդիսանայր եւ զանազանէր հեզութեամբ եւ քաղցրութեամբ բարեհամբոյր բարուցն: Ամենեքին՝ որք ճանաչէին զնա, յիշեսցեն զնա ի բարի, եւ հեզցեն վասն նորա արտասուս ցաւակցութեան»:*

II.

## ՅՈՎՀԱՆՆԷՍ ՅՈՎԱԿԻՄԵԱՆ ԼԱԶԱՐԵԱՆԻ ԱԶԳԱՅԻՆ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ–ԿՐԹԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ

*Յովհաննէս Լազարեանի ազգային հասարակական–կրթական գործունէութիւնը արտայայտուել է գլխաւորապէս* երկու մայրաքաղաքների Հայոց եկեղեցիների եւ Լազարեան Ճեմարանի կառավարութեան մէջ, *որպէս հոգաբարձու այդ ազգային հաստատութիւնների. այդ պաշտօնների մէջ նա մնացել*

---

*հոգորդագրութիւնը ցոյց է տալիս, որ այնուամենայն կալուածատէր Յովհաննէս Լազարեանը եւս համակիր էր այդ ազատամիտ շարժման եւ ինքն էլ իր հերթին ազատութիւն էր տալիս իր ճորտերից նրանց որոնք ցանկութիւն էին ունենում ճորտութիւնից ազատագրուելու: Փոքր ինչ առաջ անցնելով մեր խօսքը, աւելացնենք, որ Ղրիմի պատերազմը* (1853—1855), *որ շատ աննպաստ կերպով վերջացաւ Ռուսաստանի համար, բացայայտ կերպով ապացուցեց, որ գիւղացիութեան ազատագրումը ճորտութիւնից այլ եւս անհնարին է յետաձգել: Եւ արդարեւ, Նիկոլայ Ա.ի որդին՝ կայսր Աղէքսանդր Բ.ը* 1861 *թ. փետրուար* 19*ին կայսերական հրովարտակով հռչակեց գիւղացիների ազատութիւնը ճորտութիւնից, որի հետեւանքով Ռուսաստանում սկսուեց բարենորոգումների մի փայլուն ժամանակաշրջան:*

*է* 1818 *թուից մինչեւ իր մահը՝* 1858 *թ., ուղիղ* 40 *տարի:*

*Հայոց եկեղեցիների կառավարութեան մասին տեղեկութիւններ չունինք, իսկ ինչ վերաբերում է ճեմարանին, այդ մենք կը տեսնենք ճեմարանի պատմութեան մէջ. այստեղ արձանագրենք միայն, որ նա՝ իր հօր նման, սիրել է ճեմարանը, գուրգուրացել նրա վրայ եւ ջանք չի խնայել ճեմարանի պայծառութեան յառաջադիմութեան համար:*

*Խանդավառուած մի մտքով՝ բերել ըստ հնարաւորութեան մեծագոյն չափով օգուտ իրենց կրթական հիմնարկութեան՝ ճեմարանին ու նաեւ ամեն կերպ զարկ տալ Հայոց լեզուի, գրականութեան ու պատմութեան զարգացմանը, երկու եղբայրները՝* Յովհաննէսն ու Խաչատուրը յղանում են նախ, ճեմարանին կից տպարան հիմնելու փայլուն միտքը, եւ ապա հարց են բարձրացնում հիմնելու Մոսկուայի համալսարանում Հայոց լեզուի ու դպրութեան յատուկ ամբիոն:

*Երկու ձեռնարկներից առաջինը պսակւում է կատարեալ յաջողութեամբ, երկրորդը, որ կարող էր անթիւ օգուտներ բերել Հայոց լեզուի ու դպրութեան ուսումնասիրութեան ու զարգացման գործին, դժբախտաբար, անյաջողութեան է մատնւում:*

*Տպարանի կատարած մշակութային դերի մասին խօսք կը լինի ճեմարանի պատմութեան մէջ. այստեղ միայն ասենք, որ այդ*

*տպարանը հիմնուել է 1829 թուին, որ նրա վրայ երկու եղբայրները ծախսել են 50·000 ռուբլի թղթադրամ, իսկ հետագայում եւս 32·162 ռուբլի արծաթ, տպարանի ընդարձակման ու պահպանութեան համար: Տպարանը, նախ ծառայում էր Ճեմարանի կարիքները բաւարարելուն՝ տպագրում էր դասագրքեր, բլանկաւոր թղթեր, մատեաններ, տետրակներ, աշակերտների եւ ուսուցիչների գրական–գիտական հեղինակութիւնները, իսկ այնուհետեւ կատարում դրսի պատուէրները:*

*Այստեղ են տպագրուել Մոսկուայում լոյս տեսած հայ մամուլի օրգանները («Հիւսիսափայլ», «Ճռաքաղ» եւ այլն) ու նաեւ զանազան բառարաններ:*

*Ի միջի այլոց, 1838 թ. Յովհաննէս Լազարեանը լոյս է ընծայել, տպագրելով Ճեմարանի տպարանում Աղէքսանդր Խուդաբաշեանի Հայերէն–Ռուսերէն բառարանը, բաղկացած երկու հատորից, ծախսելով իր սեփական միջոցներից 72·000 ռուբլի թղթադրամ: Այս բառարանը ժամանակին ունեցել է արտակարգ նշանակութիւն եւ մեծապէս գնահատուել է հայ հասարակութեան մտաւորական շրջանակներում: Կայսրն իսկ՝ Նիկոլայ Ա.-ը այդ առթիւ յայտնել էր իր «բարձրագոյն հաճութիւնը» Յովհաննէս Լազարեանին[8]:*

*

[8] *Տե՛ս Մ. Մսերեանցի «Յիշատակարան», էջ 28, մաս Գ.:*

1829 թուին Յովհաննէս Լազարեանը գրաւոր, իմաստօրէն ձեւակերպուած ու լրջօրէն պատճառաբանուած դիմում է անում Մոսկուայի Համալսարանի Հոգաբարձու գեներալ-մայոր Պիսարեւին, առաջարկելով Մոսկուայի համալսարանում ստեղծել յատուկ ամբիոն Հայոց լեզուի ու գրականութեան:

Այս դիմումի մէջ բերուած պատճառաբանութիւններն ու նկատումները այնքա՛ն արժէքաւոր են ինքնըստինքեան եւ ապացոյց հեղինակի ո՛չ միայն նրա նուիրումի հայ գրին ու գրականութեան, այլեւ նրա լուսաւոր մտքի, ուստի անհրաժեշտ ենք համարում առաջ բերել նրա բովանդակութիւնը գէթ քաղուածօրէն:

«Հայոց լեզուն — ասուած է այդ դիմումի մէջ — եւ դպրութիւնը, որպէս մի ճիւղ արեւելեան լեզուների, որոնք ուսումնասիրւում են արտասահմանի բոլոր համալսարաններում ու նաեւ մեր հայրենի համալսարաններում, արժանի է հաւասարապէս ուշադրութեան, ինչպէս իր ներքին արժանիքներով գիտական տեսակէտից, նոյնպէս եւ քաղաքական պատճառներով:

«Հայ պատմագիրները, ինչպէս են՝ Մար Աբբաս Կատինան 150 տարի Ք. Ծ. ա., Մովսէս Խորենացին V րդ դարում, Եղիշէ, Ղազար Փարպեցի, Արէլ Քարիր (?), Պատրիարք Յովհաննէս, Օհան Աւաքել (?), Մովսէս Կա-

ղանկատուացի եւ չատ ուրիշները նշանաւոր են թէ իրենց ոճի գեղեցկութեամբ եւ թէ իրենց տուած տեղեկութիւնների կարեւորութեամբ: Նրանք խօսելով իրենց հայրենիքի մասին, խօսում են նաեւ Բիւզանդիոնի, Յոյների, Պարսից արքաների, արաբների, տաճիկների, մոնղոլների, Խաչակրաց արշաւանքների եւ առհասարակ ամբողջ Արեւելքի մասին, սկսած IVրդ դարից մինչեւ նորագոյն ժամանակները: Այնտեղ, ուր յունական եւ հռովմէական գրողների պատմութիւնը ընդհատւում է, լրացնում են հայ պատմագիրները իրենց երկերով:

«Այս իսկ նկատումով Ֆրանսիական կառավարութիւնը, հետամուտ մի նպատակի, այն է՝ լոյս սփռել գիտութեան վրայ, հաստատել է Փարիզի Համալսարանում Հայոց լեզուի ու Հայոց դպրութեան յատուկ ամբիոն:

«Արեւելագէտները, որոնք ուսումնասիրել են Հայոց լեզուն, հետախուզել են Արեւելքի հնութիւնները եւ հրատարակել IV եւ Vրդ դարերի պատմագիրների գեղեցիկ ստեղծագործութիւնները»:

Այնուհետեւ հեղինակը պատճառաբանում է իր առաջարկի անհրաժեշտութիւնն ու նպատակայարմարութիւնը նաեւ նրանով, որ Կազան քաղաքի համալսարանը ունի թուրքերէն լեզուի ամբիոն եւ դա անհրաժեշտ է համարուել այդ շրջանի համար, որովհետեւ

նրա ազգաբնակութեան մի խոշոր մասը կազմում են թուրքերը:

Հայոց լեզուի ամբիոնը Մոսկուայի Համալսարանում նոյն նկատումով նոյնքան անհրաժեշտ է, քանի որ Մոսկուան անընդհատ դրաւում է բազմաթիւ հայեր, մանաւանդ «Հայոց Նահանգի» միացումից յետոյ Ռուսաստանին[8]:

Հեղինակը չի մոռանում մատնանշելու նաեւ քաղաքական ու տնտեսական հանգամանքների վրայ, որոնք նոյնպէս խօսում են օգուտ իր առաջարկի իրագործման անհրաժեշտութեան:

«Մեր հայրենիքում, — ասում է նա — բացի այս պատճառներից, որոնք վերաբերում են Հայոց լեզուի ու դպրութեան բարձր արժանիքներին, կան եւ քաղաքական հանգամանքներ, որպէս հետեւանք Միջին Ասիայի հողամասերի սահմանակից լինելուն մեր կայսրութեան, մանաւանդ որ կայսեր Նիկոլայ Պաւլովիչի ներկայ օրհնեալ թագաւորութեան օրօք նրա պետութեան սահմանների մէջ է առնուած յաւէտ յիշատակելի Արարատը: Ներկայումս հայ ժողովուրդը, բնակուող Ռուսաստանում եւ Նահանգում, որ

[8] Ցաւօք սրտի, մենք չգտանք վիճակագրական տեղեկութիւններ Մոսկուայի հայ գաղութի թուական աճման մասին: «Սով. Հայաստան» ամսագրում (47 թ. Nr. 9) Գ. Ստեփանեանը հաղորդում է, որ 1779 թուին Մոսկուայում կար 42 հայ ընտանիք, իսկ 1810 թուին այդ թիւր բարձրացաւ 60ի, իսկ հետագայում աւելի մեծացաւ»: Միայն այսքանը...

կոչում է Հայկական... սպասում է, որ նրա մայրենի լեզուն կցուի ուսանող երիտասարդութեան պարապմունքներին»:

Շարունակելով իր առաջարկի հիմնաւորումը, հեղինակը մատնանշում է այն առեւտրական շահագրգռութիւնների վրայ, որ Ռուսաստանը ունի եւ որոնց նա միշտ հետամուտ է եղել Արեւելքում:

Բայց Հայոց լեզուի ուսումնասիրութիւնն ու տարածումը կարեւոր է նաեւ կառավարական վարչական գործերի համար նոր նուաճուած Հայոց գաւառներում:

Ի վերջոյ, հեղինակը պատրաստակամութիւն է յայտնում հոգալու արժանաւոր հայագէտներ հրաւիրել, ինչպէս եւ իր ծախսով տրամադրել բոլոր անհրաժեշտ գիտական ձեռնարկները, եթէ Մոսկուայի համալսարանում հաստատուի Հայոց լեզուի ու դպրութեան յատուկ ամբիոն[10]:

Յովհաննէս Լազարեանի այս խնդրագիրը Մոսկուայի համալսարանի հոգաբարձուն ուղարկում է ժողովրդական լուսաւորութեան նախարար իշխան Լիվէնին նոյն 1829 թ. հոկտեմբեր 22ին:

Նախարարը նոյն թուի նոյեմբեր 9ին տալիս է իր հետեւեալ ժխտական պատասխանը,

[10] Այս դիմումի, ինչպէս եւ կառավարութեան պատասխանի լրիւ բովանդակութիւնները ռուսերէն լեզուով բերուած են Ճեմարանի 50ամեակին նուիրուած հրատարակութեան մէջ, էջ 13—15:

որ կրկին առաջ ենք բերում միայն մի հատուածը.

«Ժողովրդական լուսաւորութեան նախարարութիւնը արդէն ուշադրութեան է առել մեր հայրենիքում արեւելեան լեզուների, ի թիւս որոց նաեւ Հայոց լեզուի, ուսումնասիրութեան անհրաժեշտութիւնը, բայց քանի որ հնարաւորութիւն չկայ մեր իւրաքանչիւր համալսարանում ունենալ ամէն մի լեզուի համար դասատուներ, հետեւաբար նախարարութիւնը մտադիր է Ս. Պետերբուրգում հիմնել մի ընդարձակ մասնաճիւղ, ուր կ՚աւանդուին բոլոր արեւելեան լեզուները: Նախարարութիւնը հարկադրուած է այսպէս վարուելու նաեւ նրա համար, որ մեր բոլոր համալսարանները, ի թիւս որոց նաեւ Մոսկուայինը, չեն կարող արեւելեան լեզուների ուսումնասիրութեան համար ունենալ բոլոր հարուստ օժանդակ միջոցները, որոնցմով օժտուած է Ս. Պետերբուրգը. այնտեղ են՝ Գիտութիւնների Ակադեմեան, Կայսերական Հայկական գրադարանը, որոնք կայսեր ողորմածութեան շնորհիւ, ունին թանկարժէք արեւելեան գրադարաններ եւ ուր համախմբւում են մարդիկ, որոնք հռչակուած են իրենց գիտութիւններով արեւելեան դպրութեան մէջ եւ այդպիսով դիւրացնում են ամէն մի արեւելեան լեզուի համար բազմաթիւ ու ձեռնհաս դասատուներ ունենալը:

«Այս մտադրութիւնը՝ հիմնել մայրաքա-

*դաքում բոլոր արեւելեան լեզուների մի մասնաճիւղ, արդէն իսկ արժանացել է նախնական բարձրագոյն բարեհաճութեան…»:*

*Անկարելի էր ուրանալ, որ նախարարութեան ժխտական պատասխանը չատ լուրջ կերպով էր հիմնաւորուած եւ որեւէ տարակուսին չէր վերցնում, ուստի Յովհաննէս Լազարեանը հարկադրուած եղաւ համակերպուել, ու նոր քայլեր չանել, թէեւ, անշուշտ, նա ցաւ զգաց, որ իր ցանկութեան իրագործումը տեղի պիտի ունենայ ձեմարանի շրջանակից դուրս եւ առանց իրենց՝ Լազարեանների վեհանձն օժանդակութեան…*

*Վերջացնելով մեր խօսքը Յովհ. Լազարեանի կրթական գործունէութեան մասին, մենք չենք կարող չասել մի քանի խօսք նաեւ Լէօի այն կարծիքի մասին, որ իբր թէ Լազարեանները ընդհանրապէս եւ Յովհաննէս Լազարեանցը մասնաւորապէս, իրենց դպրոցական–կրթական գործունէութեան մէջ աշխատել են նմանուել Ս. Ղազարի Մխիթարեաններին ու մրցման մէջ են եղել նրանց հետ:*

*Լէօն իր այս տեսակէտը չատ ցայտուն կերպով յայտնել է մասնաւորպէս իր* «Ստեփանոս Նազարեանցի կենսագրութիւնը» *հեղինակութեան ներածութեան մէջ:*

*«Չէ կարելի ասել — գրում է Լէօն — թէ հայ հոգեւորականութիւնը չէր զգում Մխիթարեանների մտաւոր գերազանցութեան ան–*

*յարմարութիւնը*: Կար դժգոհութիւն, կար դիմադրելու ցանկութիւն: *Բայց պակասում էր ոյժը: Դիմադրողները հաւասար զէնքեր չունէին*:

«*Այս խրողութեան վրայ ուշադրութիւն էր դարձրել կոմս Յովհաննէս Լազարեանը, ինչպէս վկայում է Յովակիմ Լազարեանը* 1820 *թուականին հրատարակած իր մի շրջաբերականի մէջ: Նա հասկացել էր, որ* կաթոլիկ վարդապետների դէմ մրցելու համար *պէտք է նրանց պէս ուսումնական հոգեւորականներ պատրաստել*: Եւ այս միտքը դարձել էր մի լաւ դպրոց բաց անելու շարժառիթներից մէկը: *Իր եղբօր հետ համաձայն էր եւ Յովակիմ Լազարեանը*» (*էջ* 22—23):

*Նոյն Ներածութեան մէջ Լէօն կրկնում է նոյն գաղափարը, ասելով*՝

«*Յովակիմ Լազարեանը դիմում է Վենետիկ*, մոռանում է նոյն իսկ որ իր դպրոցը Ս. Ղազարի դէմ մրցող մի հիմնարկութիւն պիտի լինի, *խնդրում է Մխիթարեան միաբանութիւնից երկու վարդապետ ուղարկել ուսուցչութիւն անելու համար* (*Ճեմարանում*)» (*էջ* 26):

*Իսկ էջ* 29*ում ասում է*.

«Մխիթարեաններին նմանվելու, Մխիթարեաններին դիմադրելու ցանկութիւնը այնքան մեծ էր, *որ* 1823 *թուականին Լազարեանների դպրոցում կազմուեց Հայկական Հնութիւնների սիրողների Ընկերութիւն*»:

Եւ ապա՝ «Հարկաւոր էր ունենալ եւ սեփական տպարան, ինչպէս ունէին Վենետիկի եւ Վիեննայի Մխիթարեանները: *Յովակիմ Լազարեանի ժառանգները մի հարուստ տպարան էլ նուիրեցին իրենց ճեմարանին* (1829)» [11]:

Բաւականանանք այս մէջբերումներով:

Թո՛ղ ներուի մեզ ասելու, որ Լէօի այս բացատրութիւնները մենք համարում ենք գրականութեան ո՛չ համապատասխանող ու նաեւ, թւում է, թէ մակերեսային ու ձեւական է:

Լազարեանների հոգակալ տոհմի բոլոր անդամների, սկսած ցեղապետ Ղազար Նազարեան Լազարեանից, կենսագրականների, նրանց կեանքի ու գործունէութեան հետ ծանօթութիւնը չի կարող առիթ տալ նման մի տեսակէտի համար. անհնարին է երեւակայել, որ նրանք իրենց դպրոցական-կրթական գործունէութեան մէջ առաջնորդուած լինեն նման չարժառիթներից թէ ընդհանրապէս եւ թէ մասնակի կերպով՝ «մրցման ու դիմադրութեան կամ Մխիթարեաններին նմանուելու» մոտիվներից մղուած լինեն:

Այս սքանչելի եւ անգուգական տոհմի բոլոր ներկայացուցիչները այնքան խոր, այնքան լաւ ծանօթութիւն ունէին իրենց ժամանակի հայ իրականութեան շատ տխուր վի-

---

[11] Բոլոր ընդգծումները մերն են:

ճակի հետ, որ միանգամայն ինքնաբերաբար սկիզբ գալին այն համոզումին եւ այն լուսաւոր մտքին, որ միակ միջոցը պայքարելու տիրող մտաւոր խաւարի դէմ՝ դպրոցն է, ուսումն ու կրթութիւնն է եւ որ միայն լաւ հիմունքների վրայ դրուած դպրոցի միջոցով է, որ նրանք կարող են զարկ տալ հայ լեզուին, հայ գրին ու գրականութեան:

Այս պարզ մտքին գալու համար նրանք կարիք չունէին ջանալ նմանուելու Մխիթարեաններին: Հայ իրականութիւնը ինքնին առաջադրում էր ու պահանջում լոյս ու կրթութիւն:

Բացի այդ, Լազարեանների ազգասիրութիւնը, հայրենասիրութիւնը, նրանց սէրը դէպի ուսումն ու կրթութիւնը, նրանց մշտական մտահոգութիւնները լոյս ու կրթութիւն տարածել իրենց հայրենակիցների մէջ՝ կազմում էր նրանց մեծ հոգու բնական պահանջը․ դա մի ժառանգական աւանդութիւն էր, որ անցնում էր սերունդէ սերունդ, հօրից որդուն: Արհեստական ոչինչ կար նրանց մէջ․ Լազարեանները մի ինքնատիպ ու մոլեռանդ սպասաւորներ էին իրենց սիրեցեալ ազգի:

Նրանց բոլոր կրթական ձեռնարկները բխում էին մի բաղձանքից՝ դարձնել Ճեմարանը լուսաւորութեան մի կենտրոն հայ ժողովրդի համար: Եւ նրանք ո՛չ մի ծախսի կամ դժուարութեան առաջ կանգ չէին առ–

նում ոյժ տալու ճեմարանի հեղինակութիւնը բարձրացնելու, զօրացնելու եւ ընդարձակելու նրա կրթական դերը։ Այս բաղձանքից էր, որ միանգամայն բնականաբար ու տրամաբանօրէն բխում էր նրանց այս կամ այն կրթական ձեռնարկի նախաձեռնութիւնը։

Թերեւս, արտաքին նմանողութիւն կար նրանց ու Մխիթարեանների կրթական — գրական ձեռնարկների միջեւ, բայց ո՛չ երբե՛ք նմանուելու չարժառիթ։

Այս բոլորով հանդերձ չպիտի մոռանալ, որ թէ կոմս Յովհաննէս Լազարեանը, ճեմարանի հիմնադիրը, եւ թէ նրա բոլոր յաջորդները լաւ կրթուած մարդիկ էին եւրոպական իմաստով։

Իսկ եթէ ի նկատի առնելու լինենք, որ թէ կոմս Յովհաննէս Լազարեանը եւ թէ նրա եղբայրները ապրել են 18րդ դարի երկրորդ կէսին, երբ Ֆրանսական լուսաւորիչների յառաջադէմ գաղափարները ողողել էին ամբողջ Եւրոպան եւ հասել Եկատերինա Բ. կայսեր գահին, որ Լազարեանները չէին կարող միալ այդ հսկայ մտաւոր շարժումից դուրս եւ զերծ նրա բարերար ազդեցութիւնից, — ակամայ պիտի գանք նոյն եզրակացութեան, որ Լազարեանները որեւէ պատճառ չունէին իրենց հայեացքները սեւեռած պահել դէպի Ս. Ղազարը եւ ընդօրինակել նրանց, առաւել եւս մրցութեան մէջ մտնել նրանց հետ...

Ի վերջոյ, Լէօն, յենուելով աղա Յովակիմի 1820 թ. «Յայտարարութեան վրայ առ իւր համազգիս», ասում էր, որ կոմս Յովհաննէս Լազարեանը ուշադրութիւն էր դարձրել այն դժգոհութեան եւ դիմադրելու ցանկութեան վրայ հանդէպ Մխիթարեանների:

Այս մատնանշումը մի կատարեալ թիւրիմացութեան արդիւնք է, քանզի այդ Յայտարարութիւն-շրջաբերականի մէջ ակնարկ անգամ չկայ այն մասին, որ կոմսը համակուած լինէր նման տրամադրութիւններով...

## ԳԼՈՒԽ Է.

### ԽԱՉԱՏՈՒՐ ՅՈՎԱԿԻՄԵԱՆ ԼԱԶԱՐԵԱՆՑ
(1789—1871)
ԵՒ
### ՄԱՆՈՒԿՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԽԱՉԱՏՐԵԱՆ ԼԱԶԱՐԵԱՆՑ
(1844—1850)

*Խաչատուր Լազարեանը՝ աղա Յովակիմի* երկրորդ *որդին՝ ծնուել է* 1789 *թ. Յունիսի մէկին:*

*Աղա Խաչատուրի պետական ու ազգային հասարակական-կրթական գործունէութիւնը տեւել է՝ շատ երկար՝* 1801 *թ. սկսած մինչեւ իր մահը՝* 1871 *թ.:*

*Չնայած, որ նրա երկու կենսագիրները՝ Մ. Մսերեանցն ու Պրոֆ. Զինովեւը, գրել են իրենց երկասիրութիւնները նրա կենդանութեան ժամանակ, այսու հանդերձ այս կենսագրականն էլ շատ պակասաւոր է: Կրկին*

մեզ օգնութեան են գալիս բարձրագոյն հրովարտակներն ու հրամանագրերը:

1818 թ. աղա Խաչատուրը եղել է Լազարեան ճեմարանի Հոգաբարձուի՝ իր մեծ եղբօր աղա Յովհաննէսի օգնականը, իսկ վերջինին՝ մահից յետոյ՝ Հոգաբարձու թէ ճեմարանի եւ թէ երկու մայրաքաղաքների Հայոց եկեղեցիների:

Ճեմարանի հոգաբարձուի օգնականի պաշտօնը այդ ժամանակ վերացուել է:

Խաչատուր Լազարեանը իր սկզբնական կրթութիւնը ստացել է իր ընտանիքում՝ ծնողների մօտ: Այնուհետեւ պատրաստուել է եւ ուսարտական քննութիւն տալով Պետերբուրգի Մանկավարժական ճեմարանում ստացել է 1812 թ. յունիս 15 վկայական, որից երեւում է, որ բացի ընդհանուր կրթական առարկաներից (թուաբանութիւն, աշխարհագրութիւն, պատմութիւն եւայլն) նա սովորել է ֆրանսերէն ու գերմաներէն լեզուները, Պետական տնտեսագիտութիւն, Հռոմէական եւ քրէական իրաւունքները, բնական օրէնքները, ընդհանուր եւ Ռուսաց վիճակագրութիւն, ժամանակագրութիւն, բնաբանութիւն եւայլն:

Իր ծառայութեան ցուցակից իմանում ենք, որ պետական ծառայութեան է մտել 1801 թ.:

Իր երկարատեւ ծառայութեան ժամանակաշրջանում նա հասել է բարձր աստիճան-

ների՝ Գաղտնի Պետական Խորհրդականի եւ Կայսերական Դրան Սենեկապետի (Կամեր-հեր) կոչումը. ստացել է բազմաթիւ շքանշաններ, մեդալներ ու թանկագին նուէրներ: Բարձրագոյն շքանշաններից յիշատակենք միայն՝ Ս. Յովհաննու Երուսաղէմացւոյ (1816), Ս. Աննայի Ա. աստիճանի (1848) եւ Պարսից Շահից Առիւծի եւ Արեգակի առաջին աստիճանը 1853 թ.:

Նասրէդդին Շահի այդ առթիւ տրուած հրովարտակի մէջ ի միջի այլոց ասուած է.

«Ազգ եղեւ մեզ, թէ արժանաւորագոյն պատուոյ՝ պերճափառն՝ վեհանձնն Խաչատուր Յովակիմեան Լազարեանց, ընդարձակեալ եւ տարածել յոյժ պայծառացուցեալ է զԱրեւելեան Լեզուաց Ճեմարանն ի Մոսկուա քաղաքի՝ ... յորում ուսանդին մանկանց՝ բաց յայլոց գիտութեանց՝ նա եւ օտար լեզուք, Արաբացւոց, Պարսից եւ Տաճկաց. որով եւ հրահանգեալ պատրաստին թարգմանք ընտիրք եւ միանգամայն պիտանացուք Պարսկաստանի, որպիսի եղեն որդին եւ եղբօրորդին գերաստիճան Իսմայիլ (Ստեփան) խանի, որք վարժեցան ի նմին չահաւոր ճեմարանի[1]»:

Խաչատուր Լազարեանը եղել է պատուաւոր անդամ Պետերբուրգի եւ Մոսկուայի բնազննաց Ընկերութեան, Պետերբուրգի եւ

---

[1] Տե՛ս Մ. Մսերեանցի «Յիշատակարան», էջ 72, Բ. մաս: Ընդգծումները մերն են:

Մոսկուայի Ազատ Տնտեսական Ընկերութեան, Անդամ Կայսերական Ընկերութեան Ճրնական տնտեսութեան եւ Փարիզի Ասիական ընկերութեան (1847 թ.)։

Պետական ծառայութիւնից յիշատակենք միայն, որ պաշտօնավարել է Կայսերական Դիւանում Արտաքին գործոց, Արտաքին գործոց Նախարարութեան մէջ եւ ապա Ռուս-տաճկական պատերազմի ժամանակ գտնուել է ռուսական բանակում Խորհրդականի պաշտօնով[2]։

*

Այդ Խաչատուրի գրեթէ ամբողջ կեանքն ու գործունէութիւնը նուիրուած են եղել Լազարեան Ճեմարանին, որի կրթական բարեյաւումն ու նիւթական ապահովութիւնը կազմել են նրա մշտական խնամքի առարկաները։ Ճեմարանի պատմութեան մէջ աւելի կը պարզուի, թէ որքա՛ն բեղուն է եղել նրա գործունէութիւնը Ճեմարանի կեանքի մէջ եւ որպիսի՛ մեծ ծառայութիւններ է նա մատուցել Ճեմարանին ու թողել անջնջելի հետքեր։ Ճեմարանը նոյնքան մօտ է եղել նրա

[2] Մ. Մսերեանցի «Ցիշատակարան», էջ 95, Գ. մաս, ուր թարգմանաբար բերուած է «Ակտերի ժողովածուից» հետեւեալ հատուածը.

«Ի պատերազմին (Ռուսաց) ընդդէմ Տաճկաց յամին 1828, ի Կայսերական Գլխաւոր բնակարանի՝ ի տեսչութեան Արտաքին գործառնութեանց գտանէր Պետական Խորհրդականն Խաչատուր Լազարեանց։ Ըստ բարձրագոյն հրամանի չոգաւ նա ապա ի Մոլդավիա եւ ի Վալաքիա զանազան յանձնարարութեամբք»։

սրտին, որքան որ իր հօր եւ եղբօր սրտին: Նրա այդ ծառայութիւնը գնահատուած է եղել ո՛չ միայն ճեմարանի աշակերտութեան, ուսուցչութեան եւ հայ հասարակութեան կողմից, այլ եւ կառավարութեան կողմից: Յիշատակենք միայն մի դէպք:

1853 թ. մայիս 20ի բարձրագոյն հրովարտակի մէջ ասուած է.

«...Յարատեւ ջերմեռանդութիւն Ձեր առ պայծառութիւն ճեմարանին Արեւելեան Լեզուաց... եւ բազմապատիկ նուիրաբերութիւնքն առատաձեռնեալք ի Ձէնջ յօգուտ այսր ճեմարանի՝ արժանի եղեն հանապազ Մերում առանձին ուշադրութեան: Յարգելով Մեր զայդչափ զգովանի եւ զբարեփոյթ ճիգն Ձեր ի տարածումն լուսաւորութեան, ...Ամենաողորմածարար պարգեւում եմք Ձեզ ...զՇքանշան Ասպետական Կարգի Ս. Աննայի առաջին աստիճանի, զարդարեալ Կայսերական Թագիւ...»:

Ճեմարանի կեանքից էլ բերենք միայն մի դէպք, որ վճռական նշանակութիւն ունեցաւ եւ տուեց ճեմարանին այն կազմակերպութիւնը, որը այնուհետեւ մնաց անփոփոխ:

Ճեմարանում մինչեւ 1872 թ. արեւելեան լեզուների դասաւանդութիւնը կամ խառն է եղել ընդհանուր կրթական առարկաների հետ, կամ եթէ զատուել է, բայց կրկին գրեթէ անկազմակերպ վիճակում է եղել: Միայն

1872 թ. են բացւում յատուկ մասնագիտա-կան դասարաններ արեւելեան լեզուների հա-մար, իրենց առանձին կանոնադրութեամբ, ուսուցչական կազմով ու բիւջէով:

«Մասնագիտական դասարանների նոր կանոնագրի մշակումը, — պատմում է վրա-ցերէն լեզուի ու գրականութեան դասատու Պրոֆ. Խախանովը — սկսուեց Խաչատուր Յովակիմեան Լազարեանի օրօք: Երբ 1871 թ. դեկտեմբեր 14ին Կանոնագիրը արդէն վերջ-նականապէս մշակուած ու պատրաստ էր, արդէն կնքել էր իր մահկանացուն այդ մե-ծահոգի տոհմի վերջին ներկայացուցիչը:

«Պատկառելի ծերունին միշտ բերել էր կենդանի մասնակցութիւն Մասնագիտական դասարանների ճակատագրի տնօրինութեան մէջ. Նա հետեւում էր նրանց կազմակեր-պութեան, հոգ էր տանում, որպէս զի իւրա-քանչիւր առարկայի ամբիոնը թափուր չմնայ եւ ժամանակին ունենայ իր դասախօսին. ան-ձամբ քննութեան էր առնում ճեմարանի վարչութեան կողմից կազմած դասախօսների անուանացուցակը. Պետերբուրգից ուղար-կում էր հաշուետուութեան կանոնները, վերստուգիչ պալատի կողմից ընդունուած, որոնցով ճեմարանը պիտի առաջնորդուէր պետական գանձարանից ստացուած գումար-ների գործադրութեան հաշուետուութեան ժամանակ: Նրա օրօք էր, որ առաջին ան-գամ Մասնագիտական դասարանների ծախ-



Խաչատուր Լազարեանց

սերը իր վրայ առաւ Պետական Գանձարանը, յատկացնելով տարեկան 18·365 ռուբլի 90 կոպ·»:

«Աաչատուր Յովակիմեան Լազարեանցը գերեզման իջաւ այն ժամանակ, երբ բոլոր թիւրիմացութիւնները վերացած էին եւ Մասնագիտական դասարանների կազմակերպութեան խնդիրը լուծուած էր ամենայաջող կերպով:

«Հանգուցեալ հոգաբարձուի նախօրօք կատարած դիմումի համաձայն, 1871 թ. դեկտեմբեր 20ին իշխան Սիմէոն Դաւիդովիչ Աբամելիք–Լազարեանը հաստատուեց որպէս ճեմարանի պատուաւոր Հոգաբարձու եւ այդ կոչումը պիտի մնար նրա տոհմի մէջ ժառանգաբար մէկ որդուց անցնելով միւսին[3]»:

Աաչատուր Լազարեանին է պատկանում նաեւ մի այլ խոշոր կրթական գործի կեանք տալու նախաձեռնութիւնը, որի մասին խօսք կը լինի քիչ ստորեւ եւ որը, ցաւօք սրտի, կապուած է մի մեծ դժբախտութեան հետ· ...Անողոք ճակատագիրը ո՛չ խնայեց իր վեհանձն ծնողներին ու հարազատներին եւ ո՛չ էլ ճեմարանի բախտը...:

Դա՝ ճեմարանի նախակրթական դասարանի բացումն էր, որի անհրաժեշտութիւնը

---

[3] Տե՛ս «Երեսունամեակը Մասնագիտական Դասարանների Լազարեան Ճեմարանի Արեւելեան լեզուաց», ռուսերէն հրատարակութիւնը: Մոսկուա 1903, էջ XXII + 147· Մէջբերումը՝ տե՛ս էջ 18—19· Ընդգծումը՝ մերն է:

վաղուց զգացւում էր եւ որը իր գոյութեամբ դուռ բացարեց նոր հայ չքաւոր մանր երեխաների կրթութեան առաջ:

Խաչատուր Լազարեանի անունը, ինչպէս արդէն յիշատակել էինք, կապուած է նաեւ ճեմարանի տպարանի հիմնարկութեան ու պահպանութեան հետ:

Ինչ վերաբերում է ճեմարանի նիւթական ապահովութեան, ապա այդ գործում երկու եղբայրների՝ Յովհաննէսի եւ Խաչատուրի՝ զոհաբերութիւնները, կարելի է ասել, գերազանցել են տոհմի բոլոր միւս անդամների նուիրատուութիւնները իրենց առատաձեռնութեամբ:

Լազարեան ճեմարանի 50ամեակի առթիւ լոյս տեսած հրատարակութեան մէջ յիշատակուած են Լազարեան տոհմի անդամների կողմից արուած նուիրատուութիւնների գումարները: Այդ հաշուետուութիւնից երեւում է, որ 60 տարուայ ընթացքում՝ 1804 թ. մինչեւ 1864 թ. միմիայն ճեմարանին արուած դրամական նուէրները կազմում են մի պատկառելի գումար՝ 662·782 ռուբլի արծաթ կամ շուրջ երկու միլիոն ռուբլի թղթադրամ: Այդ գումարից Յովհաննէսին եւ Խաչատուրին՝ երկու եղբայրներին բաժին է ընկնում՝ 502·437 ռուբլի արծաթ. բացի 200·000 ռուբլուց, որ նուիրաբերել է Խաչատուրը ճեմարանի 50ամեակի առթիւ 1865 թ. ապրիլ 2ին:

Այդ գումարների մէջ չեն մտնում այն

անչափ կալուածների արժէքները, որ նուիրաբերել են Լազարեանները ճեմարանին, երկու մայրաքաղաքների եկեղեցիների նորոգութիւնների համար ինչպէս եւ նրանց կից շէնքերի կառուցման վրայ ծախսուած գումարները, տպարանի հիմնարկութեան ու նախակրթարան դասարանի համար արուած նուէրների գումարները:

*

Գալով Խաչատուր Լազարեանի ազգային հասարակական գործունէութեան, դժբախտաբար, տեղեկութիւնների բացակայութեան հետեւանքով, քիչ բան կարող ենք ասել:

Մեր ներածութեան մէջ արդէն յիշատակել էինք Խաչատուր Լազարեանի նամակի մի մասը, գրուած Եփրեմ կաթողիկոսին 1811 թ. յուլիս 6ին: Այստեղ աւելացնենք, որ Յովհաննէսն ու Խաչատուրը խիստ մտահոգուած էին ուսուցիչներ պատրաստելու խնդրով Հայոց դպրոցների ու ճեմարանի համար: Խաչատուր Լազարեանը այդ խնդրի լուծման միակ միջոցը տեսնում էր նրանում, որ էջմիածինը յանձն առնի հայադէտ ուսուցիչներ պատրաստելու գործը:

«Բարուոք համարեսջիք — գրում է նա յիշեալ նամակի մէջ — օր մի առաջ այդր զերկոտասան սրամիտ եւ բարեւար մանկտիս ընտրել եւ զնոսա ի անկեան միում Աթոռոյդ յանձնել ումեմն առաջին բանական եւ ու–

սեալ անձին, որ է դպրի, վարդապետի կամ
եպիսկոպոսի, իցէ թէ Ներսէս սրբազանին
իսկ, զմանկտին զայնս ի քերականութեան
եւ ճարտասանութեան լեզուի մերում լաւա-
պէս կրթել, ի աստուածաբանութեան, պատ-
մութեան, աշխարհագրութեան եւ ի տաղա-
չափութեան որքան որ յազգի մերում ի լե-
զուի եւ ի մատեանս գտանին»:

Նամակի վերջում հեղինակը յոյս է յայտ-
նում, որ Աթոռը ապագայում մեծամեծ
օգուտներ կը ստանայ նման մի դպրոցից, —
«զի... լաւ եւ պիտանի անդամս, նուիրա-
կանս, առաջնորդս, ուսուցիչս, այո՛ եւ հայ-
րապետութեան արժանաւոր անձն էք ունե-
լոց[4]»:

Մ. Մսերեանի բերած պաշտօնական գա-
նագան նամակների ու գրութիւնների ցուցա-
կից իմանում ենք, որ երբ 1834 թ. Պետեր-
բուրգում կազմուել էր մի կոմիտէ մշակելու
Հայոց եկեղեցու սահմանադրութիւնը՝ ա-
պարգայ «Պօլօժէնիան», Խաչատուր Լազա-
րեանը նշանակւում է կառավարութեան կող-
մից անդամ այդ Կոմիտէի:

Այսպէս բոլոր տեղեկութիւնները, որ
ունեցել ենք մեր ձեռքի տակ, պարզ ու ակ-
նայայտնի կերպով, որ այդ գարմանալի տոհմի
բոլոր անդամները, սկսած պապից՝ ցեղա-
պետից Ղազար Լազարեանից, մինչեւ թոռները,

---

[4] Տե՛ս Լէօ, «Պատմ. Երեւանի թեմ. դպրոցի»,
էջ 92:

տոհմի վերջին շառաւիղ այս Խաչատուրը՝ նկատուել են թէ կառավարութեան եւ թէ համայն հայ ազգի կողմից, որպէս հարազատ ու հեղինակաւոր ներկայացուցիչներ, որոնց կարելի էր դիմել թէ հայցերով խորհուրդներ պետական գործերի մասին լինի Ռուսաստանի, լինի հայ ժողովրդին վերաբերող, թէ նիւթական օգնութիւն եւ թէ բարեխօսութիւն ու միջնորդութիւն զանազան, նոյն իսկ մասնաւոր, անհատական կարիքներին բաւարարելու համար: Եւ Լազարեանները չէին մերժում ոչ ոքի, չնայած իրենց բազում աշխատանքներին ու հոգերին:

Միաժամանակ աչքի է զարնում նաեւ այն ջերմ եւ անկեղծ սէրը, յարգանքը, այն համերաշխութիւնը, որ տիրել է այդ զարմանահրաշ տոհմի բոլոր անդամների մէջ փոխադարձաբար: Մի կատարեալ նահապետական հայ ընտանիք, ուր ցեղային աւանդները սրբութեամբ պահպանուել են շուրջ 130 տարուայ ընթացքին:

Պրոֆ. Զինովեւը, ի միջի այլոց, յիշատակում է մի մասնաւոր դէպք, որ խօսք արժանի է ուշադրութեան եւ որը միաժամանակ ցոյց է տալիս, թէ հեռաւոր հայ գաղութներում որքա՛ն էր բարձրացել Ռուսաստանի հմայքը 1826—1829 թթ. պատերազմներից յետոյ եւ մասնաւորապէս Արեւելեան Հայաստանի ազատութիւնը պարսկական եւ տաճկական տիրապետութիւնից ինչպիսի՛

*խոր ու խանդավառ տպավորություն էր թողել այդ հեռավոր շրջաններում:*

1829 *թ. Հնդկաստանում, Սմարան քաղաքի բնակիչ ոմն* Յովսէփ Յովհաննէս Ամարխանը *դիմում էր արել Ռուսաստանի Հայոց թեմակալ առաջնորդ Ներսէս արքեպիսկոպոսին, յայտնելով, որ կամենում է իր ընտանիքով և հսկայ հարստությամբ փոխադրվել Հայաստան, Ռուսաստանի հովանավորության տակ, և որ մտադիր է իր հարստությունը գործադրել յօգուտ իր հայրենակիցների թէ իր կենդանության ժամանակ և թէ իր մահից յետոյ, նուիրելով իր եկամուտից տարեկան* 5 *լաք ռուփի (կէս միլիոն ռուբլի), միաժամանակ խնդրում է հաղորդել իրեն որոշ տեղեկություններ Ռուսաստանի մասին:*

*Ներսէսը այդ գրությունը ուղարկում է Խաչատուր Լազարեանին. վերջինս կոմս Բենկենդորֆի միջոցով ներկայացնում է կայսեր՝ Նիկոլ Ա.-ին Ամարխանի խնդրագիրը:*

1830 *թ. դեկտեմբեր* 3 *թուակիր նամակով կոմս Բենկենդորֆը յայտնում է Խաչատուր Լազարեանին, որ Ամարխանի խնդիրը ներկայացրել է կայսեր որը բարեհաճել է մակագրել՝*

«Թո՛ղ նա գայ այստեղ, իսկ նրա պահանջած տեղեկութիւնները ես ինքս կը տամ նրան, երբ նրան տեսնեմ»:

*Այնուհետեւ պատմութիւնը լռում է եւ որեւէ տեղեկութիւն չկայ այդ հայ մեծահարուստ մարդու ճակատագրի մասին*[5]*։*

*Մի ուրիշ անհատական փոքրիկ դէպքի մասին հաղորդում է Մ. Մսերեանցը։*

*Մի ոմն հայազգի Սարաֆով դիմում է Խաչատուր Լազարեանցին, խնդրելով, որ նա բարեխօսի կայսեր առաջ թոյլտուութիւն ստանալու ծառայել ռուս կօզակների հեծելագունդի մէջ։*

*Խաչատուր Լազարեանը սիրով բարեխօսում է եւ 1828 թ. օգոստոս 6ին ստանում կայսեր բարեհաճ հաւանութիւնը։*

*Մի դէպք էլ* Ղազարոս Աղայեանի *կեանքից։*

*Պետերբուրգում Աղայեանը չատ ծանր նիւթական վիճակում է եղել։ Մի կիրակի օր նա գնում է Հայոց եկեղեցի եւ այնտեղ երգում իր անուշ ձայնով։ Խաչատուր Լազարեանին; որ ներկայ է լինում պատարագին, չատ դուր է գալիս Աղայեանի ձայնը եւ հրաւիրում է նրան իր մօտ։ Աղայեանը ներկայանում է եւ ահա՛ ինչպէս է պատմում նա այդ դէպքի մասին իր* «Իմ կեանքի գլխաւոր դէպքերը» *յուչերում.*

---

[5] *Հետաքրքրութիւնից զուրկ չի լինի ստուգել, թէ այս Ամարխանը արդեօք այն Ամիրխանեա՞նը չէ, որի հսկայ հարստութեան չուրջ, վերջին պատերազմից առաջ, այնքան մեծ աղմուկ բարձրացաւ մամուլի մէջ, երբ բազում ժառանգներ հանդէս եկան. ամենուրեք եւ նոյն իսկ մի չարք պետութիւններ ցոյց տուին մեծ չահագրգռութիւն։*

«Վեր բարձրացանք փառաւոր սանդուղքներով եւ հասանք մինչեւ ընդունարան։ Այստեղ դիմաւորեց ինձ բարեսիրտ ծերունին (վեհազն Խաչատուր աղա Լազարեանը, իր տոհմի վերջին ծերունի շառաւիղը), որին խոր գլուխ տուի, մի հինգ րոպէ խօսեց հետս, ասելով, որ ինձ շատ հաւանել է, եւ խնդրում է, որ ամէն շաբաթ կիրակի ժամումը երգեմ։ — Դուք ռոճիկ կը ստանաք, ասաց, եւ բնակարան, իսկ այս առէք ձեզ առ ժամանակ։ Այս ասելով տուաւ ինձ մի նամակի ծրար։ Ես առայ, գլուխ վեր բերի, եւ դուրս եկայ լուռ ու մունջ։ Երբ ծրարը բաց արի, միջին 25 մանէթ գտայ։ Նոյն օրը ինձ սենեակ տուին Հայկական եկեղեցու գաւիթում։ Ամսական նշանակեցին 30 մանէթ։

«Վեհազնը Եկեղեցու պաշտօնեաներին տէպ-տէպ ճաշի էր հրաւիրում, ուր դրսի հայերից ներկայ էր լինում միայն գեներալ Սուլթանշահը։ Դուրս գալիս սովորաբար ստանում էինք եւ ընծաներ մի-մի ծրարով. իմի մէջ սովորաբար 30 մանէթ» (էջ 69—70)։

Անշուշտ, նման դէպքեր շատ են եղել Լազարեանների կեանքում, բայց որոնց մասին տեղեկութիւն չկայ գրականութեան մէջ, թերեւս պահպանուած լինեն նրանց տոհմային թղթակցութիւնների մէջ, որոնք գտնւում են Խ. Հայաստանում։

Երբ նման դէպքերի մասին Լազարեանների կեանքի մէջ տեղի ունեցած՝ մենք կար-

դում ենք, ակամայ մեր միտքը անդրադառնում է մեր ժամանակակից հայ պաշտօնեաներին, որոնք ամենուրեք օտար կառավարական շրջաններում ունին բարձր դիրք եւ վայելում են կատարեալ վստահութիւն. ի՞նչ վերաբերմունք են նրանք ի յայտ բերում դէպի իրենց ազգակիցների խնդրանքներին ու կարիքներին: Ցաւով պիտի արձանագրենք, որ մեծ մասը չի հետեւում Լազարեանների օրինակին եւ այդ ո՛չ միայն մասնաւոր, անհատական դէպքերում, այլ եւ երբ խնդիրը վերաբերում է ազգային կենսական շահերին...: Երկիւղ են քաշում, որ իրենց միջնորդութիւնը՝ իրենց ծառայած կառավարութեան մօտ կարող է կասկածներ յարուցել իրենց բարեյուսութեան նկատմամբ...

Այո՛, հներից մեր զարմանահրաշ պապերից դեռ շատ բան ունինք սովորելու...

## ՄԱՆՈՒԿՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԽԱՉԱՏՐԵԱՆ ԼԱԶԱՐԵԱՆՑ
(1844—1850)

Խաչատուր Լազարեանը 1819 թ. ամուսնացել էր «ընդ չքնաղագունեղ գեղով մարմնոյ եւ առաքինի ոգւոյն բարեմասնութեամբք» իշխան Մանուկ բէյ Միրզայեանի դստեր Կատարինէի հետ: Մինչեւ 1844 թ. նա ունեցել է միայն աղջիկ երեխաներ, բայց միշտ էլ երազել էր ունենալ մի արու զաւակ, որ մնար ժառանգ ու շարունակող Լազարեան տոհմի:

1844 թ. մայիս 12ին ծնողների երազը վերջապէս կատարւում է եւ ունենում են տղայ զաւակ: Ծնողների, ինչպէս եւ հօրեղբօր՝ Յովհաննէսի ուրախութիւնը անսահման էր:

Հէնց այդ ժամանակ, կայսեր հրաւէրով 1843 թ. յունիսին եկել էր Պետերբուրգ Հայոց նորընտիր կաթողիկոս Ներսէս Ե. ստանալու իր ընտրութեան հաստատութիւնը կայսեր հրովարտակով եւ իջեւանել էր այդ Խաչատուրի տանը: Կաթողիկոսը, որ իր 76 տարեկան հասակում նոր էր ծանր հիւանդութիւնից առողջացել, ներկայ է լինում նորածինի մկրտութեան եւ ինքն է օծում երեխային մեռոնով եւ անունը դնում Յովհաննէս, մայիս 23ին [1]:

Դժբախտաբար, նորածին Մանուկ Յովհաննէսը վատառողջ էր: Ծնողները որոշում են տանել երեխային արտասահման ու դիմել

---

[1] Ի դէպ, այդ Խաչատուրի տանը, Ներսէս կաթողիկոսի հետ հանդիպում է ունենում գերմանացի ականաւոր ճանապարհորդ Բարոն Օգուստոս ֆոն Հաքստհաուզէնը. Ծերունազարդ կաթողիկոսը խոր տպաւորութիւն է թողնում նրա վրայ եւ նա մեծ գովասանքով է խօսում Հայոց կաթողիկոսի մասին. «... եօթանասնամեայ ալեզարդ, ազնուակերպ, փոքրհասակ ծերունի — գրում է նա ի մէջի այլոց — որոյ կերպարանն յայտ առնէր զհեզութիւն, զկորովամտութիւն եւ զբարեմտութիւն»: Յետոյ հաղորդում է նաեւ, որ «այս այր բարեջան կառոյց եւ գործարան ապակւոյ ի շրջակայս Տփխիսոյ»: Տե՛ս Ֆոն Հաքստհաուզէն, «Ճանապարհորդութիւն յայսկոյս Կովկասու, այն է՝ ի Հայս եւ ի Վիրս»: 1872 թ. Վաղարշապատ: Մէջբերումը՝ էջ 276—278:

այնտեղի ականավոր բժիշկների օգնությեան։ Նոյն 1844 թ. աղա Խաչատուրը ամբողջ գերդաստանով մեկնում է արտասահման, ուր մնում է ամբողջ երեք տարի։ Այդ ժամանակամիջոցում նա այցելել է գրեթէ բոլոր երկիրների մայրաքաղաքներն ու մեծ քաղաքները՝ Կոմօ, Վարշաւա, Վիեննա, Վենետիկ, Գենուա, Նիցցա, Պիզա, Լիվոռնօ, Ֆլօրենցիա, Մինխէն, Աուգսբուրգ, Շտուտգարդ, Հայդելբերգ, Մանհայմ, Մայնց, Ֆրանկֆուրտ, Վիզբադէն, Կեօլն, Աախէն, Բրիւսէլ, Փարիզ, ուր մնում են երկար ժամանակ և ապա մեկնում են Շվէյցարիա, այտեղից Գերմանիայի վրայով, ծովով վերադառնում են Կրոնշտադ-Պետերբուրգ Օգոստոս 12ին 1847 թուին։

Բժիշկները ամէն տեղ վստահեցնում են և յոյս տալիս, որ երեխան երկար կ'ապրի, չնայած որ մանուկ Յովհաննէսը վերջնականապէս ապաքինուած չէր։

Մ. Մսերեանցը պատմում է, որ ըստ իր տեղեկութիւնների, առած ականատեսներից, — «վաղակոյն քան զոր բնութեանն պահանջէ կարգ՝ զարթեան, տեէն, ի նմա ոգեկան զօրութիւնք, և իբրև առն կատարելոյ՝ երևեցան նորա ձիրք մտացն ընդ նոսին՝ և սէր առ առաքինութիւն, զգացումն զօրովոյ, կարեկցութիւն առ ընկերս, այլովքն հանդերձ»։ Առանձնապէս կարեկից է եղել չքաւորների ու տառապողների հանդէպ։ Սի-

*րում էր յաճախ այցելել բանտ եւ նիւթապէս օգնել բանտարկեալներին: 5 տարեկան հասակում նա արտայայտել է մեծ հետաքրքրութիւն ու սէր դէպի ուսում: Սիրում էր մանաւորապէս բնութիւնը եւ հետաքրքրւում երկնքի կեանքով. ուզում էր տեղեկութիւններ աստղերի, լուսնի եւ արեւի մասին. հարցնում էր, թէ ո՞վ է կառավարում աշխարհը, ի՞նչպէս է որ երկնակամարը մնում է կախուած առանց սիւների. ո՞վ է ապրում երկնային աշխարհում եւ ի՞նչպէ՞ս են այդ իմանում մարդիկ: Խոյս էր տալիս մանկական խաղերից. չէր սիրում խաղալիքներ. սիրում էր ընթերցանութիւն բարոյագիտական բովանդակութեամբ գրքերի ու լսել մեծերի զրոյցները. սիրում էր նայիլ նկարներին: Յաճախ ասում էր հօրը, որ պէտք չունի ո՛չ պատիւների, ո՛չ շքանշանների եւ ո՛չ էլ հարստութեան: Յաճախ կրկնում էր՝* «ոչինչ ինձ պէտք չէ»:

*Մահը համարում էր աշխարհի մեծագոյն բարիքը... Թւում էր, որ նա նախազգում էր իր մօտալուտ մահը... բժիշկներին ատում էր եւ հրաժարւում էր ընդունել դեղօրայք: Սիրում էր ներկայ գտնուել յուղարկաւորութիւններին...*

*«Եւ աւուրբք ինչ յառաջ քան զմեռանելն՝ ընկողմնեցաւ, ասեն, ի վերայ սեղանոյ, իբրու այն թէ՝ զմեռելոյ բերիցէ զնմանութիւն»:*

Երբեմն հիւանդանում էր եւ դրութիւնը այնքա՜ն ծանր էր լինում, որ առողջանալու որեւէ յոյս չէր մնում: Բայց երբ առողջանում էր, ծնողներն եւ հօրեղբայր Յովհաննէսը այնչափ ուրախանում էին եւ յոյսերով լցւում, տեսնելով «զաճումն ըստ մարմնոյ եւ զաջողակէսն զարգանալ ի բնական ձիրս ուղւոյն»:

1850 թ. նոյեմբեր 24ին երեխան ծնողների աչքի առջեւ խաղալիս է եղել, երբ յանկարծ նկատում են, որ երեխան խորասուզուել է մի անսովոր տխրութեան ու նեղսրտութեան մէջ... բժիշկների խորհուրդով յաջորդ օր երեխային կառքով տանում են զբօսանքի, բայց այդ էլ որեւէ օգուտ չի բերում: Միւս օր, նոյեմբեր 26ին, կէսօրից յետոյ, ժամը 4ին երեխան վախճանւում է 6½ տարեկան հասակում, խոր, անդարմանելի վիշտ պատճառում ծնողներին եւ հօրեղբօրը՝ աղա Յովհաննէսին...

«...Այդ մահը, — ասում է Լէօն — ողբացին ամէնքը իբրեւ ազգային կորուստ». ամէն կողմից թափուել էին ցաւակցութիւններ:

Ստեփաննոս Նազարեանցը իր «Յաղագս Փորձական Հոգեբանութեան ճառ»ը նուիրել էր «բարերանեալ յիշատակի վաղամեռիկ եղելոյ մանկանն Յովհաննու Խաչատրեան Լազարեանց», որին հետեւում է այս ոտանաւորը.

Յաւերժացեա՛լ դու

Բաղդ յաչաղկոտ թէ ոչ չնորհեաց
Առ կենդանեօքդ ըզՔեզ պաշտել
Ի Քոյդ շիրիմ տուրք արտասուաց
Թողցի՛ գոյս իմ երկ նուիրել[2]»:

Մանուկ Յովհաննէսը ի՞նչ հիւանդութեամբ էր տառապում, որ այնքան վաղ գերեզման տարաւ նրան, — ստոյգ յայտնի չէ: Ոմանց կարծիքով երեխան վախճանուել է ուղեղի բորբոքումից, իսկ Մ. Մսերեանի ասելով, երեխան տառապելիս է եղել վերնատութեամբ:

Մանուկ Յովհաննէսի շիրիմը ունի հետեւեալ արձանագիրը.

«Ո՛չ աստ հինօրեայ մարմին կայ ծերոյ,
Այլ՝ գող եօթնամեայ հրաշագեղ մանկան.
Որ դէմք, միտք ըզգօն, բարք ազնըւական,
Յուսադիր յոգունց լինէին բարւոյ
Է՛ր նա փառք, պըսակ, պարծանք, խընդութիւն,
Համայն եւ ժառանգ Տոհմին Գերազանց,
Ծընունդ Խաչատրոյ Վեհին Լազարեանց:
Մեծին ի ծընունդս կանանց՝ համանուն:
Նուաւ ակն ունէր մանկտին Արամայ
Բարեգործ Զարմին կրթել ըզպըտուղ.
Ըզնոյն ազգ յազգէ մըշտընջենաճիւղ
Անձկա՛յր տեսանել ի դարս բազմամեայ:

[2] Տե՛ս Լէօ, «Ստ. Նազ. Կենսագր.», Մաս Բ., էջ 391—392:

*Այլ մահկանացուաց նա վաղ ի միջոյ*
*Փոխեցաւ, յանանց ճեպեաց մուտ ի կեանս՝*
*Ա՛ռ ոչինչ համա՛յն համարեալ զոր կանս.*
*Զի այնպէս Վերնոյն կամացն էր հաճոյ* [3]»:

*

*Վշտահար ծնողներն եւ հօրեղբայր Յով-հաննէսը երեխայի մահուան առթիւ եւ նրա յիշատակին բազում բարեգործական քայլեր են անում, առատաձեռն նուէրներ են տալիս աղքատներին, տնանկներին, բայց ամենից էականն այն էր, որ նրանք յղանում են մի շատ գեղեցիկ միտք, որ այնքա՛ն հարազատ էր Լազարեաններին եւ այնքան համապա-տասխան նրանց ոգեհմի աւանդութիւններին.* նրանք որոշում են յաւերժացնել Մանուկ Յովհաննէսի յիշատակը, բաց անելով Ճեմա-րանում նախակրթարան դասարան 14 ձրիա-վարժ հայ աղքատ մանուկների համար եր-կու տարուայ դասընթացքով. այդ նպատա-կով եղբայրները նուիրում են 60.000 ռուբլի արծաթ կամ 180.000 ռուբլի թղթադրամ:

1851 *թ. փետրուար 12ին կայսրը այդ առթիւ յատուկ շնորհակալութիւն է յայտ-նում երկու եղբայրներին:*

*Այդ նախակրթարանի համար եղբայր-ները մշակում են յատուկ կանոնադրութիւն,*

---

[3] *Տե՛ս Մ. Մսերեանց, Յիշատակարան»,* էջ 35, *Ա. մաս:*

որ ստանում է կառավարութեան հաւանութիւնը եւ գործադրութեան մէջ դրւում:

Այդ կանոնագրի մէջ կայ մի ուշադրաւ յօդուած, որ պատիւ է բերում նրա հեղինակների ողջամտութեան եւ իրապէս նախատեսութեան: Այդ յօդուածում ասուած է, որ այդ դասարանի Հայոց լեզուի, Ռուսաց լեզուի եւ Թուաբանութեան դասատուն պիտի լինի ծագումով հայ: Այդ դասարանը յատկացւում է այն հայ մանուկներին, որոնք ո՛չ դպրոցական սկզբնական կրթութիւն ունին եւ ոչ էլ գիտեն ռուսերէն: Այդ դասարանը պիտի կրի՝ «նախակրթական բաժին մատղահաս Յովհաննու Լազարեանց» անունը:

Այս նախակրթարանը յիշատակուած պայմաններով ու ծրագրով գործել է մինչեւ 1917/18 ուսումն. տարուայ վերջը: Այնուհետեւ, Հոկտեմբերեան յեղափոխութեան հետեւանքով Ճեմարանի գոյութեանը վերջ տրուեց եւ Ճեմարանը վերածուեց «Հայ Մշակոյթի տան»...:

1887 թ., երբ մենք մտանք Լազարեան Ճեմարանի առաջին դասարանը, նախակրթարանի յիշեալ առարկաների դասատուն էր, Ճեմարանի նախկին սան, անուանի բանաստեղծ Սմբատ Շահազիզը: Երբ սա 1897 թ. թողեց վերջնականապէս Ճեմարանը, նրան փոխարինեց Կարապետ Կուսիկեանը, որպէս Հայոց լեզուի դասատու ու նաեւ նախակրթարանի դասատու: Այս վերջին պաշ-

տօնը, նրա մահից յետոյ, ես ստանձնեցի, որը եւ վարեցի մինչեւ 1917/18 ուսմ. տարուայ վերջը:

Երկու խօսքով անդրադառնալով այդ դասարանի պատմութեան, ասենք, որ Ծահագիգի օրօք Նախակրթարանը բաղկացած էր երկու բաժանմունքից՝ այբբենական, անդրադէտ մանուկների համար, եւ աւագ բաժանմունքից. երկուսն էլ զետեղուած էին մի դասարանի մէջ եւ ուսուցիչը պարապում էր միաժամանակ երկու բաժանմունքների աշակերտների հետ:

Հետագայում այբբենական բաժանմունքը զատուեց ու կազմեց առաջին նախակրթարան դասարան, ուր դասաւանդում էր Ճեմարանի վերակացու Ստեփան Տէր-Սարգսեանը:

Իմ օրօք կատարուեց երկրորդ բարենորոգումը:

Նկատելով, որ երկու նախակրթարանների աշակերտները երկու տարուայ ընթացքում ի վիճակի չեն լինում ձեռք բերել բաւարար չափով գիտելիքներ ու զարգացում, ինչպէս եւ իւրացնել ռուսաց լեզուն, որպէս զի կարողանան յաջող կերպով առաջին դասարանի դասընթացքը, որն այդ ժամանակ ունէր չափ բարդ ծրագիր՝ դասաւանդւում էին լատիներէն եւ հայերէն գրաբար լեզուները, բացի ընդհանուր առարկաներից, ես առաջարկեցի, յատուկ զեկոյց ներկայացնե–

րով Ճեմարանի տեսչութեան եւ Մանկավարժական Խորհուրդին, բացանել նաեւ միջին նախակրթարան դասարան, ուրիշ խօսքով՝ նախակրթարանի երկու տարուայ դասընթացքը վերածել երեք տարուան:

Առաջարկս հաւանութիւն գտաւ եւ բացուեց Միջին նախակրթարան դասարանը յատուկ ծրագրով. այդ դասարանի դասաւանդութիւնն էլ յանձնուեց ինձ:

Այսպէս շարունակուեց մինչեւ 1917/18 ուս. տարուայ վերջը:

Յիշատակենք, որ աւագ նախակրթարանի դասարանում կախուած էր Մանուկ Յովհաննէսի խղանկարը:

## ԳԼՈՒԽ Ը.

### ԳՆԴԱՊԵՏ ՂԱԶԱՐ ՅՈՎԱԿԻՄԵԱՆ ԼԱԶԱՐԵԱՆՑ [1]

Յովակիմ Ղազարեան Լազարեանցի կրտսեր որդին էր՝ գնդապետ Ղազար Լազարեանցը:

---

[1] Այս կենսագրականը կազմելիս մենք օգտուել ենք գլխաւորապէս՝

ա. «Նկարագիր Գաղթականութեան Հայոց ի Պարսկաստանէ ի Ռուսաստան», 1832: Ի Մոսկով: Ի տպարանի Հայկական Ճեմարանի Տեարց Լազարեանց, էջ 104:

բ. Մ. Մսերեանց, «Յիշատակարան» եւայլն: Հեղինակի տեղեկութիւնները գրեթէ ամբողջովին քաղուած են մեր առաջին աղբիւրից:

գ. Վ. Պօտտօ, «Վերածնութիւն Հայաստանի», Պարիս 1904:

դ. Ա. Երիցեան, «Կովկասահայք» եւ այլն:

*Սրա անունը սերտօրէն կապուած է 1827—1828 թթ. ռուս-պարսկական եւ մասամբ էլ ռուս-տաճկական 1829 թ. պատերազմների հետ եւ մասնաւորապէս 40.000 պարսկահայերի գաղթի հետ դէպի «Հայկական Նահանգը»։*

*Մ. Մսերեանը եւ Պրոֆ. Զինովեւը գրեթէ տեղեկութիւններ չեն տալիս նրա անձնական կեանքի մասին. չեն հաղորդում անգամ նրա ծննդեան ու մահուան թուականները...։*

*Նրա չափ համառօտ ծառայութեան ցուցակից եւ կայսերական հրովարտակներից մենք իմանում ենք միայն հետեւեալը.*

*Գնդապետ Ղազար Լազարեանցը ստացել է իր կրթութիւնը Ճանապարհների Հաղորդակցութեան դպրոցում, ուր մտել է 1810 թուին։*

1813 *թ. սկսում է իր զինուորական ծառայութիւնը Հուսարների Սումսկի զօրագունդի մէջ. մի տարի անց՝* 1814 *թ. փոխադրւում է Թիկնապահ (գվարդիա) Հուսարների զօրագունդը։*

1826 *թ. յունուար 28ի կայսերական հրովարտակով ստանում է գնդապետի աստիճան։*

*Որպէս առանձին յանձնարարութեանց պաշտօնեայ կոմս Պասկեւիչի մօտ, նա մասնակցել է* 1828 *թ. օգոստոս 5ի եւ 9ի ճակատամարտներին՝ Ախալցխա ամրոցի գրաւման ժամանակ եւ իր ցոյց տուած այդ կռիւներում քաջագործութիւնների համար ստացել է Ս.*

Աննայի 2րդ աստիճանի շքանշան 1829 թ. սեպտ. 16ին:

1828 թ. նա մասնակցել է նաեւ Կարսի նուաճման կռւում եւ նոյնպէս ի յայտ բերել ուշագրաւ քաջագործութիւններ:

Պարսկահայերի դժուարին եւ բարդ, նաեւ մեծ շտապողականութեամբ տարուած գաղթի կազմակերպութիւնը մեծ յաջողութեամբ կատարել է եւ, ինչպէս ինքն է վկայում իր պաշտօնական գրութեան մէջ առ կոմս Պասկեւիչը՝ — «ընկալայ ի ձէնջ զքաղցրն վասն իմ զգովարանութիւն»:

Նոյն այդ գաղթի ժամանակ Գնդապետ Լազարեանը ի յայտ էր բերել մեծ եռանդ, վարչական բարձր կարողութիւններ ու մեծ ազգասիրութեան ջերմ եւ անկեղծ զգացումներ, ինչպէս եւ մարդասիրական վեհ հոգի, որով մեծապէս թեթեւացրել էր գաղթականների կրած թշուառութիւնները:

Բայց ինչպէ՞ս պատահեց, որ գնդապետ Լազար Լազարեանը ստանձնեց պարսկահայերի գաղթի ղեկավարութիւնը:

Կոմս Պասկեւիչը — ասում են մեր յիշեալ աղբիւրների հեղինակները միաբերան — Կովկասի ռուսաց զօրաբանակի ընդհանուր հրամանատարը, ի նկատի առնելով, որ ռուսպարսկական պատերազմը, որի նախապատրաստական աշխատանքների մէջ էր ռուս սպարապետը, պիտի տարուի այնպիսի շրջաններում, ուր հայ ազգաբնակութիւնը ե՛ւ թիւ էր, ե՛ւ որակ, եւ որ բացի այդ — նոր նուա-

ճուելիք գաւառները պարսից ու տաճկաց տիրապետութեան օրով ամայացել էին ու աւերուել, միտք է յղանում հայերին Պարսկաստանից գաղթեցնել այդ շրջանները: Այդ նպատակով Սպարապետը իր այդ մտադրութիւնը լաւագոյն կերպով իրագործելու համար անհրաժեշտ է համարում իր ձեռքի տակ ունենալ մի հայ պաշտօնեայ, որ դիրք ունենար եւ միաժամանակ վայելէր հայերի վստահութիւնը, լինելով նաեւ հաւատարիմ ռուսաց պետութեան: Եւ նա ընտրում է այդ պաշտօնի համար գնդապետ Ղազար Լազարեանին, որը ամէն կողմից լիովին համապատասխանում էր ու բաւարարում այդ պայմանները:

Պասկեւիչը գիտէր, որ գնդապետ Ղազար Լազարեանը հռչակաւոր տոհմի զաւակ էր, որ հարուստ էր, որ լաւ կրթուած, ամենքից սիրուած ու յարգուած զինուորական էր Պետերբուրգի բարձր շրջաններում:

Եւ ահա՛ 1827 թ. ապրիլին Պասկեւիչը դիմում է կայսեր եւ յայտնելով, թէ «կարեւորութիւն ունիմ մի այնպիսի աստիճանաւորի, որ ամենայնիւ հաւատարիմ լինի Տէրութեան եւ միանգամայն մեծարոյ եւ պատկառելի Հայոց աչքում, խնդրում եմ, որ Գնդապետ Լազարեանը, որն այժմ գտնւում է կոմս Կոմարովսկու հրամանատարութեան ներքոյ, ուղարկուի ինձ մօտ ի պաշտօն առանձին յանձնարարութեանց»:

Կայսրը տալիս է իր համաձայնութիւնը, եւ գնդապետ Լազարեանը անմիջապէս մեկնում է Կովկաս եւ ներկայանում Պասկեւիչին, որը ընդունում է նրան սիրալիրօրէն, նշանակում է Թաւրիզի քաղաքապետ (1827 թ. Հոկտեմբերին) եւ ապա տալիս գրաւոր անհրաժեշտ հրահանգներ գաղթի կազմակերպութեան վերաբերմամբ, ձեւակերպուած 19 յօդուածների մէջ, 1828 թւի փետրուար 26ի թւով:

Այդ հրահանգների մէջ ամենից ուշագրաւ յօդուածը 3րդն է, ուր ասուած է, որ՝ չպիտի ստիպել, առաւել եւս բռնութիւն գործադրել հայերին գաղթեցնելու համար, այլ միայն համոզել ու բացատրել, որ հայերը ընդունելով քրիստոնեայ կայսեր հպատակութիւնը, նրանք ձեռք կը բերեն խաղաղ եւ ապահով կեանք՝ «ընդ հովանաւորութեամբ բարերար օրինացն ռուսաց[2]»:

Գրեթէ միեւնոյն ժամանակ Ներսէս Աշտարակեցին, որ նոյնպէս մտահոգուած էր պարսկահայերի գաղթի խնդրով, ուզում էր թէ փրկել նոցա պարսից ծանր լուծի տակից եւ թէ շէնցնել հայրենի ամայի երկիրը:

«Էջմիածնի բարօրութեան համար — գրում է Երիցեանը — կարեւոր էր Արարատեան աշխարհը լցուի, շէնանայ հայ բնակիչներով»: Այս նպատակով, «Ներսէսը դեռ 1827 թ. դեկտեմբերին գրեց Պասկեւիչին, թէ

[2] Տե՛ս «Նկար. գաղթ.», էջ 72:

հարկ է գաղթեցնել հայերին Պարսից սահմաններից դէպի ռուսաց նուաճուած երկիրը[3]»։

Այսպիսով ռուս-պարսկական պատերազմի երկու մեծ գործիչները միեւնոյն միտքն են յղանում, որն եւ գործադրւում է գնդապետ Լազարեանի գործօն օժանդակութեամբ։

Հետագայ դէպքերը ցոյց տուին, որ Պասկեւիչը չէր սխալուել իր ընտրութեան մէջ, յանձնարարելով գնդ. Լազարեանին պարսկահայերի գաղթի ղեկավարութիւնը։

Պարսկահայերը, տեսնելով ռուսաց զօրաբանակում մի բարձրաստիճան հայ զինուորականի, այն էլ մեծահամբաւ Լազարեան տոհմից, վերաբերուեցին ամենայն վստահութեամբ ու սիրով դէպի նա եւ չտատեցին յայտնելու նրան իրենց պատրաստակամութիւնը գաղթելու Ռուսաստան եւ հետեւել նրա խորհուրդներին։

Հազիւ թէ տարածուեցաւ համբաւն, թէ «Լազարեւն եղեւ քաղաքապետ Դաւրիժու, անյապաղ յամենայն նահանգաց Ատրպատականի, արագ փութացան Հայք ի Դաւրէժ։ «Ազգակից մեր ես, — ասէին նոքա ցԼազարեւն — բարեխօս լե՛ր վասն մեր առ բարեսիրտ եւ մեծ արքայն ինքնակալն համայն ռուսաց. բարեխօ՛ս լեր առ երեւելի զօրապետն նորա։ Նուիրաբերեմք զանձինս մեր ընդ հովանեաւ աջոյն Նիկողայոսի։ Ուրախ

---

[3] Երիցեան, «Կովկասահայք», Հ. Ա., էջ 312։

եմք մեք կեալ եւ մեռանիլ ընդ տէրութեամբ նորա [4]»։

Լազարեանը անմիջապէս տեղեկացրեց Պասկեւիչին, որ հայերը պատրաստակամութիւն են յայտնում գաղթելու Ռուսաստան։

1828 թ. Դէյկարխան վայրում ռուսները կապեցին հաշտութեան նախնական դաշն պարսիկների հետ։ Այդ դաշնադրութեան մէջ Պասկեւիչը յատուկ պայման էր դրել, որ հայերը ազատ պիտի լինեն գաղթելու Ռուսաստան եւ որ պարսիկները արգելք չպիտի լինեն գաղթին։

Պարսիկները, սակայն տրամադիր չէին Դէյկարխանի պայմանագիրը հաւատարմութեամբ կատարելու, հետեւաբար ռազմական գործողութիւնները վերսկսուեցին։ Ռուսաց զօրքը յաղթական ընթացքով առաջ շարժուեց, գրաւեց Արդերեյը, Միանէն եւ պատրաստ էր արշաւելու Թեհրանը գրաւելու, երբ պարսիկները նորից հաշտութիւն խնդրեցին։ Պասկեւիչը եւ Պարսից կողմից թագաժառանգ Աբբաս Միրզան հանդիպեցին Թուրքմենչայ ամրոցում, ուր եւ կնքուեց վերջնական հաշտութեան դաշն։

Ըստ այդ դաշնագրի Պարսիկները պարտաւոր էին վճարել պատերազմական տուգանք՝ 20 միլիոն արծաթ դահեկան տարեկանապար եւ ըստ այնմ էլ ռուսաց զօրքը

---

[4] «Նկար. գաղթ.», էջ 29—30։

պետի յետ քաշուէր Երասխ գետի միւս ափը։ Այս դաշնագրով էլ նախատեսուեց ու հաստատուեց հայերի անարգել գաղթը դէպի Անդրկովկաս։

Ատրպատականն էին եկել նաեւ Ներսէս արքեպիսկոպոսի — որն այդ ժամանակ զօրավար Կրասովսկու եւ գնդապետ Բօրօզդինի հետ միասին կազմում էր Հայկական նահանգի ժամանակաւոր կառավարութիւնը, — ներկայացուցիչները՝ Ստեփաննոս եպիսկ. Ենովքեանն ու Նիկողայոս վարդապետ Արցախեցին քարոզելու եւ յորդորելու հայերին գաղթել հայրենի երկիր։

«Ի սկզբան — գրում է Գնդ. Լազարեանը իր յիշեալ զեկոյցի մէջ Պասկեւիչին, — որպէս ինձ՝ նոյնպէս եւ բազմաց թուեցաւ գործդ (գաղթը) ո՛չ դժուարին ինչ[5]», քանի որ հայերը իրենք իրենց իսկ յօժար կամքով էին ցանկութիւն յայտնել գաղթելու Ռուսաստան։ Սակայն երբ վրայ է հասնում մոմենտը, երբ նրանք պիտի լքէին՝ «գերեզմանք աշխատասէր նախնեաց իւրեանց, որ թողեալ էին նոցա ի ժառանգութիւն գլյնածաւալ եւ գարգաւանդաբեր դաշտս» ... եւ «ընդերկայն հաստատունն ընդ ապագայ անյայտին փոխանակել», — դժուարացան եւ տատանուեցին. նոյնպէս եւ նեստորականները։ Վերջիններս առաջինները եղան, որ պահանջեցին, որպէս զի ռուս կառավարութիւնը վճարի իրենց

[5] Տե՛ս «Նկար. գաղթ.», էջ 81։

թողնելիք ստացուածքի ամբողջ արժէքը: Հայերը պահանջեցին միայն մի երրորդ մասը իրենց ամբողջ ունեցածի արժէքի, ու նաեւ որ տրամադրուին փոխադրական միջոցներ չքաւորների, երեխաների, ծերերի եւ անկարողների համար:

Արդարացի էր հայերի պահանջը ու համեստ, քանի որ չնայած ռուս-պարսկական դաշնագրի՝ թոյլատրում էր գաղթողներին ծախել իրենց անշարժ կայքը, բայց այդ անհնարին եղաւ՝ Պարսից կառավարութիւնը խստիւ արգելել էր իր հպատակներին գնել գաղթող հայերի կալուածները:

Լազարեանը չտապեց անձամբ զեկուցել Պասկեւիչին հայերի բաղձանքների ու պահանջների մասին:

Սպարապետը ընդառաջեց հայերի պահանջներին եւ կարգադրեց, որ արքունի գանձարանից փոխատուութիւն տրուի հայերին՝ 14·000 ոսկի դահեկան եւ 400 արծաթ ռուբլի հինգ տարի ժամանակով[6]:

«Պէտք է խոստովանել — ասում է Պօտտօն — որ ռուսների կողմից գաղթականնե-

[6] Ըստ Ա. Երիցեանի՝ 25·000 ռուբլի էր տրուած 10 տարի ժամանակով, իսկ ըստ Պօտտոյի՝ 50·000 մանէթ: «Այդ գումարը — ասում է Պօտտօն — չափազանց անբաւարար էր, քանզի «գերդաստանագլուխ 6—7 թուման էր միայն հասնում, մինչդեռ մի հասարակ էշ արժում էր 12—15 արծաթ մանէթ»: Վերածնութիւն», էջ 19:

Մ. Մսերեանը, հիմնուելով «Ակտերի ժողովածուի» վրայ, ասում է, որ ամէն մի գերդաստանի հասնում էր 10 արծաթ ռուբլուց ո՛չ աւել, էջ 43 ծան.:

[7] Պօտտօ, էջ 18—19:

րին առաջարկած պայմանները, արդարեւ, ծանր էին եւ չէին կարող կասկած եւ երկմտութիւն չյարուցանել:

«Հայոց ունեցած ամբողջ կարողութիւնը՝ իրենց անշարժ կալուածները, տները, պտղատու այգիք եւ արդաւանդ դաշտերն էին երեսի վրայ ձգելու եւ հեռանալու: Բնական էր, ուրեմն, որ նոքա պահանջէին Ռուսաստանից, որ իւրեանց բարձի թողի արածների արժողութեան գէթ երրորդ մասը վերադարձնէին իւրեանց»:

«...Նոյն ինքն Լազարեանը ճշտապէս կատարելով Պասկեւիչի հրամանը, չէր աշխատում շողոքորթել հայերին անիրագործելի յոյսերով: Նա ուղիղ ասում էր նոցա, թէ ինչ որ նրանք Պարսկաստանում թողնում են, չեն կարող գտնել Երասխի միւս ափին, թէ ամենամեծ օգնութիւնը, որ կարելի է տալ ամէն մի գերդաստանի 5 արծաթ մանէթից աւելի չի լինել, բայց թէ նոքա կարող են վստահ լինել, որ թէ իրենք եւ թէ իւրեանց սերունդը անդորրութիւն կը վայելեն իւրեանց հաւատակից պետութեան հովանաւորութեան ներքոյ»:

Պետական օժանդակութիւնը, արդարեւ, չբաւարարեց գաղթողների բազմաթիւ կարիքները հոգալու համար: Աւելի եւս դրութիւնը ծանրացաւ, երբ գաղթողները հասան Նախիջեւան եւ զգացուեց հացի մեծ պակասութիւն: Այդ ժամանակ Գնդ. Լազարեանը, չվստահանալով խնդրել Պասկեւիչից նոր

դրամական օժանդակութիւն, ինքը փոխարինաբար վերցրեց մի Թիֆլիսեցի հայից 2000 ոսկի եւ բաժանեց գաղթականներին: «Բանակ Հայոց գաղթականաց լցաւ առատութեամբ: Պասկեւիչ պսակազարդեաց զայս գործ զովարանութեամբ իւրով[8]»:

1828 թ. մարտ 30ին Լազարեանը վերադառնալով Պասկեւիչի մօտից, հրատարակեց հետեւեալ շրջաբերական նամակը, ուղղուած Ատրպատականի հայերին.

«Քրիստոնեայք.

«Լսելի եղեւ յականջս իմ, թէ արք չարամիտք ջանան ո՛չ միայն հրապարակել զսուտ եւ զանպատեհ զրոյցս, այլեւ տալ երկիւղ մեծ որոց կամին անցանել յօրհնեալ Ռուսաստան. եւ զայս օրինակ կամին դարձուցանել զձեզ ի զովելի ցանկութենէ սրտի ձերոյ:

«Եւ ես առ ի հերքել զայս ամենայն ըստ պարտեացն՝ որովք բեռնաւորեալ եմ ի Սպարապետէն, եւ ի հաւատարմութենէ ազգին՝ որ առ իս, յայտ առնեմ ձեզ, թէ մեծահոգի Ինքնակալն ամենայն Ռուսաց պարգեւէ այնոցիկ որք ցանկան գաղթել՝ զապահով, զխաղաղ եւ զերջանիկ տեղի ապաստանի ի յընդարձակ Կայսրութեան իւրում:

«Ի գաւառն Երեւանայ՝ Նախիջեւանայ եւ Ղարապաղու, զորս դուք ընտրեսջիք, տացի ձեզ լայնատարած եւ արգասաւոր եր-

---

8 «Նկարագր. գաղթ.», էջ 64:

կիր, որ արդէն իսկ ըստ մասին սերմանեալ է. եւ ի պտղոյ նորին դտանեբորդ մասն միայն տաջիք Տէրութեան. եւ յընթացս վեց ամաց ազատ լինջիք յամենայն հարկատուութենէ. եւ որք միանգամ աւելի աղքատ իցեն ի ձէնջ՝ տացի նոցա օգնութիւն չուելոյ:

«...Ի Ռուսաստան տեսջիք զթոյլատուութիւն ամենայն կրօնից, եւ զհաւասարութիւն իրաւանց Ռուսաց ընդ այլոց հպատակաց Կայսերն. անդ մոռասջիք զամենայն նեղութիւնս զորս կրեցիք. անդ գտջիք զնոր հայրենիք բնակեալ ի քրիստոնէից, եւ ոչ եւս տեսջիք զսուրբ կրօնսն մեր ի նեղութեան, անդ կեցջիք ընդ հովանաւորութեամբ օրինաց, եւ զգասջիք վաղագոյն զբարեբար ազդեցութիւն նոցին. հուսկ ապա անդ վիճակ ձեր բարեգոյն լիցի. եւ փոխանակ սակաւուն զոր կորուսջիք՝ անդ տացի ձեզ հարիւրապատիկ: Ճշմարիտ է՝ թէ թողուք զերկիր ծննդեան ձերոյ, որ սիրելի է ամենեցուն. բայց մտածելն՝ թէ բնակելոց էք ի քրիստոնեայ Տէրութեան, պարտի ազդել ի ձեզ զմեծ ցնծութիւն:

«Քրիստոնեայք ճապաղեալք ի գաւառս Պարսկաց՝ տեսցեն վերջապէս զանձինս ժողովեալ ի մի վայր. եւ զի՞նչ արդեօք, թէ բարութիւնք մեծ Ինքնակալին Ռուսաց ո՞րչափ ունի վարձատրել զհաւատարմութիւն ձեր:

«Փութացարո՛ւք, բարեկամք իմ, ժամանակն անգին է. զօրքն մեր ընդ հուպ դատարկեսցեն զգաւառսն Պարսկաստանի. յայնժամ

գուցէ բազում արդեւս գիցեն ձեզ (Պարսիկք), եւ մեք կորուսանիցեմք զմիջոցս պաշտպանելոյ եւ ապահով առնելոյ զգալուստն ձեր. զոհեցէ՛ք զսակաւն եւ ի սակաւ ժամանակի, եւ առատօրէն ընկալջիք զամենայնն եւ ի մշտնջենաւորս»:

Պոլկովնիկ եւ Կաւալեր Կայսեր Ռուսաց
Ղազարոս Լազարեանց[9]:

Ի 30 մարտի:

Ի քաղաքս Ուրմի:

Այս շրջաբերական նամակը ունեցաւ բարերար ազդեցութիւն հայ ազգաբնակութեան տրամադրութիւնների վրայ. ամբողջ Ատրպատականի հայերը ամէն կողմից, նոյն իսկ հեռաւոր Ղազվինի քաղաքից, շտապեցին արձանագրուել ու պատրաստուել գաղթի եւ համախմբուել Երասխի ափին:

Շրջաբերականը, արդարեւ որ կազմուած էր շատ խոհուն կերպով, իրերի իրական վիճակն էր առարկայօրէն ներկայացնում, առանց կեղծիքի, առանց չափազանցութիւնների, առանց մեծամեծ ու սին խոստումների:

Լազարեանը չէր սխալուել նաեւ իր նախատեսութեան մէջ, ասելով, որ Ռուսաստանում «ընդ հովանաւորութեամբ հաստատուն օրինաց զգասջիք վաղագոյն զբարերար ազդեցութիւն նոցին»:

---

[9] Տե՛ս «Նկար. գաղթ.», էջ 77—79:

Եւ յիրաւի, հայ ժողովուրդը, երբ ունեցել է հաստատուն օրէնքներ, որոշ իրաւակարգ, երբ ընդարձակ կամայականութիւններն ու ապօրինի կեղեքումներն ու հալածանքները վերացել են նրա կեանքից, նա իր աննման ստեղծագործ կորովով հրաշքներ է գործել:

Իր 4000 տարուայ պատմական կեանքի մէջ նման մշակութային ու քաղաքակրթական «հրաշքներ» բազում անգամներ է ի յայտ բերել:

Եթէ ուզենայինք չեղուել մեր բուն նիւթից, կարող էինք բերել թէ Հայոց պատմութիւնից եւ թէ բոլոր ազգերի կեանքից ցոյց տալու համար, որ մարդկային հասարակութիւնները՝ մեծ հաւաքականութիւններից սկսած մինչեւ փոքրագոյնները, յառաջադիմել են, խոշոր նուաճումներ են կատարել, երբ այդ հասարակութիւնների, այդ հաւաքականութիւնների մէջ իշխել են իրաւունքն եւ օրէնքը, երբ յարգանքն դէպի օրէնքը եղել է կենդանի եւ ո՛չ դատարկ հնչիւն...

Քանի որ 1828 թ. մարտի 9ին ռուսաց զօրաբանակի մեծ մասը, ըստ Թիւրքմէնչայի հաշտութեան դաշնագրի պիտի թողնէին Ատրպատականը, եւ միայն մի փոքր մասը՝ զօրավար Պանկրատովի հրամանատարութեան տակ, պիտի մնային Սալմաստ–Ուրմիա, մինչեւ պատերազմի տուգանքի վերջնական վճարումը, ուստի Լազարեանը շտապեց շրջելու բոլոր այն վայրերը, ուր դեռ

չէր եղել. նա գնաց Մարաղա, Ուրմիայում թողնելով հայազգի ենթագնդապետ Մովսէս Ջաւքարեան Արղութեան-Երկայնաբազուկին, որպէս շրջանի գաղթականական գործի վարիչ, տալով նրան դրամ եւ անհրաժեշտ հրահանգները:

Մարաղայում էլ հայերը մեծ ուրախութեամբ ընդունեցին Լազարեանին եւ գաղթը սկսուեց մեծ թափով:

Երբ պարսիկները տեսան, որ հայերը խումբ-խումբ լքում են իրենց տուն տեղը եւ գաղթի ճանապարհը բռնում, ամայացնելով իրենց երկիրը, քայքայելով երկրի տնտեսական կեանքը, աշխատեցին ամէն կերպ արգելք լինել ու կասեցնել գաղթը[10]:

Նրանք ասում էին հայերին, որ Ռուսաստանում ճորտեր կը դառնան, որ ռուսները նրանց զինուորական ծառայութեան կը պարտադրեն, խոստանում էին մեծամեծ արտօնութիւններ շնորհել, եթէ մնալու լինեն:

Բայց միայն պարսիկները չէին, որ նման ջանքեր էին թափում խանգարել հայերի

---

[10] Մօտաւոր հաշուով համարում են, որ Պարսկաստանը հայերի գաղթով վնասուել է շուրջ 32 միլիոն ռուբլու չափ:

«Նկար գաղթ.» Անյայտ հեղինակը, ի մէջի այլոց այդ առթիւ գրում է. «Թէպէտ եւ նեղէին հայք ի Պարսկաստան, սակայն փութաջան աշխատասիրութեամբ իւրեանց եւ վաճառականութեամբ տային Պարսկաստանի եկամուտ ամի ամի զ100·000 թուման, կամ 1·600·000 ռուբլի թուղթ դրամս, զորմէ վկայեաց Հրամանատարն Ղրիրախով ի յայտարարութեան իւրում առ Ղեներալ միգէ կանցելարն գրաֆ Նէսսէլրոտն»: էջ 67, ծանօթ.:

*գաղթը Ռուսաստան, այլ և անգլիացիները, այդ յաւիտենական անհաշտ մրցակիցներն ու հակառակորդները ռուսներին Մերձաւոր Արեւելքում:*

*Լաւ էին տարածել, որ Լազարեանը բռնութեամբ է գաղթեցնում հայերին, որ իբր թէ «իրենց ականջներով են լսել· 200 ընտանիքից», որ իրենց բռնութեամբ են տանում . . . :*

*Այս սուտ լուրերն ու զրպարտութիւնները հերքելու համար, Լազարեանը հրաւիրեց Ուրմիոյ կուսակալ Ասկէրխանին, այնուհետեւ նաեւ անգլիացի Վիլլոկին, ինչպէս և մի Փրանսիացու՝ ոմն Սէմենոյ ստուգելու, թէ որքա՞ն ճիշտ են այդ լուրերը: Ասկէրխանը ուղարկեց իր որդուն: Բոլոր հարց ու փորձերին գաղթող հայերը միեւնոյն պատասխանն էին տալիս, թէ՝*

«Մենք գերադասում ենք ռուսաց խոտն ուտել, քան Պարսից հացը»:

*Թէեւ երկիրը դեռ ծածկուած էր ձիւնով և կենդանիների կերի պակաս էր զգացւում, այնուամենայնիւ գաղթողները սկսեցին համախմբուել Երասխի ափին, քանի դեռ ռուս զօրքը չէր պարպել Ատրպատականը:*

*Ի հարկէ, անախորժ դէպքեր էլ տեղի ունեցան:*

*Այսպէս «Տաճիկք — կարդում ենք «Նկարագիր գաղթականութեան Հայոց»ի մէջ — ի գոլորշամբարձ եռացումն անզօր կատաղութեան իւրեանց՝ ափուէին զանէծս ի վերայ*

գաղթականաց եւ անդամ անդամ քարաձիգ իսկ լինէին առ նոսա: Սիրտք Հայոց բորբոքեցան ի բարկութիւն արդարութեան, սակայն աստիճանաւորք ռուսաց բարձին զընդդիմութիւն տաճկաց, զվրէժ գաղթականաց եւ զարիւնհեղութիւն ի ձեռն իմաստուն խրատուց իւրեանց» (էջ 41):

Ապրիլի 20ին ռուսաց զօրքը սկսեց քաշուել Ատրպատականից:

Գաղթողները Ուրմիայից, Սալմաստից եւ Խոյից շտապեցին հասնել Արաքսի ափը եւ մաս-մաս անցնել գետը:

1828 թ. մարտի 16ին առաջին ամենամեծ կարաւանը ճանապարհ ընկաւ Ատրպատականից՝ Թաւրիզից, Մարաղայից եւ այլ վայրերից: Գարունը սկսուել էր, բնութիւնը փարթամօրէն արթնանում էր ձմեռուայ քնից...

40.000 հայերի անցքը Արաքսից ներկայացնում էր չափազանց սրտառուչ եւ խորապէս յուզիչ տեսարան...

Եւ այս պատկերը յաւերժացրեց կտաւի վրայ ռուս տաղանդաւոր Նկարիչ ակադեմիկոս Մաշկովը, որը Պասկեւիչի հրաւէրով եկել էր ռազմաճակատ, ականատես էր եղել կռիւներին, ականատես եղաւ նաեւ հայերի գաղթին:

Այդ նկարի նկարագրութիւնը տուել է Պոտտօն:

«Հեռում, — ասում է նա — կտաւի վրայ երեւում են Մասիսը, Երասխը եւ Երեւանու

ճանապարհի վերայ ընկած գիւղերը: Պատկերի աջ կողմը ինքը Լազարեանը հրամաններ է տալիս հայ տանուտէրերին եւ աւագներին: Նրան շրջապատել են նրա թիկնապահները, անգլիական եւ պարսկական ներկայացուցիչները, իսկ յետին գծի վերայ երեւում է գաղթականների ընդարձակ նստուածքը[11]»:

Ա· Երիցեանն եւս խօսելով այդ նկարի մասին հետեւեալ խօսքերով է արտայայտում իր տպաւորութիւնը·

«Գաղթականութիւն 40·000 Հայոց ի Պարսկաստանէ ի Ռուսաստան ընդ կարգադրութեամբ գնդապետի Ղ· Յ· Լազարեանց յամի 1828 նկարը տխուր մտածմանց մէջ է գցում մեզ եւ ակամայ երեւակայել տալիս գաղթականաց կրած թշուառութիւնները դեռ եւս ճամբորդութեան միջոցին[12]:

*

40·000 հայ գաղթականների մուտքը Հայոց Նահանգը, բնականաբար, չէր կարող առանց դժուարութիւնների, առանց մեծ տառապանքների ու նոյն իսկ կեանքի կորուստների անցնել····: Եւ արդարեւ, ամենից առաջ զգացուեց հացի պակասութիւն, որից շատ տառապեցին գաղթականները: Լազարեանը, որ դեռ Խոյումն էր, լուր առնելով

---

[11] Տե՛ս Պօտտօ, էջ 21:
[12] Երիցեան, «Կովկասահայք», Հ· Ա·, էջ 332:



Գաղթականութիւն 4000 Հայոց Պարսկաստանէ Ռուսաստան 1828ին

ների ծանր վիճակի մասին, չասած Նախիջևան (մայիս 19ին) ուր գլխաւորապէս կուտակուել էին գաղթականները: Թէև նա պաշտօնապէս Երասխի այս ափում անելիք չունէր, այսու հանդերձ նրա վեհանձն սիրտն ու հայրենասիրական զգացումները չհանդուրժեցին և նա գաղթականների վիճակը թեթևացնելու նպատակով մի Թիֆլիսեցի հայից իր պատասխանատւութեամբ փոխարինաբար վերցրեց 2000 ոսկի և բաժանեց գաղթականների մէջ:

Այնուհետև Պասկևիչի կարգադրութեամբ դիմեց Երևանի ժամանակաւոր կառավարութեան, որի անդամներից մէկը Ներսէս արքեպիսկոպոսն էր, և խնդրեց շուտափոյթ օգնութիւն հասցնել:

1828 թ. փետրուար 26ին Պասկևիչի Լազարեանին տուած հրահանգների մէջ արդէն տրուած էին ուշադրաւ ցուցմունքներ գաղթականներին տեղաւորելու պայմանների մասին:

Գաղթականները պիտի բնակութիւն հաստատէին ամբողջ գիւղերով. լեռնային տեղերի բնակիչները պիտի տեղաւորուէին լեռնային շրջաններում, իսկ դաշտայինները՝ դաշտավայրերում. չպիտի բնակեցուին կալուածատէրերի հողերում, այլ արքունի ազատ հողամասերում. եթէ արքունի հողերի պակաս եղաւ, թոյլատրւում էր բնակութիւն հաստատել վանքապատկան կալուածներում. քրիստոնեաների նոր գիւղերը չպիտի խառն

յինէին մահմեդական բնակիչների հետ եւ այլն։

Այժմ Պասկեւիչը եւս տեղեկանալով գաղթականների ծանր կացութեան մասին, հրամայեց ցրուել գաղթականներին Արարատեան աշխարհի այն վայրերը, ուր հացի պակասութիւն չկար, այն է՝ Երեւանի գաւառներն ու Ղարաբաղ։

Լազարեանը մայիս 22ին Նախիջեւանից վերադառնում է Թիֆ, ուր դեռ չմեկնած հայ գաղթականներ կային։ Նրանց փոխադրութեան գործը յանձնարարից զօրապետ Արղութեան–Երկայնաբազուկին, իսկ ինքը մեկնեց Ղարսի կողմերը, միանալու ռուս զօրքին, որ պատրաստւում էր Ղարսը գրաւելու։ Յունիս 29ին տեղ հասնելով, համառօտ կերպով զեկուցեց Պասկեւիչին գաղթականութեան փոխադրութեան ու վիճակի մասին։

Այսպէս, 3½ ամսուայ ընթացքում՝ 1828 փետրուար 26ից մինչեւ յունիս 11ը, Լազարեանին յաջողուել էր փոխադրել Պարսկաստանի հայերից իրենց հայրենի երկիրը՝ 8249 ընտանիք[13]։

*

Այս հազարաւոր հայերի գաղթականութեան պատմութիւնը թէեւ մեր բուն նիւթից դուրս է եւ մենք կանգ առանք այն չափով,

---

[13] Տե՛ս «Նկարագր. Գաղթ.», էջ 94։

որքան որ պէտք էր ներկայացնելու Գնդ. Ղ. Լազարեանի դերը այդ բարդ գործում, այսու հանդերձ հարկ ենք համարում մի քանի կարեւոր լրացուցիչ տեղեկութիւններ եւս տալ եւ ապա անցնել այն տխուր վախճանին, որը վիճակուեց Գնդ. Լազարեանին այնքա՛ն փայլուն գործունէութիւնից յետոյ...:

Կեանքը իրօք որ մի առեղծուած է...: Յաճախ ամենաառաքինի մարդիկ զոհ են գնում սեւ ապերախտութեան, իշխանաւորների անձնական կրքերից բխած...

Այդպիսի տխուր ճակատագիր ունեցաւ եւ գնդ. Ղ. Լազարեանը...:



Ա. Երիցեանի վկայութեամբ գաղթականները ունեցել են մեծ թւով մեռնողներ. այդ երեւում է, — ասում է նա — այն պաշտօնական մարդահամարից, որը երկու տարի անց, այն է՝ 1831 թ. կատարուել է տէրութեան կողմից:

Ըստ այդ մարդահամարի գաղթած 8249 տնից մնացել էր՝ 6946 տուն, պակասել էր 1303 գերդաստան... 40·000ից կամ փոքր ինչ աւել հոգուց մնացել էին՝ 35·000 հոգի...:

Այդ մարդահամարից երեւում է նաեւ, որ պարսկահայ գաղթականները տեղաւորուել էին Հայոց Նահանգում հետեւեալ կերպով՝

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| Երեւան քաղաք՝ | 366 | ընտանիք | կամ | 1·715 | շունչ |
| Երեւանի մահալնե- րում՝ | 4·193 | ,, | ,, | 21·853 | ,, |
| Նախիջեւան քաղաք՝ | 265 | ,, | ,, | 1·110 | ,, |
| Նախիջեւանի մա- հալներում՝ | 1·872 | ,, | ,, | 9·542 | ,, |
| Օրդուբաթ քաղաք՝ | 36 | ,, | ,, | 182 | ,, |
| Օրդուբաթի շրջա- կայքում՝ | 214 | ,, | ,, | 1·158 | ,, |
| Ամէնքը՝ | 6·946 | ընտանիք | կամ | 35·560 | շունչ |

Բացի այդ՝ մի քանի հարիւր գերդաստաններ անցել էին Ղարաբաղ, իսկ ոմանք էլ ցրուել հասել էին մինչեւ Թիֆլիս[14]։

Լէօն համարում է, որ 1826—1828 եւ 1829 թթ. յետոյ, պարսկահայ եւ տաճկահայ գաղթերից յետոյ, Երեւանի եւ Նախիջեւանի խանութիւնների մէջ բնակութիւն էին հաստատել՝ 57·226 հոգի[15]. արդ, եթէ ի նկատի առնելու լինենք, որ 100·000 տաճկահայ գաղթականների մեծ մասը տեղաւորուել էին Թիֆլիսի Նահանգում՝ Ախալցխա, Ախալքալաք քաղաքներում եւ շրջակայ գիւղերում, պիտի համարիլ, որ տրուած թիւը՝ 57·226ը՝ ընդհանուր առմամբ համապատասխանում է Երիցեանի գրած տեղեկութիւններին։

Այդ նոր գաղթած հայերը ամենուրեք անմիջապէս լծուեցին շինարար աշխատանքների, բայց, դժբախտաբար, ո՛չ ամենուրեք

---

[14] Երիցեան, «Կովկասահայք», Հ. Ա., էջ 335—337։

[15] Լէօ, «Երեւ. թեմ. դպրոցի պատմ.», էջ 113—114։

հանդիպեցին համակրանքի և ստացան անհրաժեշտ օժանդակութիւն . . . :

Ցարական ռեժիմի ներկայացուցիչները շատ վաղ սկսեցին ցոյց տալ իրենց դէպի հայերը ունեցած նախապաշարումների արտայայտութիւնները . . . :

Այսպէս, Ա. Երիցեանը բերում է երկու ռուս հեղինակաւոր անձանց հետեւեալ վկայութիւնները այդ մասին.

«Ռուս աստիճանաւոր Զուրաբէվը, որ պաշտօնով ուղարկուած էր Ղարաբաղ, 1830 թուի ապրիլ 20ին գրում է Պասկեւիչին՝ «Անցեալ պարսկական պատերազմի անմահ քաջագործութեանց կարգում անշուշտ շատ նշանաւոր տեղ է բռնում Հայոց Պարսկաստանից մեր երկիր գաղթելը: Հայք մի ժողովուրդ են, որ այս երկրում ամենից շատ են հաւատարիմ մեր տէրութեանը և, կարելի է ասել, նոքա ամենաազնիւն են գոնէ հասարակ ժողովուրդի մէջ: Պարսկաստանից գաղթած հայք նշանաւոր են օրինակելի աշխատասիրութեամբ. նոցա մեծ մասը արհեստաւոր են, շատ օգտաւէտ և շատ հազուագիւտ Կովկասում: Դժբախտաբար, այս օգտաւէտ ժողովուրդը չափից դուրս ճնշւում է Ղարաբաղում: Մի կողմ թողնելով բնիկ հայերին, որոնք կեղեքւում են Թուրք բէկերից, կը յիշեմ միայն գաղթականների մասին: Ղարաբաղի տեղական (ռուս) իշխանութիւնը Հայոց դէմ մի ինչ որ նախապաշարմունք ունենալով, աններելի կերպով նեղացնում է նոցա



Հայոց եկեղեցին եւ Լազարեան Ճեմարանը



Ճեմարանի գլխաւոր մուտքը Հայոց փողոցից

եւ մինչեւ հիմա նոքա չունին հաստատ բնակութիւն: Նոցա տուել են շատ անբերրի հողեր, իսկ Մեղրի Գեւունէյի մահալում տուած հողերն էլ շատ քիչ են...»:

Այնուհետեւ նոյն ատենագիրը նկարագրում է Ղարաբաղի գաղթականների վիճակը շատ մռայլ գոյներով....:

Նոյնպիսի տխուր տպաւորութիւններ էր ստացել ռուս հռչակաւոր գրող Գրիբոեդովը, որը լիազոր դեսպանի պաշտօնով 1828 թ. սեպտեմբերին Թեհրան էր գնում:

Գաղթականների թշուառութիւնն եւ ռուս պաշտօնեաների անընդունակութիւններն ու զեղծումները իր աչքերով տեսնելով, նա գրել էր Պասկեւիչին եւ խնդրել՝ «Գոնէ Թիֆլիսի Հայոց (Ներսիսեան) ուսումնարանի աշակերտներից մի քանի պաշտօնեայ ուղարկէ այդ կողմերը...»:

Բայց դժբախտութիւնը նրանումն էր, որ հէնց ինքը Պասկեւիչը պատկանում էր այն ռուս աստիճանաւորների շարքին, որոնք ցարական ռեժիմի օրով այնքա՜ն տոգորուած էին մեծ նախապաշարումներով հայերի հանդէպ:

Պասկեւիչը վաղուց արդէն սրել էր իր ատամները Ներսէս Աշտարակեցու դէմ, մոռանալով նրա անգնահատելի ծառայութիւնները, մատուցած ռուս-պարսկական պատերազմի ժամանակ ռուս զօրքին եւ հէնց իր՝ Պասկեւիչի յաջողութիւններին:

Կուրացած իր անձնական թշնամութիւնից զօրավար Կրասովսկու դէմ, որի հետ Ներսէսը սերտ բարեկամութիւն ունէր, Պասկեւիչը նախ փորձեց լարել Ներսէսին Կրասովսկու դէմ, բայց վրիպեց. Ներսէսը մնաց հաւատարիմ Հայոց նահանգի առաջին զինուորական նահանգապետին եւ էջմիածնի ազատարարին, որ թողել էր բոլոր հայերի սրտերում ամենալաւ յիշողութիւններ:

Պասկեւիչը, վրիպելով իր սադրանքների մէջ Ներսէսի հանդէպ, երբ իմացաւ, որ գնդ. Լազարեանը բարեկամական նամակագրութիւն ունի Հայոց մեծ հոգեւորականի հետ, որոշեց վրէժխնդիր լինել նաեւ Լազարեանից...:

Եւ այս երեք անմահ գործիչները հերթով զոհ գնացին Պասկեւիչի ոխակալութեան... Նա բազում զրպարտութիւններով կարողացաւ դրդել կառավարական բարձր շրջաններին Կրասովսկուն յետ կանչել Պետերբուրգ, իսկ Ներսէսին ուղարկել աքսոր Քիշնեւ, որպէս Ռուսաստանի Հայոց թեմի առաջնորդ...:

Բայց Պասկեւիչը իր կոպիտ հալածանքների մէջ կանգ չառաւ իր այնքա՛ն հաւատարիմ գործակիցների դէմ. Նրա սնոտի փառասիրութիւնն ու կրքոտութիւնը այնքան կուրացրին նրան, որ նա շատ հեռուները գնաց եւ մինչեւ իսկ փորձեց արատաւորել պարսկահայ գաղթականներին, շպրտելով նրանց երեսին որքան անհիմն, նոյնքան եւ

*տոր մեղադրանքներ, իբր թէ հայերը գաղթել են Ռուսաստան ռուսական ոսկուց հրապուրուած . . . :*

*Բարեբախտաբար, պատմութիւնը պահպանել է այն գրութիւնը, որ Գնդ. Ղ. Լազարեանը ուղղել էր Պասկեւիչին եւ արխարար յետ մղել կոմսի այդ հրէշային զրպարտութիւնը:*

*Այդ գրութեան մէջ, ի միջի այլոց ասուած էր.*

«Հայք ռուսաց ոսկու համար չեն գաղթում, այլ նոքա զոհում են իրենց բոլոր ունեցուածքը, եւ այն կարծիքը, որ ունիք դուք նոցա մասին, նոցա չի կարող վերաբերուիլ . . .»:

«. . . Վստահանում եմ ասել, որ դուք լցնելով ձեր ձեռք բերած երկիրները այնպիսի վաճառաշահ եւ աշխատասէր ժողովրդով, տէրութեան համար այնպիսի մի մեծ աղբիւր բաց արիք, եւ որքան մեծ ծախք եւս արած լինէր կառավարութիւնը գաղթականների վերայ, ինքը աւելորդով շահուած է [16]»:

*Ակներեւ է, որ Պասկեւիչը չպիտի մարսէր Լազարեանի այդ արի ելոյթը:*

*Եւ չմարսեց. Պետերբուրգ յղած իր զեկոյցները, լցուած զրպարտութիւններով եւ մի քանի սուտ դաւադիրների՝ հայ, ռուս ու վրացի, վկայութիւններով ամբաստանդուած,*

[16] *Տե՛ս Պօտտօ, «Վերածնութիւն», էջ 21. Ընդգծումները մերն են:*

ունեցան իրենց տխուր հետեւանքը Լազարեանի համար . . . :

Դաւադիրները իրենց ամբաստանութիւնների մէջ առել էին, որ պարսկահայերի գաղթի կազմակերպութիւնն ու յաջողութիւնը Լազարեանը միայն իրեն է վերագրել, մինչդեռ նրա դերը եղել է շատ չնչին, որ նա Ներսէս Աշտարակեցու հետ միշտ նամակագրութիւն է ունեցել եւ նրա մօտիկ բարեկամն է եւ այլն, եւ այլն:

1829 թ. գնդապետ Ղազար Լազարեանը խիստ հրաման է ստանում վերադառնալ Պետերբուրգ . . . .

Պետերբուրգ հասնելով, Լազարեանցը անմիջապէս հրաժարւում է պետական ծառայութիւնից . . . :

Այնուհետեւ այլեւս տեղեկութիւն չկայ նրա մնացորդ կեանքի ու մահուան մասին . . . :

## ՅԱՒԵԼՈՒԱԾ

### ԼԱԶԱՐԵԱՆՆԵՐԻ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Բարեգործութիւնը՝ Լազարեան հոյակապ տոհմի բոլոր անդամների մեծագոյն առաքինութիւններից մէկն է եղել: Բարեգործութիւնը կազմել է նրանց ազնիւ հոգու ու լայն սրտի բնական պահանջը: Եւ որ ուշագրաւն է, նրանք իրենց բարի գործերը կատարել են առանց աղմուկի, համեստօրէն եւ առանց սպասելու բարոյական փոխ հատուցումի:

Առատ ձեռքով նրանք օգնութեան են հա-

ել բոլոր կարիքաւորներին՝ անհատ թէ հասարակական հիմնարկ, առանց խտրութիւն դնելու նրանց մէջ՝ ցեղային թէ կրօնական: Ընդառաջել են թէ իրենց հայրենակիցների՝ նիւթական, կրօնական, կրթական, առողջապահական կարիքներին եւ թէ իրենց նոր հայրենիքին՝ ռուս ժողովրդին եւ հասարակութեան:

Անհնարին է թուել մի առ մի նրանց արած նուիրատուութիւնները. յայտնի է միայն որ բարեգործական նպատակով արուած յատկացումները կազմում են մի շատ խոշոր գումար՝ աւելի քան երկու միլիոն ռուբլի, չհաշուած Լազարեան ճեմարանին, նրա տպարանին, հինգ հայ եկեղեցիներին արուած նուիրատուութիւնները:

Պրոֆ. Ջինովեւը, անդրադառնալով այս խնդրին, տալիս է հետեւեալ թանկագին տեղեկութիւնները.

«Կէս դարուց աւելի է, ինչ ներկայ Հոգաբարձուի (այսինքն՝ Խաչատուր Յովակիմեան Լազարեանի: Ց. Թ.) Նախահայրերը, ազգականները անընդհատ նուիրաբերել են խոշոր դրամագլուխներ քրիստոնէական գաւառական դաւանանքների եկեղեցիների կառուցման համար, ապահովելով մշտական եկամուտներով նրանց գոյութիւնը՝ տոկոսներով անձեռնմխելի գումարներից կամ թէ տներից ու զանազան շէնքերից ստացուելիք եկամուտներով: Նուիրատուներն էին՝ ցեղապետ Ղազար Նազարեան Լազարեանը, որա չորս

զաւակները՝ Յովհաննէս, Խաչատուր, Մինաս եւ Յովակիմ, ապա Յովակիմի զաւակները՝ Յովհաննէս, Խաչատուր, Յարութիւն եւ Ղազար իրենց ընտանիքներով: Կէս դարուայ ընթացքում նրանք նուիրաբերել են զանազան բարեգործական նպատակների համար շուրջ երկու միլիոն արծաթ ռուբլի (կամ շուրջ 6 միլիոն ռուբլի թղթադրամ):

2. «Կառուցել են երկու մայրաքաղաքներում հինգ հայկական քարաշէն եկեղեցիներ իրենց կից շէնքերով, որոնք բերում են մշտական եկամուտ:

3. «Զանազան քաղաքներում եւ գիւղերում՝ Մոսկուայի, Տուլայի, Պերմ եւ միւս նահանգներներում, կառուցել են 20ից ո՛չ պակաս քարաշէն եկեղեցիներ, իրենց կից տներով ու բնակարաններով քահանաների եւ միւս եկեղեցական պաշտօնեաների համար:

4. «Պերմ Նահանգում, իրենց կալուածներում, գործարաններում եւ գիւղերում Լազարեանները բաց են արել բազմաթիւ դպրոցներ, որոնցից մի քանիսներում կիրառուել են Լանկաստերի մեթոդը: Կառուցուել են՝ հիւանդանոցներ, դեղատներ, ծերունիների համար ապաստաններ, որբանոցներ, ապահովելով երեխաների ապրուստը:

«Բացի այս ամէնը միշտ նուիրաբերում էին գումարներ յօգուտ դպրոցների, ապաստանների ինչպէս երկու մայրաքաղաքներում, այնպէս էլ կայսրութեան միւս քաղաքներում:

«Նման բարեգործական ձեռնարկներից

դուրս նրանք իրենց հաշուով տպագրում էին զանազան գրքեր ու ձրի բաժանում:

«Այսպէս, օրինակ, Նիկոլայ Ա. կայսեր կեանքի վերջին ժամերի նկարագրութիւնը Խաչատուր Յովակիմեան Լազարեանը թարգմանել է տալիս Հայերէնի եւ Վրացերէնի, իր հաշուով լոյս ընծայում եւ ապա գրքի սպառումից գոյացած ամբողջ հասոյթը նուիրում յօգուտ Սեւաստոպոլի պատերազմի ժամանակ սպանուած ու վիրաւոր զինուորների ընտանիքների»:

Այս տեղեկութիւնները հաղորդելուց յետոյ Պրոֆ. Ջինովեւը հետեւեալ ընդհանուր եզրակացութիւնն է հանում.

«Այս բոլոր նուիրատուութիւնները բարեգործական նպատակներով ի մի ձուլելով, կարելի է երեւակայել թէ ինչպիսի՛ բարիքներ եւ օգուտներ են տուել Լազարեանները Կառավարութեան եւ Հայ ազգին: Այս առաքինի սխրագործութիւնները մանաւորապէս կարեւոր են նոր սերունդի կրթութեան ու դաստիարակութեան տեսակէտից, քանի որ շատերը իրենց չքաւորութեան հետեւանքով եւ այնպիսի վայրերում, ուր չկան դպրոցներ, հնարաւորութիւն են ստացել կրթութիւն ձեռք բերել: Միակ արդարամիտ տուրքը այդ բարերարութիւնների համար՝ անսահման, այնիւ երախտագիտութիւնն է մարդկանց սրտերում [1]»:

[1] Տե՛ս Պրոֆ. Ջինովեւ, «Պատմական ուրուագիծ Լազարեան ճեմարանի» եւ այլն, էջ 89—90:

Լազարեանների առատաձեռնութիւնը չի սահմանափակուել Ռուսաստանով՝ հայ եւ ռուս ժողովուրդների կարիքներին ընդառաջելով։ Նրանք չեն մոռացել ո՛չ իրենց ծննդավայր՝ Ն. Ջուղան եւ ո՛չ էլ իրենց հայրենակիցներին Հնդկաստանում։

«...Տոհմին վեհազնեայ Լազարեանց, — պատմում է Յարութիւն Տէր-Յովհաննեանը — պահէին գթղթակցութիւն ընդ հայրենակից համազգիսն իւրեանց որք ի Պարսս եւ ի Հնդիկս. այլ մինչ ի կենաց աշխարհի ի յաւիտենականն փոխեցան կեանս վեհազնեայ սերունդքն Լազարեան որք ի Ջուղայ տեսին զարեւ եւ շնչեցին զկենսական զօդ, բարեշաւիղ որդիք նոցա, ծնեալքն ի Ռուսաստան ոչ եւս դարձուցին զքաղցր մտադրութիւն իւրեանց ի Ջուղայ։ Այլ արհին Թադդէոս առաջնորդն Ջուղայու խելահաս գոլով թէ քանի օգտակար է դարձուցանելն նոցին վեհազնութեանց Տեարցն Լազարեանց զուշադրութիւնն իւրեանց ի Ջուղայ ի հողս հայրենեաց իւրեանց, սկսեալ ի 1852 տարւոյ սկիզբն արար զթղթակցութեանն ընթացս շարունակելոյ ընդ նոցին վեհազնութեանցն, կարեւոր խնդրանօք ազգային իրողութեանց, յորմէ զարթուցեալ նոցին վեհազնութեանցն առաջնորդ հայրենասիրութիւն, բաղդաւոր արարին զՋուղայ արժանի համարելով զնա իւրոյն մտադրութեանց. եւ յամի 1853 առաքեցին զմասնաւոր դրամական նպաստ վասն Ամենափրկչի վանաց եւ վասն կուսանաց Անա–

պատի· եւ յամի 1855 եւ 1857 առաքեցին զթանկագին եկեղեցական զգեստս բաւական ծախիւք պատրաստեալ տալով յիշատակ Ամենափրկիչ վանին, *ըստ այնմ մասին յարգելով զխնդիր Սրբազան Թադդէոս արքեպիսկոպոս Առաջնորդին Ջուղայու*[2]»:

*Մի այլ տեղում նոյն հեղինակը հաղորդում է.*

*«Աղայ Յովհաննէս Լազարեան ի գրութեանն իւրում յամի 1793 յ3 նոյեմբերի յիշատակէ, «Մեր Դաշտի*[3] *Թավրիզեցեաց եկեղեցւոյն էլ՝ գրած եմ պարոն Խաչիկ Արղարեանին որ նուէրք հասուցանէ»:*

*Միեւնոյն նամակի, մէջ Յովհաննէս Լազարեանցը գրում է.*

*«Անցեալ տարին գրեալ էի Հաշտարխան Պարոն Մկրտում Գալստանովին, որ նա երկու հարիւր րուպլի հասուցանէ ձեզ... եւ վասն ապագային եւս խոստանամ որքան կենդանի եմ մնալոց, սկսեալ այս առաջիկայ տարիս 1794 թուէն՝ ամէն տարի 10 թուման տեղիս հասարակ փող նուէրք մատուցանել սուրբ Ամենափրկիչ վանքիդ եւ մասն ինչ կուսանաց վանքին՝ եւ Թավրիզեցւոց մահլաթի Եկեղեցւոյն, եւ քանի եկեղեցի որ կայ Ջուղայ այժմուս չէն եւ ի պաշտօնի, խնդրեմ այն*

---

[2] *Տե՛ս հեղինակի «Պատմ. Նոր Ջուղայու» եւ այլն, էջ* 105—106. *ընդգծումները մերն են: Յ. Թ.:*

[3] *«Դաշտ» կոչւում էր Ն. Ջուղայի այն թաղամասը, ուր գտնւում էր Աղազարեանցի կամ Նազարէթեանցի տունը, ուր ապրել է Խօջա Մանուկի թոռը՝ Նազարէթը, Լազարեանցի նախահայրը:*

եկեղեցեաց որքանութիւնն եւ անուանքն գրէք ինձ, որ նոցա եւս յիշէք մատուցանեմ: Եւ երբ որ ընծայս տանայք խնդրեմ կարգ դնէք ի մէջ վանքին, որ ամենայն տարի յունվարի 12 յատուկ պատարագ մատուցանէք վասն իմ ծնողացս, եւ վասն իմ միայնակ որդի Յարութիւնին, որ թիւն 1791 յունվարի 12 վախճանեցաւ, եւ յետ սուրբ պատարագին հատարակութեամբ պաշտօն կատարէք[4]»:

Այս նամակին պատասխանում են Ն. Ջուղայի Ամենափրկիչ վանքի հոգաբարձութիւնն եւ երկու վարդապետներ 1795 թ. օգոստոս 20ին: Յայտնելով իրենց ցաւակցութիւնը ապա Յովհաննէսի որդու վաղահաս մահուան առթիւ, գրում են, որ բոլոր եկեղեցիներում անմիջապէս կատարուել է Ս. Պատարագ եւ ապա հոգեհանգիստ: Ի վերջոյ յոյս են յայտնում, որ նա օգնութեան կը գայ Ամենափրկիչ վանքին:

Իրօք զարմանալի մարդ է եղել ապա Յովհաննէս Լազարեանցը իր բազմակողմանի հետաքրքրութեամբ, չնայած իր բազում զբաղմունքներին, որոնք կապուած էին նրա բարձր դիրքի եւ պաշտօնների հետ: Նոյն նամակում նա հարցնում է.

«...1743ումն ես Ջուղուց վերկալման՝ Տէր Գէորգ քահանայ կայր միականի. կենդանի՞ է այժմ թէ վախճանեալ է, եւ զաւակ է մնացեալ աշխարհական են թէ Քահանայ են՝ խնդրեմ մեզ ծանուցանել»:

---

[4] Ibid. էջ 108—109:

Նոր Ջուղայի պատմիչը հաղորդում է նաև մի ուրիշ փաստ: Խոսելով Ն. Ջուղայի Սուրբ Կատարինէ Անապատ Կուսանոցի մասին, գրում է.

«Ըստ արձանագրութեանն եղելոյ ի սմին Կուսաստանի, շինեցաւ այս Անապատ ի Թուականին Հայոց ՌՀԲ (1623), արդեամբ և ծախիւք բարեպաշտօն Խօջայ Եղիազարու, որ էր պապ իշխանապետին Եղիազարու Նահապետին տոհմի վեհազնեայ Լազարեանց»:

Ծանօթութիւնից էլ իմանում ենք, որ կուսանոցում պահւում է «Գալարածոյ Թուղթ» արձանագրութեամբ Անապատի կառուցման մասին, և որ այդ Թղթի մէջ ասուած է, ի միջի այլոց, որ՝

«Զարդարեալ է ջահիւք և լապտերօք արար տեղի պատարագի և փառաբանութեան անմահ Թագաւորին Քրիստոսի...[5]»:

Ու նաև՝

«...Լինելն սոյն խօջայ Եղիազարու պապ իշխանապետին Եղիազարու աստի լինի յայտ, զի ի նմին արձանագրութեան յետ եկեղեցւոյ շինութեանն յայտնելոյ՝ յիշատակի «Աստուած օրհնէ նախ զխօջայ Եղիազարն որ շինեաց զեկեղեցին խրցերով և տնտես տներովն և եւ եկեղեցւոյն մէկ խաչ, մէկ Աւետարան, մէկ այսմաւուրք, մէկ սկիհ, մէկ շուրջառ, մէկ տաղաւարդ, մէկ աւազանի ծածկոց, երկու մոմդան, մէկ սկոհ ադլուխ[6]»:

[5] Ibid. Հ. II, էջ 236:
[6] Ibid. Հ. II, էջ 236:

*Ն. Զուգայի յիշեալ պատմիչը այնուհետեւ առաջ է բերում Ն. Զուգայի եկեղեցիներում պահպանուած «Յիշատակարան»ներից հետեւեալ տեղեկութիւնները Լազարեանների կողմից արուած նուիրատուութիւնների մասին.*

*ա.* Սուրբ Լուսաւորիչ կամ Սուրբ Մինասայ եկեղեցւոյ Յիշատակարանում *առուած է.*

*«Աստուած օրհնէ զխօջայ Մանուկն՝ զկողակից Մարիամն եւ զորդին Եղիազարն, որ ետուն ի դուռն սուրբ եկեղեցւոյն (Թաղին Դուրխեցւոց) մէկ կոստղած ոսկետուփ մագաղաթ Աւետարան, Ա. առենի սաղմոսարան, Ա. ժամագիրք, Ա. տօնացոյց, Ա. ատագանի վարագոյր իւր չամփրովն. մէկ մեծ մոմղան, մէկ ղալամքար վարագոյր, Ա. չուրջառ, եւ զխորանն մեծացոյց եւ բարձրացոյց եւ նորոգեաց յիշատակ իւրն եւ իւր ծնողացն Ղազարին եւ Խաթէին յիշեցէք եւ Աստուած ողորմի ասացէք»:*

*բ.* Սուրբ Լուսաւորչի Եկեղեցւոյ Յիշատակարանում ասուած է.

*«Աստուած օրհնէ Պարոն Աղազարն կողակիցն Բազրին եւ զՎարդենին, եւ զորդիքն Մանուկն եւ զՍաֆարն, որ ետ եկեղեցւոյն (սուրբ Լուսաւորչի) Ա. մեծ դիւանի խալի, Ա. բանափշ ատլաս նաշի (դագաղի) ծածկոց, Բ. պղընձէ պատկեր, Ա. չիթ սուղանի»:*

*գ.* Յիշատակագիր ի կուսանաց Անապատի.

*«Աստուած օրհնէ զՄօջայ Եղիազարն...*
*Եւ գիր որդի Նազարէթն անփորձ պահէ»*:

*դ*. Արձանագիր ի սուրբ Լուսաւորիչ (սուրբ Մինաս) Եկեղեցւոյ·

*«Յիշեցէք ի Քրիստոս զՄօջայ Ազազարն եւ զծնօղսն Մանուկն եւ զՄարխամն եւ հան-գուցեալ որդին Վալիդէն, եւ նորաբողբոջ Մանուկն եւ զկենակից Բատունն որ եսուն սուրբ Կաթուղիկէն ծածկել, յիշեցէք առ Աստուած»*:

*ե*. Յիշատակագիր սուրբ Լուսաւորչի Եկեղեցւոյ·

*«Աստուած օրհնէ զՊարոն Ազազարն եւ իւր կողակիցն Բատարին եւ որդիքն Ազայ Մա-նուկն, Ազայ Սաֆարն որ եսուն յիշատակ սուրբ Լուսաւորչի Եկեղեցւոյն Ա. զառ Թիր-մանդայ չուրջառ, Ա. սաղաւարտ իւր խա-չովն, Ա. քաշած զառ ուրար, Ա. ջուխտ զառ բազբանդ (Թեւնոց), Ա. շապիկ, Ա. սկհւոյ զառ ալլուխ, սուրբ Լուսաւորչի Եկեղեցւոյ մէջի մուհաջարն քաշեց, վերնատունն շի-նեց...»*:

*

*Վերոյիշեալ տեղեկութիւնները այնքա՛ն խօսուն են ու այնքա՛ն ցայտուն ապացոյցներ Լազարեան տոհմի բոլոր անդամների առա-քինութեանց, սկսած իրենց նախահայրերից մինչեւ տոհմի վերջին շառաւիղը՝ Մանուկն Յովհաննէս Խաչատրեան Լազարեանը, որ որ եւ է մեկնաբանութեանց ու լուսաբանու-թեանց կարիքը չկայ*:

*Եթէ մեր այսօրուայ բազմաթիւ հայ հարուստները, միլիոնատէրերը, սկսած Կալիփորնիայի 15 հայ միլիոնատէրերից մինչեւ Լոնդոն-Փարիզում բազմած նաւթի թագաւոր Կիւլպէնկեանը հետեւէին Լազարեաններին օրինակին, հայ գաղթաշխարհում մենք չէինք ունենայ կարիքաւորներ եւ հայ գաղթաշխարհը սփռուած կը լինէր դպրոցներով, գրադարաններով, հիւանդանոցներով, մեր գրականութիւնը ու գրագէտները չէին գտնուի այն ողորմելի վիճակում, որի մէջ այսօր նրանք հոգեպէս եւ բարոյապէս տառապում են...:*

---

# ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
## ԼԱԶԱՐԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԻ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԼԵԶՈՒԱՑ
## (1815—1918)

## ԳԼՈՒԽ Ա.

### ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍՈՒԹԻՒՆ

«Հասարակական կարիքները պիտի բաւարարուին իր հասարակութեան լաւագոյն ներկայացուցիչների միջոցով ու ջանքերով» *— ասել էր Ճեմարանի տեսուչ, յետագայում վերատեսուչ, Գէորգ Քանանեանը իր ճառի մէջ, արտասանած Ճեմարանի 50ամեակի փառաւոր հանդէսին:*

*Եւ, տարակոյս չկայ, որ ասել էր մի ճշմարտութիւն, որ առաւելապէս վերաբերում է այն ազգերին, որոնք զուրկ են պետական անկախութիւնից, պետական հարազատ իշխանութիւնից:*

*Հայ ժողովրդի պատմութիւնը, մանաւորապէս սկսուած 15րդ դարի սկզբից, երբ Ռուբինեանց հարստութեան անկումով հայ ժողովուրդը կորցրեց իր անկախ գոյութիւնը, իր պետականութիւնը, տալիս է բազմաթիւ ցայտուն ապացոյցներ յիշեալ մտքի կատարեալ ճշմարտութեան:*

*Պատմական այդ մոմենտից սկսած հայ ժողովրդի հասարակական ու մշակութային յառաջադիմութիւնը ընթացել է հէնց հայ* «հասարակութեան լաւագոյն ներկայացուցիչների միջոցով ու ջանքերով»։

*Մի Մխիթար Աբբահայր Սեբաստացի* (1676—1749) *իր մեծատաղանդ յաջորդներով Վենետիկում ու Վիեննայում, մի Ներսէս Աշտարակեցի իր Ներսիսեան դպրոցով, մի Գէորգ Դ. կաթողիկոս իր Գէորգեան ճեմարանով Էջմիածնում, Աղաբաբեան եղբայրներ իրենց «Աղաբաբեան դպրոցով» Հաշտարխանում, Խալիբեան դպրոցը Թէոդոսիայում, Ն. Նախիջեւանի դպրոցը եւ, վերջապէս, Դորպատի հայ ուսանողների փայլուն փաղանգը, — եղել են մի-մի գործօն ույժեր, որոնք կերտել են հայ մշակոյթի հոյակապ տաճարը եւ արգելք են եղել հայ ժողովրդի ապազգայնացման օտար պետութիւնների քայքայիչ ազդեցութեան տակ։*

*Լազարեանները եւս եղան այդ գործիչներից, որոնք բերին իրենց հարուստ բաժինը հայ ազգային մշակոյթի զարգացման եւ նրա հասարակական կեանքի յառաջադիմութեան։ Եւ այդ արին, հիմնելով հեռաւոր հիւսիսում՝ Մոսկուայում, իրենց ճեմարանը, որ եղաւ մի լուսատու Փարոս ամբողջ մի դար պետականութիւնից զուրկ հայ ժողովրդի համար։ Եւ այդ մի ժամանակ էր, երբ հայութիւնը օտարների, ծանր լծի տակ*



Ճեմարան Արեւելեան Լեզուաց



Ճեմարանի Գ. Նախակրթարանի աշակերտները

*խարխափում էր խոր ագիտութեան խաւարի մէջ․․․։*

*Եւ Լազարեան ճեմարանը եղաւ* «Մոսկովեան Աթէնք Հայոց․․»։

*

*Լազարեանները իրենց դպրոցի հիմքը դրեցին* 1815 *թուին, այսինքն՝ մի ժամանակ, երբ Արեւելեան Հայաստանը հեծեծում էր ասիական բռնակալների բիրտ կրունկի տակ, երբ հայութիւնը, անկարող լինելով ապրել իր մայրենի հողի վրայ, անընդհատ գաղթում էր թէ իր հարեւան՝ Վրաստանը եւ թէ հեռաւոր երկիրներ, իսկ հայրենիքում մնացածները, գտնուելով մտաւոր խաւարի մէջ, զոհ էին ամէն կարգի նախապաշարումների․․*

*Այդ օրերին շատ սուր կերպով էր զգացւում մի կանոնաւոր եւ հաստատուն հիմքերի վրայ դրուած դպրոցի կարիքը։ Եւ ծնունդ առան իրար ետեւից, նախ, Լազարեան ճեմարանը եւ ապա* 1824 *թ․ Ներսիսեան դպրոցը Թիֆլիսում։*

*«Կարելի է համարձակ կերպով ասել, — գրում է Լէօն — որ եթէ մեզանում չլինէին Լազարեանները եւ Ներսէս Աշտարակեցին, ռուսահայերը դեռ շատ երկար թաղուած կը մնային ասիական խաւարի մէջ։ Նրանց դպրոցներն էին մեզ կեանքի հրաւիրողները․ այդ դպրոցներից էր, որ հայի խաւար հորիզոնի վրայ բացուեց գարնանային առաւօտը։*

Դրանք երկուորեակներ էին, միատեսակ էին մտածում, գործում: Երկուսի դաւանանքը միեւնոյնն էր, երկուսն էլ միեւնոյն ճանապարհով էին ընթանում [1]»:

*

Արդ, ի՞նչ «դաւանանք» ունէր ճեմարանը, ի՞նչ նպատակների էր հետամուտ նա, — պարզենք երկու խօսքով, մանրացնենք ընդհանուր գաղափարը:

Ճեմարանի Կանոնագրի մէջ, տպագրուած միայն 1830 թ., 15 տարի անց իր հիմնադրութիւնից, ճեմարանի նպատակը ձեւակերպուած է հետեւեալ կերպով.

«Նպատակ ճեմարանին՝ է վարժել գհայազգի եւ զօտարազգի մանկունս կարեւորագոյն ուսմամբք Եւրոպական եւ Ասիական լեզուաց, այնպէս՝ զի աւարտողքն ի նմա զընթացս ուսմանց ըստ սահմանադրեալն կարգի, եթէ իցեն յաշխարհական վիճակէ՝ կարիցեն ծառայել Տէրութեան՝ մտանելով յարքունի պաշտամունս թէ՛ ի Զինուորականս եւ թէ՛ ի Քաղաքականս. իսկ եթէ իցեն յեկեղեցականաց Հայոց՝ կարիցեն ծառայել հայրենի եկեղեցւոյ իւրեանց՝ մտանելով գպաշտօն եկեղեցական՝ ըստ տնօրէնութեան հոգեւոր իշխանութեան [2]»:

---

[1] Լէօ, «Ստեփաննոս Նազարեանցի կենսագր.», էջ 33:

[2] Մ. Մսերեանց, «Ցիշատակարան», մասն Գ, էջ 14:

Ճեմարանի հիմնադիրները, սակայն, իրենց մտքում ու հոգում գուրգուրացել են շատ աւելի բարձր ու լայն նպատակներ, քան այդ պաշտօնական ձեւակերպութիւնն է արտաբերում:

Նրանց նպատակն է եղել, նախ, իրենց սաներին տալ այնպիսի ընդհանուր կրթութիւն, որպէս զի նրանք ի վիճակի լինեն առանց դժուարութիւնների հանդիպելու ստանալ բարձրագոյն կրթութիւն Մոսկուայի համալսարանում, երկրորդ՝ որպէս զի սովորեն արեւելեան լեզուները, որոնց թւում առաջին հերթին Հայոց լեզուն, պատմութիւնն ու կրօնը, թէ գործնական եւ թէ զուտ գիտական նպատակներով: Յայտնի է նաեւ, որ նրանք ունեցել են մի այլ բաղձանք եւս՝ իրենց բարեպաշտ սրտերում՝ տալ հայ եկեղեցուն կրթուած հոգեւորականներ, որոնց պահանջը այդ օրերին խիստ զգալի է եղել:

«Հայ հոգեւորականութիւնը, — գրում է Ա. Երիցեանը, — տգէտ էր, ըմբոստ, անպատկառ, ո՛չ իւր կարգը եւ ո՛չ պատիւը ճանաչող. եկեղեցիք թալանուած, ազգային եկամուտները յափշտակուած, ազնուականք եւ իշխանականք — անուսք, զոռոզք իւրեանց ցեղական ծագմամբ, բայց զազրելի վարք ու բարքի տէր, կեղեքիչք, հարստահարիչք ռամիկների ու տկարների. ժողովուրդն ընկղմուած խաւարի մէջ, բարոյապէս ըն–

կած, տարամոլութեան հակուած, խղճալի ու ցաւալի դրութեան մէջ...[3]»:

Ահա այս վիճակն էր, որ ի նկատի ունէին Լազարեանները եւ ձգտում էին, որ իրենց ճեմարանը գար ու ամոքէր միանգամայն ազգային բոլոր ցաւերը: Եւ երբ Հայոց կաթողիկոսը դիմում արեց եւ առաջարկեց Լազարեաններին, որպէս զի ճեմարանում յատուկ հոգեւոր բաժին բացուի կրթուած հովիւներ պատրաստելու, որոնք ապագայում ծառայէին հայ եկեղեցուն, Լազարեանները սիրով ընդառաջեցին վեհափառի ցանկութեան, բաց արին ճեմարանում 1841 թ. հոգեւոր բաժանմունք յատուկ ծրագրով եւ ընդունեցին 15—20 աշակերտներ իրենց հաշուով, թէեւ նման մի քայլ չափազանց ծանրաբեռնում էր ճեմարանի կրթական ծրագիրն ու խճողում այն:

Բայց էականը Լազարեանների համար ճեմարանի կեանքի այդ սկզբնական շրջանում այն չէր, թէ պաշտօնական կանոնագիրը ի՞նչ սահմաններ էր գծում նրա կրթական գործի համար, առաւել եւս հոգ չէր, որ ծրագիրը խճողւում էր մի շարք նպատակների հետամուտ լինելով, էականը այն էր, որ նրանք կամենում էին, որ իրենց կրթական հաստատութիւնը լինի Հայոց դպրոց, դառնար մի լուսատու ջահ հայութեան համար, լինէր մի տաքուկ օջախ հայ չքաւոր երեխաների հա-

---

[3] Ա. Երիցեանի ձեռագիր գրութիւնից է քաղել Ս. Մալխասեանը իր «Պատմ. Ներսիսեան դպրոցի» գրքոյկի մէջ, էջ 8:

մար եւ նրանք կրթուէին ու դաստիարակուէին հայ ոգով, ապագայում լինեն հայ ազգի պիտանի զաւակներ: Ազգայինն մթնոլորտ էին ուզում ամենից առաջ ստեղծել իրենց դպրոցում: Եւ պիտի ասել, որ այդ նպատակին նրանք լիովին հասան: Այդ օրուանից սկսած ճեմարանում իշխել է հայի շունչ, ազգային ոգի, որ, կարելի է ասել առանց չափազանցութեան, հրաշքներ է գործել: Ճեմարան էին մտնում երեխաներ, որոնց համար հայերէնը օտար լեզու էր. նրանց մայրենի լեզուն եղել է չերքէզերէն[4], ռուսերէն կամ որեւէ դժուար հասկանալի հայերէն գաւառաբարբառ: Մի քանի տարի անց, ամէն ինչ կերպարանափոխուել է, այդ աշակերտները ոչ միայն սկսել են ազատ հայերէն խօսել ու գրել, այլ եւ սիրել են Հայոց լեզուն, իսկ ոմանք նոյն իսկ նուիրուել նրա ուսումնասիրութեան:

«Լազարեան ճեմարանը, — ասում է նրա նախկին սան Երուանդ Շահազիզը, — եղել է Հայոց ամենահին մեծ ու կանոնաւոր ուսումնարանը, որ առաջինն է սկսել ուսումնական մարդիկ տալ ազգին[5]»:

Ճեմարանը կարողացել է իր սաների մէջ

---

[4] Փայլուն օրինակ է ծառայում ճեմարանի Հայոց լեզուի ապագայ ուսուցիչ՝ Կարապետ Կուսիկեանը, որը մտնում է ճեմարան, լինելով չերքէզախօս...:

[5] Տե՛ս Եր. Շահազիզ, «Մկրտիչ Յովսէփեան էմին», կենսագրական-գրական տեսութիւն: Թիֆլիս 1900, էջ 270

զարգացնել նաև մեր դէպի բարձրագոյն կրթութիւն:

Դոկտ. Արտաշէս Աբեղեանը իր «Քեռովբէ Պատկանեանը Դորպատում» յօդուածի մէջ տալիս է թանկագին տեղեկութիւն այդ մասին:

«Չհաշուած ազատ ունկնդիրները, — գրում է նա, — Դորպատի համալսարանի գերմանական շրջանում, որ տեւեց մինչեւ 1889 թ. եւ ռուսականացաւ այնուհետեւ, այդ համալսարանը յաճախած են թուով մէկ քառասնեակ արձանագրուած, իսկական հայ ուսանողներ: Այդ քառասնեակ հայ ուսանողները մի կարեւոր մասով Մոսկուայի Լազարեան ճեմարանի նախկին սաներ եղած են[6]»:

*

Լազարեան ճեմարանը՝ շնորհիւ իր ազգային ոգու, իր ծրագրին, որ հնարաւորութիւն էր տալիս բարձրագոյն ուսում ստանալու եւ թէ այն հանգամանքի, որ գտնւում էր Ռուսաստանի մտաւոր կենտրոնում, Մոսկուայի համալսարանի կողքին, շատ շուտով է ձեռք բերում մեծ համբաւ ու համակրանք հայ հասարակութեան լայն շրջաններում: Նրա համբաւը տարածուել հասել է մինչեւ Հնդկաստան ու գրաւել հայ նոր սերունդին ու դարձել նրա գեղեցիկ երազների առարկան:

[6] Տե՛ս «Հանդէս Ամսօրեայ», 1947 թ. Հոկտ.—Դեկտ., էջ 627. ընդգծումները Դոկտ. Ա. Աբեղեանինն է:

«Ինձը տարեկան հասակումս, — պատմել է իր մասին Մկրտիչ Էմինը իր յոբելեանի ժամանակ 1886 թ. — հայրս ինձ տարաւ Ն. Ջուղայից Հնդկաստան, Կալկաթա, եւ տուեց «Հայոց Մարդասիրական ճեմարանը»: Այստեղ ես առաջին անգամ իմացայ Լազարեան ճեմարանի գոյութեան մասին, որ իմ մտածողութեան, ցնորքներիս առարկան դարձաւ, եւ ես չհանգստացայ մինչեւ որ չնստայ մի սուեդական առեւտրական նաւ, որ գնում էր Ստօկ-Հօլմ: Ես անցայ Ասիան, Աֆրիկէն, Եւրոպան եւ Սուեդի ու Ֆինլանդիոյ վրայով հասայ Մոսկուա — բաղձալի ճեմարանը՝ 1830 թուին[7], երբ 14—15 տարեկան մի պատանի էի[8]»:

Բայց ինչո՞ւ եւ ի՞նչպէս է եղել, որ Լազարեան ճեմարանը իր ծննդեան վաղ օրերից սկսած կարողացել է այդքա՛ն մեծ համբաւ ձեռք բերել ու գրաւել հայ մտաւոր սերունդի սրտերը, դառնալ նրա ուսումնատենչ երազների առարկան:

Մեր կարծիքով, բացի վերը յիշատակած հանգամանքներից, դրա ամէնաէական պատճառներից մէկն եղել է այն, որ ճեմարանը իր հիմնադրութեան առաջին իսկ օրուանից եղել է ապարտատակարգային դպրոց եւ ընդունել է իր գիրկը ամենից առաջ հայ ժո-

[7] Ուրիշ աղբիւրներում մատնանշուած է 1829 թ. աշունը:

[8] Եր. Շահազիզ, «Մկրտիչ Էմինի կենսագր.», էջ 58—59:

ղովրդի որբ ու չքաւոր երեխաներին Հայաստանի ամենախուլ անկիւններից հաւաքած, *մինչդեռ մեր թեմական դպրոցներն եւ նոյն իսկ Ներսիսեան դպրոցը իր կեանքի առաջին շրջանում եղել են սոսկ հայ արտօնեալ դասակարգերի՝ ազնուականների, առեւտրականների ու հոգեւորականների երեխաների կրթարաններ:*

*Այս հանգամանքը վճռական դեր է կատարել ճեմարանի ժողովրդականացման ու ընդհանուրի համակրանքը գրաւելու գործի մէջ:*

*Լազարեաններն իրենց այս ժողովրդասէր ձգտումը իրագործելու նպատակով հէնց սկզբից յատկացրել են որոշ հիմնադրամ 30 հայ որբ ու չքաւոր երեխաներ ընդունելու համար, որպէս իրենց թոշակաւորներ: Այդ երեխաները եղել են գիշերօթիկ, որոնց ապրուստն ու կրթութիւնը միանգամայն ապահոված է եղել: Հետագայում նրանց թիւը 30ից բարձրացրել են ու հասցրել 44ի:*

*Այսպիսով, Լազարեանները մատուցել են հայ ժողովրդի խոնարհ խաւերին այնպիսի մեծ բարիք, որի գնահատանքի համար չկայ չափ ու կշիռ:*

*

*Տարակոյս չկայ, — ինչպէս մենք ցոյց տուինք մեր Ներածութեան մէջ, — որ Լազարեան ճեմարանի բազմարդիւն գործունէութեան ու գոյութեան յարատեւութիւնը*

երաշխաւորուած է եղել հէնց սկզբից նրանով, որ ճեմարանի հիմնադիրները իրենց պայծառատեսութեան մէջ ընտրել են Մոսկուան որպէս վայր իրենց դպրոցի համար: Եւ Մոսկուան, որպէս Ռուսաստանի հոգեմտաւոր կենտրոն իր մեծահամբաւ համալսարանով, թողել է ճեմարանի կրթական-դաստիարակչական գործի վրայ խիստ բարեբար ազդեցութիւն:

Մոսկուայի համալսարանը միշտ եղել է յառաջադէմ գաղափարների շտեմարան ու մտաւոր ազատամիտ հոսանքների հնոց, չնայած երկրում տիրող քաղաքական աննպաստ պայմանների, իսկ երբեմն նոյն իսկ անհանդուրժելի դարձած պետական ռէժիմին.

«Մեծ խելք եւ հեռատեսութիւն ցոյց տուեց Յովակիմ Լազարեանը մանաւանդ իր դպրոցի համար տեղ ընտրելու գործում, — ասում է Լէօն: Մոսկուան թէեւ հեռու էր հայերի բնակութեան տեղերից, բայց իբրեւ Ռուսաստանի մտաւոր առաջնակարգ մի կենտրոն, կարող էր մի բարեկարգ դպրոցի բոլոր յարմարութիւնները տալ[9]»:

Բայց Մոսկուան եւ նրա համալսարանը ո՛չ միայն յարմարութիւններ են տուել, այլ եւ բարոյական ու գաղափարական փոխադարձ կապ են հաստատել, որից մեծապէս օգտուել են երկու կողմերը:

---

[9] Լէօ, «Ստեփ. Նազ. կենսագր.», էջ 17:

Այս մասին արտայայտուել է նաեւ Մոսկուայի համալսարանի ռեկտոր Գաբրիէլ Իվանովը. Ճեմարանի 75ամեակի առթիւ իր ներկայացրած ուղերձի մէջ:

«...Ես կենդանի կերպով զգում եմ, — ասուած է այդ ուղերձի մէջ, — ու մեծապէս գնահատում այն հոգեկան կապը, որ գոյութիւն ունի Ճեմարանի եւ Համալսարանի միջեւ. այս երկու հաստատութիւնները կապուած են միմեանց հետ ընդհանուր նպատակով՝ գիտութեան զարկ տալ ու կրթութիւն տարածել մեր հայրենիքում, երկուսն էլ ունեցել են ընդհանուր գործիչներ եւ փոխադարձաբար սնուել են մէկը միւսից, — Ճեմարանը մատակարարել է Համալսարանին հիմնաւոր գիտական պատրաստութեամբ ունկնդիրներ, Համալսարանը՝ Ճեմարանին հասուն դասատուներ ու դաստիարակներ:

«Ճեմարանին վիճակուած է եղել լուծելու մի շատ դժուարին խնդիր՝ ընտելացնել գիտութեան եւ պետութեան ընդհանուր կրթութեան գետնի վրայ երեխաներին ու պատանիներին, որոնք ծնուած են եղել ու մեծացել են հեռաւոր ծայրագաւառում միանգամայն իւրայատուկ պայմաններում՝ բնութեան, կենցաղի ու լեզուի: Տարբեր տարրերի ընտելացումը պետական ընդհանուր օրգանիզմին, Ճեմարանը — որքան ինձ վիճակուած է եղել դիտելու իմ երկարամեայ ծառայութեան ընթացքում, — լուծել է միշտ յաջողութեամբ, պատրաստելով արժանաւոր

գործիչներ ամենատարբեր՝ ասպարէզներում ծառայելու թէ իրենց հարազատներին եւ թէ ընդհանուր հայրենիքին[10]»:

Ճեմարանի համբաւին եւ յաջողութեան մեծապէս նպաստել է նաեւ մի երրորդ շատ կարեւոր հանգամանք. դա այն է, որ Ճեմարանը իր գոյութեան առաջին 56 տարուայ ընթացքում գտնուել է իր հիմնադիրների ու նրանց տոհմի անդամների անմիջական հեղինակաւոր ու յուսամիտ ղեկավարութեան ներքոյ. եղել է նրանց մշտական խնամքի ու գուրգուրանքի առարկայ, որով եւ կանխել են ամէն տեսակ կողմնակի անբաղձալի միջամտութեան ամէն հնարաւորութիւն:

Այս հանգամանքը փրկել է Ճեմարանը ներքին փոթորիկներից, որոնցով այնքա՜ն հարուստ են եղել մեր ազգային դպրոցները եւ որոնք այնքա՜ն աղէտաւոր անդրադարձումներ են ունեցել նրանց կրթական գործի վրայ...

Մի հեղինակաւոր ձեռք միշտ ամուր պահել է Ճեմարանի կրթական ու վարչական գործերի ղեկը ու վարել այն անշեղ կերպով մի ուղղութեամբ, մի ոգով եւ այդպիսով ապահովել նրա կրթական-դաստիարակչական գործի բնականոն զարգացման ընթացքը:

Ի հարկէ, այդ չի նշանակում, որ Ճեմարանը իր կեանքի մէջ չի հանդիպել մեծամեծ

---

[10] Տե՛ս «Լազ. Ճեմարանի 75ամեակը», ռուսերէն լեզուով:

դժուարութիւնների, բայց ամէն մի դժուարութիւն, ամէն մի աննպաստ հանգամանք յաղթահարուել է նրա ղեկավարների հմուտ ու հեղինակաւոր ձեռքով եւ ապահովուել նրա կեանքի խաղաղ ընթացքը:

Կայ եւ մի չորրորդ հանգամանք Ճեմարանի կեանքում, որն ո՛չ միայն ապահովել է նրա դպրոցական գործի անխափան զարգացումն ու յաջողութիւնը, այլ եւ գրաւել է հայ եւ ռուս հասարակութեան լայն շրջանների համակրանքն ու վստահութիւնը, ինչպէս եւս ապահովել կառավարութեան մշտատեւ բարեացակամ վերաբերմունքը, քանզի Ճեմարանը երբեք կառավարութիւնից չի պահանջել նիւթական օժանդակութիւն, չի ծանրաբեռնել կրթական նախարարութեան առանց այն էլ լղարիկ բիւջէն:

Այդ հանգամանքը՝ Ճեմարանի դրամական միջոցներով միշտ ապահովուած լինելն է եղել, շնորհիւ Լազարեանների անօրինակ զոհաբերող ոգու ու նրանց մշտատեւ գուրգուրանքին իրենց կրթական հաստատութեան վրայ:

Ահա՛ մի հանգամանք, որից զուրկ են եղել մեր ազգային դպրոցները Հայրենիքում եւ որն այնքան աղէտաբեր է եղել նրանց բնականոն զարգացման համար...

Լազարեանները սկսած 1804—1864 թ. նուիրաբերել են Ճեմարանին՝ 662, 787 ռուբլի

արծաթ, որ թղթադրամով կազմում է շուրջ 2,000·000 ռուբլի կլոր թւով[11]:

Վերջապէս, կար նաեւ մի այլ շատ կարեւոր խնդիր, որի բարեյաջող լուծումը միայն կարող էր թէ՛ յարատեւել Ճեմարանի գոյութիւնն եւ թէ՛ դնել այն նպաստաւոր պայմանների մէջ պետական կրթական հաստատութիւնների շարքում:

Այդ խնդրի լուծումով չափազանց մտահոգուած էր Ճեմարանի կառուցողը՝ ազա Յովակիմ Լազարեանը: Եւ երբ նրան իր կեանքի արեւմուտքին յաջողուեց բարեյաջող լուծում տալ, նա հանդիստ սրտով գերեզման իջաւ:

Ճեմարանը մասնաւոր կրթական հաստատութիւն էր. «Տեարց Լազարեանց Հայկական դպրոց» էր եւ իբրեւ այդպիսին շատ խախուտ էին՝ նրա իրաւական հիմունքները կայսրութեան դպրոցական ցանցի մէջ:

«Զնայած Լազարեան դպրոցի բարոյական նշանակութեան ու նիւթական միջոցների անընդհատ աճման, — ասում է Գէորգ Բանանեանը, — չնայած որ ծերունի Յովակիմ Լազարեանի ոյժերի սպառման հետեւանքով նրա երկու աւագ որդիները օգնում էին նրան, այսու հանդերձ Ճեմարանի ապագայի ապահովութեան միտքը շարունակում էր անհանգստութիւն պատճառել հեռատես Հոգա-

---

11 Լազարեանների նուիրատուութիւնների մանրամասն հաշիւը ներկայացուած է Յաւելուածում:

բարձումին: Դպրոցի գոյութիւնը թւում էր նրան խախուտ, քանի նա չարունակում էր մնալ որպէս մի մասնաւոր դպրոց, հետեւաբար ենթակայ ամեն տեսակ պատահարների ու նրա կառավարիչների անձնական կամքից կախում ունեցող մի հաստատութիւն, քանի որ նա կը մնայ առանց որոշ օրէնքով հաստատուած Կանոնադրի, առանց իրաւունքների նրա պաշտօնեաների համար եւ պետական իշխանութեան պաշտպանութիւնից զուրկ: Այս նպատակով արուած բոլոր փորձերը վրիպեցին ու անհետեւանք մնացին: Ոչ մի ծրագիր, որ նպատակ ունէր դնել ճեմարանը կրթական մինիստրութեան հովանու տակ, չունեցաւ յաջողութիւն...: Վերջապէս, միտք յղացան դնել ճեմարանը մի որ եւ է պետական բարձրաստիճան ու ազդեցիկ անձնաւորութեան հովանաւորութեան տակ: Եւ նրանք ընտրեցին կոմս Արակչէեւին, որը ժամանակի ամենահզօր պետական դէմքն էր[12]»:

Այդ նպատակով էլ Յովակիմ աղան եւ նրա երկու որդիքը՝ Յովհաննէսն ու Խաչատուրը 1824 թ. յունիս 19ին խնդրագիր են ներկայացնում կայսեր Ալէքսանդր Ա.ին:

Այդ խնդրագրի մէջ, ի միջի այլոց, ասուած էր հետեւեալը.

«Ութամեայ փորձը ապացուցեց մեզ մեր դպրոցի իրական օգտակարութիւնը: Մեր ու-

[12] Տե՛ս Գ. Բանանեանի ճառը «Ճեմարանի 50ամեակին» մէջ, էջ 23:

*ուսումնարանում բացի այն գիտութիւններից, որոնք սովորաբար աւանդւում են բարձրագոյն դպրոցներում, աւանդուելու են նաեւ արեւելեան լեզուներ, որով նա հանդիսանալու է միակը իր տեսակի մէջ եւ տարբերուելու է բոլոր միւս դպրոցներից։ Բայց նոյն փորձը ցոյց տուեց, որ այս կրթական հաստատութիւնը, որ կազմակերպուած է առանձնայատուկ կանոններով եւ մի ուրիշ ազգի համար, պահանջում է յատուկ հովանաւոր ունենալ, ինչպէս եւ յատուկ իրաւունքներ ու կանոնագիր*[13]*»։*

*Եւ Լազարեաններ ցանկութիւն են յայտնում ճեմարանի հովանաւորի պաշտօնի մէջ տեսնել կոմս Արակչեեւին։*

*Միաժամանակ նոյն խմաստով ու բովանդակութեամբ կայսեր ներկայացնում է խնդրագիր նաեւ Ամենայն Հայոց կաթողիկոս Եփրեմը։*

*Լազարեանները դիմում են կոմս Արակչեեւին ու խնդրում, որ ստանձնի այդ պաշտօնը։*

*Կոմսը տալիս է իր համաձայնութիւնը եւ կայսրը յատուկ հրովարտակով նշանակում է* 1824 *թ. նոյեմբեր 8ին, Արակչէեւին ճեմարանի* Գլխաւոր պետ *կամ* Գլխաւոր Կառավարչապետ։

*Այնուհետեւ այդ պաշտօնը ստանձնում են մի շարք ականաւոր ու բարձրաստիճան*

---

[13] *Տե՛ս «Լազ. ճեմարանի 50ամեակ»ի Յաւելուածի մէջ, էջ* 6։

պետական գործիչներ. այդ կարգը շարունակւում է մինչեւ 1872 թ., երբ ճեմարանը վերջնապէս ընդունում է ժողովրդական լուսաւորութեան նախարարութեան դպրոցական ցանցի մէջ եւ հաստատւում է նրա վերջնական դպրոցական ծրագիրն ու Կանոնագիրը, որոնցով եւ ճեմարանը առաջնորդւում է մինչեւ իր գոյութեան վախճանը 1918 թուին:

Այսպիսով ճեմարանի իրաւական վիճակը կարգաւորւում է, որով ո՛չ միայն ապահովւում է նրա յարատեւ գոյութիւնը, այլ եւ հնարաւորութիւն է ստեղծւում նրա ճամբին պատահած բոլոր դժուարութիւնները դիւրին կերպով յաղթահարելու. դեռ աւելին, շնորհիւ Կառավարչապետների յաջող ընտրութիւններին եւ նրանց բարեացակամ վերաբերմունքին թէ դէպի Լազարեանները եւ թէ դէպի նրանց դպրոցը, վերջինս շարունակաբար ստանում է նոր իրաւունքներ ու արտօնութիւններ. հետեւանքը լինում է այն, որ ճեմարանի դիրքը ապահովւում է ու նա ձեռք է բերում հայ եւ ռուս հասարակութիւնների համակրանքն ու վստահութիւնը:

Կոմս Արակչէեւը մնում է գլխաւոր կառավարչապետի պաշտօնի մէջ մինչեւ 1827 թ. հոկտեմբեր 12ը. նրան փոխարինում է կոմս Ալէքսանդր Բենկենդորֆը՝ 1828—1844 թթ. ապա յաջորդաբար՝ Իշխան Օրլովը, որ վարում է այդ պաշտօնը մինչեւ 1860 թ. նոյն տարում նշանակւում է պետական քարտու-



Լազարեանների Յուշարձանը
Ճեմարանի պարտէզում



Ճեմարանի քննութիւնների դահլիճը

դար դաղտնի խորհրդական Վլադիմիր Բուտ-կովը, որին 1870 թ. յաջորդում է կրթական մինիստր Կոմս Տոլստոյը մինչեւ 1872 թ. եւ լինում է վերջին գլխաւոր կառավարչապետը այդ թուին, ինչպէս տացինք, ճեմարանը նոր ծրագրով ու նոր ներքին Կանոնագրով մտնում է ժողովրդական լուսաւորութեան պետական դպրոցների ցանցի մէջ, որով ճե-մարանի իրաւական վիճակը վերջնականա-պէս որոշւում է ու ամրապնդւում:

Ճեմարանը այդպիսով սկսած 1824 թ. աստիճանաբար աւելի ու աւելի է գրաւում թէ կառավարութեան ուշադրութիւնն եւ թէ ռուս եւ հայ հասարակութիւնների հետա-քրքրութիւնն ու համակրանքը: Այդ, ի միջի այլոց, երեւում է այն բազմաթիւ այցե-լութիւններից, որոնց արժանանում է ճեմա-րանը սկսած կայսրից մինչեւ ականաւոր ռուս եւ եւրոպական գիտնականները, հայ եւ ռուս բարձրաստիճան հոգեւորականները:

Մ. Մսերեանցը իր «Յիշատակարան»ում առաջ է բերել մանրամասն անուանացուցակը այն բոլոր անձանց, որոնք այցելութիւն են տուել ճեմարանին: Այդ անուանացուցակից երեւում է, որ 40 տարուայ ընթացքում՝ մինչեւ 1855 թ. ճեմարանը այցելել են 253 հոգի:

Մի գաղափար տալու համար թէ որքան լայն ու մեծ համբաւ է ունեցել այդ ժամա-նակաշրջանում ճեմարանը առաջ ենք բերում

*այդ անուանացուցակից մի քանի հանրածանօթ անուններ։*

1· *Կայսր Նիկոլայ Ա· եւ թագաժառանգ Ալէքսանդր Նիկոլայեւիչ, հետագայում կայսր Ալէքսանդր Բ·։*

2· *Պարսից իշխան Խոսրով Միրզա, Ֆաթալի շահի թոռը, պարսից դեսպանի ուղեկցութեամբ։*

3· *Օսմանեան դեսպան Խալիլ փաշան իր շքախմբով։*

4· *Անգլիայի դեսպան լորդ Դեւոնշիրը։*

5· *Ալէքսանդր Հումբոլդ, գերման հռչակաւոր գիտնական եւ ճանապարհորդ իր գիտնական ուղեկիցներով։*

6· *Կոմս Արակչէեւը։*

7· *Մոսկուայի մետրոպոլիտ Ֆիլարետը, մի քանի անգամ։*

8· *Վրաստանի էկզարխն ու Վրաց թագաւորի ժառանգ Անտոնը։*

9· *Կոմս Ալեքսանդր Բեկենդորֆ։*

10· *Լուսաւորութեան նախարար իշխան Լիվէն։*

11· *Կոմս Սպերանսկին, որ Նիկոլայ Ա· կայսեր օրով կազմեց Ռուսաստանի Օրէնքների հռչակաւոր ժողովածուն։*

12· *Մոսկուայի Համալսարանի հոգաբարձու իշխան Օբոլենսկի, ուղեկցութեամբ համալսարանի պրոֆեսորների։*

13· *Պարսկաստանի ռուսաց դեսպան եւ հռչակաւոր գրող Գրիբոեդով։*

14· *Բանաստեղծ Գնէդիչը։*

15· *Բանաստեղծ Պուշկինը:*

16· *Ներգործական խորհրդական Ժուղա-րաշեւ:*

17· *Պատմագիր Սերգէյ Գլինկա:*

18· *Ամենայն Հայոց կաթողիկոս Ներսէս Ե. Աշտարակեցին:*

19· *Արտաքին գործոց նախարար իշխան Գորչակով:*

20· *Բանաստեղծ Ժուկովսկի:*

21· *Կոմս Պոտեմկին:*

22· *Իշխան Բագրատիոն:*

23· *Օսման փաշա հանդերձ ընկերակիցներով:*

24· *Վիճակաւոր Առաջնորդ Հայոց Նոր Նախիջեւանի եւ Բեսարաբիայի Մատթէոս Արքեպիսկոպոս, եւայն եւայլն:*

*Այս այցելութիւնները անհետեւանք չէին մնում. այցելուները մեկնում էին գոհ ճեմարանում տիրող կարգապահութիւնից, աշակերտների յառաջադիմութիւնից ու կրթական գործի լաւագոյն կազմակերպութիւնից: Կոմս Բենկենդորֆը, օրինակ, այցելելով* 1836 *թ. ճեմարանը, ներկայացրել էր կայսեր հետեւեալ զեկոյցը:*

*«Ճեմարանս այս հիմնեալ ի Լազարեանց տոհմէ՝ յարատեւէ ցարդ զամս* 21, *աստից իբրեւ նպաստից ի կողմանէ Տէրութեան, եւ ամենայն իրաւամբք մարթի համարել մի յօգտակարագոյն եւ յարդիւնարեր շինուածոց եղելոց ի Կայսրութեան:*

*«Արեւելեան ճեմարանս այս իբրու Կեն–*

դրօնական գլխաւոր չինուած ազգին Հայոց՝ է իբրու պարտէզ ինն, եւ կերպաւորէ յին-քեան զսերմանս՝ յորոց վաճառականութիւնն եւ քաղաքականութիւնն քաղէ զպտուղս՝ ըն-տանութեամբ ընդ ժողովուրդս Ասիոյ:

«Ի ճեմարանի աստ ընդունին զկրթու-թիւն մանկունք եկեալք ի նորանուաճ նա-հանգացն Հայաստանի եւ յայլ զանազան քա-ղաքաց Հարաւակողմանն Ռուսաստանի. այլ առաւելագոյն հաւաստիք ընդհանուր հաւա-տարմութեան՝ զոր ունի ճեմարանս այս ի Մոսկուա, մարթի համարիլ այն՝ զի յոլովք յազնուականացն Ռուսաց, եւ ծնողք այլոց ազգաց տան զորդիս իւրեանց յայս ճեմա-րան՝ նախամեծար զայն քան զայլսն համա-րելով: Ի մանկանց անտի դաստիարակելոց ի ճեմարանիս՝ ի սկզբանէ մինչեւ ցայժմ իբրու չորեք հարիւր անձինք մտեալ են ի Զինուորական եւ ի Քաղաքական ծառայու-թիւնս: Ոմանք յայնցանէ նուիրեալ են զին-քեանս ուսումնական վիճակի, եւ ամենեքին հանապազորդեն ի ծառայութեան օգուտ Տէրութեան[14]»:

Այսպէս ճեմարանի համբաւը տարա-ծուել է ամենուրեք ու գրաւել հայ երեխա-ներին աշխարհի ամենահեռաւոր վայրերից. միաժամանակ հաստատուել են մասնաւոր՝ նուիրատուութիւններով թոշակաւորներ:

Ճեմարանի վարիչներն էլ խրախուսուած

---

[14] Մ. Մսերեանց, «Յիշատակարան», մաս Գ, էջ 89. ընդգծումները մերն են:

համակրանքի ու վստահութեան բազում արտայայտութիւններից ոչ մի ջանք չեն խնայել ոյժ տալու Ճեմարանի վերելքին, բարձրացնելով աշակերտութեան կրթական մակարդակը, գրաւելով ժամանակի ամենաձեռնհաս դասատուներին եւ ապա նիւթական առատաձեռն նուիրատուութիւններով օժտել Ճեմարանը կրթական անհրաժեշտ պարագաներով՝ Ֆիզիքական կաբինետ, մատենադարան եւ աշակերտական յատուկ գրադարան, հանքաբանական կաբինետ, աշխարհագրական քարտէզներ եւայլն:

Եւ Լազարեանների այս ջանքերը, անխոնջ աշխատանքներն ու նուիրումը չեն մնացել առանց գնահատանքի՝ նրանք արժանացել են մեծամեծ պատիւների ու փառքի:

*

Ամէն մի դպրոցի վերելքը, նրա ներքին կեանքի խաղաղ ընթացքը մեծապէս կախում ունի նրա ղեկավարի կամ ղեկավարների անձնական արժանաւորութիւններից ու բարոյական նկարագրից:

Սա մի ճշմարտութիւն է, որ կեանքի փորձառութիւնը բազմիցս հաստատել է. ամենացայտուն ապացոյցը տուել են մեր ազգային դպրոցները, մասնաւորապէս Ներսիսեան դպրոցն ու Երեւանի թեմական դպրոցը:

Անկարելի է կարդալ այդ դպրոցների պատմութիւնները առանց հոգեկան սարսուռի...

Երբ այդ դպրոցների ղեկավար-տեսուչները եղել են Ալամդարեանի, Պետրոս Շանշեանի, Սեդրակ Մանդինեանի նման տաղանդաւոր մանկավարժներ ու կրթական գործին նուիրուած անձնաւորութիւններ, ապա դպրոցները ծաղկել են ու տուել առատ հունձ, եւ ընդհակառակը խռովայոյզ վիճակ են ապրել, երբ օրինակ, Բժ. Ս. Շահնազարեանի[15] նման մեծամիտ ու դպրոցական գործին անտեղեակ մարդիկ են եղել կանչուած ղեկավարելու կրթական դժուարին, նուրբ ու պատասխանատու գործը:

Լազարեանները այնպիսի խոր ըմբռնում են ունեցել յիշեալ մտքի ճշմարտութեան, որ սկզբից եւեթ ջանացել են տալ իրենց դպրոցին հմուտ մանկավարժներ՝ տեսուչներ, ուսուցիչներ ու դաստիարակներ. եւ միաժամանակ պահել նրանց իրենց աչալուրջ հսկողութեան տակ: Շնորհիւ այդ հանգամանքին է, որ ճեմարանը եղել է մի հարազատ օջախ հեռաւոր անկիւններից եկած հայ որբ ու չքաւոր երեխաների համար:

Բայց խլացնել մի ճշմարտութիւն, գիտակցել մի անհրաժեշտ կարիք, դեռ չի նշանակում կարողանալ այն իրագործել, կարողանալ բաւարարել գիտակցուած կարիքը.

---

[15] Բժ. Ս. Շահնազարեանը եղել է Երեւանի թեմական դպրոցի տեսուչ 1898—1899 ուս. տ. Լէօն իր Երեւանի թեմ. դպրոցի պատմութեան մէջ մանրամասն նկարագրում է այն խռովայոյզ վիճակը, որին ենթակայ է եղել դպրոցը այդ «տեսչի» օրով, էջ 383—418:

այդ երկու հանդամանքների միջեւ եղած տարբերութիւնը շատ մեծ է։

Եւ արդարեւ, երբ Յովակիմ աղան ճեմարանի հիմքը դրեց ու դպրոցը բաց արեց իր դռները հայ երեխաների համար, նա մէկէն մէկ կանգնեց հմուտ ուսուցիչներ ճարելու դժուարին խնդրի առջեւ։ Չէ՞ որ այդ ժամանակ հայ իրականութիւնը չէր տալիս որեւէ հնարաւորութիւն այդ խնդրի բարեյաջող լուծման համար։ Որտեղի՞ց ճարել իրենց կոչման բարձրութեան վրայ կանգնած դաստատուներ ու դեկավար–տեսուչներ։

Եւ Յովակիմ աղան ուրիշ ելք չգտաւ բացի այն, որ հարկադրուած դգաց, հակառակ իր կրօնական հայեացքների, դիմել Ս. Ղազարի Մխիթարեաններին՝ դիմել նախ Վենետիկ եւ ապա Վիեննա եւ խնդրել ուղարկել ճեմարանի համար երկու ուսումնական վարդապետներ[16]։

Վենետիկն ու Վիեննան մերժում են եւ Յովակիմ աղան մտանում է անելի...

Լազարեանները, սակայն, երջանիկ աստղի տակ էին ծնուած։ Լուր առնելով, որ Ս. Էջմիածնում գտնւում է մի նախկին կաթոլիկ վարդապետ, Յովակիմ աղան անմիջապէս դիմում է կատարում եւ խընդրում, որ այդ վարդապետին ուղարկեն ճե–

[16] Յովակիմ աղայի կրօնական հայեացքների ու նրա՝ հանդէպ կաթոլիկ Մխիթարեանները ունեցած տրամադրութիւնների մասին, մենք արդէն խօսել ենք Յովակիմ աղայի կենսագրականի մէջ։

*մարանի համար: Դա՝* Սերովբէ վարդապետն էր: *Շուտով գտնուեց նաեւ նման մի երկրորդը, դա՝* Միքայէլ վարդապետ Սալլանթեանն էր:

*Այս երկու վարդապետները, մանաւանդ վերջինը, շատ խոշոր դեր են կատարել ճեմարանի կրթական գործի կանոնաւորման ու բարեկարգման մէջ, մանաւորապէս հայագիտութեան մարզում, եւ թողել են անջնջելի հետքեր:*

*

*Ճեմարանի ուսուցիչներն եւ ուսուցչապետները չեն գոհացել սոսկ իրենց առարկաների դասաւանդութեամբ. զգալով դասագրքերի մեծ պակասը, յօրինել են նաեւ բազմաթիւ* դասագրքեր, ձեռնարկներ, ընթերցարաններ, բառարաններ: *Նրանց օրինակին հետեւել են նաեւ ճեմարանի նախկին սաները:*

*Այս կողմից էլ Լազարեան ճեմարանը կատարել է գնահատելի գործ ընդհանրապէս հայ մատաղ սերունդի կրթութեան ասպարէզում, քանզի ճեմարանի ուսուցչութեան պատրաստած դասագրքերը գործ են ածուել նաեւ նոյն ժամանակուայ բոլոր Հայոց դպրոցներում, որոնք տառապելիս են եղել դասագրքերի բացակայութեան ցաւով:*

*Ճեմարանի ուսուցչութեան կազմած դասագրքերի մեծ մասը տպագրուել են ճեմարանի սեփական տպարանում ու հրատարակուել ճեմարանի կողմից:*

*Մի գաղափար տալու համար, թէ այդ տպարանում որքա՛ն մեծ ու արժէքաւոր գործ է կատարուած, առաջ ենք բերում այդ հրատարակութիւնների ցանկը, օգտուելով մեր ձեռքի տակ եղած աղբիւրներից:*

1. 1819 *թ.* «Ծաղիկ գիտութեանց», *աշխատասիրեալ ի Սերովբէ վարդապետէ ի միաբանութենէ Սրբոյն Աթոռոյն Էջմիածնի, ի պէտս դպրոցաց Հայաստանեայց, զարդարեալ* 52 *պատկերօք: Ի Մոսկով, ի տպարանի Օգոստեայ Սիմոնեանց*, 1819 *թ.*:

*«Այս դասագիրքը, — ասում է Լէօն, — այդպիսի վերնագիր էր կրում այն պատճառով, որ համառօտ տեղեկութիւններ էր տալիս գիտութեան բոլոր ճիւղերից, այն է.* I. *Յաղագս այլ եւ այլ կրօնից (բնական կրօն, կրօն Հրէից, կրօն Քրիստոնէից, Հեթանոսութիւն, որ է դիցաբանութիւն, Մահմեդականութիւն, Կռապաշտութիւն).* II. *Փիլիսոփայութիւն (Տրամաբանութիւն, Բնաբանութիւն, Բնական վիպասանութիւն, Տնկաբանութիւն, Կենդանաբանութիւն, Չափաբերական Մակացութիւնք, Աստեղաբաշխութիւն).* III. *Աշխարհագրութիւն.* IV. *Պատմութիւն*[17]:

2. 1821 *թ.* — Յարութիւն քահանայ Ալամդարեան, «Համառօտ բառարան ի Ռուսաց լեզուէ ի հայ: *Մոսկվա*, 1821:

[17] *Լէօ, «Եր. թեմ. դպր. պատմ.», էջ* 229:

3․ 1827 *թ*․ — «Բերականութիւն գրաբառ լեզուի Հայոց նորակարգ ոճով»․ *ի պէտս աշակերտաց գերահռչակ ճեմարանին կառուցելոյ ի Մոսկով, ի պայազատազարմ Տեարց Եղիազարեանց։ Ի լոյս ընծայեցաւ* Միքայէլ Ծ․ վարդապետ Սալլանթեանց *Կոստանդնուպոլսեցի, միարան Սրբոյ Էջմիածնի, նուիրակ աստուածապատիւ Կաթողիկոսի, յաջորդ վիճակաւոր արքեպիսկոպոսի, կարգավար (ոէքթոր) յիշեալ ճեմարանի, դասատնիչ (ցէնզօր) տպագրելի մատենից, ասպետ եւ դասատու Աստուածաբանութեան, Փիլիսոփայութեան եւ Հայկաբանութեան։ Մոսկվա։*

*Լէօն վկայում է, որ Սալլանթեանի այս դասագիրքը դարձել էր շատ գործածական մեր ազգային դպրոցներում։*

4․ 1831 *թ*․ — «Գաղափար Հայկական վայելչագրութեան», *գծագրեաց* Սիմէօն Սուլթանշահեանց, *ի լոյս էած Հայկական ճեմարան Տեարց Լազարեանց, որ ի Մոսկով*. 1831։

*«Կանոնաւոր վայելչագրութիւն — գրում է Լէօն այս առթիւ, — սովորցնելու հոգսերն էլ աչքի առաջ ունեցաւ բարեկարգուած հայ դպրոցը։ Դարձեալ Լազարեան ճեմարանն էր, որ առաջին անգամ հրատարակեց գեղագրութեան օրինակներ* 1831 *թ*․ [18]»։

5․ 1827 *թ*․ — Յակոբ եւ Դաւիթ Ար–

---

[18] *Անդ, էջ* 241։

զանեանները (*ճեմարանի նախկին սաներ*), «Հայոց թագաւորութեան պատմութեան մի փոքր», *Մոսկվա*, 1827 *թ*.:

6. 1831 *թ*. — *Նոյն* Սալլանթեանը *հեղինակել էր կրկին Լազարեան ճեմարանի աշակերտութեան համար մի ստուար հատոր*՝ «Կրօնագիտութիւն քրիստոնէական ըստ ուղղափառ դաւանութեան Առաքելական եկեղեցւոյ լուսաւորչական Հայոց»: *Մոսկվա*:

7. 1833 *թ*. — Յովսէփ Ջէրքէզեան (*ճեմարանի նախկին սան, Սալլանթեանին աշակերտած*), «Սկզբունք քրիստոնէական վարդապետութեան» *կամ* «*Համառօտութիւն Սրբազան Պատմութեան եւ Կրօնագիտութեան*». *Մոսկվա*, 1833:

8. 1836 *թ*. — Միքայէլ Ծ. Վ. Սալլանթեան, «Ճարտասանութիւն». *Մոսկվա*, 1836:

9. 1838 *թ*. — Աղեքսանդր Խուդաբաշեանց, «Բառարան ի հայ լեզուէ ի Ռուս»: *Լոյս է ընծայել ազա Յովհաննէս Յովակիմեան Լազարեանը, ծախսելով* 72·000 *ռուբլի թղթադրամ: Տպարան Լազ. ճեմարանի. Մոսկվա*, 1838 *թ*.[19]:

10. 1839 *թ*. — Յովհաննէս Եղիազարեան — Սիմէոն Աղայեանց Բայազեցի (*ճեմարանի նախկ. աշ.*), «Քերականութիւն Հայոց լեզուի». *Մոսկվա*, 1839:

11. 1842 *թ*. — Յովսէփ Օրբելի (*ճեմ.*

---

[19] *«Ակսերի ժողովածու»ի մէջ ծախքը ցոյց է տրուած աւելի պակաս գումար՝* 50·000 *ռուբ. թղթադրամ:*

*նախ. աչ.*), «Համառօտութիւն Սրբազան Պատմութեան». *Մոսկվա*, 1842:

12. 1846 *թ.* — Մկրտիչ Էմին, «Գրաբառի Քերականութիւն». Մոսկվա, 1846 *թ.*:

13. 1849 *թ.* — Մկրտիչ Էմին, «Ընտիր հատուածք, *քաղեալք ի գրոց նախնի եւ արդի մատենագրաց Հայոց, հանդերձ բառագրովք ի Հայկականէ ի Ռուսաց բարբառ ի պէտս աշակերտաց Լազարեան ճեմարանի Արեւելեան լեզուաց*»: *Մոսկվա, ի տպագրատան նորին ճեմարանի*, 1849:

14. 1851 *թ.* — Ստեփաննոս Նազարեանց, «Յաղագս փորձական հոգեբանութեան ճառ», *գրաբար, բայց գրական-պատմական ներածութեամբ աշխարհաբարի գրական զարգացման կարեւորութեան մասին, որպէս հայերի լուսաւորութեան համապատասխան միջոց ներկայիս: Մոսկուա*, 1851. *Եր. ԺԸ* + 80:

*Այս գիրքը տպագրուած է Լազարեանների ծախսով եւ նուիրուած է վաղամեռիկ մանուկ Յովհաննէս Խաչատրեան Լազարեանի յիշատակին:*

15. 1853 *թ.* — Ստեփաննոս Նազարեանց, «Առաջին հոգեղէն կերակուր հայազգի երեխաների համար», 1853 *թ.*:

16. 1853 *թ.* — Ստեփ. Նազարեանց; «Վարդապետարան կրօնի», *հասարակաց հայախօսութեամբ*, *Մոսկուա*, 1853 *թ.*:

17. 1857 *թ.* — Ստեփ. Նազարեանց, «Ընթերցարան», *ժողովածու թարգմանական եւ*

*ինքնուրոյն յօղուածների, աշխարհաբար*: *Մաս Ա*, 1857 *թ. եւ Մաս Բ*. 1858 *թ.*:

18. 1850 *թ.* — Մսեր Մսերեանց, «Հայոց եկեղեցւոյ համառօտ Հանգանակ», *ընդարձակ, գրաբար, Մոսկուա*:

19. 1850 *թ.* — *Նոյնը, համառօտ, գրաբար*:

20. 1850 *թ.* — *Նոյնը, համառօտ, աշխարհաբար*:

21. 1859—1862 *թ.* — *Նոյնը լրացումներով ու յաւելումներով 2րդ եւ 3րդ հրատարակութիւն*:

22. 1850 *թ.* — Մսեր Մսերեանց, «Նոր Ուխտի Սրբազան Պատմութիւն», *Համառօտ, աշխարհաբար. Մոսկուա, 2րդ տպագրութիւն* 1861 *թ.*:

23. 1861 *թ.* — Մսեր Մսերեանց, «Ընդարձակ Հրահանգ Հայոց Եկեղեցւոյ», *Աշխարհաբար. Մոսկուա*:

24. — — Մսեր Մսերեանց, «Հրահանգ ճարտասանութեան», *ի պէտս ուսանողաց, Ձեռագիր*:

*Կէօքի վկայութեամբ Մ. Մսերեանի կրօնի դասագրքերը տարածուած էին համարեա ամէն տեղ եւ շատերը բազմաթիւ տպագրութիւններ ունեցան*:

25. Գաբրիէլ Երիցփուխով (*ձեմ. նախկ. ուսն.*), Ռուս-Հայկական բառարան. *Թիֆլիս*:

26. 1859 *թ.* — Զարմայր Մսերեանց, «Հայերէն պատկերազարդ Այբբենարան», *Մոսկուա*:

27· 1863 *թ*· — Զարմայր Մսերեանց, «Հայ եւ Ռուս Այբբենարան»· *Մոսկուա*:

28· 1856 *թ*· — Ոսկան Յովհաննիսեան (*ծեմ· նախկ· սան*), «Պատմութիւն Հայաստանի, Սմբատի»· *Մոսկուա*, 1856:

29· 1858 *թ*· — Ոսկան Յովհաննիսեան, «Պատմութիւն Հայաստանի, Կիրակոսի»· *Մոսկուա*, 1858 *թ*·:

30· 1855, 1856, 1858 *եւ* 1859 *թ*· — Ոսկան Յովհաննիսեան, «Հայաստանի նոր քնար», *Երգերի եւ բանաստեղծութիւնների ժողովածու*:

31· — — Ոսկան Յովհաննիսեան, *Պարսկերէն լեզուի դասագիրք*:

32· 1872 *թ*· — Միքայէլ Միանսարեան (*ծեմ· նախկ· սան*), «*Կանոնաւոր եւ վայելուչ գրութեան պատմութիւնն ու տեսութիւնը· ծրագրական փորձառութիւն հանդերձ գանազան ծանօթութիւններով, յաւելուածներով եւ գրասեղանների ու անատոմիական ստուերագրերով*: *Պետերբուրգ*:

33· 1873 *թ*· — Միքայէլ Միանսարեանց, «Հայկական կանոնաւոր եւ վայելուչ գրութիւն: *Լայպցիգ*:

34· — — *Հրատարակութիւն* Միքայէլ Միանսարեանցի, «Ազգային կրթութիւն», *հրապարակական ընթերցանութիւնք էդուարդ Լաբուլէի· թարգ· Մ· Տէր Գրիգորեանի*:

35· 1868 *թ*· — *Հրատարակութիւն* Մ· Միանսարեանցի, «*Խնամատարութիւն երեխայոց մարմնական եւ բարոյական*», *չարա–*

գրութիւն Կոմբի, անգլիացոց թագուհու բժշկի եւ Էդինբուրգի արքունի բժշկական համալսարանի անդամի: Պետերբուրգ:

Մ. Մխանասարեանցի այս հրատարակութիւնների առթիւ Լէօն գրում է.

«Դասագրքերի հրատարակութեան ուղղութեամբ մեծ գործ է կատարել Մ. Մխանասարեանցը, որ հայ դպրոցական գործին անմիջապէս մասնակից չի եղել, բայց այդ գործին սիրահար էր: Նա մի գինուորական էր, որ 1860 թուականներին եւ 1870 թուականների սկզբներում մի շարք գնահատելի հրատարակութիւններ արաւ, որոնք նուիրուած են դպրոցական եւ մանկավարժական հարցերին: Այդ համեստ մշակն էր, որ առաջին անգամ մտցրեց մեր դպրոցները գծած տետրակների գործածութիւնը, որ այժմ տարածուած է ամէն տեղ: Նախ եւ առաջ նա հրատարակեց մի ամբողջ հատոր գրութեան արուեստին եւ նրա ուսուցման գործին նուիրուած: Այսպէս Լայպցիգում տպագրել տուեց իր հեղինակած օրինակները եւ առանձնապէս գծած տետրակներ՝ աշակերտների գործածութեան համար[20]»:

Բայց ճեմարանը չէր բաւարարւում միայն դասագրքեր կազմելով ու հրատարակելով: Հեղինակները աշխատում էին նաեւ մտցնել նոր, աւելի դիւրին մեթոդներ, մանաւանդ գրագիտութեան գործում:

---

[20] Տե՛ս Լէօ, «Պատմ. Երեւանի թեմ. դպր.», էջ 242:

«Հայ դպրոցներում, — ասում է Լէօն, — ծեծն էր որ տանում էր աշակերտին դպրոց և հարկադրում էր նրան սովորել։ Տանջանքներով խլացնելով գրավարժությունը, աշակերտը անցնում էր ավելի անհարկավոր, ավելի ընթացնող վարժությունների վանկերով, գիր կապելով, կարդալ ամբողջ մի կանոն Սաղմոս, ապա ժամագրքի աղոթքների մէջ ղեգերել։

«...Գրագիտություն ուսուցանելու սիստեմն էլ մեր ավանդական Այբբենարանից կամ Փերականից հեռացած չէր. դոնէ դեռ 1842 թ. Լազարեան ճեմարանի տպարանից հրատարակուած է Սաղմոսի առաջին կանոնը, վանկերի բաժանուած, երեխաներին սովորցնելու համար[21]»։

Զենք յիշատակում այն բազմաթիւ մեծարժէք գիտական ուսումնասիրական աշխատանքները, գրական-գեղարուեստական երկասիրությունները, որոնց հեղինակներն են եղել Ճեմարանի նախկին սաները. նրա ուսուցիչներն և ուսուցչապետները՝ հայերէն, ռուսերէն, վրացերէն, պարսկերէն, թուրքերէն և եւրոպական լեզուներով, նախ, որովհետև այդ աշխատանքների մանրամասն ցանկը բերուած է Լազ. Ճեմարանի 50ամեակին և ապա մանաւանդ Լազ. Ճեմարանի Լիկէոնի 30ամեակին նուիրուած հրատարակությունների մէջ. բացի այդ, մեր ներկայ աշ-

[21] Անդ, էջ 230—232։



Գէորգ Պ. Թանանեան

*խաւտանքների շրջանակներից դուրս գործ է, միաժամանակ «Հանդէս Ամսօրեայ»ի սուղ էջերը չեն թոյլատրում այդ։*

*Մենք սահմանափակուեցինք դասագրքերի հրատարակութեան խնդրով եւ այն էլ ճեմարանի առաջին 50ամեակում լոյս տեսած, քանզի այդ ժամանակաշրջանումն էր, որ դասագրքերի խնդիրը հրատապ բնոյթ էր կրում եւ նրանց պակասը չափազանց աննպաստ անդրադարձումներ էր ունենում ընդհանրապէս հայ դպրոցական գործի վրայ։ Տեսնում ենք մի անգամ էլ, որ* Լազարեան ճեմարանը ժամանակի հայ դպրոցների համար կենսական նշանակութիւն ունեցող այդ գործի մէջ բերել է իր թանկագին օժանդակութիւնը, կատարելով գերազանցօրէն մշակութային անզնահատելի աշխատանք:

*

*Լազարեանները, որպէս ճեմարանի կրթական գործի ղեկավարներ, մի զարմանալի հաստատութիւն ունէին զգալու նրա առօրեայ կեանքի կարիքների պահանջը եւ արա շտապել անմիջապէս բաւարարել այն, որպէս զի ճեմարանը չտուժի որեւէ պակասից։*

*20ական թուականներին նրանք զգացին, որ ճեմարանը անհրաժեշտ կարիք ունի սեփհական* տպարանի *եւ որ այդ տպարանը կարող է նաեւ խոշոր գործ կատարել ազգային մտքի լուսաւորութեան համար։*

*Եւ ահա՛ նրանք՝ հոգարարձու Յովհաննէս աղան եւ նրա եղբայր Խաչատուր աղան,*

*որ այդ ժամանակ վերատեսչի պաշտօնն էր վարում, միանարար հիմնում են սեպհական տպարան ճեմարանին կից եւ այդ նպատակով յատկացնում են իրենց սեպհական միջոցներից 30·000 ռուբլի թղթադրամ:*

*Հիմնելով տպարանը, նրանք ջանք չեն խնայում դնելու այն այնպիսի մի բարգաւաճ վիճակում, որպէս զի նա ընդունակ լինի արժանաւոր կերպով կատարել իր ընդհանուր մշակութային դերը եւ ապա կարողանայ ճեմարանի բոլոր պէտքերը լրացնել:*

*Նոր նուիրատուութիւններով, որոնց ընդհանուր գումարը կազմում է 70·662 ռուբլի թղթադրամ, նրանք ձեռք են բերում եւ օժտում տպարանը գրեթէ բոլոր լեզուներով տառեր՝ հայերէն, ռուսերէն, լատիներէն, յունարէն, ֆրանսերէն, գերմաներէն, խալերէն, անգլիերէն, հունգարերէն, վրացերէն, տաճկերէն, պարսկերէն եւ անգամ սերբերէն:*

*Այդ օրերին Մոսկուան չունէր նման մի հարուստ եւ բոլոր յարմարութիւններով օժտուած տպարան:*

*Լազարեանները պահել են իրենց ձեռքում տպարանը մինչեւ 1858 թ. այսինքն՝ 29 տարի, այնուհետեւ կապալով տուել են Պրոֆ. Մ. Էմինին:*

*1863 թ. տպարանի կառավարութիւնը Լազարեանները յանձնել են Մամոնտովին եւ բերել է ճեմարանին տարեկան 1610 ռուբլի եկամուտ:*

«Ճեմարանի գործունէութիւնը, — ասում է Պրոֆ. Զինովեւը, — յօգուտ Հայոց ազգի մտաւոր յառաջադիմութեան չի սահմանափակւում սոսկ ճեմարանի չորս պատերով: Ունենալով սեփական տպարան, ճեմարանը իր ծախքով հրատարակել է զանազան հանրօգուտ գրքեր եւ դասագրքեր հայերէն լեզուով: Ժամանակ առ ժամանակ նա ուղարկել է այդ գրքերը միանգամայն ձրի (ընդգծ. մերն է) Հայոց դպրոցներին: Վերջին ութ տարուայ ընթացքում (1855—1863 թթ.) այդ ձեւով ուղարկուած են դպրոցներին եւ զանազան անձանց շուրջ 2242 օրինակ գրքեր եւ 295 հատ դիմանկարներ, բնութեան տեսարանների նկարներ, փորագրութիւններ եւայլն: Բացի այդ, նուիրաբերուած է Մոսկուայի Համալսարանի Թանգարանին եւ մատենադարանին՝ 80 օրինակ գիրք, 18 դիմանկարներ եւ 4 հատ վիմատիպ բնութեան տեսարաններ[22]»:

Որեւէ հնարաւորութիւն չկայ թուելու այն բազմաթիւ հրատարակութիւնները, որոնք լոյս են ընծայուած Լազարեանների տպարանից նրա գոյութեան ընթացքին: Այդ տպարանում են տպագրուել ճեմարանի աշակերտների, ուսուցիչների եւ ուսուցչապետների գրական-գեղարուեստական եր-

[22] Տե՛ս Պրոֆ. Ալէքսէյ Զինովեւ, «Պատմական ուրուագիծ Լազ. ճեմարանի, Լազարեանների համառոտ կենսագրականներով», 1863 թ. Մոսկուա, Տպարան Լազ. ճեմ.:

*կերը, բանասիրական, լեզուագիտական եւ ամէն կարգի գիտական բազմաթիւ ուսումնասիրութիւններ։*

*Յիշատակենք միայն մի քանի մեծարժէք հրատարակութիւնների անունները, որոնցից մի քանիսը միայն Ճեմարանի տպարանում կարող էին տպագրուել, որպէս ժամանակի ամենաբարգաւաճ եւ միակ տպարանը, որ ունէր բոլոր արեւելեան լեզուներով տառեր.*

1. 1836 *թ. «Գօլօժէնիէ»ն հայերէն լեզուով, թարգմանութեամբ Միքայէլ արքեպ. Սալլանթեանի։*

2. *Ալ. Խուդաբաշեանի «Բառարան ի հայ լեզուէ ի Ռուս»,* 1838 *թ.։*

3. *«Հայ ժողովուրդի պատմութեան տեսութեան վերաբերող ակտերի ժողովածուն»* (1833—1838 *թթ. ռուսերէն լեզուով)։*

4. *«Լազարեան Ճեմարանին վերաբերող բարձրագոյն հրովարտակների ու հրամանագրերի ժողովածու»* (1839 *թ. ռուսերէն)։*

5. *«Ճառեր եւ հաշուետուութիւն, արտասանուած Լազարեան Ճեմարանի Արեւելեան լեզուաց* 50*ամեակի առթիւ տեղի ունեցած հանդիսաւոր հաւաքոյթին»։ Մոսկուա* 1865 *(ռուսերէն)։*

6. *«Յիշատակարան կենաց եւ գործոց մեծանուն պայազատաց Լազարեան տոհմի». Շարադրեալ ի Մսերայ Մագիստրոսէ եւ ասպետէ Գրիգորեան Մսերեանց։ Մոսկուա,* 1856 *թ. (հայերէն)։*

*

*Եթէ ճիշտ է, որ առհասարակ ամէն մի գործի մէջ հանրային կեանքի բոլոր ասպարէզներում բացակայում է նպաստաւոր մթնոլորտ, չկայ գաղափարական ոգի ու խանդավառութիւն, ապա այդ գործը չի կարող տալ բեղմնաւոր արդիւնքներ, ապա այդ բացարձակ ճշմարտութիւն է կրթական գործի մէջ։*

*Յայտնի է, որ այն դպրոցները, ուր իշխել է բիւրոկրատական ոգին, ուր չոր ու ցամաք ձեւականութիւնների պահպանութիւնն է եղել ղեկավարող սկզբունքը, այդ դպրոցները չեն տուել շօշափելի արդիւնքներ։*

*Լազարեան ճեմարանը, բարեբախտաբար, նման դպրոցների շարքից դուրս է մնացել։*

*Ճեմարանի կառուցողը, նրա երկրորդ հիմնադիր Յովակիմ աղան առաջին իսկ օրուանից ստեղծել է իր դպրոցում այն ազգասիրական–հայրենասիրական մթնոլորտը, ներշնչել այն սէրը դէպի ազգն ու նրա մշակոյթը՝ լեզուն, պատմութիւնը, գրականութիւնն ու կրօնը, որն այնուհետեւ աւանդաբար պահպանել են նրա որդիները եւ ապա կտակել ճեմարանի ուսուցչական ու վարչական կազմերին, հայ թէ ռուս։*

*Լազարեանները նոյն իսկ իրենց պաշտօնական գրութիւնների մէջ, ուղղուած կառավարական բարձր շրջաններին, երբեք առիթ չեն փախցրել իրենց ձեռքից ասելու ու շեշտելու, որ ճեմարանը* Հայոց դպրոց է *իր միանգամայն առանձնայատուկ պայմաններով։*

Եւ կառավարութիւնը խստացրել է այդ տեսակէտը եւ ըստ այնմ էլ վերաբերուել։

Ճեմարանի ազգային բնոյթի պահպանման մեծապէս նպաստել է նաեւ այն, որ նրա ռեկտորները, վերատեսուչներն կամ տեսուչները մեծ մասամբ եղել են անուանի եւ ազդեցիկ հայ մարդիկ, իսկ Հայոց լեզուի ու կրօնի դասատուները նոյնպէս ազգային ոգով ներշնչուածներ եւ կարողացել են պատուաստել այն նաեւ աշակերտութեան[23]։

Այդպիսիք են եղել, օրինակ, Սերովբէ վարդապետը Սալլանթեանը, Մկրտիչ Էմինը, Գէորգ Քանանեանը, Մսեր Մսերեանցը, Սմբատ Շահազիզը, Մանուկ Սաղաթեանը, Ստեփաննոս Նազարեանցը, Միքայէլ Նալբանդեանը, Յարութիւն քահ. Պոպովեանը, Կարապետ Կուսիկեանը եւ մի շարք ուրիշները։

Թէ որքան կենդանի ու անխախտ է պահպանուել Ճեմարանում ազգային ոգին եւ մարդասիրական վերաբերմունքը դէպի հայ երեխաները, ցոյց են տալիս հետեւեալ դէպքերը։

80ական թուականների վերջերքին, Գէորգ Քանանեանի վերատեսչութեան օրով եւ մեր աշակերտութեան ժամանակ, Ճեմարանից

---

[23] Ճեմարանի կանոնագրի մէջ՝ հիմնադիրների ցանկութեամբ, պայման է դրուած, որ նրա տնօրէններից մէկը՝ վերատեսուչը կամ տեսուչը պիտի լինի ծագումով հայ։ Այս պայմանը պահպանուած ու գործադրուած է Ճեմարանի ամբողջ գոյութեան ընթացքում։

չաս սակաւ, բացառիկ դէպքերում էին գի-
շերօթիկ հայ երեխաներից փախչում ճեմա-
րանից, իրենց չարութիւնների կամ անյաջո-
ղութեան համար, թէեւ յաճախ էին լի-
նում ռուս ուսուցիչների ու դաստիարակների
կողմից նման առաջարկներ:

Այդպիսի դէպքերում, ինչպէս ես ան-
ձամբ լսել եմ հայ եւ ռուս ուսուցիչներից,
Քանանեանը միշտ բողոքել է եւ արգելք եղել,
ասելով՝

«Ճեմարանի հիմնադիրները՝ Լազարեան-
ները՝ — յաճախ ասելիս է եղել Գէորգ Քա-
նանեանը, — այս ճեմարանը բաց անելիս,
նպատակ են ունեցել բերել ամենահեռաւոր
գիւղերից հայ երեխաներ, կրթել նրանց,
դաստիարակել եւ ապա վերադարձնել իրենց
հայրենիքը, որպէս պիտանի մարդիկ. նրանք
պէտք է տարածեն լոյս ու գիտութիւն իրենց
յետամնաց գիւղերում: Հիմնադիրների այդ
վսեմ նպատակից անթոյլատրելի շեղում ու
նրանց կտակին հակառակ գործ պիտի լինէր,
եթէ մենք սկսէինք դիւրին կերպով ճեմարա-
նից դուրս նետել երեխաներին իրենց ուսումը
չաւարտած ու պատշաճ դաստիարակութիւն
չստացած: Դուք ի՞նչ էք սպասում այդ հե-
ռաւոր անկիւններից, աղէտ միջավայրերից
եկած գիւղացի երեխաներից: Մենք ջանք
չպիտի խնայենք նրանց ուղիղ ճամբի վրայ
դնելու համար եւ ո՛չ թէ մեր աշխատանքը
դիւրացնելու նպատակով յետ ուղարկենք

երեխաներին այնտեղ, որտեղից որ նրանք եկել են»։

Մի ուրիշ ուշագրաւ դէպքի մասին հաղորդում է Երուանդ Շահազիզը, Միքայէլ Նալբանդեանի կենսագրութեան մէջ։

«Ճեմարանի աշակերտներից մէկը պատմում է հետեւեալը իր եւ իր դասընկերների տպաւորութիւնների մասին,ստացած Միքայէլ Նալբանդեանից։

«Ես երրորդ դասարանի աշակերտ էի, երբ Ճեմարանի առաջին երեք դասարանի Հայոց լեզուի ուսուցիչ Յովհաննիսեանը (Ոսկան Տէր-Գրիգորեանը) թողեց իր պաշտօնը եւ լուր տարածուեցաւ, որ Խաչատուր աղայի առանձին հաճութեամբ այդ պաշտօնին նշանակուել է Նախիջեւանցի Միքայէլ Նալբանդեանցը։ Մենք օր է ց'օր սպասում էինք նորան, որովհետեւ նոր ուսուցիչը դեռ Պետերբուրգումն էր։ Մէկ օր էլ յանկարծ խմինի հետ դասարան մտաւ մի բարակ-բարակ, միջին հասակով երիտասարդ։ Տեսուչը նորան ծանօթացրեց մեզ հետ, յայտնելով, որ այսուհետեւ նա պէտք է մեզ Հայոց լեզուի դաս տայ։ Մեր առաջ կանգնած էր Միքայէլ Նալբանդեանցը։ Ճշմարիտը խոստովանած նրա չոր կազմուածքը, դէմքի խոժոռ գծագրութիւնը, սափրած ընչացքով ու մօրուքով երեսը եւ կարճ Փրակը առաջին նուագ շատ էլ անխորժելի տպաւորութիւն չարին մեր վրայ։ Բայց այդ անախորժութիւնը չարունակուեցաւ մինչեւ տեսչի նորան մեզ ծա-

նօթացնելու պաշտօնական ծխակատարութեան վերջանալը, որովհետեւ երբ որ տեսուչը գնաց եւ նա ամբիոն բարձրանալով, սկսաւ իր առաջին դասը, նա կերպարանափոխուեցաւ. Նրա առանց այն էլ փայլուն աչքերը կրակով լցուեցան եւ երեսը մի այնպիսի գեղեցիկ ու գրաւիչ արտայայտութիւն ստացաւ, որ իսկոյն յափշտակեց մեր սիրտը եւ ընդ միշտ կապեց մեզ իւր հետ: Նա խօսում էր ազատ այն ժամանակուայ մաքուր աշխարհաբարով, չէր կմկում, չէր կակազում. Նա բառերը հնչում էր մաքուր առոգանութեամբ եւ, որ գլխաւորն է, նախադասութիւնները շատ ճարտարութեամբ կոկում էր եւ միտքը յայտնելու համար բառեր ու ոճեր չէր որոնում:

— «Տղա՛յք, թողնենք գրաբարը. այսուհետեւ մենք աշխարհաբար պէտք է սովորենք», — այս խօսքով նա սկսաւ իր դասախօսութիւնը: Եւ մենք սկսանք աշխարհաբար սովորել»:

«Մէկ անգամ ես, — շարունակում է իր խօսքը նոյն աշակերտը — որ արդէն գրաբարի ճաշակը մասամբ առել էի, հարցրի.

«Վարժապե՛տ, ապա մենք ե՞րբ պէտք է քերականութիւն, գրաբար ոճեր սովորենք»:

— «Ձեր սովորելը մի ապարդիւն աշխատանք է, իսկ քերականութիւնը միայն միջոց է եւ ո՛չ նպատակ», — պատասխանեց նա եւ սկսաւ այդ նիւթի վրայ երկար խօսել:

— «Մենք պէտք է Հայերէն մտածել սովորենք, — ահա՛ մեր ուսմունքի գլխաւոր նպատակը», — *ասում էր նա*[24]»:

*Եւ այս ամէնը միայն մի* տարուայ *ուսուցչական գործունէութեան ընթացքում...*

*Եր. Տահագիզը իր նոյն երկի մէջ, կանգ առնելով այն գործօնների վրայ, որոնք 50ական թուականներին վառ էին պահում ազգային ոգին թէ ճեմարանում եւ թէ Մոսկուայի հայ հասարակական կեանքի մէջ, գրում է.*

*«Թիֆլիսը՝ շնորհիւ Ներսիսեան դպրոցի եւ նրա ուսումնաւարտների, շնորհիւ մայրաքաղաքից վերադարձած կրթուած երիտասարդների դեռ նոր էր միայն սկսել հայկական կեանքի մտաւոր ասպարէզում նշանակութիւն ունենալ: Մոսկվայում էր Լազարեան ճեմարանը, Մոսկվայում էր ուսանողական շրջանը, Մոսկվայում էին ապրում Մսերը, Էմինը, Նազարեանցը, որոնք այդ ժամանակուայ Հայոց մտաւոր կեանքի փայլուն աստղերն էին համարւում: Նազարեանցը առաջ իբրեւ ճեմարանի ուսուցիչ, յետոյ իբրեւ համալսարանի ազատ ունկնդիր, ծանօթացաւ ճեմարանի կեանքին, մտաւ հայ հասարակութեան մէջ եւ բնականապէս մօտեցաւ թէ գործիչներին եւ թէ ուսանողութեան: Լազարեան ճեմարանը, որտեղ ժողովուած էին*

---

[24] *Տես Եր. Տահագիզ, «Միքայէլ Նալբանդեանի կենսագրութիւնը», էջ* 46—47, 48. *ընդգծումները մերն են:*

*Հայոց աշխարհի ամէն կողմից երեխաներ, որտեղ անմահ հիմնադիրների անհուն հոգացողութեամբ խնամւում էր հայկական կեանքը և պահպանւում* հայկական ոգին[25]»։

*Լազարեան ճեմարանում տիրող ազգային ոգու զարգացմանն ու պահպանմանը ո՛չ պակաս չափով նպաստել են* հէնց իրենց ճեմարանի սաները, մանաւորապէս Լազարեանների որդեգիրները՝ թւով 30—44 հոգի»։ *Հաւաքուած Հայոց աշխարհի խուլ անկիւններից, նրանք բերել էին իրենց հետ հայ նահապետական ընտանիքների սովորութիւնները, ազգային աւանդութիւնները հայրենիքի կարօտը, որոնցով և վարակում էին միւս աշակերտներին։*

*Ճեմարանի հայկական մթնոլորտը բարերար ազդեցութիւն էր ունեցել աշակերտների վրայ, թէ ճեմարանում եղած նրանց ժամանակ և թէ իրենց հետագայ հասուն կեանքի ընթացքում։*

*Եւ այդ արտայայտուել է ամենից առաջ նրանց* գրական ստեղծագործութեան մէջ։

*Արդէն* 1829 *թ. Մ. Սալլանթեանի նախաձեռնութեամբ ճեմարանի աշակերտները հրատարակում են իրենց գրական փորձերը մի յատուկ ժողովածուի մէջ՝* «Մուզայք Արարատեան» *խորագրով։*

*Այնուհետեւ գալիս են աշակերտների բազմաթիւ ներբողական ձօները, նուիրուած*

---

[25] *Անդ, էջ* 51։

Լազարեաններին զանազան ուրախ թէ տխուր առիթներով[26]:

Ապագայ ականաւոր բանաստեղծ եւ ճեմարանի Հայոց լեզուի դասատու Սմբատ Շահազիզը, դեռ 6րդ դասարանի աշակերտ գրում է իր «Ազատ ժամեր» խորագրով բանաստեղծութիւնները, որոնք յետոյ՝ 1860 թ. լոյս են տեսնում առանձին գրքոյկով:

Աւանդական սովորութիւն էր, որ աշակերտութիւնը հրատարակում էր իր ձեռագիր հանդէսները՝ շաբաթաթերթեր, ամսաթերթեր. մի սովորութիւն, որ շարունակուել է ճեմարանի գոյութեան ամբողջ ընթացքում:

Իսկ թէ ճեմարանի ուսումնաւարտները ինչպիսի՜ առատ հունձք են տուել հայ ազգային մշակոյթին, այդ, ի հարկէ, հնարաւոր չէ՛ մէկ ու մէկ յիշատակել:

Մի աղօտ գաղափար կարող է տալ ճեմարանաւարտների անուանացանկը, որ կցուած է այս աշխատանքին:

*

Աւարտելով մեր ընդհանուր տեսութիւնը, եզրափակում ենք այն հեղինակների վկայութիւններով, ուր ընդհանուր ամփոփ հայեացք է ձգուած ճեմարանի հիմնադրման շարժառիթների, հետապնդած նպատակների ու կատարած դերի վրայ մեր ազգային մշակոյթի զարգացման գործում:

---

[26] Մ. Մսերեանը իր «Յիշատակարան»ում առաջ է բերել մի շարք նման գրութիւններ: Տես Գ. մաս, գլ. երրորդ:

Այստեղ մենք նախապատուութիւնը տալիս ենք, նախ, Ճեմարանի վերատեսուչ Գէորգ Քանանեանի եւ ապա առաջ բերում մի նորագոյն վկայութիւն, որ պատկանում է Խ. Հայաստանի գրող Գ. Ստեփանեանին:

«Ըստ իր ժամանակի եւ ըստ իր ծագման — ասում է Գ. Քանանեանը, — ինչպէս եւ ըստ իր հետագայ ճակատագրի, ըստ իր գաղափարի եւ նպատակների, որոնք գրուած էին Ճեմարանի հիմնադիրների կողմից, մեր դպրոցը հանդիսանում է մի անօրինակ երեւոյթ Կայսրութեան կրթական հաստատութիւնների շարքում: Եւ արդարեւ, հնարաւո՞ր է արդեօք մատնանշել մի այլ դպրոց, որն ¾ դար առաջ կեանք ստանար շնորհիւ մի տոհմի առատաձեռնութեան եւ ապա ինքն իր մէջ սնուելով, հայթայթէր այնքան կարողութիւններ, որ հասնէր այն չափերի ու կայունութեան, որը նա ունի այսօր[27]: Կարելի՞ է, արդեօք, բերել մի ուրիշ դպրոցի օրինակ, որը պարփակէր իր մէջ այնքա՛ն իրարից տարբեր նպատակներ եւ ապա հետեւելով կայսրութեան մէջ զարգացող կրթական բոլոր սիստեմներին, անշեղ ու անխախտ կերպով իրագործէր այդ նպատակները երեք քառորդ դար եւ այդպիսով յաւերժացնէր հիմնադիրների թողած աւանդներն ու կամքը: Կարելի՞ է, արդեօք, գտնել մի տեղ, ուր

[27] Այս ճառը ասուած է Ճեմարանի 75ամեակի հանդիսաւոր հաւաքոյթին 1890 Թ., Տե՛ս «Լազ. Ճեմ. 75ամեակը» հրատարակութեան էջ 1—3:

միեւնոյն տոհմից գործիչների մի երկար շարք, որոնք յաջորդաբար մէկը միւսի յետեւից, սրբութեամբ պահելով հայրերի աւանդը, նուիրէին իրենց հարազատ հիմնարկութեան ո՛չ միայն իրենց դրամական միջոցների յաւելեալը, այլ եւ իրենց հոգին, եռանդն ու անձնական աշխատանքը: Վերջապէս, կարելի՞ է մատնանշել մի այլ դպրոցում մի այնպիսի երեւոյթ, որ հաւաքելով իր հովանու տակ ամենատարրական գիտելիքներից ու դաստիարակութիւնից զուրկ երեխաներ, եւ դպրոցը հասնէր այնպիսի՛ մեծ արդիւնքների, որպէս զի բնութեան ծոցում սնուած այդ երեխաները, իրենց հետագայ զարգացման ընթացքում, կարողանային մրցել իրենց ընկերների հետ, որոնք շրջապատուած են ծնողական հոգատարութեամբ եւ իրենց մտաւոր զարգացման համար ունեին բոլոր նպաստաւոր պայմանները:

«Ստեղծելով իրենց դպրոցը, — որին հազիւ 12 տարի անց իր հիմնադրութեան օրից վիճակուած էր վերածուելու Արեւելեան լեզուների ճեմարանի, — մեծահոգի հիմնադիրները ոգեւորում էին մղումներով, — թէեւ ճիշտ է ո՛չ իրար նման մղումներով, — բայց հաւասարապէս վեհ ու ազնիւ:

«Նրանց ղեկավարող հիմնական սկզբունքը մնում է, ի հարկէ, նոյնը՝ դպրոցը լինի լուսաւորութեան մղիչ ույժ իրենց հայրենակիցների համար, որոնց կարիքները շատ լաւ

ծանօթ էին նրանց եւ իրենց սրտին շատ մօտ էին ընդունում :

«Դէպի այս մարդասիրական գերը Լազարեաններին մղում էին՝ նրանց հասարակական բարձր դիրքը, նիւթական լայն միջոցները եւ, վերջապէս, նրանց կենդանի, դեռ եւս չթուլացած կապը կրօնով, լեզուով ու ծագումով իրենց մօտիկ ազգաբնակութեան հետ, նրա կարկառուն ներկայացուցիչների հետ, հոգեւոր թէ աշխարհիկ, Կովկասում, Անդրկովկասում եւ ամբողջ ասիական Արեւելքում :

«Ընդհանուր կրթութիւն տալով իրենց հայրենակիցների երախաներին, միաժամանակ տալ նրանց իրենց մայրենի լեզուի ու կրօնի հիմնաւոր գիտելիքներ՝ եղել են նրանց ջերմ ու աւանդական ցանկութիւնը :

«Բայց Լազարեան տոհմը, խորապէս նուիրուած մեծ Ռուսաստանին, որ դարձել էր նրա համար մի նոր հայրենիք, ցանկացաւ օգտաւէտ լինել նաեւ նրան, այսպէս ասած՝ հարազատ դարձնել նրան՝ իրենց ստեղծուելիք կրթական հաստատութիւնը : Եւ մենք տեսնում ենք, որ նրա գոյութեան առաջին իսկ տարիներից սկսած, ճեմարանի դռները սիրալիրօրէն բաց են բոլոր երեխաների համար, առանց կրօնի ու ցեղային խտրութեան :

«Բայց կար եւ մի այլ միտք, որ գիտակցւում էր պարզ ու յստակ կերպով եւ որը դրուած էր ստեղծուող դպրոցի հիմքում :

«Ասիական Արեւելքը, որի հետ Լազարեան տոհմը կապուած էր անջնջելի յիշողութիւններով, մօտենում էր անխուսափելի կայսրութեան։ Բացւում էր նոր ընդարձակ դաշտ ռուսական ազդեցութեան համար։ Զէնքի յաղթանակները պէտք էր ամրապնդել քաղաքակրթութեան ազդեցութեամբ։ Հերթական խնդիր էր դարձել նոր ասիական երկիրների ուսումնասիրութիւնը, խաղաղ չփման միջոցներ հաստատել ասիական ցեղերի ու ժողովուրդների հետ։ Գրաւիչ էր թւում ունենալու Կայսրութեան սրտում մի այնպիսի կրթական կենտրոն, որը միաժամանակ բաւարարէր թէ կայսրութեան կարիքներին եւ թէ տոհմային աւանդներին։ Արեւելեան լեզուների ուսումնասիրութիւնը կազմեց նոր դպրոցի հիմքը։

«Այսպիսով Լազարեանների դպրոցը պէտք էր համապատասխանէր միաժամանակ երեք հիմնական նպատակների՝

ա. լինել հայ երախաների համար կրթութեան լուսատու ճրագ,

բ. լինել Ռուսաստանի համար արեւելեան լեզուների ուսումնասիրութեան կենտրոն,

եւ գ. լինել ընդհանուր կրթութեան դպրոց ամէնքի համար[28]»։

*

---

[28] Տե՛ս «Լազ. ճեմ. 75ամեակը», Գ. Քանանեանի ճառը, էջ 1—3։

«Մոսկուան, — գրում է Գ. Ստեփանեանը, — հանդիսացել է հայկական մշակոյթի խոշորագոյն օջախներից մէկը:

«Եթէ 16—17րդ դարերում Մոսկուան գերապանցապէս հանդիսանում էր տնտեսական, առեւտրական մի կենտրոն հայ վաճառականութեան համար[29], ապա հայ առեւտրական բուրժուազիայի զարթօնքի տարիներին, ամբողջ 19րդ դարի ընթացքում հանդիսանում էր նաեւ մի մտաւոր լուսաւորական կենտրոն հայութեան համար»: Այնուհետեւ հեղինակը անցնելով Լազ. ճեմարանին, գրում է.

«Լազարեան ճեմարանը իր 100ամեայ գոյութեան ընթացքում կատարել է մեծ աշխատանք հայկական գրականութեան զարգացման, հայ երխտասարդութեան ուսման առաջաւոր կուլտուրային հաղորդակից դարձնելու ուղղութեամբ:

«Լազարեան ճեմարանի միջոցով է, որ հայ ժողովրդի առաջաւոր ներկայացուցիչները հնարաւորութիւն ստացան Մոսկուայում բարձրագոյն կրթութիւն ձեռք բերելով գրական-բանասիրական մանկավարժական, դասախարակչական լայն գործունէութիւն ծաւալել հայաբնակ քաղաքներում: Լազարեան ճեմարանում դասախօսում էին այնպիսի աչքի ընկնող դէմքեր, ինչպիսիք էին Գ. Խալա–

---

[29] Հեղինակը հաղորդում է, որ «1779 թուին Մոսկուայում կար 42 հայ ընտանիք: 1810 թ. այդ թիւը բարձրացաւ 60ի, իսկ հետագայում աւելի եւս մեծացաւ»:

*թեանը, Մ. էմինը, Ս. Շահազիզը, Ստ. Նազարեանը եւ ուրիշները: Այնտեղ էր դասախօսում նաեւ մեծ յեղափոխական դեմոկրատ Միքայէլ Նալբանդեանը:*

*«Բարձր դասախարակութիւն ստացած այս մարդկանց շնորհիւ է, որ աճեց բանասէրների եւ մանկավարժների մի մեծ թիւ: Ճեմարանի սաներից էին մեր բանաստեղծները՝ Յովհաննէս Յովհաննիսեան, Ալ. Ծատուրեան*[30]*, Վ. Տէրեան, եւ ուրիշներ, որոնք տարիների ընթացքում խոշոր կրթական գործունէութիւն ծաւալեցին հայ դպրոցներում, հանդիսացան հայ գրականութեան աչքի ընկնող ուժերը: Լ. Ճեմարանում էր սովորել եւ ապա դասախօսել հռչակաւոր լեզուագէտ եւ հայկարան Ն. Մառը:*

*«Լազարեան Ճեմարանը ունէր իր սեփական տպարանը, որտեղից բազմաթիւ գրքեր էին լոյս տեսնում, այդ թւում մի քանի պատմագիրների՝ ինչպէս Յովհ. Դրասխանակերտցու, Եղիշէի, Կիրակոս Գանձակեցու, Մ. Կաղանկատուացու, Ստեփաննոս Օրբէլեանի եւ ուրիշների գործերը:*

*«Հիմնականում Լազարեան Ճեմարանի շուրջը համախմբուած ուժերն էին, որ 19րդ դարի կէսերին ստեղծեցին Մոսկուայի հայ մամուլը: 1858 թ. Մ. Նալբանդեանի եւ Ստ.*

---

[30] *Ճիշդ չէ՛, որքան մենք գիտենք, Ալ. Ծատուրեանը Ճեմարանի սան չի եղել. մենք նրա անուան չենք հանդիպել Ճեմարանի սաների ե՛ւ ո՛չ մի անուանացուցակում կամ որեւէ մատնանշում այլ աղբիւրներում:*

Նազարեանցի ջանքերով հիմնադրւում է «Հիւսիսափայլը», որը խոշոր դեր կատարեց հայ իրականութեան մէջ, տգիտութեան ու յետամնացութեան մերկացման, առաջաւոր գաղափարների տարածման ուղղութեամբ: «Հիւսիսափայլ»ին աշխատակցում էին Ռ. Պատկանեանը, Ս. Շահազիզը, Մ. Մաղաթեանը, Րաֆֆին եւ ուրիշները:

«Հիւսիսափայլ»ից բացի, Մոսկուայում լոյս են տեսել մի քանի ուրիշ պարբերականներ՝ «Ճռաքաղ», «Հանդէս գրականական եւ պատմական», «Նոր Փորձ» եւայլն:

«60ական թուականներին Մոսկուայում հաւաքուած հայ երիտասարդների սերունդն էր[31], որ առաջին լուրջ փորձեր կատարեց ռուսական գրականութեան լաւագոյն նմուշների թարգմանութեան ուղղութեամբ[32]: «Հիւսիսափայլ»ի էջերում լոյս տեսան մի շարք ինքնուրոյն եւ թարգմանական կարեւոր երկեր, որոնք մնում են հայ գրականութեան ամենայաջողած էջերի թւում:

«Մոսկուայում կենտրոնացած այդ սերնդի ջանքերով էր դարձել, որ 1859 թ. յունուարի 27ին Միքայէլ Ստեփանեանի բնակարանում հայ ուսանողների ջանքերով ու ակտիւ մասնակցութեամբ ներկայացուեց Վա–

---

[31] Որի մի խոշոր տոկոսը կազմում էին Լ. Ճեմարանի շրջանաւարտները:

[32] Յիշատակենք Մ. Սաղաթեանին, որ թարգմանել էր Լերմոնտովի հռչակաւոր Պօէմ՝ «Դեւը»: Այդ թարգմանութիւնը մինչեւ այսօր էլ մնում է լաւագոյնը:

նանդեցու «Արխատակէս» պիեսը եւ մի վօ-դեւիլ:

«Ըստ էութեան այս ներկայացումը հանդիսանում է արեւելահայ թատրոնի առաջին լուրջ փորձը, որը իր վրայ հրաւիրեց նաեւ մամուլի ուշադրութիւնը: Միք. Նալբանդեանը այդ առիթով «Հիւսիսափայլ»ում գրած ռեցենզիայում ողջունում էր հայ ուսանողների թատերասիրական յիշեալ քայլը եւ ցանկութիւն էր յայտնում տարեկան գէթ երկու անգամ այդպիսի ներկայացումներ տալու:

«Ամբողջ 19րդ դարի երկրորդ կէսի ընթացքում Մոսկուան հանդիսանում էր կուլտուրական մտաւորական այն կենտրոնը, որին յառած մնում էին հայ առաջաւոր բոլոր գրողների ակնարկները՝ Ղ. Աղայեան, Պ. Պռօշեան, Յովհ. Յովհաննիսեան եւ ուրիշները...»:

*

Ի վերջոյ, պարզենք մի կարեւոր խնդիր եւս, որ տարաձայնութեան տեղիք էր տուել 1913 թուին, երբ հարց ծագեց տօնելու ճեմարանի գոյութեան 100ամեակը: Ե՞րբ տօնել յոբելեանը՝ 1914ին թէ 1915ին, ուրիշ խօսքով, ե՞րբ է եղել ճեմարանի հիմնադրութիւնը՝ 1814ին թէ՞ 1815ին:

1913ին ճեմարանի վերատեսուչն էր Պրոֆ. Պաւլ Գիդուլեանովը, որն որոշ պրպտումներ կատարելով եկել էր այն համոզման, որ ճեմարանի հիմնադրութիւնը եղել է 1814ին, հետեւաբար 100ամեակը լրանում

է 1914ին եւ ո՛չ թէ 1915ին։ Այս իսկ պատճառով նա կարգադրեց ձեռնամուխ լինել նախապատրաստական աշխատանքների։ Սակայն, ինչպէս յայտնի է, 1914 թ. ծագեց առաջին համաշխարհային պատերազմը եւ յոբելեանը տեղի չունեցաւ։

Պրոֆ. Գիգուլեանովը որոշ տուեալներ ունէր մտածելու, որ Ճեմարանի հիմնադրութիւնը տեղի է ունեցել 1814 թ. թէեւ մինչայդ ընդունուած է եղել 1815ը, բայց կը տեսնենք, որ աւելի ճիշդը հէնց 1815 թուականն է։

Ճեմարանի իրական հիմնադիրն ու կազմակերպիչը՝ Յովակիմ աղա Լազարեանցը իր ծանօթ «Յայտարարութիւն առ իւր համազգիս» գրութեան մէջ, լոյս տեսած 1820 թուին, հետեւեալ տեղեկութիւններն է տալիս մեզ հետաքրքրող խնդրի մասին.

«...յամին 1814 եկեալ իմ ի Ս. Պետերբուրգայ աստ ի Մոսկով՝ օգնականութեամբն Աստուծոյ, եւ բարեհաճութեամբ օրհնեալ ազգախնամ Տէրութեանս՝ ձեռն արկի շինել զկաճառանիստ հոյակապ Համալսարան[33]. եւ յետ ծախելոյ աւելի քան զ200 հազար ռուբլի ի սեփական գոյից իմոց՝ բաց յայնմ գումարէ, զոր ընկալայ ՚յարքունական գանձանակէ (այն է զտոկոսիս բարդեալս ի բազում

[33] «Համալսարանդ» անուն՝ ի թղթի աստ եւեթ տեսանի ընծայեալ Ճեմարանին Լազարեանց, եւ այն՝ յայտ է թէ՝ ըստ կամս կարծեաց կամ ըստ առանձին ինչ հաճոյից չարագրողի բանիցդ»։ Մսեր Մսերեանց։

*ամաց հետէ ի մայր գումարէ անդր մածելոյ յինէն, ըստ զօրութեան կարկի գերագանց եղբօր իմոյ Աղայ Յովհաննիսի)*, հազիւ թէ հասուցի զայն յիւր աւարտ ի 1816, *եւ* ի սկզբան յետագայ ամի *ժողովեցի զՀայկածին մանկունս յամենայն շրջակայ նահանգաց, եւ սկիզբն կալայ ի ձեռն քաջակիրթ դաստիարակաց վարժել զնոսա ի փառս մարդասիրին Աստուծոյ*[34]» ։

*Այս տողերից պարզ երեւում է, որ*

ա․ *Ճեմարանի հիմքը դրուած է* 1814 *թ*․ ։

բ․ *Շէնքի կառուցումն աւարտուել է* 1816 *թ*․ ։

գ․ *Առաջին ուսումն․ տարին սկսուել է՝* 1817 *թ․ յունուարին*։

*Այնուհետեւ Մսեր Մսերեանցը իր «Յիշատակարանի Երրորդ մասում, գլուխ երկրորդում տալիս է Լազարեան Ճեմարանի շինութեան պատմութիւնը, որը սկսում է այսպէս*․

*«Տեարց Լազարեանց Ճեմարանն Արեւելեան լեզուաց որ ի Մոսկուա կառուցեալ է յամի Տեառն* 1815, *ի ներգործական Պետական Խորհրդականէ եւ ի Հրամանատար Ասպետէ ի Յովհաննէ Լազարեան Լազարեանց, եւ յեղբօրէ նորա ի Յովակիմայ Լազարեան Լազարեանց . . .»* ։

---

[34] *Տե՛ս Մսեր Մսերեանց, «Յիշատակարան», էջ* 57, *Մաս Ա*․, *ընդգծումները մերն են*։

Այս տողերին Մ. Մսերեանցը կցել է հետեւեալ ծանօթութիւնը.

• «Հիմնարկութիւն ճեմարանին սկսեալ եւ վճարեալ յընթացս 1813 եւ 1814 ամաց, իսկ դասատուութիւնն ի նմա սկսեալ է յամի 1816 (տե՛ս ի Կարգադր. ճեմ. յէջ 12)[35]»։

Այս տեղեկութիւններից, որոնք հիմնուած են նոյնպէս պատմական արժէք ունեցող փաստաթղթի վրայ, հետեւում է, որ՝

ա. ճեմարանի հիմքը դրուած է 1813 թ.։

բ. Շէնքի կառուցումը սկսուել է 1813 թ., շարունակուել եւ աւարտուել է 1814 թ.։

գ. Դասաւանդութիւնը սկսուած է 1816 թ. յունուարին։

Այս տուեալների մէջ եւս խօսք չկայ 1815 թ. մասին։

Պրոֆ. Ալ. Ջինովեւը ճեմարանի իր համառօտ պատմութեան 32րդ էջում գրում է.

«1814 թ. մայիս 10ին օրհնուեցին՝ գոյութիւն ունեցող նախկին տունը, տեղը եւ հիմնադրութիւնը նոր շէնքի...։ Մի տարի անց, 12 մայիս 1815 թ. սկսուեց դասաւանդութիւնը ճեմարանը մտած աշակերտների համար, գլխաւոր հոգողութեամբ հիմնադրի եւ Հազարարձու Յովակիմ Լազարեանի»[36]։

Այս տուեալներից հետեւում է, որ՝

ա. ճեմարանի հիմքը դրուել է 1814 թ. մայիս 10ին։

---

[35] Անդ, Մասն Գ., էջ 12։
[36] Տե՛ս Պրոֆ. Ջինովեւ, էջ 86։

բ․ *Մի տարի անց՝* 1815 *թ․ մայիսին սկսուել է առաջին ուսումն․ տարին։*

*Ճեմարանի պարտիզում Լազարեանների յիշատակին կառուցուած բուրգի վրայ եղած արձանագրութեան մէջ մատնանշուած է Ճեմարանի հիմնադրութեան թուականը՝* Մայիս մէկ 1815 թ․[37]։

*Մ․ Մսերեանցը յիշատակում է նաեւ Մոսկուայի մի ռուս լրագրի վկայութիւնը, ուր ասուած է թէ՝*

«*Յամին* 1814 *թ․ կանգնեցաւ ի մայրաքաղաքի մերում ուսումնարան նոր՝ ծախիւք երկուց եղբարց՝ Յովհաննու եւ Յովակիմայ Լազարեանց*[38]*․․․*»։

*Պետերբուրգի «Ռուս․ Ինվալիդ» կիսապաշտօնական թերթում* 1825 *թ․ գրուած է եղել՝*

«*․․․Այսու եղանակաւ հիմնաւորեալ յամին* 1816 *Հայկական Ճեմարանն Լազարեանց․․․*»։

*Վերջապէս կայ մի այլ պատմական փաստաթուղթ, ուր տեղեկութիւն կայ Ճեմարանի հիմնադրման թուականի մասին։ Այդ փաստաթուղթը մեր վերը յիշատակած խնդրագիրն է, որ Յովակիմ աղան եւ նրա երկու որդիքը՝ Յովհաննէսն ու Խաչատուրը ներկայացրել էին կայսեր Ալէքսանդ Ա․-ին* 1824 *թ․*

---

[37] *Տե՛ս Մ․ Մսերեանցի «Յիշատակարան», Մասն Գ․, էջ* 92։

[38] *Անդ, էջ* 94։

*յունիս 19ին։ Այդ խնդրագիրը սկսում է հետեւեալ բառերով.*

«Ութամեայ փորձը *ապացուցեց մեր դպրոցի իրական օգտակարութիւնը» եւայլն։*

*Եթէ ճեմարանում դասաւանդութիւնը սկսուել է 1815 թ. մայիս 12ին, ինչպէս վկայում է Պրոֆ. Ջինովեւը, ապա 1824 թ. յունիս 19ին կը լինի ուղիղ 8 տարի. ուրեմն, ճեմարանի հիմնադրութեան թուականը համարում է 1815 թուականը։*

*Ձանց ենք առնում հայկական աղբիւրների (Երիցեան, Լէօ եւայլն) տեղեկութիւնները։*

*Եթէ այս բոլորի վրայ աւելացնելու լինենք, որ ճեմարանի 50ամեակը կատարուել է 1865 թ. Խաչատուր աղա Լազարեանցի կենդանութեան օրով, իսկ 75ամեակը՝ 1890 թ., այսինքն՝ միշտ ընդունուած են եղել 1815 թ. ճեմարանի հիմնադրութեան, թւում է, որ հէնց 1815 թ. պիտի ընդունել եւ անխախտ պահպանել։ Ձխախտենք, ուրեմն, պատմական աւանդութիւնն ու չփոթ չառաջացնենք մտքերի մէջ. ընդունենք ընդ միշտ 1815 թ., որպէս ճեմարանի հիմնադրութեան իսկական թուականը։*

---

## ԳԼՈՒԽ Բ.

## ԼԱԶԱՐԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԸ ԻՐ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԱՌԱՋԻՆ ՇՐՋԱՆՈՒՄ

(1815—1837)

Լազարեան ճեմարանը իր կեանքի առաջին ժամանակաշրջանում, որ ընդգրկում է 1815—1837 թուականները, չի ունեցել ոչ մի իրաւունք, ոչ մի առանձնաշնորհում. նա եղել է սոսկ մի համեստ մասնաւոր դպրոց՝ «Տեարց Լազարեանց Ճեմարանն»:

Այս շրջանում նրա հիմնադիրն ու կառուցանողը՝ աղա Յովակիմ Ղազարեանն Լազարեանը հետամուտ է եղել շատ համեստ կրթական նպատակի՝ յագեցնել Ռուսաստանի հայ ազգաբնակութեան մատաղ սերունդի ուսման ծարաւը, գլխաւորապէս հայ որբ ու չքաւոր երեխաների շարքից, եւ տալ նրանց պատշաճ դաստիարակութիւն:

Բնական էր, որ Յովակիմ աղան բաւարարուէր այդքանով, որովհետեւ իր դպրոցը դեռ չէր ճանաչուած կառավարութիւնից, իրաւազուրկ էր եւ բացի այդ դժուար էր գտնել ուսուցչական հմուտ կազմ:

Հազիւ է յաջողւում նրան ճեմարան բերել նախ Յարութիւն քահ. Ալամդարեանին, որ արդէն 1824 թ. փոխադրւում է Ներսիսեան դպրոցը Թիֆլիսում, եւ ապա Սերովբէ վարդ. Պատկանեանին ու Միքայէլ Ծ. Վ. Սալլանթեանին, որոնք դպրոցի կըր-

թական գործը արդէն դնում են պատշաճ բարձրութեան վրայ։

Այդ ժամանակ ճեմարանը ունեցել է միայն չորս դասարան, ինչպէս ընդունուած էր կայսրութեան այդ ժամանակուայ գիմնազիոններում։

Դասաւանդուող առարկաներն են եղել՝ Կրօն (ռուս ուղղափառ եւ Հայ լուսաւորչական եկեղեցիների), Տրամաբանութիւն, Հայերէն (Հայ երեխաների համար), Ռուսերէն, Լատիներէն, Ֆրանսերէն, Գերմաներէն հանդերձ գրականութեամբ, Մաթեմաթիկա, Պատմութիւն, Աշխարհագրութիւն եւ Վիճակագրութիւն (ստատիստիկա), Նկարչութիւն, Վայելչագրութիւն եւ Պար[1]։

Ճեմարանը այս ծրագրով եւ փոքրաթիւ աշակերտներով գործել է ամբողջ 12 տարի։

Թէեւ Յովակիմ աղան, ի նկատի ունենալով իր ծերութիւնն ու սպառուող ուժերը, ճեմարանի կառավարութիւնը արդէն 1818 թուին յանձնել էր իր երկու աւագ որդիներին՝ Յովհաննէսին եւ Խաչատուրին, առաջինին նշանակելով հոգաբարձու, իսկ երկրորդին՝ նրա օգնական եւ ճեմարանի առաջին

[1] Պրոֆ. Զինովեւը յիշատակում է նաեւ «Իրաւունքներ», մինչդեռ Գ. Քանանեանի տուած ծրագրի մէջ այդ առարկան բացակայում է։ Մենք գերադասեցինք հետեւել Գ. Քանանեանին, քանի որ «Իրաւունքներ» բառը չատ անորոշ է, յայտնի չէ՝ թէ խօսքը ո՞ր իրաւունքի մասին է՝ Ռուսական թէ՝ Հռովմէական իրաւունքի կամ թէ իրաւունքի ընդհանուր տեսութեա՞ն մասին է։

*վերատեսուչ (դիրեկտոր), այնուամենայնիւ չարունակում է մինչեւ իր մահը բերել իր խնամքն ու մասնակցութիւնը ճեմարանի գործերին:*

*Շնորհիւ այս երեք Լազարեանների եռանդուն ու գուրգուրալից գործունէութեան, ճեմարանը իր գոյութեան հէնց առաջին վեց տարում ցոյց է տալիս կրթական գործում այնքան նշմարելի յաջողութիւն, որ գրաւում է հայ հասարակութեան ուշադրութիւնն ու պատճառում մեծ ուրախութիւն: Դրան մեծապէս նպաստում է այն հանգամանքը, որ չրջանաւարտների քննութիւնները տեղի էին ունենում* հրապարակաւ, *ներկայութեամբ Մոսկուայի հայ եւ ռուս հասարակութեան ներկայացուցիչների, Մոսկուայի համալսարանի ուսուցչապետների ու նաեւ ժողովրդական լուսաւորութեան նախարարութեան տեղական բարձր պաշտօնեաների:*

1821 *թուի աւարտական քննութիւնները, օրինակ, ինչպէս վկայում է այն ժամանակուայ ռուս մամուլը*[2], *առանձնապէս մեծ ուրախութիւն էր պատճառում հայ հասարակութեան, ի տես այն աչքի զարնող յառաջադիմութեան, որ ցուցադրել էին Հայաստանի հեռաւոր անկիւններից եկած հայ երեխաները: Այդ տարին ճեմարանը տալիս է* 12

[2] *«Մոսկուայի Վէդոմոստի» թերթը* 1821 *թ. Փետրուար* 9, *նաեւ «Ակտերի ժողովածու», հտր. Գ, էջ* 44*. մասնանշուած են Գ. Քանանեանի ճառի մէջ ճեմարանի* 50*ամեակի առթիւ ասուած:*

*շրջանաւարտ Գիմնազիոնական ընդհանուր կրթութեամբ, որոնցից 5 հոգի յատուկ քննութիւններ տալով մտնում են Մոսկուայի համալսարանը ստանալու բարձրագոյն կրթութիւն :*

*1820-ական թուականների սկիզբներին աշակերտների թիւը սկսում է բազմանալ· ճեմարանը ընդունում է նաեւ ուսման վարձ վճարող գիշերօթիկ եւ երթեւեկ աշակերտներ առանց ցեղային ու կրօնական խտրութեան : 1825 թուին ճեմարանը ունէր արդէն 75 աշակերտներ, որոնցից 30ը Լազարեանների թոշակաւորներն էին՝ հայ որբ ու չքաւոր երեխաներ :*

*Այսպէս դպրոցի մօտեցումը հասարակութեան ունենում է իր շատ բարերար ազդեցութիւնը : Այս հանգամանքը ցոյց է տալիս, որ Լազարեանները առողջ տեսակէտներ ունէին դպրոցական գործի մասին :*

*Այս յաջողութիւնը, սակայն, չի բաւարարում հոգաբարձու Յովակիմ աղային· ճեմարանը մնում էր մի համեստ մասնաւոր դպրոց... նա մտահոգուած էր, նախ,* կրթական ծրագիրն ընդարձակելու եւ ճեմարանի իրաւական վիճակը ամուր հիմքերի վրայ դնելու խնդիրներով :

*«Մի կողմից — ասում է ճեմարանի վերատեսուչ Պրոֆ. Միլլէրը — Լազարեանները երազում են իրենց դպրոցի աշակերտներին տալ այնպիսի կրթութիւն, որպէս զի նրանք*

պատչաճ պատրաստականութիւն ձեռք բերելով կարողանան մանել Մոսկուայի համալսարանը, միաժամանակ լինելով Պարսկաստանից Ռուսաստան տարագրուածի զաւակներ եւ միանգամայն գիտակցելով Ռուսաստանի մեծ նշանակութիւնն ու շահերը Արեւելքում, նրանք մտածում են իրենց դպրոցում մտցնել նաեւ արեւելեան լեզուների դասաւանդութիւնը, դարձնել ճեմարանը կենտրոն արեւելեան լեզուների ուսումնասիրութեան համար: Այսպիսով Լազարեանների դպրոցը պիտի հետամուտ լինէր **երեք հիմնական նպատակների իրագործման**. *նախ*՝ **լինել կանոնաւոր դպրոց հայ երեխաների համար**, որոնք այդ ժամանակ գրեթէ զրկուած էին ուսում ստանալու հնարաւորութիւնից, *ապա*՝ **լինել արեւելեան լեզուագիտութեան կենտրոն** եւ *վերջապէս*՝ **լինել ընդհանուր կրթութեան դպրոց**, որ պատրաստում է իր սաներին մտնելու համալսարան[3]»:

Աղա Յովակիմը, նախազգալով իր մօտալուտ մահը, ձգտում է ապահովել ճեմարանի **իրաւական** վիճակը, լաւ գիտակցելով, որ իր դպրոցը, որպէս մի մասնաւոր կրթական հաստատութիւն, չի կարող յարատեւութիւն ունենալ, կարող է բազում պատահականութիւնների ենթարկուելով վտանգուել: Միաժամանակ նա ցանկանում էր

[3] Տե՛ս «Լազ. ճեմ. մասնագիտ. դասարանների 30ամեակը», էջ Բ, Պրոֆ. Միլլէրի ճառը: Ընդգծումները իմն են:

ձեռք բերել ճեմարանի համար օրէնքով հաստատուած կանոնագիր, իրաւունքներ ճեմարանի ուսուցիչների եւ միւս պաշտօնեաների համար եւ վերջապէս ենթարկել ճեմարանը Կրթական Նախարարութեան:

Այս խնդրով Յովակիմ աղան դիմում է անում կառավարութեան, սակայն բաւարարութիւն չի ստանում . . . :

Բայց աղա Յովակիմն այն մարդկանցից չէր, որ անյաջողութիւնից ձեռնթափ են լինում: 1823 թ. նա նորից դիմում է կառավարութեան, առաջարկելով Նախագիծը ի հաստատութիւն ճեմարանի Կանոնագրի, ըստ որի ճեմարանը պիտի կոչուէր՝ «Լազարեանների Հայկական Գիմնազիա», իսկ դպրոցական ծրագրի մէջ մտցնել երեք արեւելեան լեզուների դասաւանդութիւն՝ Արաբերէնի, Պարսկերէնի եւ Տաճկերէնի:

Այս դիմումը թէեւ քննութեան է առնում եւ նոյն իսկ արժանանում Դպրոցական Գլխաւոր Վարչութեան Գիտական Կոմիտէի հաւանութեան, այնուամենայնիւ ընթացք չի ստանում եւ դրական արդիւնք չի տալիս . . . :

Այս անյաջողութիւններից յետոյ աղա Յովակիմի եւ նրա օգնական երկու որդիների ջանքերը ուրիշ ուղղութիւն են ստանում. նրանք երջանիկ միտք են յղանում դնել ճեմարանը մի պետական բարձր ու հեղինակաւոր անձնաւորութեան իշխանութեան ու հովանաւորութեան ներքոյ, որի օժանդակու-

թեամբ ի վիճակի կը լինեն աւելի դիւրին կերպով երագացնել իրենց նպատակներն ու բաղձանքները:

Նրանք կանգ են առնում ժամանակի ամենահզօր պետական անձնաւորութեան վրայ, այն է՝ Կոմս Արակչէեւի վրայ, որի հետ Լազարեանները բարեկամական կապեր ունէին եւ որը օժտուած էր կայսեր Ալէքսանդր Առաջինի կողմից արտակարգ իրաւունքներով ու իշխանութեամբ:

Լազարեանների խնդրին միացնում է նաեւ իր դիմումը Ամենայն Հայոց Կաթողիկոս Եփրեմը:

Կայսրն ու Կոմսը տալիս են իրենց համաձայնութիւնը, եւ կոմս Արակչէեւը նշանակում է կայսեր յատուկ հրովարտակով Լազարեան Ճեմարանի առաջին Գլխաւոր Կառավարչապետը սկսած 1825 թուից:

Ուշագրաւ է ժողովրդական լուսաւորութեան նախարար ծովակալ Ալէքսանդր Շիշկովի հետեւեալ կարծիքը, յայտնուած այդ առթիւ.

«Ի նկատի առնելով, որ Լազարեանների Հայկական դպրոցը չի մտնում համալսարանական շրջաններում եղած պետական դպրոցների կազմի մէջ, որոնք իրենց Կանոնադրով ենթակայ են ամէն մի համալսարանական շրջանի իշխանութեան, որ նա մինչեւ այժմ ենթակայ չի եղել ժողովրդական լուսաւորութեան նախարարութեան եւ հանդիսանում է մի առանձնայատուկ կրթական հաստա-

ութիւն, որը ծառայում է մեծ մասամբ հայ երեխաների կրթութեան գործին, ուստի ժողովրդական լուսաւորութեան նախարարը գտնում է, որ այդ դպրոցը, առանց խախտելու լուսաւորութեան նախարարութեան մէջ ընդունուած ընդհանուր օրէնքները, կարող է այդ նախարարութեան կախումից ազատ համարուել եւ գտնուել յատուկ վարչութեան իրաւասութեան ներքոյ, որից այդ դէպքում կախուած կը լինի մշակել նաեւ կանոններ այդ դպրոցի համար[4]»:

Նախարարի այս կարծիքի վրայ յենուելով, կայսրը հաստատում է կոմս Արակչէեւին յիշեալ պաշտօնի մէջ եւ Կոմսը գործի է անցնում 1825 թուից:

Այժմ արդէն աղա Յովակիմը կարող էր հանգիստ սրտով փակել իր աչքերը առ յաւէտ՝ նրա դպրոցը ստացել էր այն իրաւական ապահովութիւնը, որին նա ձգտում էր եւ որի մասին նա տարիներ շարունակ երազել էր:

Եւ արդարեւ, հազիւ մի տարի անց, 1826 թ. յունուար 21ին Յովակիմ Ղազարեան Լազարեանը վախճանւում է, թողնելով ճեմարանը իր երկու որդիների խնամքին:

Ճեմարանի վիճակի մէջ մինչեւ 1837 թ. մեծ փոփոխութիւններ տեղի չունեցան:

---

[4] Տե՛ս «Լազ. ճեմ. 50ամեակը», Յաւելուած, Էջ 9ա, ուր բերուած են պաշտօնական գրութիւնների եւ կայսերական հրովարտակների բնագրերը:

Մտցուեց երեք արեւելեան լեզուների դասաւանդութիւնը, որը սակայն պարտադիր չէր բոլոր աշակերտների համար, այլ միայն նրանց համար, որոնց ընտրում էր ճեմարանի Խորհուրդը կամ թէ որոնք իրենց յօժար կամքով ուզում էին սովորել այդ լեզուները: Աւելացաւ դասաւանդուող առարկաների թիւը, որով աշակերտները բաւական ծանրաբեռնուեցին: Այսու հանդերձ ճեմարանը շարունակում էր լինել հանրակրթական դպրոց, որ պատրաստում էր իր սաներին մանելու համալսարան, բարձրագոյն կրթութիւն ստանալու:

1829 թուին եւ այնուհետեւ յաջորդ տարիներին ճեմարանում աւանդւում էին հետեւեալ առարկաները·

1· Կրօն (Հայ եւ ռուս. դաւանութիւնների)· 2· Տրամաբանութիւն եւ Բարոյագիտութիւն· 3· Պատմութիւն եւ Վիճակագրութիւն· 4· Թուաբանութիւն· 5· Երկրաչափութիւն· 6· Եռանկիւնաչափութիւն· 7· Հանրահաշիւ (ալգեբրա)· 8· Ֆիզիկա· 9· Բնական պատմութիւն· 10· Քերականութիւն· 11· Ճարտասանութիւն· 12· Էստետիկա (Գեղեցկագիտութիւն)· 13· Ընդհանուր եւ Ռուսաց պատմութիւն· 14· Աշխարհագրութիւն· 15· Լեզուներ՝ Հայերէն, Ռուսերէն, Ֆրանսերէն, Գերմաներէն, Արաբերէն, Պարսկերէն, Տաճկերէն հանդերձ իրենց գրականութեամբ· 16· Նկարչութիւն· 17· Վա-

յեւլչագրութիւն. 18. Գծագրութիւն. 19. Երաժշտութիւն եւ 20. Պար[5]:

Կոմս Արակչէեւի գլխաւոր կառավարչապետութիւնը շարունակուեց մինչեւ 1827 թ.: Նրան յաջորդեց կոմս Ալէքսանդր Բենկենդորֆը — 1828 թ., համաձայն Լազարեանների եւ Ռուսաստանի հայերի վիճակաւոր Յովհաննէս արքեպիսկոպոսի խնդրանքներին, ուղղուած կայսեր:

Նոյն 1828 թ. կառավարչական բարձր շրջաններում քննութեան է առնում արեւելագէտների մասնակցութեամբ ու մշակում ճեմարանի համար Նոր Կանոնագիր, բայց նրա վերջնական վաւերացումը յետաձգւում է եւ միայն ճեմարանի անունն է փոփոխութեան ենթարկւում եւ անուանւում է՝ «Լազարեանների Հայկական Ճեմարան Արեւելեան լեզուաց»:

Չնայած այս անյաջողութեան, ճեմարանի ներքին կեանքը շնորհիւ Լազարեանների խնամքին եւ Սալլաթեանի հմուտ ղեկավարութեան ու նաեւ Մոսկուայի համալսարանի բարերար ազդեցութեան, կրթական գործը ճեմարանում շարունակում է զարգանալ եւ ձեռք բերել բարի համբաւ թէ կառավարական բարձր շրջաններում եւ թէ հայ ու ռուս հասարակութիւնների մէջ:

[5] Առարկաների անունների յիշատակութեան մէջ բացակայում է միատեսակութիւն մեր ձեռքի տակ եղած աղբիւրների մէջ: Մենք հետեւեցինք Գ. Փանանեանի տուած տեղեկութեան:

23*

1830 թ. Ճեմարանի հոգաբարձու Յովհաննէս Լազարեանը չի սպասում ճեմարանի նոր Կանոնագրի հաստատման եւ կարգադրում է տպագրել եղած Կանոնագիրը հայերէն լեզուով հայերի համար:

Այդ կանոնագրի մէջ ճեմարանի նպատակը ձեւակերպուած է հետեւեալ կերպով.

«Ճեմարանի գերագոյն նպատակն է տալ նրա մէջ ուսանող հայ երեխաներին ընդհանուր կրթութիւն եւ պատրաստել օգտակար ծառայողներ հայրենիքին քաղաքացիական ու զինուորական մարզերում: Բայց դրա հետ սերտօրէն կապուած են երկու յատուկ նպատակներ՝ նախ, ուսումն մայրենի լեզուի եւ նրանից դաւանանքի հիմունքների, որպէս զի ճեմարանը դառնայ հայ երեխաների դաստիարակութեան կենտրոն ու նաեւ բոլոր հայ դպրոցների համար ուսուցիչներ ու դաստիարակներ պատրաստող հիմնարկ. երկրորդ՝ գործնական ուսումնասիրութիւն արեւելեան լեզուների: Այս բոլորի հետ միասին նաեւ հոգացողութիւն կրթութիւն տալու հայ հոգեւորականութեան երեխաներին[6]»:

1829 թ. Լազարեանները հիմնում են իրենց սեփական տպարանը, ճեմարանին կից, որ մեծապէս նպաստում է կրթական գործի յաջողութեան, տպագրելով մի շարք դասագրքեր:

[6] Տե՛ս «Լազ. ճեմ. 75ամեակը», Քանանեանի ճառը, էջ 12:

Բայց եւ այնպէս պէտք էր զգացւում ստանալ ճեմարանի համար որոշ առանձնաշնորհումներ եւ բարձրացնել նրա իրաւական դիրքը:

Օգտուելով նոր գլխաւոր Կառավարչապետ կոմս Բենկենդորֆի բարեացակամ վերաբերմունքից, Լազարեանները 1835 թուին հետեւեալ դիմումն են կատարում, խնդրելով ճեմարանի համար կայսրութեան պետական գիմնազիոններին վերապահուած բոլոր առանձնաշնորհումներն ու իրաւունքները:

Եւ որովհետեւ այդ դիմումը պարունակում է իր մէջ հետաքրքրական տեղեկութիւններ ճեմարանի նիւթական ու կրթական վիճակի մասին, տալիս ենք այն ամբողջութեամբ, որ ռուսերէն լեզուով բերուած է ճեմարանի 50ամեակին նուիրուած հրատարակութեան Յաւելուածում (էջ 16—17).

«Լազարեան ճեմարանը — գրում են դիմումի հեղինակ Լազարեանները — հիմնուած Մոսկուայում 1815 թ., առանց կառավարութեան դրամական օժանդակութեան, արդէն շուրջ 20 տարի է որ գոյութիւն ունի: Դասընթացքը՝ գիմնազիոնական է. բացի այդ աւանդւում են նաեւ հայերէն, պարսկերէն, արաբերէն ու տաճկերէն լեզուները: Այդ ժամանակամիջոցում ճեմարանի հաշուով սովորել են 160 հոգի եւ գիշերօթիկ երեխաներ շուրջ 240 հոգի, ընդամենը շուրջ 400 աշակերտ, որոնցից 60 հոգի շրջանաւարտներ մտել են համալսարան:

«Լազարեան ճեմարանի հիմնադիրները 1814 թ. սկսած մինչեւ 1834 թ. նուիրաբերել են ճեմարանին շէնքերով ու դրամով մօտ 1,028·000 ռուբլի, չհաշուած 200·000 ռուբլի հիմնադրամը, որ ի պահ է տրուած Ս. Պետերբուրգի Խնամակալական Խորհուրդին: Բացի այդ, Լազարեանները արել են նաեւ հետեւեալ նուիրաբերութիւնները՝ ա. 6·000 հատոր գիրք եւրոպական եւ արեւելեան լեզուներով գրադարան կազմելու համար. բ. հաւաքածոներ նկարների, դիմանկար պատկերների, փորագրութիւնների. գ. կազմել են հանքաբանական կաբինետ եւ ձեռք են բերել Ֆիզիքայի ու մաթեմաթիկայի համար զանազան գործիքներ ու դպրոցական պիտոյքներ: Ճեմարանը ունի իր հիւանդանոցը աշակերտների համար եւ այլ հիմնարկներ (խոհանոց, բաղնիս եւ այլն):

«Այս տարի էլ Լազարեանները նուիրաբերել են 42·500 ռուբլի:

«Ճեմարանի հիմնադրութեան ժամանակ գնուած են երկու քարաշէն տուն, իսկ 1828 թ. ճեմարանի կողքին ուրիշ քարաշէն տուն, որի մէջ բացուած է տպարան տպագրելու եւրոպական եւ արեւելեան լեզուներով գրքեր: Այս բոլոր տները բերում են ճեմարանին տարեկան 10·000 ռուբլի եկամուտ:

«Ճեմարանի պահպանութեան համար ստացւում են հետեւեալ եկամուտները՝ հիմնադրամի տոկոսներ, տների վարձ ու տպարանից եկամուտ, գումար՝ 20·000 ռուբլի:

Ծախքը ճեմարանի պահպանութեան համար կազմում է տարեկան մօտ 45·000 ռուբլի: Պակասը լրացւում է գիշերօթիկներից ստացւող 650 ռուբլի տարեկան վճարից, որը շատ չափաւոր է, համեմատած պետական ու մասնաւոր դպրոցներում ընդունուած վճարի հետ: Այնուամենայնիւ եթէ պակաս է լինում, այդ պակասը լրացնում են Լազարեանները իրենց սովորական նուիրաբերութիւններով:

«Արդ, ճեմարանը, որ կրթական տեսակէտից հաւասար է գիմնազիոններին, որն ունի մեծահամբաւ դասատուներ մայրաքաղաքի գիմնազիաններից, որն իր ներքին բարեկարգութեամբ պակաս չէ պետական դպրոցներից, որն արդէն պատրաստել է բազմաթիւ կրթուած երիտասարդներ պետական ծառայութեան համար, որոնցից ոմանք մտել են զինուորական ծառայութեան մէջ, ի միջի այլոց նաեւ թիկնապահ զօրագունդերի մէջ, — ամենայն արդարութեամբ արժանի է ունենալու գիմնազիոնների իրաւունքներ: Հասարակութեան վստահութեան ապացոյց է նաեւ այն, որ ճեմարանը ունի լրիւ թւով գիշերօթիկ աշակերտներ: Ուսման մէջ ճեմարանի սաների ցոյց տուած յառաջադիմութիւնն ու դաստիարակութիւնը ապացուցւում են համալսարան մտնող աշակերտների յաջող քննութիւններով»:

Այս դիմումը պսակուեց կատարեալ յաջողութեամբ շնորհիւ գլխաւոր կառավար-

*չափեր կոմս Բենկենդորֆի հեղինակաւոր պաշտպանութեան*: 1837 *թուին Լազարեան ճեմարանը ստանում է մի շարք առանձնաշնորհումներ, կանոնադիր եւ համարւում է* երկրորդ կարգի դպրոց *կայսրութեան դպրոցական ցանցի մէջ, որով եւ ճեմարանը մտնում է իր զարգացման* երկրորդ փուլի մէջ:

## ԳԼՈՒԽ Գ.

## ԼԱԶԱՐԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԸ ԻՐ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԵՐԿՐՈՐԴ ՇՐՋԱՆՈՒՄ

(1837—1848)

*Լազարեանների* 1835 *թ. դիմումի եւ կոմս Բենկենդորֆի միջամտութեան այդ դիմումին յաջող ընթացք տալու՝ մեծապէս նպաստեցին Կայսեր Նիկոլա Ա.ի եւ ապա թագաժառանգ Ալէքսանդր Նիկոլաեւիչի ճեմարանին տուած այցելութիւնները*:

1834 *թ. Հոկտեմբեր* 4*ին այցելում է ճեմարանը կայսրը ուղեկցութեամբ կոմս Բենկենդորֆի: Կայսրը մանրամասնօրէն դիտում է ճեմարանի շէնքի բոլոր մասերը, հետաքրքրւում է կրթական գործով, խօսում է երկու աշակերտների հետ, ինչպէս եւ տաճկերէն լեզուի դասատուի հետ, լսում է ճեմարանի վերատեսչի զեկոյցը եւ գոհ հեռանում ճեմարանից*:

«Յետ այցելութեան բարեհաճեցաւ ինքնակալ կայսրն յայտնել գլխաւոր իշխանապետի ճեմարանի (իմա՛ կոմս Բենկենդորֆին) զիւր բաւականութիւն զքաջ յօրինուածոյ եւ զբարեկարգութենէ», — պատմում է Մ. Մսերեանցը, առնելով այդ տեղեկութիւնը «ի Գում. Բարձր Հրովարտ.»:

1837 թ. Նոյեմբեր 25ին ճեմարանին այցելութիւն է տալիս Թագաժառանգը, որին ընդունում են Գլխաւոր Կառավարչապետ կոմս Բենկենդորֆն եւ Հոգաբարձու Յովհաննէս Յովակիմեան Լազարեանցը:

Թագաժառանգը եւս, ծանօթանալով մանրամասն ճեմարանի ընդհանուր վիճակի հետ, կրկին գոհ սրտով հեռանում է, յայտնելով իր գոհունակութիւնը «զկարգաւորութենէ եւ զբարեչինութենէ նորին[1]»:

Այս երկու այցելութիւնների արձագանգում են մայրաքաղաքի ռուս մամուլի օրգանները, որոնց թւում «Հիւսիսային Մեղու» օրաթերթը, արձանագրելով վեհապետների գոհունակութիւնը ճեմարանից:

Վերջապէս, 1837 թ. սեպտեմբեր 30ին Մինիստրների Կոմիտէտը հաղորդում է կոմս Բենկենդորֆին իր հեռեւեալ որոշումները, հաստատուած կայսեր կողմից, ի գործադրութիւն:

---

[1] Տես Մ. Մսերեան, «Յիշատակարան», Մաս Գ, էջ 45:

*Այդ որոշումների համաձայն՝*

ա. *Լազարեան ճեմարանը ստանում է այն բոլոր իրաւունքներն ու առանձնաշնորհումները, որոնք վերապահուած են պետութեան բոլոր* երկրորդ *կարգի դպրոցներին:*

բ. *Այդ հիման վրայ, ճեմարանի բոլոր պաշտօնեաները՝ Հոգաբարձուն, Վերատեսուչը, տեսուչը, ուսուցիչները, վերակացուները, տնտեսն ու բժիշկը հաշւում են պետական պաշտօնեաներ եւ իրաւունք ունին որպէս այդպիսիները ստանալու նրանց համար սահմանուած բոլոր աստիճաններն ու շքանշանները, համապատասխան իրենց կրթութեան, դիրքի, ցոյց տուած եռանդին ու կատարած աշխատանքների:*

գ. *Ճեմարանը ենթարկւում է ժողովրդական լուսաւորութեան Նախարարութեան վերին հսկողութեան, թէեւ դեռ չի մտնում նրա դպրոցական ցանցի մէջ:*

դ. *Թոյլատրւում է ճեմարանի տնտեսական մասի կառավարութեան համար ունենալ յատուկ* Տնտեսական խորհուրդ, *որը պիտի գործի համաձայն այն կանոնների, որոնք կը մշակուին Գլխաւոր Կառավարչապետի կողմից: Խորհուրդի մշտական անդամներն են՝ Հոգաբարձուն, Վերատեսուչը, տեսուչը եւ մի-երկու հոգի աւագ ուսուցիչներից:*

ե. *Հոգաբարձուի կոչումը յատկացւում է Լազարեան տոհմի աւագ անդամին. այս կոչումը ժառանգաբար անցնելու է տոհմի անդամներին սերունդից սերունդ: Այն դէպ-*

քում, երբ տոհմի սերունդը ընդհատուեց, նշանակւում է նրա մերձաւոր ազգականներից մէկը կամ ընտրւում է Հայ ազգից, համաձայնութեամբ Ս. Էջմիածնի Հայոց Վեհափառ Կաթողիկոսի ու Ռուսահայոց Թեմակալ Առաջնորդի, պայմանաւ, որ ընտրեալը իր աստիճանով համապատասխան լինի իր այդ պաշտօնին:

Գ. Հոգաբարձուն հաստատւում է իր պաշտօնի մէջ կայսեր բարձրագոյն հրամանագրով, իսկ ճեմարանի վերատեսչի եւ բոլոր միւս պաշտօնեաների ընտրութիւնը կատարւում է Հոգաբարձուն՝ Գլխաւոր Կառավարչապետի համաձայնութեամբ:

Է. Ամէն տարուայ վերջում ներկայացնել Գլխաւոր Կառավարչապետին եւ Ժողովրդ. Լուսաւորութեան Նախարարին ճեմարանի մուտքի եւ ելքի դրամական հաշիւները, ինչպէս եւ զեկոյցներ ճեմարանի կրթական վիճակի մասին:

Ը. Ճեմարանի հոգաբարձուին, վերատեսչին, տեսչին, ուսուցիչներին, բժշկին, եւ միւս պաշտօնեաներին թոյլատրւում էր ունենալ նշանազգեստ (մունդիր) եւ նշանազգեստի Փրակ, որպիսիք յատկացուած էին Մոսկուայի ուսումնական շրջանի գիմնազիոններին, իսկ աշակերտներին՝ նշանազգեստ (մունդիր) մուգ կանաչագոյն կտորից կարմիր եզրով (кант), բարձր սեւագոյն օձիքով, դեղին (ոսկեգոյն) կոճակներով,

զարդարուած կայսերական զինանշանով (герб) եւ գլխարկ նոյն կտորից կարմիր եզրով (кант):

Բ· Լազարեանների որդեգիրները պարտաւորւում են իրենց ուսման ընթացքը ձեմարանում եւ Համալսարանում աւարտելուց յետոյ ծառայել ձեմարանում, որպէս դասատուներ ո՛չ պակաս քան վեց տարի:

Այսպիսով, ձեմարանի իրաւական վիճակը զգալիօրէն բարւոքւում է եւ նրա հմայքը հասարակական կեանքի մէջ բարձրանում է:

Աշակերտութեան թիւը սկսում է աճել տարէց տարի· ձեմարանը իր ներքին կեանքի մէջ ստանում է նոր ոյժ, նոր թափ իր կրթական բարձր նպատակները լաւագոյն կերպով իրագործելու:

Այսու հանդերձ զուտ ուսումնական մասը՝ բուն կրթական գործը աւելի է բարդանում մի քանի նոր միջոցառումների հետեւանքով . . . :

«Այդ ժամանակաշրջանում՝ 1837—1848 թթ., — նկատում է Գ. Քանանեանը, — նոր գործնական պահանջներ դրուեցին ձեմարանին, որոնք հակասում էին մանկավարժական սկզբունքներին: Դասընթացքի միասնականութիւնը խախտւում է, զիջելով իր տեղը գիտութիւնների եւ առարկաների խճողման: Նպատակների բազմազանութիւնն առաջ է բերում պահանջների բազմատեսակու–

Թիւն աշակերտների խմբաւորումի մէջ եւ ստեղծում է անխուսափելի շփոթ ուսման ծրագրի մէջ: Միեւնոյն դպրոցում կազմւում են առանձին բաժանմունքներ, որոնցից իւրաքանչիւրը ունէր իր ուսման ծրագիրը: Գիմնազիոնական դասընթացքը կորցնում է իր ներդաշնակութիւնը, մի բան, որ անհրաժեշտ պայման է ամէն մի դպրոցի կանոնաւոր դարգացման համար: 1841 թ. մարտ 4ին Ճեմարանում հաստատւում է առանձին բաժանմունք հոգեւորականներ պատրաստելու Հայ լուսաւորչական Եկեղեցու համար, Համաձայն Վեհափառ կաթողիկոսի եւ Սինոդի մտայնացումի ու ցանկութեան[2]:

«Այս բաժանմունքը թերեւս, առանց վնասելու Ճեմարանին, պսակուէր ցանկալի յաջողութեամբ, եթէ որ նրա աշակերտների դասընթացքը չէնթարկուէր կրճատումների եւ նրանք չղրկուէին բացառիկ վիճակում[3]:

[2] Էջմիածնի Սինոդի 1837 թ. փետր. 22ի արձանագրութեան մէջ ասուած է, ի միջի այլոց հետեւեալը. «Էջմիածնի Սինոդը ուրիշ յարմարագոյն եւ Հայ Եկեղեցու օգուտին համապատասխանող միջոց չի տեսնում, որպէս ամենահաստատուն եւ էական միջոց՝ եթէ ոչ Մոսկուայի Լազարեան Ճեմարանում հիմնել առանձին բաժանմունք պատրաստելու հոգեւորական դասից երիտասարդներ Հայոց դաւանանքի, որոնք ուսուցչութիւն անէին Հայոց թեմական դպրոցներում եւ ընդունէին հոգեւոր կոչում»:

[3] Այս բաժանմունքի ծրագիրը մշակել էին Կաթողիկոսն ու Սինոդը, իսկ ներքին գործոց նախարարութեան կողմից արուած էին լրացումներ եւ ապա կայսեր 1841 թ. մարտ 4ի հրամանագրով հաստատուել: Այս բաժանմունքը պիտի ունենար 15—20 աշակերտներ, որոնք ազատ էին կացուած սովորելու

Գ. Թանանեանը, շարունակելով իր այս քննադատական խօսքը, ասում է. «Այդ չեղումի հետ միասին դպրոցի ընդհանուր ծրագրից, դպրոցի ուսումնական ծրագիրը ծանրաբեռնում է նաեւ լրացուցիչ դասախօսութիւններով այն աշակերտների համար, որոնք պիտի պատրաստուէին առեւտրական ասպարէզ մտնելու համար. այս բաժանմունքի աշակերտներն էլ դրուած էին բացառիկ վիճակում: Վերջապէս կազմում է աշակերտների մի երրորդ խմբակցութիւն, բաղկացած Կովկասեան սանէրից, որոնք պիտի հետեւէին առանձին դասընթացքի»:

«Մի խօսքով, — ասում է վերատեսուչ Պրոֆ. Վ. Միլլէրը, հաստատելով Գ. Թանանեանի քննադատական խօսքի ճշմարտութիւնը, — այդ ժամանակաշրջանում ճեմարանը իր մէջ ամփոփում էր միաժամանակ չորս կարգի դպրոցներ՝ Գիմնազիոն, Հոգեւոր դպրոց (սեմինարիա), Առեւտրական բաժին եւ Արեւելեան լեզուների դպրոց: Մատակարարելով ամէն մէկին փոքր չափով գիտելիքներ, ճեմարանը անկարող եղաւ իր հիմնական նպատակն իրագործելու, այն է՝

---

լատիներէն, իսկ մաթեմաթիկական գիտութիւնները պիտի սովորէին աւելի սահմանափակ ծրագրով, քան ճեմարանի միւս աշակերտները: Նրանք պիտի սովորէին՝ Աստուածաբանութիւն, Աստուածաշունչի մեկնաբանութիւն, Եկեղեցական Պատմութիւն, Պատարագի մեկնաբանութիւն, Բարոյագիտութիւն:

Տե՛ս Գ. Թանանեանի ճառը «50ամեակ»ում էջ 28 եւ Պրոֆ. Զինովեւի «Պատմ. Լ. Ճ.», էջ 48:

լինել գիմնազիոն եւ տալ իր աշակերտներին ընդհանուր կրթութիւն[4]»:

Դպրոցական ծրագրի այս խճողումն բնականաբար, չէր կարող երկար ժամանակ տեւել, քանի որ աշակերտութեան ընդհանուր ձգտումը՝ մտնել համալսարան, մնում էր անխախտ. զգացւում էր հրամայական պահանջ կրթական ծրագրի հիմնական բարեփոխման, որն եւ տեղի ունեցաւ յաջորդ Գլխաւոր Կառավարչապետի օրով:

1844 թ. Հոկտեմբեր 12ին, կոմս Բենկենդորֆի մահից յետոյ, այդ պաշտօնը ստանձնեց իշխան Ալէքսէյ Օրլովը:

Բարենորոգման ծրագիրը երկար ժամանակ քննութեան է ենթարկւում կառավարական շրջաններում, երբեմն մասնակցութեամբ Յովհաննէս եւ Խաչատուր Լազարեանների, եւ ի վերջոյ մշակւում է Նոր Կանոնագիր, որ հաստատւում է կայսերական հրամանագրով 1848 թ. Մայիս 10ին եւ ապա անմիջապէս գործադրութեան մէջ դրւում: Այդ օրուանից ճեմարանը մտնում է իր զարգացման երրորդ փուլի մէջ, որ տեւում է մինչեւ 1865 թ.:

[4] Տե՛ս «Լ. Ճ. լեկէոնի 30ամեակը», էջ Գ եւ Դ. Բոլոր ընդգծումները մերն են:

## ԳԼՈՒԽ Գ.

## ՃԵՄԱՐԱՆԸ ԻՐ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆՈՒՄ (1848—1865)

### I.

1848 *թ. մայիս* 10*ին բարձրագոյն վաւերացման արժանացած Ճեմարանի Նոր Կանոնագիրը բաց էր անում Ճեմարանի առջեւ այնպիսի լուսաւոր հեռանկարներ, որ Խաչատուր Յովակիմեան Լազարեանը Ս. Պետերբուրգից գալիս է Մոսկուա եւ նոյն թուի սեպտեմբեր* 20*ին կազմակերպում է շքեղ հանդէս Ճեմարանում, նպատակ ունենալով հրապարակաւ յայտնելու Ճեմարանի եւ Հայ հասարակութեան սրտագին շնորհակալութիւնները Կայսրին, ժողովրդ. Լուսաւորութեան Նախարարութեան եւ Ճեմարանի Գլխաւոր Կառավարչապետ իշխան Օրլովին։*

*Այս հանդէսին ներկայ են եղել պետական գինուորական ու քաղաքացիական ականաւոր անձինք ու նաեւ Համալսարանի պրոֆեսորներ ու գիտնականներ։*

*Ինչո՞ւմն էր կայանում Նոր Կանոնագրի էութիւնը, ի՞նչ բարիքներ էր նա բերել Ճեմարանին, որ այդքա՛ն մեծ ուրախութիւն էր պատճառել Լազարեաններին եւ Հայ հասարակութեան։*

*Համաձայն մեր ձեռքի տակ եղած աղբիւրների հաղորդագրութեան՝ հետեւեալ էական բարեփոխութիւններն էին կատարուած։*

ա· Ճեմարանը հռչակւում էր առաջին կարգի, այսինքն՝ բարձրագոյն դպրոց, համահաւասար իրաւունքներով եւ առանձնաշնորհումներով Ժողովրդական Լուսաւորութեան Նախարարութեան ենթակայ բոլոր բարձրագոյն դպրոցներին, մասնաւորապէս Ճեմարանը հաւասարւում էր այն ժամանակուայ համբաւաւոր լիկէոններին՝ Դեմիդովսկի, Բեզբորոդկոյի եւ Ռիշելիոյի:

բ· Ճեմարանի հինգդասեան դասընթացքը վերածւում էր ութդասեան դասընթացքի· արեւելեան լեզուների դասաւանդութիւնը թէեւ պիտի տարուէր բոլոր ութ դասարաններում, բայց մասնագիտօրէն պիտի ուսումնասիրուէին վերջին երկու դասարաններում (7րդ եւ 8րդ)· գիմնազիոնական դասընթացքի առարկաները, ի մէջ առեալ լատիներէնը, պահպանւում էին:

գ· Նոր կանոնագրով, եւ ապա 1849 թ· դեկտ· 21ին կատարուած լրացումներով ու փոփոխութիւններով, ուսման ծրագրի մէջ մտնում էին հետեւեալ առարկաների դասաւանդութիւնը· 1· Կրօն եւ Եկեղեցական պատմութիւն· 2· Արեւելեան լեզուներ՝ Հայերէն, պարսկերէն, տաճկերէն, թուրքերէն, արաբերէն, վրացերէն[1]· 3· Ռուսաց լեզու եւ գրականութիւն· 4· Մաթեմատիկա· 5· Ֆիզիքա· 6· Աշխարհագրութիւն եւ վիճակա-

[1] Հայերէնը պարտադիր էր հայ երեխաների համար, վրացերէնը՝ վրացի, թուրքերէնը՝ թուրք աշակերտների համար:

*գրական տեղեկութիւններ*. 7. *Ռուսաց եւ ընդհանուր պատմութիւն*. 8. *Ռուսաց օրէնսագիտութիւն*. 9. *Լատիներէն*. 10. *Ֆրանսերէն*. 11. *Գերմաներէն*. 12. *Վայելչագրութիւն*. 13. *Նկարչութիւն եւ գծագրութիւն*. 14. *Մարզանք եւ* 15. *Պար*:

դ. *Ճեմարանի Վարչութիւնը ունենալու էր հետեւեալ կազմը*. 1. *Գլխաւոր Կառավարչապետ*. 2. *Հոգաբարձու*. 3. *Վերատեսուչ (դիրեկտոր)*. 4. *Տեսուչ (ինսպեկտոր)*. 5. *Խորհուրդ եւ* 6. *Դիւան (պրաւլենիէ)*:

ե. *Իւրաքանչիւր գիշերօթիկ աշակերտի համար, որ սովորում է իր սեփական հաշուով, սահմանւում էր ուսման վարձ՝* 300 *ռուբլի արծաթ տարեկան եւ* 35 *ռուբլի մուտքի վճար հագուստի ու սպիտակեղէնի համար. երթեւեկ աշակերտների համար, որոնք ցանկանում էին ստանալ նախաճաշ, նշանակուած էր տարեկան* 160 *ռուբլի արծաթ*:

զ. *Ուսուցչական կազմը պիտի ունենար՝* 4 *պրոֆեսորներ*, 11 *աւագ ուսուցիչներ*, 5 *կրտսեր ուսուցիչներ եւ այս որոշ թուով դաստիարակներ ու վերակացուներ*:

*Բացի այդ ամէնը, Նոր Կանոնագրի մէջ մտցրուած էր, որպէս հիմնական սկզբունք, նաեւ այն, որ Ամենայն Հայոց Կաթողիկոսը հանդիսանում է Ճեմարանի Առաջնադոյն անդամը, իսկ Ռուսաստանի Հայոց թեմական առաջնորդները համարւում էին պատուական անդամներ*:

*Միաժամանակ ճեմարանի Հոգաբարձուն, որպէս ղեկավար իր դպրոցի, ստանում էր Համալսարանի եւ Ուսումնական շրջանի Հոգաբարձուներին* (попечитель округа) *համահաւասար իրաւունքներ. Լազարեանները ճանաչում էին իրենց դպրոցի անկախ տէրեր, իսկ ճեմարանը՝ ստանում էր անկախ դիրք:*

*Տարակոյս չկայ, որ* 1848 *թ. Կանոնագիրը, որ յաջորդ տարին ենթարկուեց մի քանի փոփոխութիւնների ու լրացումների, մի չափ շօշափելի քայլ էր ճեմարանի իրաւական, կրթական ու վարչական մասերի բարեկարգման մէջ: Այդ էր պատճառը, որ այդ Կանոնագիրը առաջ բերեց ընդհանուր գոհունակութիւն թէ ճեմարանի ներսում եւ թէ դուրսը՝ հասարակական լայն շրջաններում: Եւ մենք ստորեւ կը տեսնենք, որ դրա հետեւանքը եղաւ այն, որ ծայր տուեց մի շարք մասնաւոր նուիրատուութիւնների ճեմարանում թօշակաւոր աշակերտներ պահելու նպատակով:*

*Այս բոլորով հանդերձ,* 1848 *թուի Կանոնագիրը ունէր խոշոր պակասներ եւ չբերեց այն, ինչ որ համարւում էր բաղձալի եւ անհրաժեշտ՝* Կրթական ծրագրի մէջ մտցնել ներդաշնակութիւն *ու* նրա հետապնդած աւանդական նպատակների պահպանութիւնը:

*Ճեմարանի աւանդական հիմնական նպատակն էր՝* տալ իր սաներին անգիսի լուրջ կրթական պատրաստականութիւն, որ նրանf

կառողանայինն անարգել՝ առանց քննութեան տանել բարձրագոյն՝ համալսարանական ուսում: 1848 *թ. Կանոնադիրը հետապնդում էր դրան միանգամայն հակառակ նպատակի: Մի շարք արտօնութիւններ տալով, նա ջանում էր աւելի մեծ զարկ տալ արեւելեան լեզուների ուսումնասիրութեան, հարկադրել աշակերտներին նուիրուել այդ մասնագիտութեան, գերադասել այն՝ համալսարանական կրթութիւնից: Կառավարութիւնը պէտք ունէր արեւելեան լեզուներ իմացող պաշտօնեաների՝ գործելու դիւանագիտական ասպարէզում. պէտք էին թարգմաններ, պէտք էին պետական կեանքի մի շարք մարզերում ծառայողներ:*

*«1848 թ. մայիս 10ի Կանոնադրով — ասում է վերատեսուչ Պրոֆ. Վ. Միլլէրը, — 5 դասարանոց Լազարեան ճեմարանը բարեփոխուեց ու վերածուեց 8 դասարանոց դպրոցի, որի առաջին վեց դասարանները գիմնազիոնական դասընթացք պիտի ունենային եւ երկու լիկէոնական: Սակայն արեւելեան լեզուները աւանդւում էին նաեւ գիմնազիոնական դասարաններում ընդհանուր կրթական առարկաների հետ միասին եւ շարունակւում են աւելի մասնագիտականօրէն ուսումնասիրուել լիկէոնական դասարաններում: Երկու բաժանմունքների ծրագիրը չափազանց խայտաբղէտ էր. այն ակնկալութիւնները, որ սպասւում էին Նոր Կանոնադրով մտցրուած բարեփոխութիւնից,*

չարդարացան: Ճեմարանի սաները նախկին ձեւով ձգտում էին համալսարան մտնել. արեւելեան լեզուներով լուրջ զբաղուողների թիւը շատ սահմանափակ էր. շատերը այդ պարապմունքների վրայ նայում էին որպէս մի տհաճ պարտականութեան վրայ, քանզի որպէս Կովկասեան որդեգիրներ, կաշկանդուած էին. այս իսկ պատճառով գիմնազիական դասարաններում արեւելեան լեզուների դասաւանդութիւնը արդիւնաւէտ չէր: Հետզհետէ Ճեմարանի Խորհուրդի մէջ կարծիք է ստեղծւում, որ անհրաժեշտ է վերաքննութեան ենթարկել Ճեմարանի Կանոնագիրը[2]»:

Նոյն կարծիքն ունի նաեւ Գ. Քանանեանը:

«17 տարուայ փորձը (1848—1865), — ասում է նա, — ցոյց տուեց, որ Նոր Կանոնագրի հիմնական միտքը՝ խրախուսել Ճեմարանի աշակերտներին զբաղուել արեւելեան լեզուներով եւ չնայած նրանց տրուած բազմաթիւ առանձնաշնորհումներին, որոնք նպատակ ունէին յետ պահելու աշակերտներին համալսարան մտնելուց, — 17 տարուայ փորձը համոզեցուցիչ կերպով ապացուցեց, որ Ճեմարանի աշակերտների մշտական ձգտումը դէպի համալսարան մնացել է անխախտ»:

«Նոր Կանոնագրի ընդհանուր վերաքննութիւնը եւ ծրագրի էական բարեփոխու-

[2] Տե՛ս «Լազ. Ճեմ. 30ամեակը», էջ Ե, Պրոֆ. Միլլէրի ճառը:

*թիւնը մեր դպրոցի ամենաչօշափելի պահանջն էր կազմում*[3]»:

1848 *թուի Կանոնագրի այս պակասաւոր կողմերը, ի հարկէ, դուրսը, հասարակական շրջաններում, չէին գիտակցւում. նրանք գոհ էին, որ ճեմարանը հռչակուած է բարձրագոյն դպրոց, եւ որ նա ստացել է մի շարք առանձնաշնորհումներ եւ իրաւունքներ:*

*Հասարակութիւնը իր այդ տրամադրութիւնը արտայայտեց դրամական նուիրատուութիւններով՝ մանաւոր թոշակաւորներ պահելու ճեմարանում:*

1. *Դեռ* 1842 *թ. Մոսկուայի հայ վաճառական Եսայի* Գասպարեանը *նուիրել էր* 50.000 *ռուբլի, որպէս զի երկու որբ հայ երեխաներ հայ առեւտրականներից ուսանեն ճեմարանում որպէս իր որդեգիրներ:*

*Կայսրը արձագանգում է այս նուիրատուութեան, տալիս է իր հաւանութիւնն եւ պարգեւատրում Գասպարեանին Ս. Ստանիսլաւի շքանշանով:*

*Ուշագրաւ է նուիրատուի պատճառաբանութիւնը. նրա դիմումի մէջ, ի միջի այլոց, ասուած է.*

*«Զբաղուելով մի քանի տարի առեւտրով Ասիայի հետ եւ զգալով, թէ որքա՜ն մեծ օգուտներ կարող էր ստանալ այդ առեւտրից Ռուսաստանը, եթէ այդ առեւտուրը կա—*

---

[3] *Տե՛ս «Լազ. ճեմ. 50ամեակը», Գ. Քանանեանի ճառը, էջ* 31:

տարուէր կրթուած վաճառականների ձեռքով իմ հայրենակիցներից, ես որոշեցի եւ այլն»:

2· 1849 թ· Թիֆլիսի քաղաքացի Յովհաննէս Մնացականեանը նուիրում է 15·000 ռ· որդեգիր պահելու ճեմարանում Անդրկովկասի հայ չքաւոր ընտանիքների զաւակներից իր անունով: Կայսրը հաստատում է այս նուիրատուութիւնն եւ հրամայում յայտնել նուիրատուին Ն· Կ· Մ· շնորհակալութիւնը:

3· 1857 թուին իշխան Բարաման Արղութեան–Երկայնաբազուկն է նուիրում 11·340 ռ· արծաթ· մի որդեգրի համար իր անունով· որդեգիրը պիտի ընտրուէր Անդրկովկասի հայ չքաւոր ազնուականներից կամ չքաւոր իշխաններից: Այս նուիրատուութիւնն եւս ընդունւում է եւ գործադրութեան մէջ դըրւում:

4· 1864 թ· Յովհաննէս Դաւթեան Դելանովը եւ նրա ամուսինը նուիրում են 10·000 ռ· արծաթ· 2 որդեգիր պահելու իրենց վաղամեռիկ որդի Քրիստափոր Դելեանովի անունով չքաւոր երեխաներից:

5· 1866 թ· Մոսկուայի փոքրաթիւ հայ համայնքը նուիրում է 6000 ռուբլի հաւաքած հանգանակութեամբ, ի յիշատակ կայսեր Աղէքսանդր Բ·ի հրաշագործ փրկութեան 1866 թ· ապրիլ 4ին, մի որդեգիր պահելու ճեմարանում, թոշակը պիտի անուանուէր «Ալէքսանդրեան» եւ տրուէր ճեմարանում սովորող սաներից ամենաընդունակին:

6· 1867 *թ· ճեմարանի հոգաբարձու* խաչատուր Յովակիմեան Լազարեանցը *ի յի-շատակ կայսեր ու թագաժառանգի այցելու-թեան, տրուած ճեմարանին, ինչպէս եւ թա-գաժառանգի եւ նրա ամուսնու մեծ իշխա-նուհի Մարիա Ֆէոդորովնայի առաջին այցե-լութեան Մոսկուային, նուիրում է* 10·000 *ռ· 2 որդեգրի համար ռուս ազնուականներից ու պետական պաշտօնեաներից: Մէկ թոշակը կոչուելու էր* «Ալէքսանդրեան», *միւսը՝* «Ալէքսանդրեան-Մարիինսկի» :

7· 1867 *թ·* Եգոր Թամամշեւը, *Թիֆլի-սեցի, մահից առաջ կտակով նուիրում է* 10·000 *ռուբլի մի որդեգիր պահելու ճեմա-րանում իր անունով: Որդեգիրը պիտի ըն-տրուէր Անդրկովկասի հայ չքաւոր ազնուա-կաններից կամ միւս դասակարգերից, գերա-դասելի են որբ երեխաները:*

8· 1870 *թ· այրի տիկին* Եվիզաբէթ Յո-վակիմեան Հայրապետովայ, ծն· Լազա-րեանը, *նուիրում է* 10·600 *ռուբլի մի գիշե-րօթիկ եւ 2 կէս-գիշերօթիկ որդեգիրներ հայ որբերից պահելու ճեմարանում: Թոշակա-ւորները պիտի անուանուէին՝* «Որդեգիրներ Եվիզաբէթ Յովակիմեան Հայրապետովայի, ծն· Լազարեանի» :

9· 1873 *թ· Պետական Խորհրդական* Յով-հաննէս Գրիգորեան Ամիրովի *կտակի համա-ձայն կտակարարները նուիրում են* 15·000 *ռ· 2 որդեգրի համար հայ չքաւոր երեխաներից,*

*որդեգիրները կոչուելու էին* «Ամիրովի որդեգիրներ»:

10· 1879 *թ.* Զօրավար Մ· Դ· Սկոբելեւի *անուան թոշակ:*

*Կալուգայի Նահանգական Ազնուականութիւնը ի նկատի առնելով զօրավար Սկոբելեւի մատուցած մեծ ծառայութիւնները հայրենիքին, նուիրում է* 6000 *ռուբլի մի որդեգիր պահել նրա անուան մի որ եւ է բարձրագոյն դպրոցում: Զօրավարը ցանկութիւն է յայտնում, որ նուիրատուութիւնը արուի Լազարեան Ճեմարանի Լիկէոնին:*

11· 1880 *թ. այրի տիկին* Եկատերինա Իմմանուելովնա Լազարեանը (*ամուսինը Հոգաբարձու Խաչ. Լազարեանի*) — *մահից առաջ կտակով նուիրում է* 40·000 *ռուբլի իր անունով* 5 *որդեգիրներ պահել Լազ. Ճեմարանում, երկու որդեգիր ռուսահպատակ չքաւոր հայերից եւ* 3 *որդեգիր օտարահպատակ չքաւոր հայերից:*

12· 1868 *թուին ռուսահայերի մէջ միտք է յղանում Լազարեան Ճեմարանի Հարցաքննութիւնների չքեղ դահլիճում դնել վերջին Հոգաբարձու Խաչատուր Լազարեանի* մարմարէ կիսանդրին *եւ պահել* Լազարեանների անուան մի որդեգիր *ճեմարանում ի պատիւ այն մեծամեծ բարիքների, որոնք մատուցուած են այդ հոյակապ տոհմի կողմից: Հանգանակութեամբ հաւաքւում է* 2459 *ռուբլի:*

Հոգաբարձուի մահից յետոյ՝ 1883 թ. ի կատար է ածւում հայերի այդ ցանկութիւնները:

13· 1876 թ. եւ 1878 թ. Արքեպիսկոպոս Սարգիս Հասան-Ջալալեանը մահից առաջ երկու կտակով թողնում է 25·000 ռուբլի արծաթ., որպէս զի 125 տարուց յետոյ, երբ այդ դրամագլուխը աճելով կը կազմի 12,000·000 ռուբլի, ապա այդ գումարի տոկոսներով հիմնել եւ պահել դպրոցներ հայ երեխաների համար: Հանգուցեալը մահից առաջ ցանկութիւն է յայտնում, որ կտակուած գումարը յանձնուի Լազարեան ճեմարանին, որն եւ պիտի հսկողութիւն ունենայ ժամանակին իրագործելու հանգուցեալի կտակը:

Հանգուցեալի կտակակատարները դրամը յանձնում են ճեմարանին 1882 թ.:

14· 1888 թ. Համաձայն հանգուցեալ Պետական Խորհրդական Դանիէլ Գաբրիէլեան Քանանեանի կտակի՝ Լազ. ճեմարանում հաստատւում է մի որդեգիր «Քանանեան» անունով: Հանգուցեալը, ինչպէս երեւում է 1866 թ. Վլատիկաւկազի դատախազի գրութիւնից, կտակել էր 10·000 ռուբլի, որպէս զի այդ գումարի տոկոսներով մի որդեգիր պահուի իր անունով ճեմարանում եւ մրցանակ տրուի լաւագոյն աշխատանքի համար Հայոց գրականութեան մասին: Որդեգիրը պիտի լինէր Ղզլարի չքաւոր հայ երեխանե-

րից, գերապատուութիւն տալով Քանանեան տոհմի երեխաներին:

15. 1887 թ. Տոհմական պատուական քաղաքացի Գրիգորիյ Եակովլեւիչ Մատվէեւ մահից առաջ կտակում է 12·700 ռ., Լազ. ճեմարանին, որպէս զի նրա տոկոսներով իր անունով մի որդեգիր պահուի: Որդեգիրը պիտի ընտրուի նախապատուութիւն տալով Մատվէեւի տոհմի երեխաներին, հակառակ դէպքում, ուրիշ տոհմի երեխաներից, ճեմարանի ռուս ուղղափառ դաւանանքին պատկանող սաներից:

16. 1887 թ. այրի տիկին Եկատերինա Գաշեւսկին նուիրում է 7000 ռ. մի որդեգիր պահելու ճեմարանի սան իր հանգուցեալ որդի Յակոբ (Եակով) Գաշեւսկու անունով: Որդեգիրը պիտի ընտրուէր ռուս չքաւոր ազնուականների որբերից:

17. 1888 թ. համաձայն կտակի հանգուցեալ Ալէքսանդր Մելիքսեդէկով Տէր-Յակոբեանի հաստատուում է ճեմարանում մի որդեգիր նրա անունով, որի համար նուիրաբերուած է 10·000 ռուբլի: Համաձայն կտակի, որդեգիրը պիտի ընտրուէր Գորի քաղաքի չքաւոր հայ երեխաներից:

18. 1890 թ. հաստատուում է Հաշտարխանի բնակիչ Եսայի Էդելխանովի կտակի համաձայն նրա անուան որդեգիրներ Լազ. ճեմարանում Հաշտարխանի չքաւոր հայ երեխաներից, թւով այնքան, որքան նուի–

*բարերուած 36·900 ռուբլի գումարի տոկոսները կը թոյլատրեն։*

*Բացի այս մասնաւոր անձանց որդեգիրներից, Լազարեանները ունեցել են ճեմարանում, նրա հիմնադրութեան առաջին իսկ օրուանից, 30 որդեգիրներ, որոնց թիւը աստիճանաբար աճելով 90ական թուականներին հասել էր 44ի։*

*Առանձին գաւառական հայ համայնքներ եւս ունեցել են որդիգիրներ Լազարեանների հաշուին։*

*Այսպէս, Նոր Ջուղայի պատմիչ Յարութիւն Տէր-Յովհաննեանը հաղորդում է, որ Ն. Ջուղայի Թադէոս արքեպիսկոպոսի խնդրանօք Լազարեանները ընդունում են իրենց որդեգիրների շարքը երկու Ջուղայեցի երեխաներին։ 1857 թ. սեպտեմբերի սկզբին Մոսկուա են հասնում եւ մտնում ճեմարան երկու Ջուղայեցի մանուկներ՝ Մարտիրոս Յովհաննիսեան եւ Արգար Հայրապետեան։*

*Վ. Ագուլիսի (Գողթան) հայ համայնքն էլ ունեցել է երկու որդեգիրներ, կրկին Լազարեանների հաշուին։ Ժամանակի ընթացքում երկուսը դարձել էր մէկ։*

*1887 թ. Վ. Ագուլեցի Մկրտիչ Բարխուդարեանը (յետագայում խմբագիր «Հանդէս գրականութեան ու պատմութեան»ի) աւարտելով ճեմարանը, վերադառնում է իր ծննդավայրը եւ նրա փոխարէն ընտրւում է ծխական դպրոցի աշակերտ Յովսէփ Թադէոսեանը (տողերիս գրողը), որը մեկնում է*

*նոյն թուի Օգոստոս մէկին Մոսկուա: Սրան ընդունում է ագուլեցի, յայտնի հասարակական գործիչ* Մելքոն Փանեանը, *որ այդ ժամանակ Մոսկուայի Հայոց Ս. Խաչ եկեղեցու երէցփոխ էր, եւ տեղաւորում նրան ճեմարանում:*

*Յաւօք սրտի, մենք տեղեկութիւն չունենք՝ թէ ո՞վ է եղել Մկրտիչ Բարխուդարեանից առաջ եւ ո՞վ է փոխարինել Յովսէփ Թադէոսեանին,* 1895 *թուին երբ նա աւարտում է իր ուսումը ճեմարանում, վերջապէս, ե՞րբ է Վ. Ագուլիսի հայ համայնքը այդ արտօնութիւնը ստացել Լազարեաններից:*

*Հայ հասարակութեան գնահատելի վերաբերմունքն եւ մանաւանդ նրա նախկին սաների երախտագիտական զգացմունքը հանդէպ իրենց* alma mater-*ի փայլուն արտայայտութիւն է ստանում* 1850 *թուին, երբ Թիֆլիսի աչքառու հայ քաղաքացիներն ու ճեմարանի նախկին սաները, գլխաւորութեամբ Ներսէս Ե. կաթողիկոսի եւ մասնակցութեամբ Սարգիս վարդապետ Ջալալեանցի ու Կարապետ վարդապետ Շահնազարեանցի, նուիրաբերում են ճեմարանին* 74 հատ հազուագիւտ ձեռագիրներ եւ հայերէն թանկարժէք գրքեր:

*Այդ առթիւ նուիրատուները ուղղել էին ճեմարանի հոգաբարձու Յովհաննէս աղա Լազարեանին հետեւեալ ողեշունչ նամակը*

---

[4] *Տե՛ս յիշեալ «Պատմ. Ն. Ջուղայու», էջ* 105:

ճեմարանի նախկին սան Ստեփան Մատինեանի ստորագրութեամբ.

«Շատ տարիների ընթացքում Թիֆլիսի հին գրքերի առեւտրականներն ու եղբայրք Ենֆիաջեանները, հաւաքելով հայկական հնութիւններ, կազմել են շատ թանկարժէք եւ հազուագիւտ գրադարան հայկական ձեռագիրների: Վենետիկի, Կալկաթայի եւ Զմիւռնիայի հայ գիտական ընկերութիւնները գրագրութեան մէջ էին ձեռք բերելու այդ ձեռագիրները:

«Մենք, Ձեր նախկին սաները, միշտ պահպանելով երախտագիտութեան անշէջ զգացմունքներ դէպի մեր կրթութեան հեղինակները, վաղուց երազում էինք արտայայտել մեր երախտագիտութեան զգացմունքները մի ընդհանուր քայլով առ մեր բարերարները: Յոյս չունենալով իրագործել մեր մտադրութիւնը մի գործով, որ արժանի լինէր Ձեր բարձր անձնաւորութեան ուշադրութեանը, մենք ձեռք բերինք այս թանկագին ձեռագիրները նուիրաբերելու նպատակով Ձեր ճեմարանին, որի ներսում մենք ստացել ենք մեր բարոյական դաստիարակութիւնն ու մտաւոր զարգացումը, որը կազմում է մեր կեանքի երջանկութեան հիմը: Թիֆլիսի հայ պատուաւոր քաղաքացիներից շատերը իմանալով մեր մտադրութիւնը, թախանձանօք խնդրեցին թոյլ տալ բերելու նաեւ իրենց մասնակցութիւնը մեր այս համեստ ձեռնարկին, ցանկանալով Ձեր սաների հետ միասին

*արտայայտել իրենց խոր յարգանքի եւ անկեղծ երախտագիտութեան զգացումները դէպի Ձեր տոհմն ու Ձեր անձնաւորութիւնը Ձեր այն անխոնջ խնամքի համար, որ Դուք ունեցել էք Հայկազեան երիտասարդութեան դաստիարակութեան ու յառաջադիմութեան մասին։ Եւ ամէնքը յանձնարարեցին ինձ, որպէս առաջին ընթացաւարտ սան, որը խորին ակնածութեամբ յիշում է Ձեր երջանկայիշատակ հօր՝ Յովակիմ Լազարեանի ծնողական խնամքը մեր մասին, — խնդրել Ձերդ գերազանցութիւնը ընդունել Ձեզ յատուկ ներողամտութեամբ այս ձեռագիրները, ո՛չ որպէս նուէր, այլ որպէս երախտագիտութեան արտայայտութիւն բոլոր հայերի առ Ձեզ, որպէս գեղումն որդիական սիրոյ իրենց բարերար–հօր հանդէպ»։*

*Նամակը ստորագրել են 91 հոգի, որոնց թւում կան, բացի վերը յիշածներից, նաեւ իշխան Բարաման Արղութեան–Երկայնաբազուկը, իշխան Վասիլի Արղութեան–Երկայնաբազուկը, Լօրիս–Մելիքովը, Ռուսաստանի ապագայ գիկտատորը, Պետրոս Շանշեանը, Ներսիսեան դպրոցի տեսուչը, եւ այլն։ Կարելի է ասել, որ Թիֆլիսի այդ ժամանակուայ հայ հասարակութեան ընտրանին էր բերել իր մասնակցութիւնը*[5]*։*

*Իրենք՝ Լազարեաններն էլ ամէն կերպ ջանում էին ժողովրդականացնել իրենց*

---

[5] *Տե՛ս «Լազ. ճեմ. 50ամեակը», Ցուցուած,* էջ 84—86։

*դպրոցը ու բարոյական կապեր հաստատել հայ, ռուս ու եւրոպական ականաւոր անձանց հետ:*

*Այս նպատակով նրանք պատուակալ անդամներ էին ընտրում բոլոր նրանց, ովքեր այս կամ այն ձեւով ու գործով արտայայտել էին իրենց բարեացակամ վերաբերմունքը ճեմարանի հանդէպ:*

*Եւ ճեմարանը* 1865 *թուին արդէն ունէր* 108 *հոգի պատուակալ անդամներ, ընտրուած աշխարհի բոլոր ծագերից ու ազգերից:*

*Այդ անուանացուցակի մէջ նշմարելի տեղ են գրաւում հայ եւ օտար գիտնականներ, հայ բարձրաստիճան հոգեւորականներ ու պետական բարձր պաշտօնեաները:*

*

*Այս ժամանակաշրջանում տեղի է ունենում մի ողբերգական դէպք, որ անհուն վիշտ է պատճառում Լազարեանների ամբողջ գերդաստանին ու հայ հասարակութեան, բայց որը միաժամանակ առիթ է ծառայում մի նոր կրթական մեծարժէք ձեռնարկի սկզբնաւորութեան ճեմարանում:*

1850 *թ. վախճանւում է Խաչատուր Յովակիմեան Լազարեանի մինուճար զաւակը՝ տոհմի շարունակող միակ ժառանգը՝* մանուկն Յովհաննէս Խաչատուրեան Լազարեանը...:



Ա. եւ Բ. Նախակրթարանների
աշակերտները. աջ՝ Կարապետ Կուսիկեան
ձախ՝ Ստեփան Տէր–Սարգիսեան



Լիկէոնի Ա. Դասընթացքի ուսանողները
ձախ՝ Պրոֆ. Միրզա Ջաֆֆար
աջ՝ Պրոֆ. Ատտայեան

*Վչտահար ծնողները որոշում են յաւեր–ժացնել նրա յիշատակը եւ նուիրում են 60·000 ռուբլի արծաթ (180·000 ռուբլի թղթադր·) բանալու մի նախակրթարան դա–սարան նրա անունով:*

1851 *թ. Փետրուար 7ին հայրն ու հօրեղ–բայրը՝ Յովհաննէս Լազարեանը, գրաւոր դիմում են կատարում գլխաւոր կառավար–չապետ կոմս Օրլովին եւ յայտնում իրենց ցանկութեան մասին:*

*Այդ նամակի մէջ ասուած էր·*

*«Զրկուելով մեր մինուճար ժառանգից, փոքրահասակ Յովհաննէս Լազարեանից, որը մեր տոհմի շարունակողի յոյսն էր մեզ ներ–շնչում եւ միաժամանակ պիտի լինէր իր նա–խահայրերի սկսած բարի գործերի շարունա–կողը, մենք որոշեցինք հանգուցեալի անու–նից նուիրել* 60·000 *ռ. արծաթ, որպէս զի ճեմարանում բացուի մի նախակրթարան դասարան, ուստի վստահանում ենք ցանկու–թիւն յայտնել, որ այդ բաժանմունքը, որը հիմնուելու է նրա յիշատակին, կրի՝* «Նախա–կրթարան բաժանմունք մանուկ Յովհաննէս Լազարեանի *անունը»:*

*Այս դիմումը յարգւում է. կայսրը տա–լիս է իր հաւանութիւնը եւ* 1851 *թ. Փետ–րուար* 10*ին սկիզբ է առնում այդ նոր կրթա–կան ձեռնարկը, իր ներքին Կանոնադրով ու–սումն. յատուկ ծրագրով:*

## II.

1848 թ. Նոր Կանոնագիրը, ասացինք, չնայած իր մի շարք մեծ առաւելութիւններին, այնուամենայնիւ նա չէր լուծում ճեմարանի կրթական ծրագրի բարեփոխման հետ կապուած բոլոր խնդիրները: Նրա վերաքննութեան պահանջը շատ շուտ զգացուեց:

Մանաւորապէս բաւարարուած չէր ճեմարանի վերջին հոգաբարձուն՝ ծերունի Խաչատուր Լազարեանը: Որքան նրա տարիքը յառաջանում էր, այնքա՛ն զօրանում էր նրա մէջ մտահոգութիւնը ճեմարանի ապագայի նկատմամբ ու նրա վերջնական նպատակայարմար ծրագրի մասին:

Ճեմարանի յարատեւութեան միակ գրաւականը նա տեսնում էր միայն մի միջոցի մէջ՝ ներարկել ճեմարանը ժողովրդական լուսաւորութեան նախարարութեան եւ նրա անմիջական ղեկավարութեան:

Այս միտքն ու բաղձանքը նոր չէին. այդ միտքը յղացել էր դեռ նրա հայրը՝ Յովակիմ աղան, բայց այդ ուղղութեամբ նրա թափած ջանքերը յաջողութեամբ չէին պսակուել...:

Ճեմարանը արդէն բոլորում էր իր 50ամեակը, բայց դեռ գտնւում էր անորոշ վիճակում թէ իրաւական տեսակէտից, թէ կրթական ծրագրի մէջ ներդաշնակութիւն մտցնելու անհրաժեշտութեան կողմից:

Նոյն մտահոգութիւններն ունէր նաեւ ճեմարանի նոր գլխաւոր Կառավարչապետ

Վլադիմիր Բուտկովը, *որ յաջորդել էր կոմս Օրլովին* 1860 *թուին։*

*Վ. Բուտկովի ուշադրութիւնից չսպրդեց այն շատ կարեւոր հանգամանքը, որ Ռուսաստանի ընդհանուր բարենորոգումների շարքում Աղէքսանդր Բ. կայսեր օրօք, արդէն կայսեր կողմից հաստատուած էր եւ հրատարակուած* Նոր դպրոցական Կանոնագիր *ամբողջ կայսրութեան բոլոր գիմնազիոնների համար. ըստ այդ Կանոնագրի գիմնազիոնների շրջանաւարտները իրաւունք էին ստացել առանց քննութեան մտնելու համալսարան։ Արդ, եթէ ճեմարանը շարունակէր դուրս մնալ կայսրութեան միջնակարգ դպրոցների ցանցից, ապա նրա ուսումնաւարտները չպիտի կարողանային անարգել մտնել համալսարան...։*

*Այս հանգամանքը ի նկատի առնելով, ծերունազարդ հոգաբարձուն պատուիրում է ճեմարանի վերատեսուչ* Պրոֆ. Բաքստին, *որ* 1864 *թ. Մայիս* 23*ից այդ պաշտօնի մէջ էր, — կազմել իր նախագահութեամբ յատուկ յանձնաժողով մշակելու ճեմարանի համար Նոր Կանոնագիր, համաձայնեցնելով ճեմարանի ուսումն. ծրագիրը* 1864 *թ. ընդհանուր դպրոցական ծրագրի հետ։*

*Յանձնախմբի անդամներն էին՝ Պրոֆ. Մ. Էմինը, Պրոֆ. Ստ. Նազարեանցը, Պրոֆ. Տիխօնրաւովը, տեսուչ Գ. Քանանեանը եւ երկու ռուս աւագ ուսուցիչներ։*

Յանձնախումբը սկսեց իր աշխատանքները 1864 թ. Նոյեմբերին եւ եկաւ այն եզրակացութեան, որ ճեմարանը պիտի պահպանի իր մասնագիտական նպատակը՝ արեւելեան լեզուների դասաւանդութիւնը՝ պատրաստելու երիտասարդ ուսանողներին ծառայելու Արեւելքում, միաժամանակ պիտի նախկին ձեւով ունենայ իր գիմնազիոնական դասընթացքը․ միայն վեց դասարանների վրայ աւելացնել նաեւ եօթներորդը․ բացի լատիներէնից աւանդել նաեւ յունարէնը եւ այդպիսով ճեմարանի գիմնազիոնական բաժինը հաւասարեցնել պետական գիմնազիոններին, համաձայն 1864 թ. Պետական դպրոցների Նոր Կանոնագրի, որով ճեմարանի աշակերտները հնարաւորութիւն կ'ունենան անարգել, առանց յատուկ քննութեան, շարունակել իրենց կրթութիւնը համալսարանում:

Արեւելեան լեզուների դասաւանդութեան նկատմամբ Յանձնախումբը գալիս է այն եզրակացութեան, որ նրանց դասաւանդութիւնը Գիմնազիոնական դասարաններում պիտի իսպառ վերացնել եւ կենտրոնացնել յատուկ մասնագիտական դասարաններում՝ Լիկէոնում, եւ որպէս զի այդ լեզուները հիմնովին իւրացուին, երկու տարուայ դասընթացքը վերածել երեք տարուայ դասընթացքի:

Կրթական գործի միայն նման կազմակերպութեամբ ճեմարանը ի վիճակի կը լինի լրիւ ու պատշաճ ձեւով իրագործել իր հիմնական երկու նպատակները՝ տալ իր սանե-

թին լրիւ ու լուրջ միջնակարգ կրթութիւն եւ ապա արեւելեան լեզուների ուսումնասիրութիւնը դնել ամուր հիմքերի վրայ: *Այս պայմաններում միայն Ճեմարանը իրագործած կը լինի իր հիմնադիրների ի սկզբանէ հետապնդած նպատակները ու նաեւ յարատեւել իր գոյութիւնը, դուրս գալով իր իրաւական ներկայ խախուտ վիճակից:*

*Յանձնախումբը միաժամանակ վերացրեց հոգեւորականներ պատրաստելու առանձնայատուկ ծրագրի կիրառումը գիմնազիոնական բաժնում, արտայայտելով այն առողջ միտքը՝ որ հոգեւորական դասի համար պատրաստուող սաներն եւս պիտի ունենան լուրջ մտաւոր զարգացում եւ ընդհանուր կրթութիւն, քանզի ինչպէ՞ս կարելի է լինել կրթուած ու արժանաւոր հովիւ իր հօտի համար առանց լրիւ միջնակարգ՝ գիմնազիոնական ուսումի:*

*Յանձնախումբը, ներկայացնելով իր այս բարենորոգչական ծրագիրը, հրաւիրեց Հոգաբարձուի ուշադրութիւնը այն հանգամանքի վրայ, որ նրա կիրառումը կը պահանջի նոր յաւելեալ դրամական միջոցներ, մինչդեռ Ճեմարանը չունի այդ միջոցները պահանջուած ծախսերը հոգալու:*

*Խաչատուր Լազարեանը անմիջապէս (Մարտ 25ին 1865 թ.) յայտնեց Ճեմարանի վարչութեան, որ նուիրում է Ճեմարանին 200·000 ռուբլի այդ յաւելեալ ծախսերը ծածկելու համար:*

Այս խոշոր նուիրատուութիւնը խոր տպաւորութիւն է թողնում ճեմարանի թէ վարչութեան եւ թէ Յանձնախմբի անդամների վրայ եւ ապա արժանանում նաեւ կայսեր ուշադրութեան, որ չի յապաղում պարգեւատրել նուիրատուին Սպիտակ Արծուի շքանշանով:

«Այս ծրագիրը, — ասում է վերատեսուչ Պրոֆ. Վ. Միլլէրը — պէտք էր առանց յապաղման գործադրել, քանի որ 1864 թ. գիմնազիոնների Նոր Կանոնագիրը մտել էր իր ոյժի մէջ եւ ճեմարանին վտանգ էր սպառնում՝ զրկուել իր ընթացաւարտ աշակերտներին Համալսարան ուղարկելու իրաւունքից: Այս իսկ պատճառով ճեմարանի գլխաւոր Կառավարչապետ Բուտկովի թոյլտուութեամբ սկսուեց Նոր Կանոնագրի աստիճանական գործադրութիւնը (երկու հին լեզուների՝ լատիներէնի եւ յունարէնի դասաւանդութիւնը) գիմնազիոնական դասարաններում եւ միաժամանակ աստիճանական զատումը այդ դասարաններից արեւելեան լեզուների դասաւանդութիւնը, որոնք պիտի կենտրոնանային բարձրագոյն կամ Մասնագիտական դասարաններում[6]»:

Այս բարենորոգումը զուգադիպեց ճեմարանի 50ամեակին, որը Հոգաբարձու՝ Խաչատուր Լազարեանը ուզում էր մեծ հանդիսաւորութեամբ տօնել, եւ արդէն պատ-

[6] Տե՛ս «Լ. Ճ. 30ամեակը», էջ Զ—է:

րաստւում էր Պետերբուրգից Մոսկուա գալ եւ ներկայ լինել հանդէսին, չնայած որ հիւանդութիւնից ծերունին շատ էր տառապում: Բայց վիճակուած չէր նրան այդ ուրախութեան մասնակից լինել:

Վախճանւում է այդ ժամանակ Մեծ Իշխան գահաժառանգը եւ տօնակատարութիւնը տեղի չի ունենում. յետաձգւում է աշնան՝ Սեպտեմբեր 12ին նոյն 1865 թուին. այդ ժամանակ հոգաբարձուն արդէն մեկնել էր արտասահման բուժուելու:

Յոբելենական հանդէսը թէեւ շատ համեստ կերպարանք ունէր, այնուամենայնիւ մամուլի եւ հասարակութեան ուշադրութեան առարկայ եղաւ: Այսպէս, յայտնի հրապարակախօս Կատկովը իր թերթում՝ «Մոսկուայի Լրաբեր»ում («Մոսկովսկիի Վէդոմոստի») գրել էր հետեւեալ ուշագրաւ տողերը.

«Լազարեան ճեմարանը Արեւելեան Լեզուաց տօնեց իր գոյութեան 50ամեակը: Հանդէսը յաւէրժացուած չէր կերուխումով, որը նման դէպքերում սովորական են, եւ ունէր արտաքին փայլ ու շուք, բայց ամենափառահեղ յոբելեաններն իսկ նրա համեմատութեամբ դալկանում են: Հասարակութեան յայտնեցին երկու ծանրակշիռ տեղեկութիւն՝ Հոգաբարձուն զարդարել էր հանդէսը նուիրելով խոշոր գումար՝ 200·000 ռուբլի եւ որ ճեմարանը այդ նուիրատուութիւնը, որ թագաւորական առատաձեռնութեամբ էր

*արուած, կ՚օգտագործի բարեկարգելու այն եւրոպական ձեւով: Կարելի՞ էր, արդեօք, աւելի փայլուն ձեւով տօնել մի դպրոցի յոբելեանը»:*

*

*Նոր Կանոնագրի բարերար ազդեցութիւնը ճեմարանի կեանքի վրայ շատ շուտով արտայայտուեց. ամենից առաջ աշակերտների թիւը սկսեց աճել: 1866—1867 ուս. տարում ճեմարանը ունէր միայն 144 գիշերօթիկ եւ 9 հոգի երթեւեկ աշակերտներ, ընդամէնը՝ 153 հոգի: 1874—1875 ուս. տարում ճեմարանը արդէն ունէր՝ 185 գիշերօթիկ եւ 49 երթեւեկ աշակերտներ, ընդամէնը՝ 234 հոգի:*

*Բայց մի հիմնական խնդիր մնաց չլուծուած՝ ճեմարանի իրաւական վիճակը շարունակում էր մնալ անորոշ, որ մեծ անհանգստութիւն էր պատճառում թէ ծերունի հոգաբարձուին եւ թէ հայ հասարակութեան: Խաչատուր Լազարեանը այն տարիքում էր, որ կարող էր անակնկալօրէն կնքել իր մահկանացուն եւ ճեմարանը կը մնար անտէրանտիրական...:*

*Այս գետնի վրայ առաջ եկաւ հասարակութեան մէջ մտքերի շփոթ...: Ոմանք կարծիք էին յայտնում, որ ճեմարանը պիտի փոխադրել Կովկաս, իսկ ամենայն Հայոց կաթողիկոս Գէորգ Դ. յայտարարեց, որ Խաչատուր Լազարեանի մահից յետոյ ճեմարանը պիտի ենթարկուի նրա հսկողութեան եւ հովանաւորութեան...:*

*Այս առաջարկներից և՛ ո՛չ մէկը չէր ժպտում իրեն՝ Ս. Լազարեանին:*

*Այս ծանր մոմենտին մի նոր անակնկալ հարուած իջաւ ճեմարանի գլխին...:*

*Վերատեսուչ Բաբստը, որ յաճախ արձակուրդներ էր վերցնում ու բացակայում ճեմարանից, իր հրաժարականը տուեց. Հոգաբարձուն, թէև դառնութեամբ, ընդունեց հրաժարականը:*

*Միևնոյն ժամանակ գլխաւոր Կառավարչապետը, առանց խորհրդակցելու ճեմարանի վարչութեան և հոգաբարձուի հետ, խորհրդակցելով իր հրաժարականը տուած վերատեսուչ Բաբստի հետ, կայսերական հրամանագրով հրատարակում է* 1868 *Թ. Ապրիլ* 14*ին հետևեալ որոշումները:*

1. *Թողնել Լազարեան ճեմարանը իր ներկայ պայմաններում մինչև Հոգաբարձուի վախճանը, իսկ նրա մահից յետոյ ճեմարանը իր ամբողջ շարժական ու անշարժ ունեցուածքով, որ պիտի կազմի նրա անձեռնմխելի սեպհականութիւնը, փոխանցել ժողովրդ. լուսաւորութեան նախարարութեան, մտցնելով ճեմարանը այդ մինիստրութեան դպրոցական ցանցի մէջ:*

2. *Ընդ միշտ պահպանել նրա Լազարեան անունը:*

3. *Թողնել անձեռնմխելի ներկայումս գոյութիւն ունեցող թոշակների քանակը, սահմանուած հայ չքաւոր երեխաների համար:*

4. Այժմեան Հոգաբարձուի փոխարէն հաստատել պատուակալ Հոգաբարձուի կոչում եւ այդ կոչումը վերապահել Լազարեանների տոհմի աւագ անդամին:

5. Ճեմարանի կրթական ծրագրի մէջ մտցնել լատիներէնի եւ յունարէնի դասաւանդութիւնը հանդերձ պետական գիմնազիոնների լրիւ դասընթացքով եւ կիրառել այն բոլոր որոշումները, որոնք նախատեսուած են 1864 թ. Նոր Կանոնագրով:

Եւ ո՛չ մի խօսք արեւելեան լեզուների մասին. պարզ էր, որ այդ որոշումների հեղինակները վերացրել էին այն ու Ճեմարանը վերածել մի հասարակ միջնակարգ դպրոցի . . . :

Այդ որոշումների հրատարակութիւնը առաջ բերին մեծ տրտունջներ հասարակութեան ու մամուլի մէջ եւ շատ ծանր տպաւորութիւն թողին Ճեմարանի վարիչների վրայ . . . :

«Այսպիսով, — ասում է վերատեսուչ Պրոֆ. Միլլէրը, — այս բարենորոգումների ծրագիրը, որ մշակուած էր Մոսկուայում եւ որը նպատակ ունէր պահպանել արեւելեան լեզուների դասաւանդութիւնը, դատելով նրանց մասնագիտական դասարաններում, կանգ առաւ կէս ճանապարհին: Լիկէոնական դասարանները աստիճանաբար պիտի փակուէին եւ Ճեմարանը պիտի դառնար Մոսկուայի գիմնազիոններից մէկը . . . :

«Այս անակնկալ տնօրինումը ճեմարանի ճակատագրի եւ արեւելագիտութեան ուշքի չբաւարարեց՝ ամէն կողմից եւ հասարակական շրջաններում եւ մամուլի մէջ բարձրացան տրտունջներ արեւելեան լեզուների դասաւանդութեան վերացման պատճառով, մի բան, որը կարիք ունէր բարեփոխութեան եւ ոչ ջնջելու: Ճեմարանի կրթական ծրագրի աններդաշնակութիւնը եւ նրա բազմազանութիւնը խաթարում էին ընդհանուր կրթական գործը, բայց եւ այնպէս իր գոյութեան մի շարք տարիների ընթացքում ճեմարանը պատրաստում էր արեւելեան լեզուների ուսումնասիրութիւնը եւ տուել է լաւ պատրաստուած պաշտօնեաներ վարչական ու դիւանագիտական մարզերում Արեւելքում (անուանենք հէնց Պոլսոյ մեր այսօրուայ արտակարգ դեսպան Զինովեւին, որ մեր Լիկէոնի 1851 թ. շրջանաւարտներից է եւ պարսկական գրականութեան մագիստրոս). միաժամանակ ճեմարանը իր շուրջն էր հաւաքել արեւելագէտ պրոֆեսորներ ու դասատուներ. դրա հետ միասին ճեմարանը ապրել էր իր եկամուտներով եւ առանց դրամական օժանդակութեան Կառավարութեան կողմից:

«Բարեբախտաբար ճեմարանի համար, այս տխուր կացութիւնը երկար չտեւեց: Շնորհիւ նոր վերատեսուչ Նիկոլայ Գաւրիլովիչ Գելեանովի, որն իր պաշտօնի մէջ մտաւ 1869 թ. ապրիլին, եւ նա մանաւանդ տեսուչ Գէորգ Քանանեանի եռանդին, ինչպէս եւ ադ-

դեցիկ աջակցութեան ճեմարանի Նոր Գլխաւոր Կառավարչապետ եւ միաժամանակ ժողովրդ. Լուսաւորութեան նախարար կոմս Դիմիտրի Անդրէեւիչ Տոլստոյի [7] ճեմարանի եւ արեւելագիտութեան ճակատագիրը որոշուեց ամենաբարեյաջող կերպով:

«Կոմս Տոլստոյը, լսելով Գ. Քանանեանի զեկոյցը, պատրաստուած ճեմարանի Խորհրդի կողմից, մեծ համակրանքով վերաբերուեց արեւելեան լեզուների դասաւանդութեան եւ ճեմարանի իրաւունքների վերանորոգման խնդրին: Արդիւնքը եղաւ այն, որ համաձայն Կոմս Տոլստոյի այդ խմաստով յարուցած բարեխօսութեան 1870թ. Մայիս 30ին Կայսեր բարձրագոյն հրամանը եղաւ՝ «թողնել Լազարեանց ճեմարանում Մասնագիտական դասարանները [8]»:

Բայց Գլխաւոր Կառավարչապետը այդքանով էլ չբաւականացաւ. նա ճեմարանի շահերը այնքան իր սրտին մօտ էր առել, որ իր աշխատանքները առաջ տարաւ, որպէսզի միանգամ ընդ միշտ ճեմարանի թէ կրթական ծրագիրն եւ թէ իրաւական վիճակը հաստատուն հիմքերի վրայ դնի:

Կոմսը ժամանում է Մոսկուա 1870 թ. Օգոստոս 21ին. երկու օր նուիրում է ճեմարանի ծանօթութեան չէնքի եւ ապա ճեմա-

---

[7] Գլխաւոր Կառավարչապետի պաշտօնը կոմս Տոլստոյը, համաձայն Հոգաբարձուի խնդրանքին, ընդունեց 1870 թ. Մայիսին:

[8] Տե՛ս «Լ. Ճ. Լիկէոնի 30ամեակը», էջ Է—Ժ:

*րանի պատմութեան հետ կապուած բոլոր փաստաթղթերի մանրամասն եւ ուշադիր ուսումնասիրութեան։ Օգոստոս 25ին նա հրաւիրում է ժողովի ճեմարանի վերատեսչին, տեսչին, պրոֆեսորներին եւ դասատուներին. խոսում է ամէնքի կարծիքը եւ այնուհետեւ մշակում է ճեմարանի համար նոր դպրոցական Ծրագիր ու Կանոնագիր, որն այնուհետեւ 1871 թ. հաստատում է բարձրագոյն հրամանագրով։ 1870 թ. Հոկտեմբերին բացւում են Մանկավարժական դասարանները նոր հիմունքներով։*

*«Նոր Կանոնագրի գործադրութիւնը, — ասում է Գ. Բանանեանը — թողեց ամենաւրեք շատ մխիթարական եւ ուրախալի տպաւորութիւն. չորս կողմից ստացուեցին ողջոյնի արտայայտութիւններ, որոնց թւում նաեւ ամենայն Հայոց կաթողիկոս Գէորգ Դ.ից[9]»։*

*Այդ տպաւորութեան տակ հայ համայնքները ցանկութիւն են յայտնում դնել ճեմարանի Հարցաքննութեան չքեղ դահլիճում* (Актовая зала) *ճեմարանի Հոգաբարձուի՝ Խաչատուր Լազարեանի մարմարէ կիսանդրին հանգանակուած գումարով, որն եւ իրագործում են 1870 թուին։*

*

[9] *Տե՛ս «Լազ. ճեմ. 75ամեակը», էջ 44։*

*Լազարեան ճեմարանի առաջին 50ամեակի համառօտ տեսութիւնը, նրա ապրած զարգացման փուլերի հակիրճ նկարագրութիւնը, որն սոխրուած եղանք հասցնել մինչեւ 1871 թ., որպէս գի ամբողջացրած լինենք ընդհանուր պատկերը, եզրափակում ենք Գ. Քանանեանի խօսքով, ասուած ճեմարանի 50ամեակի հանդիսաւոր հաւաքոյթին՝ 1865 թ. Սեպտեմբեր 12ին:*

*— «Մենք տեսնում ենք, որ անթիւ էին Լազարեան տոհմի մատուցած ծառայութիւնները ճեմարանին. այդ տոհմի անդամները ո՛չ միայն ստեղծեցին մի մեծ հաստատութիւն յօգուտ ամբողջ հասարակութեան, այլ եւ պահպանեցին այն ամբողջ 50 տարուայ ընթացքում: Միաժամանակ մենք չենք կարող լռութեամբ անցնել այն անձանց բերած ծառայութիւնները, որոնք մեծապէս նպաստեցին մեր դպրոցի ներքին կեանքի զարգացման:*

*«Հիմնադիրների միտքը դարձնել իրենց հաստատութիւնը իրենց հայրենակիցների բարոյական ու մտաւոր վերածնութեան վայր, պահանջում էր միջոցներ, որոնցից զրկուած էր հայ ազգը, որ քաղաքական ճակատագրի բմպքով կորցրած էր հին ժամանակներում ունեցած իր հարուստ մտաւոր գանձերից: Պէտք էր նորից ստեղծել այդ միջոցները, այդ ուսումնական գործիքները, սովորելու իրենց մայրենի լեզուն ու կրօնը: Ծանր ու դժուարին էր պարտականութիւնը այն անձանց,*

որոնց վստահացել էին Լազարեան Ճեմարանի առաջին սաների կրթութիւնը՝ սովորեցնելու նրանց իրենց մայրենի լեզուն եւ իրենց նախահայրերի հաւատքը: Բայց այդ դժուարութիւնը յաղթահարուած էր գործունէութեամբ ու ջանքերով այն անձանց, որոնք բերին իրենց տաղանդն ու ջանքերը Ճեմարանի յառաջադիմութեան գործին: Խօսելով այդ անձանց մասին, մենք չենք կարող չյիշատակել գոնէ մի քանիսներին՝ Սալլանթեանին, Էմինին, Մսերեանցին ու Նազարեանցին: Էմինի հեռաւոր Հնդկաստանից գալն արդէն ապացոյց էր, որ վաղ ժամանակներից սկսած Ճեմարանը իրեն ձգող մի ոյժ էր: Ճեմարանում ստանալով իր կրթութիւնը, Գ. Էմինը լիովին հատուցեց իր բարոյական պարտքը իր alma mater-ին: Նա Ճեմարանի սաների ձեռքը տուեց դպրոցական ձեռնարկներ իւրացնելու գրաբարն ու Հայոց հին գրականութիւնը, իսկ ռուս գրականութեան նա նուիրաբերեց հայկական դպրութեան եւ պատմութեան յիշատակարանների թարգմանութիւնները: Երախտագիտական խօսք ունինք ասելու նաեւ գիտնական արքեպիսկոպոս Սալլանթեանին, Գ. Մսերեանցին եւ Գն. Նազարեանցին իրենց աշխատանքների ու գործունէութեան համար: Սրանցից իւրաքանչիւրը բարեխղճօրէն եւ ազնուօրէն բերել է իր աշխատանքը յօգուտ այն գործի, որը մատնանշուած է եղել Հիմնադրի կողմից:

«Մի չափազանց ուշագրաւ եւ համակրելի երեւոյթ եւս նկատում է Լազարեան ճեմարանի ամբողջ կէս տարուայ կեանքի մէջ։

«Սակաւ չեն դէպքերը, երբ մի հիմնարկութիւն, որի մէջ համախմբուած են լինում այլազգի եւ այլակրօն տարրեր, արհամարհելով նրա վեհ կոչումը, դառնում է ասպարէզ կրօնական ու ցեղային կորստաբեր հակամարտութեան։ Հազիւ թէ գտնուի մի այլ հիմնարկութիւն նոյն չափով, ինչ չափով Լազարեան ճեմարանն է եղել ազատ ու մաքուր այդ սկզբունքներից։ Ազնիւ ծառայութիւնը դաստիարակութեան վսեմ գործին երբեք չի մթագնուել որ եւ է կողմնակի ձգտումների խառնուրդով։ Այն անձինք, որոնք կանգնած էին մեր դպրոցի գլուխը, ինչպէս եւ նրանք, որոնք ղեկավարել են երիտասարդութեան դաստիարակութեան ու կրթութեան գործը, հաւասարապէս պարզ ու յստակ կերպով ըմբռնել են իրենց պարտականութիւնների վեհութիւնը եւ խանդավառուած ազնիւ քաղաքացու եւ ազնիւ դաստիարակի ոգով, ներշնչել են նոյնը իրենց աշակերտներին։ Ճեմարանի տարեգրութեան մէջ չի կարելի մատնանշել նոյն իսկ մի դէպք, որը այդ խմաստով մի մութ բիծ դրոշմէր նրա գործիչների անուան վրայ։ Ճեմարանի բազմաթիւ այլակրօն սաները միշտ կապուած են եղել միմիանց հետ, որպէս մի ընտանիքի զաւակներ։ Նրանց սրտերում խորապէս արմա—

ստացել էր մի գիտակցութիւն, որ նրանք եղ-բայրակիցներ են եւ զաւակներ մի մեծ երկրի: Իր յիսնամեայ կեանքը բոլորելով, Լազարեան Ճեմարանը կարող է պարծանքով թուել, որ նրա ծոցում սնուել են, մեծացել եւ այդ դպրացութիւնների մէջ ամրացել Հազարից (1000) աւելի սաներ[10]. այլազան կրօնների, այլազան ծագումով, որոնք այսօր ցրուած են լայնատարած Ռուսաստանի բոլոր ծայրերում եւ որոնք ծառայել ու ծառայում են նրան, նուիրելով իրենց մտաւոր ու բարոյական ուժերը: Շատերը նրանցից իրենց վաստակով ու շնորհքներով դարձել են արժանաւոր քաղաքացիներ, նրանք ամէնքը զանազան ասպարէզներում եւ հասարակական գործունէութեան զանազան աստիճաններում, պատկանում են պետութեան օգտաւէտ ու ազնիւ ծառայողների շարքին»:

***

[10] Իրօք՝ 1128 հոգի:

# ԳԼՈՒԽ Ե․

## ԼԱԶԱՐԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԸ ԻՐ ԵՐԿՐՈՐԴ ՅԻՍՆԱՄԵԱԿԻ ԱՌԱՋԻՆ 25ԱՄԵԱԿՈՒՄ
(1865—1890)

*Այս 25ամեակում, ինչպէս եւ հետագայում՝ մինչեւ իր գոյութեան վախճանը՝ 1918 թ․, ճեմարանը չի ենթարկուել որ եւ է ցնցումի կամ լուրջ փոփոխութիւնների։ Նրա կեանքը ընթացել է խաղաղ ստեղծագործ աշխատանքների մէջ, որով աւելի եւս մեծ ժողովրդականութիւն էր ձեռք բերել հայ եւ ռուս հասարակութիւնների մէջ։ Այդ ժողովրդականութեան առաջին հետեւանքը եղել է այն, որ աշակերտների թիւը աստիճանաբար աճելով 1890 թ․ հասել է 300 հոգու, որոնցից գիշերօթիկների թիւը միշտ գերակշռել է երթեւեկների թուի հետ համեմատած, իսկ գիշերօթիկների մէջ հայ երեխաները կազմել են ահագին մեծամասնութիւն։ Աշակերտների այս քանակը պահպանուել է մինչեւ վերջ։*

*Հին շէնքի տարողութիւնը այդքան աշակերտների համար անբաւարար էր, ուստի ճեմարանի վարչութիւնը ընդարձակել էր կից նոր շէնքերով։ Կառուցուել էր հսկայ դահլիճ մարզանքի համար, իսկ նրա վերին յարկում՝ երկու մեծ սենեակներ, որոնք յետագայում յատկացուեցին գիշերօթիկ աշակերտութեան սերտողութեան ժամերի համար։ Այն նոր շէնքը կառուցուեց Բեսարա-*

բեայի հայ կալուածատէր Մանուկ Բէյի նիւթական միջոցներով: Այս իսկ պատճառով մարդանքի ընդարձակ սրահը կոչւում էր՝ «Մանուկ Բէյի սրահ»: 1928 թուին այս սրահն ու վերի երկու սենեակները հրդեհի ճարակ էին դարձել:

Ճեմարանի նախկին Կանոնադրերի որոշ յօդուածներ դեռ չարունակում էին պահպանել իրենց ոյժը եւ ստեղծել չփոթ. Հարկ զգացուեց ընդհանուր վերաքննութեան ենթարկել բոլոր եղած Կանոնադրերը, սկսած 1848 թուից, եւ մի վերջնական ամբողջական Կանոնագիր տալ Ճեմարանին:

Այս նպատակով Հոգաբարձուի կարգադրութեամբ կազմւում է յատուկ յանձնաժողով վերատեսչի նախագահութեամբ եւ մասնակցութեամբ տեսչի, դասատուների ու պրոֆեսորների:

Այդ յանձնախումբը իր աշխատանքները աւարտում է դեկտեմբեր 14ին, երբ արդէն կնքել էր իր մահկանացուն Ճեմարանի վերջին հոգաբարձուն՝ Խաչատուր Յովակիմեան Լազարեանը:

Այս նորամշակ Կանոնագիրը կայսերական բարձրագոյն հրամանով հաստատւում է 1872 թ. 16 դեկտեմբերին, որով առաջնորդուել է այնուհետեւ Ճեմարանը մինչեւ 1918 թ.:

Այս Կանոնագրի մշակման ու վաւերացման մեծապէս նպաստել էր ինքը գլխաւոր կառավարչապետը՝ Ժողովրդ. լուսաւորու-

*թեան նախարար Կոմս Տոլստոյը, որեւ անմիջապէս Կանոնագրի հաստատումից յետոյ ներկայացնում է իր հրաժարականը — գլխաւոր Կառավարչապետութիւնից, քանի որ Նոր Կանոնագրով այդ պաշտօնը վերացուել էր եւ ճեմարանը ենթարկուել էր ժողովրդ. լուսաւորութեան նախարարութեան:*

*Այդ առթիւ ճեմարանը 1873 թ. փետրուար 12ին շնորհակալական սրտառուչ ուղերձ է ներկայացնում կոմս Տոլստոյին այն մեծ սանըծապործ ու բեղուն աշխատանքների համար, որ կոմսը ցուցաբերել էր իր Կառավարչապետութեան եռամեայ գործունէութեան ընթացքին յօգուտ ճեմարանի:*

*1881 թ. յունիս 23ին վերատեսուչ Դելեանովը թողնում է իր պաշտօնը, շրջապատուած ընդհանուր անկեղծ համակրանքի զգացումների արտայայտութիւններով ուսուցչութեան եւ աշակերտութեան կողմից:*

*Նոյն տարին վերատեսչի պաշտօնը ստանձնում է ճեմարանի տեսուչ Գէորգ Քանանեանը, որը մնում է այդ պաշտօնի մէջ մինչեւ իր մահը՝ 1897 թ., թողնելով լաւագոյն յիշատակներ ճեմարանին բերած իր բազմամեայ բեղուն գործունէութեամբ եւ իր առանձին հոգատարութեամբ ճեմարանի գիշերօթիկ աշակերտների մասին: Միշտ բարի, միշտ ուշադիր դէպի նրանց կարիքներն եւ հեզինակաւոր սպաշտպանը նրանց շահերի:*

*ճեմարանի 75ամեակին՝ 1890 թուին իր արտասանած ճառի մէջ, նա հետեւեալ կեր–*

պով էր նկարագրել ճեմարանի վիճակը, երկրորդ յիսնամեակի առաջին 25ամեակում.

— «Վերջին 25ամեակում ճեմարանը տուել է 250 հոգի ուսումնաւարտներ: Ներկայումս գիմնազիոնական դասարաններում ուսանող աշակերտների թիւը հասել է 300 հոգու, որ աննախընթաց է ճեմարանի պատմութեան մէջ: Գիշերօթիկ աշակերտների թիւն էլ հասել է մի այնպիսի աստիճանի, որից աւելին անհնարին է տեղաւորել ճեմարանի ներկայ շէնքում: Աշակերտութեան բարոյական վիճակը կատարելապէս մխիթարական է ու գոհունակութիւն է պատճառում դպրոցի ղեկավարներին: Մէր դէպի աշխատանք, համեստութիւն ու բարի ուղղութիւն, որին հետեւում են մեր սաները, հանդիսանում են նրանց յատկանշող գծերը: Բացի մի քանի բացառիկ դէպքերից, որոնք պահանջեցին կարգապահական խիստ միջոցներ կիրառել, մենք չենք կարող մատնանշել մի հատիկ անմխիթարական երեւոյթ: Աշակերտների յառաջադիմութիւնը, որը չափւում է նրանց վերջնական քննութիւնների տուած արդիւնքով, իսկ այդ արդիւնքը գնահատուած է՝ ձեռնհաս իշխանութեան կողմից, վկայում է, որ գիմնազիոնական կրթութիւնը ճեմարանում դրուած է ամուր հիմքերի վրայ եւ որ ճեմարանը պատուով կը դիմանայ ամէն համեմատութեան, ամենալուրջ պահանջներ իսկ ներկայացնելով: Ծնողների վերաբերմունքը դէպի մեր դպրոցը վեր է ա-

մէն ակնկալութիւններից՝ նա հիմնուած է կատարեալ վստահութեան ու համակրանքի վրայ դէպի մեր դպրոցը:

«Մասնագիտական դասարանների (լիկէոնի) ուսանողներին անդրադառնալով, մենք կարող ենք մատնանշել այն մի շարք միջոցները, որոնք երաշխաւորել են արեւելեան լեզուների ուսումնասիրութեան լուրջ յառաջադիմութիւնը: Մեր ձեռքում կան պաշտօնական փաստաթղթեր, որոնք վկայում են, որ մեր մասնագիտական դասարանների շրջանաւարտների ուսման մակարդակը հասել է բաղձալի բարձրութեան եւ նրանք ոչ մի բանում համալսարանների ուսանողների ուսման մակարդակից ցածր չեն: Ամենից մխիթարականը այն է, որ ձգտումն դէպի մասնագիտական դասարանները այլ եւս չի պայմանաւորուած, ինչպէս անցեալումն էր, ծառայութեան արտօնութիւններ եւ իրաւունքներ ստանալու ակնկալութեամբ, այլ գիտակից ցանկութեամբ ուսումնասիրել արեւելեան լեզուները:

Արեւելեան լեզուների յաջողութիւնը առաջ է բերել պահանջ կազմակերպել երեկոյեան դասընթացքներ բաւարարելու համար կողմնակի ունկնդիրներին, որոնք ցանկութիւն ունին սովորելու այս կամ այն արեւելեան լեզուն»:

*

1890 թ. դեկտ. 20ին Ճեմարանի Պատուակալ Հոգաբարձուի եւ Պետերբուրգի ու

*Մոսկուայի Հայոց Եկեղեցիների հոգաբարձուի պաշտօնների մէջ է հաստատում* իշխան Սիմէոն Դաւիդովիչ Աբամելիքը, *վերապահելով նրան իրաւունք կոչուելու՝* Աբամելիք-Լազարեւ *եւ այդ կոչումը պահպանելու իր տոհմի մէջ:*

*Այդ 25ամեակում ճեմարանին այցելութիւն են տուել՝ Պարսից Նասրէդդին Շահը, Բրազիլիայի կայսր Դօն-Պեդրօն, ուղեկցութեամբ ժողովրդ. լուսաւորութեան նախարար կոմս Տոլստոյի, կոմս Միքայէլ Տարիելովիչ Լօրիս-Մելիքովը, Ասիական դեպարտամենտի պետ Զինովեւը, — երկուսն էլ ճեմարանի նախկին աշակերտներ, — Եւրոպական գիտնական-ասորագէտ Ժիւլ Օպպերտը, արեւելագէտ Ֆոն Միւլլէրը եւ ուրիշները:*

*Այս այցելութիւնները պարզ ցոյց են տալիս, որ ճեմարանը շարունակում է մնալ ընդհանուր հետաքրքրութեան եւ ուշադրութեան առարկայ:*

*

*Մեր խօսքը փոքր ինչ առաջ տանելով, ասենք, որ Գ. Քանանեանի մահից յետոյ վերատեսուչ Նշանակուեց Մոսկուայի համալսարանի ուսուցչապետ եւ ականաւոր գիտնական* Վսեվոլոդ Միլլէրը, *որը մի բարեխիղճ, մեծահոգի, ազնուաբարոյ ու կատարեալ հումանիստի բարձր նկարագրով անձնաւորութիւն էր:*

Նրա վերատեսչութեան օրով ճեմարանի ուսանողական մթնոլորտը որեւէ փոփոխման չենթարկուեց:

Բայց, ցաւօք սրտի, բոլորովին հակառակ շունչ փչեց, երբ նրան յաջորդեց Պրոֆ. Վասիլի Գիդուլեանովը, որպէս վերատեսուչ (директор), իսկ տեսչի (инспектор) պաշտօնում հրաւիրուեց հայ անուանի հայագէտ Կարապետ Կոստանեանը 1911 թուին:

Երկուսն էլ չոր ու ցամաք բիւրոկրատներ էին...:

Պրոֆ. Գիդուլեանովը շատ քիչ էր հետաքրքրւում աշակերտութեան կեանքով. աշակերտութիւնը ամբողջովին գտնւում էր տեսչի՝ Կարապետ Կոստանեանի հսկողութեան ու ղեկավարութեան ներքոյ: Եւ սա, որպէս մի խստաբարոյ վարչական անձ, շատ շուտով վերածեց գիշերօթիկ երեխաների առօրեայ կեանքը մի կատարեալ զօրանոցի... Ճեմարանը կորցրեց իր նախկին ընտանեկան օջախի բոյթը... Ծայր առին խիստ պատիժները ամենասովորական երեխայական չարութիւնների համար: Այդ պատիժների շարքում ամենից դաժանը այն էր, որ տեսուչը, առանց Մանկավարժական ու Դաստիարակների Խորհուրդների գիտութեան, ճեմարանից երեխաներին յաճախ արտաքսում էր...:

Սրանց իշխանութիւնը վերջ գտաւ 1917 թ. հոկտեմբերեան յեղափոխութիւնից

յետոյ· 1918 թուին, երբ ինքը ճեմարանը de facto այլ եւս գոյութիւն չունէր, իսկ 1918 թ. աշնանը նա իր վախճանը գտաւ նաեւ de jure... ճեմարանը վերածուեց «Հայ Մշակոյթի Տան»...:

*

Ճեմարանի վերջին 25ամեակի մասին մեր գրածները մեծ մասամբ մեր եւ Թեհրանում գտնուած ճեմարանի նախկին սաների յուշերի վրայ են հիմնուած. գրել այդ ժամանակաշրջանի՝ 1890—1918 թթ. պատմութիւնը անհնարին եղաւ մեզ համար, քանզի մենք չունէինք ձեռքի տակ եւ ո՛չ մի պաշտօնական աղբիւր կամ փաստաթուղթ այդ ժամանակաշրջանին վերաբերեալ:

Պիտի սպասել մինչեւ Երեւանի Հայոց կառավարութիւնը վերջապէս հրատարակութեան կը տայ Լազարեանների ու ճեմարանի հարուստ արխիվի նիւթերը կամ Երեւանում կը գտնուի մի ձեռնհաս անձ, որ յանձն կ՚առնի գրելու ճեմարանի լրիւ պատմութիւնը, օգտագործելով այդ արխիվը:

Ընդհատելով այստեղ ճեմարանի մեր այս չափ հակիրճ պատմական ընդհանուր ակնարկը, անցնում ենք մի քանի մասնաւոր կարեւորագոյն խնդիրների լուսաբանութեան, որոնք սերտօրէն կապուած են ճեմարանի 75ամեայ ներքին կեանքի հետ եւ որոնք լրացնում եւ ամբողջացնում են մեր այս ընդհանուր տեսութիւնը:

# ԳԼՈՒԽ Ջ.

## Լ. ՃԵՄԱՐԱՆԸ, ՈՐՊԷՍ ԱԶԳԱՅԻՆ ՈԳՈՒ ՎԱՌ ՀՆՈՑ ԵՒ ՀԱՅ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՈՒ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿԵԱՆՔԻ ՅԱՌԱՋԱԴԻՄՈՒԹԵԱՆ ԳՈՐԾՕՆ

*Ճեմարանի հիմնադրութիւնն ու գործունէութիւնը Մոսկուայում՝ «Ռուսաստանի սրտում», Ռուսաստանի մշակութային, հասարակական–քաղաքական կեանքի կենտրոնում, հարկաւ, չէր կարող զերծ մնալ այս կամ այն չափով նրա բարեբար ազդեցութիւնից: Եւ զերծ էլ չմնաց:*

*Ճեմարանը հիմնուել է Ռուսաստանի եւ Եւրոպայի քաղաքական կեանքի մի շատ նշանաւոր ժամանակաշրջանում:*

1812 *թ. հայրենական պատերազմը Նապոլէոն Ա. կայսեր աշխարհակալութեան դէմ, Վիեննայի* 1814—1815 *թ. Վեհաժողովը, իր «Սրբազան Ուխտի» ճնշող ու յետադիմական շունչով, Մետտերնիխի բռնակալական միջամտութիւնները պետութիւնների ներքին կեանքի մէջ եւ ազգային շարժումների ջախջախումը՝ կործանարար ազդեցութիւն ունեցան Ալէքսանդր Ա.ի ազատախոհ տրամադրութիւնների վրայ...: Նա աստիճանաբար խորասուզուեց միստիցիզմի մէջ, դադարեց գործօն հետաքրքրութիւն ցուցադրել պետական գործերի մէջ եւ կառավարական ամբողջ իշխանութիւնը վերապահեց կոմս Արակչէեւին, որը, չուտով իր*

անսահման իշխանութեան վրայ յենուելով, դաժան պայքար մղեց ամէն մի ազատախոհ մտքի ու ձգտումների դէմ . . . :

Եթէ Եւրոպայի եւ Ռուսաստանի կառավարական շրջաններում տիրում էր ամենայետադէմ ձգտումներ ու տրամադրութիւններ, սակայն միանգամայն այլ տրամադրութիւններով էին վարակուած հասարակական շրջանները, յառաջադէմ ու ազատատենչ մտաւորականութիւնը:

Ֆրանսիական մեծ Յեղափոխութեան թողած ազատախոհ աւանդները դեռ շատ թարմ էին ամենուրեք: Ռուս ազնուական մտաւորականութիւնը մանաւորապէս վարակուած էր յեղափոխական տրամադրութիւններով: Հայրենական պատերազմը, որ սերտ շփումների առիթներ տուեց ռուս սպայութեան ծանօթանալու աւելի մօտիկից եւրոպական քաղաքակրթութեան եւ նրա մտաւորական շրջաններում տիրող ազատատենչ ձգտումների հետ՝ բաց արեց նրա աչքերը հայրենիքում տիրող հասարակական-քաղաքական անհանդուրժելի կացութեան վրայ:

«1812 թ. հայրենական պատերազմի ժամանակ, — ասում է ռուս պատմաբան Պրոֆ. Պլատոնովը, — ռուս զօրքը իր մէջ առաւ բազմաթիւ ազնուականներ հայրենիքի պաշտպանութեան համար, իսկ կռիւները, մղուած Եւրոպայի ազատագրութեան համար (Նապոլէոնի իշխանութիւնից), շփման մէջ դրին ռուս զօրքի մէջ ծառայող ազնուականներին

*եւրոպական կեանքի հետ։ Առաջ ռուս մարդիկ շատ քիչ էին գնում Արեւմտեան Եւրոպա, իսկ ազատագրական պատերազմի ժամանակ շատերը մնացին այնտեղ եւ երկար ժամանակ ապրում էին այնտեղ։ Հասկանալի է, որ նրանք ենթարկուեցին եւրոպական կարգերի ուժեղ ազդեցութեան, մօտիկից ծանօթացան ժամանակակից մտաւոր շարժման հետ եւ իրենց հետ Ռուսաստան բերին ամբողջ գրադարաններ։ Եւրոպական հասարակական կեանքի յառաջադիմութիւնը, որ հետեւանք էր 18րդ դարի ազատամիտ գաղափարների ազդեցութեան, գերմանացիների ազգային գիտակցութեան զարգացումը, գերման փիլիսոփայութեան միթթումը՝ վառում էին ու հիացնում ռուս մարդկանց։ Համեմատելով եւրոպական կեանքը հայրենիքում տիրող կարգերի հետ, մեր նախահայրերը սկսեցին քննադատական աչքով նայել ռուս իրականութեան վրայ, տեսնում էին նրա պակասները, նրա յետամնացութիւնը, գիտակցում էին, որ արդէն հնացած էր ճորտատիրական իրաւունքը, որը կազմում էր ռուս հասարակական կարգերի հիմքը եւ որն Արեւմտեան Եւրոպայում վաղուց վերացել էր*[1]»։

*Ահա այս տպաւորութիւնների ներքոյ էր, որ Ռուսաստանում սկսուեցին ուժեղ հասարակական–քաղաքական շարժումներ, որոնք*

---

[1] *Տե՛ս Պրոֆ. Պլատոնով* (Платонов). *«Ռուս պատմութեան համառօտ դասընթացք»*, *էջ* 353—354։

մի կողմից արտացոլուեցին գրական–գեղարուեստական մարզում, միւս կողմից ընդունեցին յեղափոխական բնոյթ...: Ռուս ազնուական յառաջադէմ ու ազատախոհ մտաւորականների շրջանները, տոգորուած հանրապետական–ժողովրդավար գաղափարներով, կամեցան բռնի կերպով ոչնչացնել ցարական բռնապետական ռեժիմը եւ առաջին հերթին վերացնել ճորտատիրութիւնը: Յայտնի է, որ այս վերջին շարժումը յանգեց 1825 թ., Աղէքսանդր Ա. կայսեր մահից անմիջապէս յետոյ, այսպէս կոչուած Դեկաբրիստների ապստամբութեան, որը սակայն վրիպեց եւ նոր կայսեր՝ Նիկոլայ Ա.ի ձեռքով դաժանօրէն զսպուեց...[2]:

Չնայած Նիկոլայ Ա.ի դաժան ռեժիմին, ռուս հասարակութեան մէջ չմեռան խաղաղասիրական? ազատատենչ գաղափարներն ու ձգտումները. նրանք իրենց արտայայտութիւնը գտան ռուս գրականութեան մէջ:

«Ռուս գրականութիւնը, — ասում է Իվանով Ռազումնիկը, — եղաւ այն փօկուսը, որ հաւաքում էր իր մէջ կեանքից ցոլացող ճառագայթները»:

Եւ արդարեւ, 40ական եւ 50ական թուականներին ռուս գրականութիւնը հասաւ այնպիսի վերելքի, որ տուեց մտքի եւ գեղարուեստի այնպիսի մեծ տաղանդներ, որ–

---

[2] Դեկաբրիստների շարժման մասին տե՛ս մեր յօդուածը՝ «Յուսաբեր», 1828 թ. Հոկտեմբեր–Նոյեմբեր:

պիտի էին՝ Բէլինսկի, Հերցէն, Օգարեւով, Ստանկեւիչ, Ակսակով, Խոմեակով, Չաադաեւ եւ ապա Չերնիշեւսկի, Դոբրոլիւբով, Բակունին, Գրանովսկի եւ մի շարք ուրիշները:

Գրողների այս փայլուն փաղանգն էր, որ նախապատրաստեց ռուս հասարակական կարծիքը 60ական թուականների մեծ բարեփոխութիւնների համար:

Գրականութեան մէջ կարմիր թելով անցնում էր մի գերագոյն միտք՝ պիտի ոչնչացնել ճորտատիրութիւնը, մեծագոյն չարիքը ռուս կեանքի եւ խոչընդոտը հայրենիքի յառաջադիմութեան:

Գրականութեան զօրաւիգ եղան քաղաքական դէպքերը, առաջին հերթին՝ Ղրիմի պատերազմը (1855 թ.), որ միանգամայն բացայայտեց ցարական բռնակալ ռէժիմի պարտութիւնը, տիրող հասարակական-քաղաքական կարգերի կատարեալ անպէտքութիւնը: Միւս կողմից, այդ պատերազմը մեծապէս նպաստեց ժամանակի յառաջադէմ գաղափարների ու ազատախոհ տրամադրութիւնների զօրացմանն ու տարածմանը հասարակութեան լայն շրջաններում:

«19րդ դարի երկրորդ քառորդի սկիզբը — ասում է Իվանով Ռազումնիկը — նշանաւոր էր մի շարք կարեւորագոյն դէպքերով, մի շարք յեղաշրջումներով: 1825 թուականը հանդիսանում է սահմանը, որտեղից սկիզբ է

առնում նոր քաղաքական սիստեմ, նոր պետական ժամանակաշրջան. դա մի տարի էր, երբ քաղաքական յեղաշրջման փորձը վրիպեց, բայց եւ մի տարի էր, երբ վերջ գտաւ պայքարը գրական քաղքենիութեան դէմ. դա, վերջապէս, մի տարի էր, երբ յեղափոխական ռոմանտիզմը եւ ռոմանտիկ ապաստամութիւնը կորուստի մատնուեցին, երբ փչացաւ ռուս մտաւորականութեան լաւագոյն մասը եւ երբ ծնունդ առաւ նոր մտաւորականութեան սաղմը, այն մտաւորականութեան, որ տուեց այնքան հարուստ պտուղներ[3]»։

Ահա՛ այս նոր մտաւորականութիւնն էր, որ ստեղծեց 40ական եւ 50—60ական թուականների հասարակական մեծ շարժումը։

Այս մտաւորականութեան ուսուցիչներն էին՝ եւրոպական ականաւոր փիլիսոփաները՝ Կանտը, Ֆիխտէն, Ֆուրիէն, Ֆէյերբախը եւ նա մանաւանդ Հեգէլը. որը բացարձակապէս իշխում էր մտաւորականութեան մտքի վրայ։

«Հեգէլի փիլիսոփայութիւնը, — ասում էր Հերցէնը, — յեղափոխութեան ալգեբրան է. նա միանգամայն ազատագրում է մարդուն եւ քար քարի վրայ չի թողնում ոչինչ քրիստոնէական աշխարհից, աւանդութիւնների աշխարհից»։

---

[3] Տե՛ս Իվանով-Ռազումնիկ, «Պատմ. ռուս հասարակական մտքի», էջ 92։

«Պատմութիւն 19րդ դարի ռուս գրականութեան» հեղինակ Նադարէնկօն բացատրում է Հեգէլի այդ միտքը, ասելով՝

«Հերցէնը, բնորոշելով Հեգէլի փիլիսոփայութիւնը որպէս յեղափոխութեան ալգեբրա, ուզում էր ասել, որ նրա մէջ պարփակուած է յաւիտենական պայքարի, զարգացման եւ յառաջադիմութեան գաղափարը [4]»:

Ահա՛ այն մթնոլորտը, որով շրջապատուած էր Լազարեան Ճեմարանը իր ուսուցիչներով, իր աշակերտութեամբ եւ իր նախկին սաներով՝ Մոսկուայի համալսարանի հայ ուսանողներով:

Եւ պարզ է, որ Ճեմարանը եւս շնչում էր նոյն մթնոլորտը, ապրում էր նոյն մտաւոր ու բարոյական գաղափարներով, որոնք նրան մղում էին դարձնելու իր հայեացքը հայ իրականութեան վրայ:

Յաւօք սրտի, մեր գրականութեան մէջ ռուս յառաջադէմ մտքի ազդեցութիւնը հայ կեանքի վրայ ուսումնասիրուած չէ յատկապէս, առաւել եւս նրա ազդեցութիւնը Ճեմարանի կեանքի վրայ:

Կան միայն փշրանքներ, որոնցից մի քանիսը առաջ ենք բերում:

«Պետական կեանքն էր մղումներ տալիս եւ մեր կեանքին, — գրում է Լէօն իր «Պատմութիւն Երեւանի թեմ. դպրոցի» երկի

---

[4] էջ 213:

մէջ. — Ղրիմի պատերազմը ռուս կեանքի փորձաքարն ու վերանորոգիչը հանդիսացաւ: Բազմաթիւ հնացած կարգերի հետ աւանդութիւնների շարքն էր մտնում եւ դասակարգային դպրոցը՝ չինովնիկներ պատրաստելու ու ժողովուրդը դաստիարակութիւնից հեռու պահելու ձգտումներով: Ժողովրդական ազատ ազգային դաստիարակութիւնը, համամարդկային հումանիտար գաղափարները՝ նոր դպրոցի հիմնաքարերն էին դառնում եւ մանկավարժութիւնը, ընդգրկելով եւրոպական սկզբունքները, դառնում էր հասարակական առաջխաղացութեան փայլուն փարոսներից մէկը: Եւ մեզանում էլ, այս բոլոր պարագաների դրդմամբ բարձրանում էին կրթական պահանջները, մեզանում էլ դպրոցը դառնում էր հասարակական հոգացողութեան առանձին կարեւոր առարկայ[5]»:

Մի ուրիշ վկայութիւն:

«Դորպատի նման մի մտաւոր կենտրոն էր Լազարեան ճեմարանը, — գրում է Լ. Մանուէլեանը, — որտեղ 40ական թուականներին թագաւորում էր «հայկական ոգին» եւ մշակւում էր աշխարհիկ լեզուն: Ռ. Պատկանեանը[6] գրում է. «Քառասուն տարի սրանից առաջ մենք աւելի հայ էինք, հայերէնին աւելի տեղեակ. մենք պարծանում էինք հայ-

[5] Տես էջ 220:

[6] Ղ. Պատկանեանը աւարտել է Լազ. ճեմարանը 1848—1849 թ.:

կական գրականութեան մէջ եւ միայն հայ գրողներ լինելու համար էինք պատրաստւում»: Մեր բանաստեղծի այս վկայութիւնն անհիմն չէ՛, եթէ նկատի առնենք, որ գրեթէ բացառապէս Լազարեան ճեմարանն էր մատակարարում ընտիր ուսանողներ Դորպատի համալսարանին[7]»:

Աւելի ցայտուն կերպով արտայայտուել է բանաստեղծ Սմբատ Շահազիզը, ճեմարանի նախկին սան եւ երկարամեայ ուսուցիչը ճեմարանում:

Երուանդ Շահազիզը «Սմբատ Շահազիզի կենսագրութիւնը» իր աշխատանքի մէջ պատմում է հետեւեալը.

«Իւրիյ Վեսելովսկու գրուածներից մէկում՝ «Ռուսաց ազդեցութիւնը ժամանակակից հայ գրականութեան վրայ», 1909 թ. մէջ է բերուած Շահազիզի մի նամակը, որը պատասխան է գրուածքի հեղինակի նրան ուղարկած հարցաթերթի, թէ նա իր ուսանողութեան օրերում ռուսական ի՞նչ ազդեցութիւնների է ենթարկուած եղել:

— «Խօսք չի կարող լինել, որ իմ վրայ, ինչպէս եւ ամբողջ սերունդի վրայ, — պատասխանել էր Սմբատ Շահազիզը — ուժեղ ազդեցութիւն են գործել ռեֆորմների դարաշրջանը եւ նրա անդրադարձումը ռուսական կեանքի վրայ: «Լեւոնի վիշտը», որտեղ մերկացւում են հայ իրականութեան մութ

[7] Տե՛ս Լ. Մանուէլեան, «Պատմ. ռուսահայ գրակ.», Հ. Ա., էջ 89. ընդգծումները մերն են:

երեւոյթները, զգալի չափով ստեղծուել է այն ոգեւորութեան շնորհիւ, որ առաջ էր եկել գիւղացիների ազատութեան հետեւանքով (1861 թ. փետր. 19)։ Յիշում եմ, թէ որքան սրտիս մօտ էի ընդունում այդ անցքը...»։

«Ընկերներիս շրջանում ես պատկանում էի այն երիտասարդների թւին, որոնք ամենից աւելի եռանդով էին հետեւում ռուս ամսագրերին, օրինակ, «Սովրեմեննիկ»ին[8] եւ եւ նրանց մէջ արծարծուող խնդիրներին... «1859 թուի «Սովրեմեննիկ»ից է առնուած «Լեւոնի վշտի» երգերից մէկի բնաբանը։ Դոբրոլիւբովի «Սիրելի բարեկա՛մ, ես մեռնում եմ» բանաստեղծութեան ընթերցումը ներշնչեց ինձ սեփական մի բանաստեղծութիւն գրելու «Իղէան», որն սկսւում է համարեա այնպէս, ինչպէս Դոբրոլիւբովի բանաստեղծութիւնը, բայց կրում է այլ բնոյթ եւ վերաբերում է հայերի վիճակին[9]»։

Ծանօթ իրողութիւն է, որ Միքայէլ Նալբանդեանը, որ եղել է ճեմարանում Հայոց լեզուի դասատու, ունեցել է լայն ծանօթութիւններ եւ նոյն իսկ սերտ բարեկամութիւն ժամանակի ռուս ականաւոր գրական, հասարակական ու քաղաքական գործիչների հետ,

---

[8] «Սովրեմեննիկ»ը (Современник) ամսաթերթ էր, որը վարում էր Չերնիշեւսկին եւ ապա Դոբրոլիւբովը եւ հանդիսանում էր ժամանակի մամուլի ամենալուրջ օրգանը եւ հետեւում էր այսպէս կոչուած «Արեւմտեանականների» ազատախոհ ուղղութեան։

[9] Տե՛ս էջ 75։

մանաւորապէս Հերցէնի հետ, եւ վայելել է նրանց խոր յարգանքն ու անկեղծ համակրանքը:

Թ՚է ի՛նչ խոր տպաւորութիւն է թողել Մ. Նալբանդեանը Ճեմարանի աշակերտութեան վրայ եւ ի՛նչ ոգով է տարել նա իր դասաւանդութիւնը, — այդ մասին սորեւ կը խօսինք, ուրիշ խնդրի կապակցութեամբ:

Այժմ մի այլ վկայութիւն եւս:

«Ռուսաստանի ազատարար շարժումը բարերար ազդեցութիւն ունեցաւ մանաւանդ հայութեան այն մասի վրայ, որ մօտիկ էր կանգնած այդ շարժմանը՝ Մոսկուայի յառաջադէմ երիտասարդութեան: Հայերի համար եւս բացուեց ապագայի գեղեցիկ հեռանկար եւ սկսուեց եռանդուն աշխատանք[10]»:

*

Ճեմարանը իր ներսում, իր ներքին կեանքի մէջ եւս ունէր պայմաններ, որոնք զուգադիպելով դրսում, արտաքին աշխարհում տեղի ունեցող գաղափարական հոսանքներին, տուեցին այնքա՛ն առատ հունձ:

«Որպէս զի հունտը յաջող հունձ տայ, անհրաժեշտ է նպաստաւոր մթնոլորտ», — ասել է պետական ականաւոր ռուս գործիչ Սպերանսկին:

Եւ արդարեւ դրսի մթնոլորտն ու ներսի մթնոլորտը, զուգորդուած իրար հետ, դարձրին Լազարեան Ճեմարանը ազգային մշա—

---

[10] Տե՛ս Լ. Մանուէլեան, «Պատմ. ռուսահայ գրակ.»:

կոյթի զարգացման մի ազդակ ու ազգային ոգու մի վառ հնոց:

Ճեմարանի ազգային ոգին ու սէրը դէպի ազգային մշակոյթի գանձերը՝ լեզուն, գրականութիւնը, պատմութիւնն ու կրօնը սերմանել ու աճեցրել էին ամենից առաջ իրենք Լազարեանները, սկսած Ճեմարանի կառուցող Յովակիմ աղայից, որը եւ շարունակեցին նրան յաջորդած երկու զաւակները՝ Յովհաննէսն ու Խաչատուրը ունենալով իրենց օժանդակ իրենց ընտանիքների անդամներին:

Այնուհետեւ նրանց զօրավիգ են հանդիսացել ու շարունակողները եղել՝ հայ ուսուցիչները, տեսուչներն ու վերատեսուչները:

Աւրամդարեան, Սերովբէ վարդապետ, Սալլանթեան, Մ. Էմին, Մ. Մսերեանց, Ստ. Նազարեանց, Միքայէլ Նալբանդեան, Գէորգ Քանանեան, Սմբատ Շահազիզ, Մանուկ Սաղաթեան, Յարութիւն քահ. Պօպովեան, Քրիստափոր Քուչուկ-Յովհաննիսեան, Կարապետ Կուսիկեան, Լեւոն Սարգսեան եւ մի շարք ուրիշները, — եղել են մի-մի լուսատու ճրագներ, որ լուսաւորել են աշակերտութեան միտքը, ներշնչել ազգային ոգի մղել դէպի ազգային մշակոյթի գանձերի ուսումնասիրութիւնը:

Արդէն Սալլանթեանի օրօք 1829 թ. Ճեմարանի աշակերտութիւնը լոյս է ընծայում «Մուգայք Հայաստանի» գրական ժողովածուն, սեփական գրական ստեղծագործութեան առաջին պտուղները:

Մ. Մսերեանը իր «Յիշատակարան»ում առաջ է բերել մի շարք ձօներ, ուղերձներ, ողբեր, գրուած Ճեմարանի աշակերտների կողմից եւ գլխաւորապէս նուիրուած Լազարեաններին, նրանց կեանքի ուրախ թէ տխուր օրերի առթիւ:

Այնուհետեւ պիտի յիշատակել հայկական ներկայացումները՝ դրսում, որոնց յաճախում էին աշակերտները, եւ թէ ներսում՝ իրենց աշակերտների կողմից կազմակերպուած:

Տողերիս գրողը, օրինակ, 80ական թուականների վերջերքին, Ճեմարանի աշակերտ, ներկայ է եղել Պետրոս Ադամեանի «Համլէթ»ի ներկայացման եւ ստացած խոր տպաւորութիւնը դեռ այսօր էլ շատ թարմ է:

Աշակերտութեան կազմակերպած ներկայացումների մասին Ճեմարանում, մեզ թանկագին տեղեկութիւններ է տալիս Պրոֆ. Ջինովեւը:

«Վերատեսուչ Ն. Դ. Դելեանովի օրօք, — գրում է Պրոֆ. Ջինովեւը — մի նոր սովորոյթ էլ մտաւ Ճեմարանի աշակերտութեան կեանքի մէջ, որը, մեզ թւում է, կարող է որոշ նշանակութիւն ունենալ հայ ժողովրդի զարգացման համար: Մի քանի տարի առաջ Ճեմարանի աշակերտները Ծննդեան տօներին կազմակերպեցին ընտանեկան ներկայացում հայերէն լեզուով: Այդ ձեռնարկը

---

[11] Ն. Դ. Դելեանովը վերատեսուչ է եղել 1856—1861 թթ.:

այնպիսի մեծ յաջողութիւն ունեցաւ, որ այդ օրուանից սկսած ամէն տարի տեղի էին ունենում նման ներկայացումներ, արժանանալով Մասկուայի հայ հասարակութեան բացայայտ համակրանքին. նա նոյն իսկ սիրով դրամական նուէրներ էր տալիս երիտասարդ դերասաններին[12]»:

Հետագայում, 80ական թուականներին, ներկայացումներին փոխարինեցին շքեղ պարահանդէսները, որոնց մեծ հաճոյքով այցելում էին հայ եւ ռուս հասարակութիւնը, մանաւանդ ռուս դպրոցների երկսեռ աշակերտութիւնը[13]:

Այդ պարահանդէսները առիթ էին տալիս Ճեմարանի գիշերօթիկ աշակերտութեան շփման մէջ մտնել իրենց հասակակից ռուս երկսեռ երիտասարդութեան հետ եւ ծանօթութիւններ հաստատել նրանց ընտանիքների հետ:

Այդ պարահանդէսները բարերար ազդեցութիւն էին ունենում Ճեմարանի աշակերտութեան դաստիարակութեան վրայ:

Մի որոշ չափով արտայայտիչ են հանդիսանում աշակերտութեան մտաւոր ձգտումների, գրականութեան հետաքրքրութեան ու

---

12 Տե՛ս Պրոֆ. Զինովեւ, «Պատմ. Լազ. Ճեմ.», էջ 80:

13 Հայերէն եւ ռուսերէն լեզուներով աշակերտական ներկայացումները տեղի են ունեցել Ճեմարանում նաեւ վերատեսուչ Մելքերի օրօք՝ 1900ական թուականներին, — ինչպէս վկայում են Թեհրանում դրոնուած Ճեմարանի նախկին սաները:

*ազգային ոգու՝ իրենց աշակերտների լոյս ընծայած* ձեռագիր շաբաթաթերթերն ու ամսաթերթերը:

*Ի վերջոյ, բերենք մի-երկու յիշողութիւն — վկայութիւններ նախկին սաների իրենց ուսուցիչների թողած բարոյական մեծ ազդեցութեան մասին:*

*«Էմինի դասախօսութիւնները, — գրում է Ռ. Պատկանեանը, — մի շարք գրական, պատմական կրթողական քարոզներ էին, որոնք խորունկ տպաւորութիւն էին գործում մեր պատանեկական զգայուն սրտերի վրայ, որ չատերիս մէջ անջնջելի մնաց եւ շատերիս համար, թերեւս, մի տեսակ ուղեցոյց տատղ* [14]*»:*

*— «Ճեմարանի հայ ուսուցիչներից, — գրում է Եր. Շահազիզը, — Սմբատ Շահազիզը միայն եւ միայն հաւանել է Միք. Նալբանդեանին, որի ուսուցչութիւնը թէեւ կարճատեւ է եղել, բայց նրա ցանած սերմերը առոք պտուղներ են տուել, եւ նրա խօսքերը՝* «հայերէն մտածել պէտք է սովորել», *Ճեմարանի աշակերտութեան մէջ աւանդաբար անցել են սերնդէ սերունդ: Որքան մենք գիտենք, նրա այս կարճատեւ ուսուցչութեան ժամանակ Ճեմարանում, Սմբատ Շահազիզը չի աշակերտել նրան, բայց ընդունել է նրա թողած աւանդը եւ նոյնը յետագայում, իր*

---

[14] *Լ. Մանուէլեան, «Պատմ. ուս. գրակ.», Մասն Բ.,* էջ 54:

ուսուցչութեան տարիներին, քարոզել իր աշակերտներին[15]» :

Ահա՛ եւ իր՝ Սմբատ Շահազիզի անձնական զգացումների ու մտքերի ոգեշունչ արտայայտութիւնը, որ նա կցել է «Լեւոնի վիշտը» պոէմային : Նրա այդ տողերին առիթ է ծառայել ճեմարանի 50ամեայ յոբելեանը : Բերում ենք այդ գեղեցիկ կտորը ամբողջութեամբ :

«Յիսներորդ տարին ճեմարանիս հիմնադրութեան ահա լրանում է[16], մի ցանկալի տպաւորութիւն բերելով բոլոր բարեացակամ սրտերին : Այո՛, յիսուն տարի ապրել է նա գեղեցիկ յառաջադիմութեամբ. յիսուն տարի գնացել է իւր դժուարին եւ լի ձախորդութեամբ ճանապարհը : Գոհութի՜ւն նորա անցեալին, որ կազմել է մեզ մի դալարուն ներկայ, եւ գոհութի՜ւն նորա ներկային, որ տալու է մեզ մի առաւել նախանձելի ապագայ :

«Դեռաբո՛յս պատանիք, ժրաջան եղէք այդ սուրբ ասպարէզի վերայ. պատրաստեցէք ձեզ որդի մարդկութեան եւ ազգութեան. ոհ, քանի՛ մեծակշիռ էր ձեր մատաղ կեանքի խորհուրդը, թէ ձեր թանկագին ժամանակը գործ դնէիք նորա զարգացման եւ հաստատութեան, քանի՛ բարձրանալու էր ճեմա-

---

[15] Տե՛ս Եր. Շահազիզ, «Սմբ. Շահազիզի կենսագր.», էջ 17 :

[16] Հեղինակը այդ տողերը գրել է 1864 թ. սեպտ. գիրքը լոյս է տեսել 1865 թ., ճեմարանի 50ամեակին : Ընդգծումները հեղինակին է :

*քանը արժանի պարծանքով, որ պատրաստ է օժանդակել ձեզ ամենայն միջոցներով, եթէ միայն կամէիք ուսանել ազնիւ եւ անխոնջ աշխատասիրութեամբ:*

*«Ազնի՛ւ սրտեր, լցուեցէք ամենաքաղցր չօշափմունքով, պատրաստ կացէք բերել ձեր անկեղծ շնորհակալիքը այդ փառաւոր օրի տօնախմբութեան. գիտէ՞ք, — սիրոյ եւ երախտագիտութեան զգացմունքն է որ մեծարելի է կացուցանում մարդուս անունը: Շնորհակալ լինինք խոստովանող սրտով պատուական Հոգաբարձուիս Խաչատրոյ Յովակիմեան* Լազարեանն, *որ լուսաւորեալ գործակցութեամբ բարեկարգել է վիճակը ճեմարանիս եւ ոչինչ չէ՛ խնայել նորա պայծառութեան համար թէ նիւթապէս եւ թէ բարոյապէս:*

*«Խաղաղութի՛ւն Ձեզ, ազգասէր Հիմնադիրք ճեմարանիս. Ձեր անունը անմոռաց է, Ձեր գործը անմահ, որ ահա վերստին անմահանում է այս տօնախմբութեան օրը:*

*Երախտագէտ Հեղինակը»:*

*

*Այսպէս ճեմարանը արտաքին ու ներքին ազդակների շնորհիւ դարձաւ* ազգային ոգու վառ հնոց եւ միաժամանակ հանդիսացաւ հայ մշակութային ու հասարակական կեանքի վերածնութեան խոշոր գործօններից մէկը հայ կեանքի պատմական ամենաբախտորոշ ժամանակաշրջանում:

*Հայ ոգին ճեմարանում այնքա՜ն զօրեղ էր եւ այնքա՜ն ցայտուն իր արտայայտութիւնների մէջ, որ անգամ ռուս աշակերտները վարակւում էին այդ ոգով, հետաքրքրւում հայ գրականութեամբ, պատմութեամբ ու լեզուով, լցւում համակրանքով դէպի հայ ժողովուրդը: Իւրիյ Վեսելովսկին, ճեմարանի նախկին աշակերտ, հանդիսանում է ամենագեղեցիկ օրինակներից մէկը:*

*Վերջապէս, բաւական է մի հայեացք ձգել ճեմարանի շրջանաւարտների անուանացանկի վրայ, որ բերուած է յաւելուածում, համոզուելու համար, թէ որքա՜ն հարուստ եւ արդիւնաւէտ հունձք է տուել ճեմարանը հայ ժողովրդին վաղ ժամանակներից սկսած:*

*Տարակոյս չունենք, որ երբ մի օր գրուեց Լազարեան ճեմարանի ընդարձակ ու լրիւ պատմութիւնը, ապա նա կը կազմի հայ ժողովրդի վերածնութեան պատմութեան ոսկի էջերից մէկը:*

## ԳԼՈՒԽ Է.

## ԱՇԽԱՐՀԱԲԱՐԻ ՅԱՂԹԱՆԱԿԸ ՃԵՄԱՐԱՆՈՒՄ

*Աշխարհաբարի ու գրաբարի շուրջ մղուած պայքարի պատմութիւն չէ՛, որ անելու ենք. այդ խնդիրը մեր նիւթից դուրս է. մենք սոսկ հակիրճ հայեացք ենք ուզում նետել ճեմարանի այն դերի վրայ, որ նա խաղացել է իր ներսում աշխարհաբարի յաղթա–*

նակի համար, որն այնուհետեւ անդրադարձել է ճեմարանի պատերից դուրս մղուած պայքարի զարգացման ու յաղթանակի վրայ:

Ցաւօք սրտի, այս խնդրի լուսաբանութեան համար էլ պակասում են տեղեկութիւնները, գոնէ մեր ձեռքի տակ եղած աղբիւրների մէջ հազիւ գտանք մի քանի արժէքաւոր տուեալներ:

*

19րդ դարի առաջին 50ամեակում, ինչպէս յայտնի է, գերազանցօրէն իշխել է գրաբարը հայ կեանքի ու գրականութեան մէջ. ճեմարանն այդ ժամանակաշրջանում բացառութիւն չի կազմել: Միայն 60ական թուականներին է, որ աշխարհաբարը հայ կեանքում ստանում է քաղաքացիական իրաւունք, որն եւ ճանաչւում է հանրութեան կողմից:

Լազարեան ճեմարանն իր սկզբնական շրջանում ունեցել է գրաբարի մի շարք ծայրայեղ պաշտպաններ: Այդպիսիք էին՝ Միքայէլ Ծ. Վ. Սալլանթեանը, մագիստրոս Մսեր Մսերեանցը՝ ճեմարանի կրօնուսոյցը, Մկրտիչ Էմինը՝ հայկաբանութեան դասատու:

Սրանք աշխարհաբարին նշանակութիւն չէին տալիս, համարելով այն անմշակ, անկանոն ու գռեհիկ...:

Մսեր Մսերեանցը նոյն իսկ 1854 թ., երբ գրելիս է եղել իր «Յիշատակարանը կենաց եւ գործոց Լազարեան տոհմի», գրել է

այդ Ցիշատակարանը ո՛չ միայն գրաբար լեզուով, այլ եւ հարկ է համարել մի կրքոտ ու խիստ ելոյթ ունենալ աշխարհաբարի դէմ, իր նախաբանի մէջ:

«Ի մատենագրութեանս յայսմիկ՝ — գրում է հեղինակը — զԳրոցն, այն է զհինն, զկանոնաւորն եւ զհարազատն մեր ի կիր արկի բարբառ, եւ ո՛չ զնորն չմչակեալ, խմա՛ զռամկացն՝ զկողմանց կողմանց զԱշխարհիկն անուանեալ՝ ազխազուր (կոշտ) լեզու: Զի որչափ համեղական եւ ազգոյ եւ գեղեցիկ առաջինն է, այնչափ անհամ է վերջինն, թոյլ, ագեղ, անհեթեթ, եւ զուրկ միանգամայն ի կարի կարեւորացն կանոնաց ուղղախօսութեան, որպէս եւ չառք իսկ ո՛չ յաննշանից արանց՝ որ քաջահմուտք լեզուիս ճանաչին, վկայեն անաչառապէս»:

Մկրտիչ Էմինը եւս եղել է գրաբարի համոզուած եւ անզիջող պաշտպան:

«Երբ 1858 թուին, — պատմում է Մ. Էմինի կենսագրութեան մէջ Երուանդ Շահազիզը, — սկսուեց հրատարակուել «Հիւսիսափայլը» եւ ապարէզ իջան գործելու Ս. Նազարեանցը, Մ. Նալբանդեանցը եւ դոցա համախոհները, ներհակ կուսակցութեան կողմն անցաւ Մ. Էմինը, առանց իրան աշխատանք տալու հասկանալու գործի հանգամանքները, առանց յարգելու հակառակորդների կարծիքները եւ ըմբռնելու նոր քարոզիչների ասածների իսկական իմաստն ու զօրութիւնը» (էջ 26):

*Բայց կեանքի բնական զարգացման հրամայականը, ժամանակի ոգին իր ստեղծագործ չունչով ստիպում են հնի ամենակատաղի իսկ պաշտպաններին գլուխ խոնարհել ու բռնել զիջումների ճամբան:*

*Այդպէս էլ եղաւ գրաբարի պաշտպանների հետ....:*

*Դեռ* 1827 *թ. Սալլանթեանը հարկադրուած է լինում հրատարակել իր* «Քերականութիւն գրաբար լեզուի Հայոց նորակարգ ոճով...»:

1850 *եւ ապա* 1861 *թթ. Մսեր Մսերեանցը, տուրք տալով ժամանակի պահանջին, հրատարակում է կրօնի իր* չորս *դասագրքերը նոյնպէս աշխարհաբար լեզուով:*

*Ստեփանոս Նազարեանցի հեղինակութիւնները, լոյս տեսած* 1851 *թ.,* 1853 *թ.,* 1857 *թ. նոյնպէս աշխարհաբար են:*

*Այդ հարկադրանքին գործածել աշխարհաբարը, ամենից առաջ հէնց* ճեմարանի աշակերտներն *էին բերում իրենց օգնութիւնը:*

*Ճեմարանի հիմնադրութեան առաջին իսկ օրուանից աշակերտները, մասնաւորապէս Լազարեանների որդեգիրները, գալիս էին Արեւելեան Հայաստանի խուլ անկիւններից, գիւղերից ու քաղաքներից, երեխաներ, որոնք խօսում էին իրենց գաւառների բարբառով: Այդ ռամիկ երեխաների ներխուժումը Ճեմարան օր ըստ օրէ ուժեղանում էր եւ նրանց թիւը բազմանում: Ճեմարանի դասատուները մատնուած էին անելի՝ երեխա-*

*ները գրաբարը չէին հասկանում...: Եւ ուսուցիչները ստիպուած եղան խօսել նրանց հասկանալի աշխարհաբար լեզուով: Այսպէս հետզհետէ աշխարհաբարը դառնում է ճեմարանի գործածական լեզուն:*

*«Լազարեան ճեմարանում է սկսում մշակուել մի պարզ, հանրամատչելի աշխարհաբար լեզու, — գրում է Լէօն: Սկիզբը դրեց Յովակիմ Լազարեանը. ապա նրա գործը շարունակեցին ճեմարանի ուսուցիչները: Աշակերտները հաւաքւում էին զանազան երկիրներից. ամէն մէկը բերում էր իր երկրի խօսակցական հայերէնը, գաւառաբարբառը: Ուսուցիչները հետեւում էին նրանց խօսակցութիւններին, մաքրում էին լեզուն գաւառաբանութիւններից, օտար բառերից եւ մշակում էին մի հարազատ հայերէն, որ գրաբար չէր, բայց գաւառաբարբառ էլ չէր, այլ բոլոր տեղերից եկածներին հասկանալի մի լեզու [1]»:*

*Մի ուրիշ հեղինակ վկայում է.*

«Լազարեան ճեմարանը հիմնուելով 1815 թ. մի որեւէ 35 տարուայ ընթացքում, այն է՝ 1850 թ. ստեղծել էր իր լեզուն»:

*Այդ լեզուն՝ աշխարհաբարն էր, որ արդէն հաստատել էր ճեմարանում իր տիրապետութիւնը:*

*Ահա եւ մի այլ հեղինակաւոր վկայութիւն՝* Սեդրակ Մանդինեանի *յուշը: Նա ստ—*

---

[1] *Տե՛ս Լէօ, «Ստ. Նազար. կենսագր.», Հ. Ա., էջ* 39:

վորել է ճեմարանում գրեթէ միաժամանակ Սմբատ Շահազիզի հետ:

Ս. Շահազիզը աւարտել է ճեմարանի գիմնազիոնական դասընթացքը 1859—1860 ուս. տ., իսկ Լիկէոնը՝ 1861—1862 թթ.:

Սեդրակ Մանդինեանը աւարտել է ճեմարանի միջնակարգ դասընթացքը՝ երկու տարի ուշ՝ 1862—1863 թթ.:

Երուանդ Շահազիզը Սմբատ Շահազիզի կենսագրականի մէջ առաջ է բերում Սեդրակ Մանդինեանի հետեւեալ յուշը.

«Սեդրակ Մանդինեանը, որ ճեմարանի այդ ժամանակուայ աշակերտներից է եղել, վկայում է, որ աշակերտները սիրելիս են եղել յսել Սմբատ Շահազիզի սահուն եւ «ուռնացած» աշխարհաբար լեզուն, որ իր կանոնաւորութեամբ, իր ճկունութեամբ եւ քաղցրահնչութեամբ, իբրեւ մի նոր չլսուած ու չտեսնուած բան, տարբեր եղածներից, գրաւում, հմայում էր ամէնքին» (տե՛ս Սեդրակ Մանդինեանի յոբելենական նամակը «Սմբատ Շահազիզեանի երեսնամեայ յոբելեանը» գրքի մէջ)»[2]:

Սմբատ Շահազիզը առանձնապէս խոշոր դեր է կատարել աշխարհաբարի մշակման, ինչպէս եւ նրա ժողովրդականացման գործում թէ ճեմարանում եւ թէ ճեմարանից դուրս:

[2] Տե՛ս Եր. Շահազիզ, «Սմբ. Շահազիզի կենսագր.», էջ 24:

«1860 թ., Ս. Շահազիզը — պատմում է Եր. Շահազիզը — աւարտում է Լազարեան ճեմարանի գիմնազիոնական ընթացքը եւ մտնում է Լիկէոն, որը բաղկացած էր երկու դասարաններից եւ կազմում էր ճեմարանի արեւելագիտութեան մասնագիտական եօթներորդ եւ ութերորդ բարձր դասարանները: Այստեղ էլ նա իր գլխաւոր ուշադրութիւնը դարձնում է հայերէնի վրայ, անդադար կարդալով, անդադար կատարելագործուելով գրաբարագիտութեան մէջ եւ հետզհետէ կոկելով, մշակելով իր աշխարհաբար լեզուն, եւ նախապատրաստուելով ու տալով նրան այն ձեւն ու դոյնը, որ մենք յետոյ տեսնում ենք «Լեւոնի վշտի» մէջ[3]»:

Այնուհետեւ, երբ 1873 թ. վախճանւում է Մսեր Մսերեանցը, Ս. Շահազիզն է ստանձնում հայերէնի դասերը բարձր դասարաններում. իր այս պաշտօնում, նա վերացնում է ճարտասանութեան դասաւանդութիւնը, գործածութիւնից հանում Մ. Խմինի եւ Սալլանթեանի քերականութիւնները եւ պատրաստում է, իբրեւ քերականութեան ձեռնարկ, իր սեփական ձեռագիր տետրակը աշխարհաբարի համար[4]: Բացի այս բոլորից, որ գլխաւորն է, նա մտցնում է աշխարհաբարի շարադրութիւնը[5]»:

---

[3] Անդ՝ էջ 23:

[4] Ես լաւ յիշում եմ, որ հէնց այդ տետրակով էլ ես եւ իմ դասընկերներն էինք սովորում 80ական թուականների վերջերքին եւ 90ականի սկիզբներին:

[5] Տե՛ս անդ, էջ 26:

Ինչպէս յայտնի է 1865 թ. է լոյս տեսել նրա «Լեւոնի վիշտը» աշխարհաբար լեզուով, ուր ներբողում է այն, ասելով, որ՝

«Ժամանակակից գրում եմ լեզուով,
Որ ամենայն մարդ կարդայ, հասկանայ...»:

Նոյն պօէմայի երրորդ գլխում նա արդէն հանդէս է գալիս պայքարողի դերում յօգուտ «ժամանակակից լեզուի» եւ պարսաւանքներ ուղղում գրաբարի մոլեռանդ պաշտպանների հասցէին:

Միքայէլ Նալբանդեանի, թէեւ կարճատեւ ուսուցչութեան օրով, կատարած դերը ճեմարանում աշխարհաբարի նկատմամբ եղել է ո՛չ պակաս զօրաւոր: Այդ մասին վերը արդէն յիշատակեցինք:

*

Այսպէս, առանց չափազանցութեան կարող ենք ասել, որ Լազարեան ճեմարանը եղել է Հայոց լեզուի, Հայոց գրականութեան, պատմութեան ու լեզուագիտութեան մի անպաշտօն ակադեմիա — «Մոսկովեան Աթէնք Հայոց»:

Հետեւելով ժամանակի յառաջադէմ ու ազատարար ոգուն, ճեմարանը աշխարհաբար լեզուի խնդրում էլ մեծապէս նպաստել է այն պայքարին, որ տասնեակ տարիներ մղուել է աշխարհաբարի յաղթանակի համար ճեմարանում ու ճեմարանի պատերից դուրս ազգային հասարակական կեանքի մէջ:

Այդ պայքարի մէջ ուրախալին ու ողջունելին, ի դէպ, այն է, որ աշխարհաբարի կողմնակիցներն ու պաշտպանները չհետեւեցին գրաբարի պաշտպանների տգեղ օրինակին եւ երբեք ո՛չ նուաստացրին, ո՛չ ուրացան գրաբարի մեծ արժէքը, նրա լեզուական հարստութիւնը, նրա ճկունութիւնը, նրա կանոնաւորութիւնը, նրա հմայիչ գեղեցկութիւնն ու քաղցրահնչութիւնը:

Աշխարհաբարի յաղթանակը մի անգամ եւս եկաւ ապացուցելու, որ հասարակական կեանքի բնականոն հոլովոյթի ընթացքը անկարելի է փոխել մարդկանց քմահաճոյքով, որ պատմական յառաջադիմութեան անիւը անհնարին է յետ մղել նոյն իսկ ամենաուժեղ անհատների կամքով, որ նա զարգանում է կեանքի մէջ իշխող կոյր ուժերի անդրդուելի հարկադրանքի ներքոյ:

Ժամանակի մտաւորականութեան իմացականութեան աստիճանից է կախուած ըմբռնել ժամանակի ոգին ու պահանջները· ըմբռնել տուեալ հասարակական հաւաքականութեան պատմական զարգացման ոգին եւ ըստ այնմ գործել:

Աշխարհաբարի պաշտպանները, մասնաւորապէս Լազարեան Ճեմարանի պարծանքով կարող են արձանագրել, որ 60ական թուականների Հայոց չքեղ վերածնութեանը ո՛չ միայն անմաս չեն մնացել, այլ եւ բերել են իրենց խոշոր վաստակը:

# ԳԼՈՒԽ Ը.

## ՃԵՄԱՐԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՈՒԹԻՒՆՆ ՈՒ ԴԱՐՁԱԿԱՆ ԿԱԶՄԸ
(1815—1890)

*Ճեմարանը սկզբից ունեցել է միայն գիշերօթիկ աշակերտներ՝ Լազարեանների որդեգիրները. այնուհետեւ ժամանակի ընթացքում ընդունուել են նաեւ երթեւեկներ ու նոր գիշերօթիկներ՝ մասնաւոր նուիրատուների որդեգիրներ եւ կամ սեփական հաշուով սովորողներ:*

*Գիշերօթիկ աշակերտների 9/10րդը եղել են հայ երեխաներ եւ շատ փոքրաթիւ ռուս երեխաներ. այսպէս, օրինակ, 80ական թուականներին, գիշերօթիկ աշակերտների թիւը հասել էր շուրջ 160 հոգու, որոնցից միայն 15 հոգի ռուս երեխաներ էին: Մեծ մասը եկած էին Արարատեան աշխարհից, իսկ մի փոքր մասը՝ Հիւսիս. Կովկասից: Իմ աշակերտութեան ժամանակ կային նաեւ 3 հոգի Պոլսեցի հայ երեխաներ, որոնցից միայն մէկը աւարտեց Ճեմարանն ու համալսարանը, եղաւ բժիշկ եւ մնաց Ռուսաստանում, միւսը՝ 4րդից դուրս եկաւ, իսկ երրորդը՝ ստորին դասարաններից հեռացաւ:*

*Աշակերտների թուի մասին 1815 թ. մինչեւ 1865 թ. չկան սիստեմատիկ տեղեկութիւններ. մի քանի տուեալներ զանազան ժամանակների համար արդէն յիշատակուած են մեր պատմութեան ընթացքին:*

*Հետեւեալ տախտակի վրայ մատնանշուած են աշակերտների թուի մասին տեղեկութիւններ սկսած* 1865 *թ. մինչեւ* 1890 *թ. այդ տուեալները մենք քաղել ենք* «Լազ. ճեմ. 75ամեակը» *հրատարակութիւնից։*

*Այս տախտակից երեւում է՝*

ա. *Որ աշակերտների թիւը աստիճանաբար աճել է եւ այդ աճումը աւելի ուժեղ է եղել* 1872 *թ. յետոյ, երբ ճեմարանը նոր*

Ընդհանուր տախտակ

Լ. ճեմարանի աշակերտների թուի 1865—1890 թթ.

| Ուսումն. տարի | Աշակերտների ընդհանուր թիւը առ մէկն Յունուար | Երթեւեկներ | Գիշերօթիկներ | Հայ լուսաւորչականներ | Որդեգիրներ | Շրջանաւարտներ |
|---|---|---|---|---|---|---|
| 1865/66 | 159 | 13 | 146 | — | 95 | 3 |
| 1866/67 | 153 | 9 | 144 | — | 98 | 11 |
| 1867/68 | 161 | 23 | 138 | — | 94 | 17 |
| 1868/69 | 157 | 25 | 132 | 96 | 97 | 16 |
| 1869/70 | 162 | 22 | 140 | 96 | 94 | — |
| 1870/71 | 156 | 20 | 136 | 97 | 89 | 11 |
| 1871/72 | 177 | 23 | 154 | 104 | 92 | 8 |
| 1872/73 | 183 | 29 | 154 | 101 | 95 | 4 |
| 1873/74 | 223 | 43 | 180 | 114 | 95 | 3 |
| 1874/75 | 234 | 49 | 185 | 132 | 94 | 3 |
| 1875/76 | 241 | 66 | 175 | — | 94 | — |
| 1876/77 | 241 | 63 | 178 | 149 | 94 | 10 |

| Ուսում. տարի | Աշակերտների ընդհանուր թիւը մէկ Յունուար | Երթեւեկներ | Գիշերօթիկներ | Հայ լուսաւորչականներ | Ուղղափառներ | Հետերադաւաններ |
|---|---|---|---|---|---|---|
| 1877/78 | 248 | 67 | 181 | 154 | 93 | 7 |
| 1878/79 | 242 | 65 | 177 | 157 | 92 | 9 |
| 1879/80 | 256 | 69 | 187 | — | 88 | 9 |
| 1880/81 | 246 | 64 | 182 | 171 | 91 | 8 |
| 1881/82 | 240 | 63 | 177 | 168 | 90 | 11 |
| 1882/83 | 216 | 47 | 169 | 149 | 94 | 21 |
| 1883/84 | 228 | 72 | 156 | 149 | 96 | 12 |
| 1884/85 | 246 | 74 | 172 | 156 | 98 | 12 |
| 1885/86 | 242 | 71 | 171 | 156 | 96 | 11 |
| 1886/87 | 246 | 84 | 162 | 152 | 100 | 10 |
| 1887/88 | 259 | 95 | 164 | 160 | 98 | 9 |
| 1888/89 | 275 | 109 | 166 | 159 | 96 | 6 |
| 1889/90 | 273 | 117 | 156 | 158 | 101 | 7 |
| ընդամենը՝ | 5464 | 1382 | 4082 | 2778 | 2364 | 218* |

*Կանոնադրով անցել է ժողովրդ. լուսաւորութեան միջնակարգ ու բարձրագոյն դպրոցների շարքը.*

բ. *Որ գիշերօթիկ աշակերտները միշտ կազմել են մեծամասնութիւն երթեւեկների համեմատութեամբ*:

գ. *Որ հայ երեխաները կազմել են ճեմարանի ամբողջ աշակերտութեան* 60—75%*ը*

* *Մի այլ տեղում մատնանշուած է՝* 224:

այդ է պատճառը, որ Լազարեանները միշտ համարել են, որ ճեմարանը հայկական դպրոց է, թէեւ դպրոցական բոլոր առարկաները աւանդուել են ռուսերէն լեզուով, բացի Հայոց լեզուից, Հայոց պատմութիւնից ու կրօնից:

դ· Որ վերջին 25ամեակում ճեմարանը տուել է տարեկան շուրջ 9 շրջանաւարտներ, մինչդեռ նախկին 50ամեակում նրանց թիւը եղել է շատ աւելի բարձր[1]: Այս երեւյթը բացատրւում է նրանով, որ 1872 թ. նոր Կանոնադրով կրթական ծրագրի մէջ մտցրուած էր երկու հին լեզուների՝ լատիներէնի եւ յունարէնի դասաւանդութիւնը, որոնք չափազանց դժուարացրել էին աշակերտների ուսման գործը եւ նուազացրել ընդհանուր յառաջադիմութեան տոկոսը. շատերը ստիպուած էին լինում կէս ճամբին մնալ եւ հեռանալ դպրոցից. քչերն էին հասնում մինչեւ 8րդ դասարանն եւ աւարտում...:

Մենք շատ լաւ յիշում ենք, որ երբ 1887 թ. մտանք ճեմարանի առաջին դասարանը, այդ դասարանում կայինք 57 հոգի,

---

[1] Թէեւ առաջին 50ամեակում ճեմարանաւարտների թիւը յայտնի չէ իւրաքանչիւր ուսումն. տարու համար, բայց գիտենք, որ 1848/49ից մինչեւ 1864/65 ուս. տարիների ընթացքում՝ այսինքն 17 տարուայ մէջ ճեմարանը տուել է 399 ուսումնաւարտներ, այսինքն՝ միջին հաշուով տարեկան 24 հոգի եւ այդ այն ժամանակներում, երբ աշակերտութեան թիւը շատ աւելի պակաս է եղել, քան հետագայում: Այսպէս, օրինակ, 1825 թ. ճեմարանը ունեցել է միայն 75 աշակերտ, 1863 թ. — 136, իսկ 1865 թ. — 159:

բայց երբ 1895 թ. մենք աւարտեցինք, 8րդ աւարտական դասարանը, հասել էին միայն 17 հոգի, եւ դա համարւում էր շրջանաւարտների մեծ թիւ:

*

Ճեմարանի ուսուցչական եւ վարչական կազմերի մասին չկան տեղեկութիւններ մեր ձեռքի տակ եղած աղբիւրներում, բացի այն մի քանի հակիրճ վկայութիւններից, որոնք վերաբերում են՝ Մկրտիչ Էմինին, Սմբատ Շահազիզին, Միքայէլ Նալբանդեանցին Բանանեանին, Միլլէրին, Կոստանեանին եւ որոնք արդէն վերը յիշատակուած են:

Սկզբնական շրջանում Ճեմարանի ընդհանուր վերահսկողութիւնը ստանձնել էին՝ Հոգաբարձուն եւ նրա օգնականները, որոնք կրում էին զանազան անուններ զանազան ժամանակներում՝ ռեկտոր, կոմանդիր, վերատեսուչ եւ այն: Հետագայում միայն վերջնականապէս հաստատւում են՝ վերատեսուչ (դիրեկտոր) կոչումը:

Մ. Էմինը եղել է առաջին տեսուչը՝ 1850 թուից սկսած.

Առաջին վերատեսուչը եղել է գնդապետ Ձելեոնին, եթէ չհաշուենք Խաչատուր Լազարեանին, որ միաժամանակ եղել է Հոգաբարձու եւ վերատեսուչ:

Արդ, յիշատակենք միայն վարչական մարմինների կազմերը ժամանակագրական կարգով:

## Գլխաւոր կառավարչապետներ

1. Կոմս Ալեքսէյ Անդրէեւիչ Արակչէեւ՝ 1824—1827 թթ.։
2. Կոմս Ալէքսանդր Խրիստոֆորովիչ Բենկենդորֆ՝ 1828—1844 թթ.։
3. Կոմս Ալեքսէյ Ֆեոդորովիչ Օրլով՝ 1844 հոկտ. 12ից—1860 թ.։
4. Գաղտնի խորհրդական Վլադիմիր Պետրովիչ Բուտկով՝ 1860—1869։
5. Կոմս Դիմիտրի Անդրէեւիչ Տոլստոյ՝ 1870—1872 (միաժամանակ ժողովրդ. լուսաւ. նախարար)։

## Վերատեսուչներ։

1. Խաչատուր Յովակիմեան Լազարեան՝ 1826—1849 թթ.։
2. Գնդապետ Ջելեանի՝ 1850—1856։
3. Նիկոլայ Դաւիդովիչ Դելեանով՝ 1856—1861։
4. Ներգործական Խորհրդական Եանուար Միխայլովիչ Նէվէրով՝ 1861—1864։
5. Պրոֆ. Բարոն, Իվան Կոնդրատեւիչ՝ 1864—1868։
6. Գ. Քանանեան՝ վերատեսչի պաշտօնակատար եւ միաժամանակ տեսուչ՝ 1868—1869։
7. Նիկոլայ Դաւիդովիչ Դելեանով՝ 1869—1881։
8. Գէորգ Քանանեան՝ 1881—1897։

9· Պրոֆ. Վսեվոլոդ Ֆեոդորովիչ Միլլեր՝ 1897—1911 :
10· Պրոֆ. Պաւել Վասիլեւիչ Գիդուլեանով՝ 1911—1917 :

Տեսուչներ :

1· Մկրտիչ Էմին՝ 1850—1861 :
2· Գէորգ Քանանեան՝ 1861—1881 :
3· Էյվէնշտէյն՝ մինչեւ 1897 թ. :
4· Պրոֆ. Գրիգոր Խալաթեան՝ } 1897—1911 թ. :
5· Գասպարեան՝ } 1897—1911 թ. :
6· Իսահակ Թանդեան (Թանդով)՝ } 1897—1911 թ. :
7· Կարապետ Կոստանեան՝ 1911—1917 թթ.

Պատուակալ հոգաբարձուներ :

1· Իշխան Սիմէոն Դաւիդովիչ Աբամելիք-Լազարեան :
2· Իշխան Սիմէոն Սիմէոնովիչ Աբամելիք-Լազարեան :

*

Աշակերտութիւնը օժտուած է եղել դպրոցական անհրաժեշտ պիտոյքներով ու կրթական միջոցներով :

Մատենադարանում եղել են՝ առ 1863 թ.՝

ա· Գրքեր հայերէն, ռուսերէն, գերմաներէն, ֆրանսերէն եւ միւս եւրոպական լեզուներով, ինչպէս եւ արեւելեան լեզուներով . . . 5·256

հատոր

բ. Ձեռագիրներ ռուսերէն, հայերէն եւ արեւելեան լեզուներով . . . 227

Այդ 227 ձեռագիրներից ռուսերէն եւ արեւելեան լեզուներով՝ 85, մնացեալը՝ հայերէն:

գ. Ֆիզիքայի կաբինետում գտնուող գործիքներ . . . . . . . . 164

դ. Հանքաբանական կաբինետում . . 4·772

ե. Հին դրամների հաւաքածոյ (բաղկացած ոսկի, արծաթէ զանազան հին եւ նոր դրամներու մեդալներով) . . . . . . . . . . 2·421

զ. Աշխարհագրական քարտէզներ, ատլասներ, դիմանկարներ, նկարներ եւ այլն . . . . . . . 1·186

է. Երկրագունդներ, մեծ ու փոքր . 6·000

Մատենադարանի գրացուցակը 1861 թ. կազմել է յատուկ յանձնախումբ, բաղկացած 3 հոգուց, որոնցից մէկը եղել է՝ վերակացու, Մանուկ Սաղաթեանը, Լերմոնտովի «դեւ» պօէմայի անզուգական թարգմանիչը:

*

Ճեմարանի գլխաւոր գեղեցիկ ու ճաշակաւոր մուտքի դիմացի պատից կախուած էին ոսկեգոյն շրջանակների մէջ, կապոյտ գոյնով ներկուած մեծ տախտակներ, որոնց վրայ ոսկեզօծ տառերով գրուած էին Ճեմարանի այն շրջանաւարտների անուն-ազգանունները, որոնք արժանացել էին ոսկէ եւ արծաթէ մեդալների:

*Այդ տախտակների վրայ առ 1862 թուականը արձանագրուած են՝ 125 անուններ։*

*Այդ անունների մէջ կան հանրածանօթ անձանց անուններ, ինչպիսիք են՝ Յակոբ եւ Դաւիթ Արղանեանները, Սիմէոն Սուլթանշահ, Յովսէփ Զէրքէզեան, Պետրոս Շանշեան, Գաբրիէլ Խատիսեան, Սերովբէ Պատկանեան, Կարապետ Եզով, Զարմայր Մսերեանց, Սմբատ Շահազիզ եւ այլն։*

*

*Մի քանի խօսք եւս գիշերօթիկ աշակերտների ներքին կեանքի մասին, հիմնուելով մեր յուշերի վրայ, երբ եղել ենք ութը (8) տարի գիշերօթիկ աշակերտ ճեմարանի գիմնազիոնական բաժնում (1887—1895 թթ.), իսկ հետագայում՝ վերակացու, դաստիարակ եւ ուսուցիչ՝ 1909—1918 թթ.։*

*Գիշերօթիկ աշակերտները ապրել են փակ կեանքով ճեմարանի չորս պատերի մէջ, գրեթէ առանց լոյս աշխարհ տեսնելու...։*

*Սառնալով մնունդ բաւարար չափով, հագուստ, ուսում, աշակերտութիւնը կտրուած է եղել մարդկային հասարակութիւնից...։ Նրա միակ մխիթարանքը եղել է ամենօրեայ զբօսանքը դասերից յետոյ, վերակացուների հսկողութեան ներքոյ. զոյգ-զոյգ գնում էինք զբօսանքի գրեթէ միշտ միեւնոյն փողոցներով. հագուստի դէպքերում էր փոխում այդ մարշրուտը. զբօսանքը տեւում էր մի ժամ։*

Մեծ մխիթարանք էր աշակերտութեան համար, երբ տօն կամ կիրակի օրերին գնում էինք թատրոն...: Մեր միապաղաղ առօրեայ կեանքի մէջ այդ այցելութիւններն էին, որ մտցնում էին լուսոյ ճառագայթ...:

Մոսկուայի Կորշի թատրոնը, որ եղել էր ճեմարանի նախկին աշակերտ, ամէն կիրակի օր առաւօտեան, երբ ներկայացւում էին պիեսներ աշակերտութեան համար, ուղարկում էր 30—40 հատ ձրի տոմսեր· նոյնը անում էին Մոսկուայի երկու կայսերական թատրոնները արքայական տօների ժամանակ:

Աշակերտութեան օրուայ կեանքի ժամերը դասաւորուած ու սահմանուած էին՝ թէյի նախաճաշի, ճաշի, դասերի, դասերի պատրաստութեան, քնելու ու խաղալու համար:

Ամառուայ արձակուրդներին աշակերտներին տանում էին ամարանոց՝ ամէն տարի միեւնոյն գիւղը՝ Ձիլի, եւ միեւնոյն ամարանոցը··· բարեբախտաբար, ամարանոցը գտնւում էր մեծահարուստ Ծերպուտինի հսկայ անտառի կողքին· յաճախ էինք գնում այդ անտառը սունկ կամ ելակ հաւաքելու: Հեռու չէր եւ Մոսկուա-գետակը, ուր ճեմարանը ունէր սեփական փայտէ լողարանը· լաւ եղանակներին, ճաշից առաջ, գնում էինք լողանալու, որ մեզ մեծ հաճոյք էր պատճառում:

Բախտաւոր էին այն գիշերօթիկ աշակերտները, որոնք ամառուայ արձակուրդներին մեկնում էին իրենց ծննդավայրերը, իրենց ծնողների մօտ, իսկ ուսումն․ տարուայ ընթացքում Մոսկուայում ունէին ազգականներ կամ մօտիկ ծանօթներ։ Ամէն շաբաթ երեկոյ կամ կիրակի ու տօն օրերին այդպիսիները արձակուրդ էին ստանում եւ այդպիսով հնարաւորութիւն էին ստանում, այսպէս ասած աշխարհ դուրս գալու, մարդ տեսնելու, նոր տպաւորութիւններ ստանալու։

Գիշերօթիկ երեխաների մասնաւոր նամակագրութիւնը ազատ էր ամէն հսկողութիւնից ու քննութիւնից։

Միայն երբ դրամ էին ստանում, տեսուչը այդ դրամական նամակները աշակերտի ներկայութեամբ բաց էր անում, նամակը տալիս իրեն, իսկ դրամը պահում եւ ապա ամէն շաբաթ օր․ փոքրիկ գումարներով տալիս՝ սկսած 20կոպէկից․․․։

Բացի գլխաւոր, հիմնական մատենադարանից, ճեմարանը ունէր նաեւ գրադարան աշակերտութեան համար՝ հայերէն եւ ռուսերէն ընթերցանութեան գրքերով։

Աշակերտներից մէկն էր վարում այդ գրադարանը։ Ամէն օր դասերից յետոյ գրադարանից տրւում էին գրքեր։

Պէտք է ասել, որ հայ երեխաների մէջ ընթերցասիրութիւնը շատ թոյլ էր, մինչդեռ

այն մի քանի ռուս գիշերօթիկ երեխաների ձեռքից գիրքը վար չէր դրում . . . :

Կիրակի եւ տօն օրերին աշակերտները վերակացուների առաջնորդութեամբ զոյգ-զոյգ գնում էին Ս. Խաչ եկեղեցին, որ գտնւում էր ճեմարանի դիմաց նոյն Հայոց փողոցի վրայ:

Կարգապահական խիստ պատիժներ չկային՝ անկիւն կանգնեցնել, արձակուրդից զրկել, իսկ ծայրայեղ դէպքերում առանձնացնել 1—2 ժամով մի յատուկ սենեակում (Կարցեր):

Ճեմարանը ունէր փոքրիկ հիւանդանոց, իր Ֆելդշերով ու գթութեան քոյրով: Ամէն օր երեկոյեան, առաջին սերտողութիւնից յետոյ, Ֆելդշերը անհրաժեշտ դեղօրայքով գալիս էր եւ ընդունում երեխաներին, որոնք որեւէ կարիք էին ունենում: Ծանր հիւանդներին տեղաւորում էին հիւանդանոցում, բժշկի հսկողութեան ու խնամքին ենթակայ:

Ազատ ժամերին աշակերտները խաղում էին ճեմարանի ընդարձակ պարտէզում, ամառը, իսկ ձմեռը՝ մարզանքի համար կառուցուած մեծ սրահում՝ Մանուկ Բէյի սրահում:

Աշակերտութեան մէջ սովորութիւն կար, որ յառաջադէմ աշակերտները կամ բարձր դասարանների աշակերտները օգնում էին ստորին դասարանների թոյլ աշակերտներին դասեր պատրաստելու մէջ: Ունեւոր աշակերտների ծնողները երբեմն վարձատրում

էին իրենց թոյլ երեխայի հետ պարապող աշակերտին:

## ԳԼՈՒԽ Թ.

### ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆ ԳՈՐԾԸ ՃԵՄԱՐԱՆՈՒՄ

Ի՞նչ վիճակում է եղել մանկավարժական գործը ճեմարանում, — այս հարցումին դժուար է փոքր ի շատէ լրիւ պատասխան տալ, քանի որ գրեթէ տեղեկութիւններ չկան մեր ձեռքի տակ եղած աղբիւրներում:

Անշուշտ, գոյութիւն չի ունեցել որեւէ մանկավարժական սիստեմ, մանաւանդ սկըզբնական շրջաններում, որ կիրառուած լինէր ամբողջ ճեմարանում, լինէր ընդհանուր ու պարտադիր բոլոր ուսուցիչների համար: Նոյն իսկ մեր աշակերտութեան օրերին 80ական թուականների վերջերքին եւ 90ական թուականների սկզբում, երբ վաղուց արդէն ճեմարանը մտած էր ժողովրդական լուսաւորութեան նախարարութեան դպրոցական ցանցի մէջ, մի ընդհանուր մանկավարժական սիստեմ գոյութիւն չունէր. իւրաքանչիւր ուսուցիչ վարում էր իր դասաւանդութիւնը իր ըմբռնած ձեւով, իր փորձառութիւնից դուրս բերած հասկացողութեան համաձայն...:

Կան կցկտուր տեղեկութիւններ միայն կարգապահութեան խնդրի մասին:

Կարելի է որպէս մի ընդհանուր դիտողութիւն ասել, որ մինչեւ 60ական թուական-

ների մեծ բարենորոգողական ժամանակաշրջանը, պետական դպրոցներում իշխել են չատ խիստ կարգապահական կարգեր եւ որ ճեմարանը բացառութիւն չի կազմել այդ տեսակէտից: Յայտնի է, օրինակ, որ ծեծը համարուել է թոյլատրելի միջոց պահպանելու դպրոցում կարգապահութիւն, եթէ չխօսենք ժամանակաւոր առանձացման կամ այլ պատժական միջոցների մասին:

Տեղեկութիւնները ասում են, որ ճեմարանում էլ հետեւել են նոյն կարգապահական խիստ միջոցներին, թէեւ ճեմարանի հիմնադիրների միչտական ցանկութիւնն է եղել, որ ճեմարանը իր որբ ու չքաւոր երեխաների համար, հեռաւոր երկիրներից եկած ու զրկուած ծնողական խնամքից ու գուրգուրանքից, լինի մի ընտանեկան օջախ:

Յայտնի է, օրինակ, Խաչատուր Լազարեանի մարդասիրական հայեացքները մանկավարժական գործի նկատմամբ:

Իր մի նամակի մէջ, գրուած Եփրեմ կաթողիկոսին դեռ 1811 թ., հետեւեալ կարծիքն էր նա յայտնել Հայոց դպրոցներում կիրառելիք ուսման մեթոդի մասին.

— Դպրոցում ուսուցումը պիտի լինի՝ «Համեստ, թարց (առանց) խիք ցասման, բարկութեան եւ զանից պատժոյ հմտեցուցանել, զի բարկութիւն, սպառնալեօք ահացուցանելն եւ խիստ պատժելն բարբարոսական է գործ, միչտ խռովեցուցիչ եւ յուսահա-

տեսուցիչ աշակերտի, նմանապէս եւ տապա-կութիւն ուսուցչին [1]»:

Զնայած Լազարեանների մարդասիրական այս ոգուն, ճեմարանում կիրառուել են կար-գապահական խիստ միջոցներ:

Եր. Շահազիզը, Մ. Էմինի կենսագրու-թեան մէջ պատմում է, որ նրա տեսչութեան օրօք (1850—1860) գանակոծութիւնը կիրա-ռուելիս է եղել, որպէս մի միջոց պահպա-նելու ճեմարանում կարգապահութիւնը:

— «Պարզ ու ճիշտ է եւ այն, — գրում է Եր. Շահազիզը, — որ. Մ. Էմինը իբրեւ դաստիարակ եղել է չափից դուրս ճշտապահ եւ խստապահանջ, որի պատճառով եւ իր տեսչական գործունէութեան մէջ նա բազմա-թիւ եւ խոշոր անբաւականութիւնների եւ անախորժութիւնների պատահել...: Նրա տեսչութեան օրով, օրինակի համար, գանա-կոծութիւնը, որ այն ժամանակները ուսում-նարանական օրէնքով թոյլատրուած մանկա-վարժական խրատական միջոցներից մէկն է եղել, չափազանց իշխող դեր է կատարել Լազարեան ճեմարանում: Պատմում են, որ նա համարեա միշտ ներկայ գտնուելով աշա-կերտներին գանակոծելու գործողութեան, սովորութիւն է ունեցել յաճախակի խրա-խուսել զարկողներին, «Бейте, армянская кожа толста!» (= Զարկէ՛ք, հայի կաշին հաստ է) խօսքերով»:

---

[1] Տե՛ս Լէօ, «Պատմ. Եր. Թեմ. դպրոցի», էջ 92:

Եթէ ի նկատի առնելու լինինք նաեւ Սմբատ Շահազիզի հետեւեալ կարծիքը Մ. Խմինի մասին, թերեւս, Եր. Շահազիզի վերյիշեալ պատմութիւնը Խմինի խստապահանջութեան մասին չհամարուի չափազանցութիւն, ինչպէս առաջին հայեացքից թւում է:

«Խմինը — ասում է Սմբ. Շահազիզը, — մի պաղարիւն եւ սառնասիրտ մարդ էր. նա կարծես թէ ծանօթ չէր զգացմունքների աշխարհի հետ. նա, կարելի է ասել, աւելի զգում էր խելքով, քան թէ սրտով: Այս պատճառով նա միշտ ծանրաբարոյ եւ անյողդողդ երեւելով, իւր աշակերտներին ահ ու երկիւղ էր ազդում, քան թէ սէր ու համակրութիւն, մի յատկութիւն, որ մանկավարժութեան ասպարէզում չի կարող լինել այնքան բեղմնաւոր ու նպատակայարմար: Խմինի մասին առհասարակ ասում են, որ նա իւր ուսուցութեան ժամանակ եղել է բիւրոկրատ եւ Փորմալիստ, բայց այդ ուղիղ չէ. մի այդպիսի կարծիք առաջացել է նրա բնաւորութեան յիշեալ գանդուածից, որ ամէն տեղ եւ ամենից դիտէ խստիւ պահանջել կարգապահութիւն եւ մի չնչին զանցառութիւնը, որ այնքան սեփական է մանուկ սերնդի յարափոփոխ հոգեկան երեւոյթներին, ենթարկում է երբեմն անարժան պատիժների: Այսպիսի դէպքեր շատ են պատահել Խմինի վարչութեան շրջաններում: Խմինը ապրել է

մի ժամանակ, երբ որ և է բարի խառնուածքով մարդը պիտի լինէր խաստապահանջ և անագորոյն, ինչպէս և ներշնչում էր Նիկոլայեան ռեժիմը[2]»:

60ական թուականներին, երբ կործանուած էր ու վարկաբեկուած Նիկոլայ Ա. բռնապետական ռեժիմը, երբ Ռուսաստանում ծնունդ առան ազատատենչ և հումանիտար գաղափարները, երբ հասարակական կեանքը վերից վար բարեփոխման ճամբու վրայ էր, երբ հասարակական կեանքի մթնոլորտը խտացած էր մի կողմից գերմանական փիլիսոփայութեան առաջաւոր գաղափարներով, միւս կողմից 1848 թ. Փետրուարեան յեղափոխութեան ազդեցութեան տակ էր գտնւում ժամանակի յառաջադէմ մտաւորականութիւնը, որի հումանիտար գաղափարների քարոզչութիւնը ամենից առաջ թափանցել էր համալսարանները ու ապա նաև միւս դպրոցները, — բնականաբար փոխուեցին և մանկավարժական հայեացքներն ու կարգապահական մեթոդները:

Արդէն պահանջւում էր մեղմ ու մարդասէր վերաբերմունք դէպի աշակերտութիւնը, ներողամտութիւն հանդէպ մանուկ սերունդի բնական զանցառութիւններն ու չարութիւնները: Տիրում էր այն համոզումը, որ մեղմութեամբ, բարութեամբ, ներողամ-

---

[2] Տե՛ս Եր. Շահազիզի, «Սմբ. Շահազիզի կենսագրութիւնը», էջ 16—17:

տութեամբ, անյիշաչարութեամբ կարելի է դաստիարակչական գործում հասնել շատ աւելի մեծ դրական արդիւնքների, քան խստութիւններով:

Լազարեան ճեմարանն էլ ունեցաւ իր ներկայացուցիչը այդ մարդասիրական հայեացքների մանկավարժական գործում ի դէմս նոր վերատեսչի՝ Պ. Նէվէրովի (1861—1864):

Նէվէրովի մարդասիրական ընթացքին այնուհետեւ հետեւել են Գէորգ Քանանեանը, մանաւանդ իր վերատեսչութեան օրօք, ուսուցիչ Սմբատ Շահազիզը, վերատեսուչ Վս. Միլլէրը եւ այլն:

Մեր աշակերտութեան տարիներին՝ 1887—1895 թթ. Գէորգ Քանանեանը վերատեսուչ էր, որի օրօք ո՛չ միայն ծեծը երբեք չէր կիրառուել, այլ եւ իշխել է չափազանց մեղմ ու համբերատար մթնոլորտ:

Մենք կարող էինք յականէ անուանէ յիշատակել դէպքեր, երբ եղել են չափազանց չար ու անհանգիստ երեխաներ, որոնք, անտարակոյս, մի ուրիշ վերատեսչի օրօք չէին հանդուրժուի դպրոցում, բայց որոնք այնուամենայնիւ շարունակեցին իրենց ուսումը, աւարտեցին ճեմարանը, համալսարանը եւ եղան հասարակութեան օգտաւէտ անդամներ՝ մէկը որպէս իրաւաբան, միւսը որպէս բժիշկ եւ այլն:

Նոյն բարեսիրտ, համբերատար ու վեհանձն ոգին շարունակուեց նաեւ Քանանեանի յաջորդի՝ Պրոֆ. Վ. Միլլէրի օրօք, որ մի տիպիկ արիստոկրատ էր, բարեհամբոյր բնաւորութեամբ, իսկական հումանիստ:

Սակայն իրերի այս վիճակը խախտուեց երբ Պրոֆ. Միլլէրից յետոյ, 1911 թ. վերատեսչի պաշտօնը ստանձնեց Պրոֆ. Պաւել Վասիլեւիչ Գիդուլեանովը, իսկ տեսչի պաշտօնի համար, տեսուչ Իսահակ Թանգեանից յետոյ հրաւիրուեց հայագէտ Կարապետ Կոստանեանը:

Երկուսն էլ չոր ու ցամաք բիւրոկրատներ, երկուսն էլ խորթ էին ճեմարանին ու նրա գեղեցիկ աւանդներին...:

«Յայտնի գիտնական, լեզուաբան, պատմաբան եւ արեւելագէտ Պրոֆ. Վսեվոլոդ Միլլէրից, նախկին վերատեսչից յետոյ, — գրում է Արսէն ար. քահ. Սիմէոնեանցը «Հայրենիք» ամսագրում[3], — եկել էր նրան փոխարինելու Մոսկուայի կայսերական համալսարանի եկեղեցական իրաւունքի Պրոֆ. Պ. Վ. Գիդուլեանովը, մի ըստ ամենայնի սահմանափակ ընդունակութեանց եւ պատրաստութեան տէր անձ, իր բարոյական դիմագծով չափազանց յեղյեղուկ, իր քաղաքա-

---

[3] Հայրենիք ամսագիր, 1947, Թիւ 3. Մայիս-Յունիս, էջ 104:

կան հայեացքներով սեւ հարիւրեակային, եւ ուրեմն դէմ բոլոր Ռուսիոյ հպատակ փոքր ազգերուն, նաեւ հայերուն»:

Այս վկայութիւնը միանգամայն ճիշտ է ու համապատասխան իրականութեան:

Իսկ Կարապետ Կոստանեանի մասին մենք մեր յուշերի մէջ գրել էինք նոյն «Հայրենիք» ամսագրում (1946 թ. մարտ–ապրիլ համարում) հետեւեալը.

«Կարապետ Կոստանեանի տեսչութեան օրօք ճեմարանի աշակերտների առօրեայ կեանքը վերածուեց ցարական օրերի զորանոցի...: Լինելով մինչեւ ուղն ու ծուծը բիւրոկրատ՝ նա վերացրեց նաեւ այն գեղեցիկ ու իմաստալից աւանդութիւնը, որ թողել էր նախկին վերատեսուչ հանգուցեալ Թանանեանը եւ որին հետեւել էր Պրոֆ. Միլլերը: Թանանեանը միշտ խիստ հակառակում էր եւ թոյլ չէր տալիս հայ գիշերօթիկ աշակերտներին արտաքսել ճեմարանից, եթէ նոյն իսկ նրանք աչքի էին ընկնում իրենց չարութեամբ եւ ուսման մէջ քիչ յաջողակ էին, համարելով որ նման խստութիւնները հակասում են ճեմարանի հիմնադիրների թողած մարդասիրական աւանդներին:

«Կ. Կոստանեանը օտար էր Լազարեանների աւանդներին եւ չափազանց ինքնուրոյն իր մանկավարժական ըմբռնումների մէջ: Եւ առանց մի վայրկեան իսկ տատանուելու, նա առաջ էր տանում դպրոցական կարգա-

պահութեան նկատմամբ իր ունեցած խստապահանջ հասկացողութիւնները ու այդպիսով խափանում ճեմարանի դարաւոր մարդասիրական աւանդները...:

«Կ. Կոստանեանը հայ երեխաներին արտաքսում էր ամենափոքր չարութիւնների ու կոպիտ արտայայտութիւնների համար եւ այդ անում էր առանց խորհրդակցելու դաստիարակ-վերակացուների հետ կամ մանկավարժական ժողովի համաձայնութիւնն առնելու, միանգամայն ինքնիշխան կերպով...:

«Նա կանչում էր երեխային, պատուիրում նրան հաւաքել իր իրեղէնները եւ ապա դրամ տալիս ծառային երեխայի ճանապարհածախսի համար եւ ծառայի հետ ուղարկում կայարան, որն եւ ճամբու էր դնում երեխային դէպի իր ծննդավայրը...:

«Երեխաների արտաքսումը ճեմարանից վերջին տարիներում ուղղակի համաճարակի բնոյթ էր ստացել...»:

1917 թ. հոկտեմբերեան յեղափոխութիւնը վերջ տուեց վերատեսչի ու տեսչի պաշտօնավարութեան, ինչպէս եւ իր՝ ճեմարանի գոյութեան, որ շարունակուեց միայն մինչեւ 1917—1918 ուսումն. տարուայ վերջը: 1918 թ. աշնանը ճեմարանը վերածուեց «Ս. Հայաստանի Հայ Մշակոյթի տան...»:

## ԳԼՈՒԽ Ժ.

### ԱՐՁԱՆ Ի ՅԻՇԱՏԱԿ ՃԵՄԱՐԱՆԻ ՀԻՄՆԱԴԻՐՆԵՐԻ

*Ճեմարանի պարտէզում բարձրանում է մի բարձր բուրգաձեւ արձան, որ կառուցուած է ի յիշատակ նրա հիմնադիրների եւ սրանց ընտանիքների մի քանի անդամների:*

*Արձանը բուրգի ձեւ ունի՝ բարձրութիւնը՝ 30 կանգուն. շինուած է թուջից (չուգունից) եւ կշռում է՝ 1000 փութ. ծախսուած է՝ 15·000 ռ. թղթադրամ:*

*Բուրգի վրայ քանդակուած են հիմնադիրների մարմարէ կիսանդրիները:*

*Արձանի վրայ կան մի չարք մակագրութիւններ հայերէն եւ ռուսերէն լեզուներով՝ արձակ եւ չափածոյ: Ռուսերէն բանաստեղծութիւնների հեղինակն է՝ Մոսկուայի համալսարանի Պրոֆ. Մերզլեակովը, իսկ հայերէն մակագրութիւններն ու ոտանաւորները յօրինուած են Ճեմարանի աշակերտների կողմից:*

*Առաջ ենք բերում միայն մի քանիսը, քաղելով Մ. Մսերեանցի «Յիշատակարան»ից եւ Պրոֆ. Զինովեւի գրքից:*

*Բուրգի առաջեւի մասում, որը նայում է դէպի Ճեմարանը, վերեւում գրուած է ռուսերէն՝*

«Добродетель бессмертна!» («Առաքինութիւնն անմահ է»)։

*Արձանի առաջևի կողմը, որ նայում է դէպի ճեմարանի շէնքը՝ Հարցաքննութեան դահլիճը* (Актовая зала), *ունի հետևեալ մակագրութիւնը.*

«ՏԱՃԱՐՍ ԱՅՍ ԳԻՏՈՒԹԵԱՆ ԿԱՌՈՒՑԵԱԼ Է ՅԱԽՈՒՐՍ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ԿԱՅՍԵՐ ԱՂԷՔՍԱՆԴՐ Ա·Ի ՅԱՄԻ 1815, Ի ՄԱՅԻՍ 1»։

«ՆԻԿՈՂԱՅՈՍ Ա· ԿԱՅՍՐ ՊԱՐԳԵՒԵԱՑ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԼԵԶՈՒԱՑ ՃԵՄԱՐԱՆԻՆ ԼԱԶԱՐԵԱՆՑ ԶԱՄԵՆԱՅՆ ԻՐԱՒՈՒՆՍ ԵՒ ԱՐՏՕՆՈՒԹԻՒՆՍ, ՇՆՈՐՀԵԱԼՍ ԼԻՑԷՅԻՑ, Ի 10 ՄԱՅԻՍ Ի 1848 ԱՄԻ»։

*Արձանի աջ կողմում, Յովհաննէս Լազարեան Լազարեանցի պատկերի ներքևում՝*

«Դասեցի ի կաճառ շողշողուն աստեղաց
Անադօտ արուսեակն լոյս ի յազգ Հայկազանց.
Գերապանծն Յովհաննէս փառք իւրոց Հայրենեաց
Դաբնազարդ ճեմեցէ յաղթական կամարաց»։

«Բարելի շառաւիղ յարմատոց Դիւցազանց,
Որդեգիր մօր քաղաքի Ռուսիոյ սահմանաց,
Յանձանձիչ տղայոց հայրազուրք անմոռաց
Ճշմարիտ հաստուցող իւր զպարտ հայրենեաց»։

*Արձանի ձախ կողմում, Յովակիմ Լազարեան Լազարեանցի պատկերի ներքեւում՝*

«Ազգաշէն գործունեայ դու իշխան վեհա-
պանծ,
Մեք թոթովքս ի բարբառ պակասիմք ի
մտաց :
Զարթիցէ Հոմերոս պարագլուխն հազներ-
գուաց .
Ուսուցէ ներբողել վայելուչ ըստ ար-
դեանց» :
«Բարունակ դու չքնաղ ի տոհմէ քաջազանց
Հայկազեան գըրոհիս ես պսակ պարծա-
նաց :
Անմոռաց կատարիչ զպատուէր կտակաց .
Բարձրացար ի պատիւ, եւ ի փառս հայրե-
նեաց» :

*Արձանի ետեւի կողմում, Յովակիմ Լազարեանի ամուսնու՝ Աննա Սարգսեան Լազարեանցի եւ նրա որդու Յարութիւն Յովակիմեան Լազարեանցի՝ թիկնապահ զօրքի գնդապետի եւ ապետի՝ պատկերների ներքեւում՝*

«Ընդէ՞ր յայս անշունչ տախտակ քարեղէն
Զանուն քո բարի սեւակաւ գրեն,
Զոր քո որք որդիքս տառիւք ոսկեղէն
Մա՛յր մեր« գրեցաք ի սիրտ մարմնեղէն» :

«Որդի հարազատ հօր իւր համանման,
Փառաց հայրենեաց արձան անսասան,

Ի դաշտ Արեսի արի զօրական,
ժառանգորդ անմահ անմոռաց անուան»:

*Շատ աւելի յաջող են Գրոֆ. Մերզլեակովի յօրինած ռուսերէն բանաստեղծութիւնները:*

*Այսպէս, կոմս Յովհաննէս Լազարեանին նուիրուած են հետեւեալ տողերը.*

„От древня племени Армении рожденный
Россией-матерью благой усыновленный,
Гайканы! ваших он сирот не позабыл!
Рассадник сей души признательной тво-
ренье!
Даруя чадам здесь покой и просвещенье,
Отчизне той и сей он долг свой заплатил.

*Յովակիմ աղա Լազարեանցին նուիրուած են՝*

Сей, брата своего достойнейший ревни-
тель
Начатый подвиг им устроил, расширил:
Соплеменных покров, безродных охра-
нитель,
Для церкви, для наук, для блага бедных
жил.

*Աննա Սարգսեան Լազարեան եւ Յարութիւն Յովակիմեան Լազարեանին*[1] *նուիրուած են՝*

[1] *Յարութիւն Յովակիմեան Լազարեանը նուիրել էր իր սեպհական միջոցներից ճեմարանին* 50·000 *ռուբլի, երբ հայրը նախապատրաստական աշխատանքների մէջ է եղել ճեմարանի հիմքը դնելու: Վախճ. Լայպցիգի արիւնահեղ կռուում* 1813 *թ.:*

*Как добра мать, сирот с горячностью любила,*
*И памятник себе в сердцах их утвердила!*

*

*Средь мира благ Творец, гроза среди врагов,*
*Во цвѣте лет он пал за веру и отцов!*

---

# ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԼԱԶԱՐԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԻ ԼԻԿԷՈՆԻ
## ԿԱՄ
## ԱՐԵՒԵԼԵԱՆ ԼԵԶՈՒՆԵՐԻ ՄԱՍՆԱԳԻՏԱԿԱՆ ԴԱՍԱՐԱՆՆԵՐԻ

### Երկու խօսք

*Լազարեան Ճեմարանի պատմութիւնը ամբողջացած չէր լինի, կիսակատար գործ կը լինէր, եթէ չներկայացնէինք համառօտակի նաեւ* Լիկէոնի *պատմութիւնը:*

*Այս աշխատանքի մէջ, սակայն, մենք չունինք ինքնուրոյն մաս. մենք ամփոփել ենք* 1903 *թուին Մոսկուայում լոյս տեսած ռուսերէն լեզուով հրատարակութիւնը՝* «Լազարեան Ճեմարանի Մասնագիտական դասարանների 30*ամեակը*», *որ նոյնպէս մի համառօտ Յիշատակարան է Լիկէոնի անցեալի եւ յոբելեանական ժամանակի վիճակի:*

*Մենք չգիտենք, կա՞յ արդեօք որեւէ այլ ուսումնասիրական աշխատանք Լիկէոնի մասին թէ՞ ոչ, բացի յիշեալից, սակայն ամենայն հաւանականութեամբ կարելի է ենթադրել որ նման աշխատանք գոյութիւն չունի, քանզի մեր բոլոր պրպտումների ժամանակ տեղեկութիւններ առնել Լազարեան Ճեմա–*

րանի մասին, մենք չենք հանդիպել որ եւ է ակնարկի կամ մատնանշումի այդպիսի մի գործի վրայ:

Թերեւս Լազարեան տոհմի եւ ճեմարանի արխիվում լինին նիւթեր Լիկէոնի մասին, որոնք անմատչելի են մեզ:

Կան մի քանի տեղեկութիւններ ճեմարանի 50ամեակին եւ 75ամեակին նուիրուած հրատարակութիւնների մէջ, որոնք վերաբերում են Լիկէոնի անցեալին եւ որոնք լիովին օգտագործուած են մեր ներկայ աշխատասիրութեան երկրորդ մասում:



1872 թ. դեկտեմբեր 16ին բարձրագոյն հրամանով հաստատուած Նոր Կանոնադրով Արեւելեան լեզուների դասաւանդութիւնը ճեմարանում վերջնականապէս զատւում է գիմնազիական դասընթացքից եւ ստանում միանգամայն անկախ կազմակերպութիւն, իր յատուկ ուսումնական ծրագրով, իր առանձին բիւջէով ու ներքին վարչութեամբ, այսուհանդերձ նա շարունակում է մնալ ճեմարանի ծոցում, նրանից անբաժան թէ իրաւականօրէն, թէ բարոյապէս ու նաեւ ենթակայ ճեմարանի բարձր վարչական կազմի հսկողութեան ու խնամքին:

Լիկէոնը այս կազմակերպութեամբ պահպանեց իր գոյութիւնը անփոփոխ մինչեւ 1918 թ., երբ ճեմարանի գոյութիւնը վերջ

*դատ Նոր քաղաքական–պետական կեանքի ստեղծումով ամբողջ Ռուսաստանում:*

*Որո՞նք էին այս Նոր Կանոնագրի գլխաւոր հիմունքները. ի՞նչ բարեփոխութիւններ էին մտցրուած ճեմարանի կրթական ծրագրի մէջ:*

Առաջին *եւ ամենաէական բարեփոխութիւնը կայանում էր նրա մէջ, որ* արեւելեան լեզուների դասաւանդութիւնը վերջնականապէս զատւում էր ճեմարանի գիմնազիոնական դասընթացքից եւ կենտրոնացւում էր յատուկ Մասնագիտական դասարաններում կամ Լիկէոնում, որը կազմելով ճեմարանի անբաժան մասը, ենթարկուած ճեմարանի վերատեսչութեան, ստանում էր իր ներքին կեանքի մէջ ինքնավար կազմակերպութիւն. *նա պիտի կառավարուէր յատուկ Խորհուրդով, նախագահութեամբ ճեմարանի վերատեսչի (դիրեկտոր), մասնակցութեամբ ճեմարանի տեսչի, Լիկէոնի պրոֆեսորների ու դասախօսների:*

*Այս ինքնավարութիւնը, թէեւ չափաւոր սահմաններում գծուած, անհրաժեշտ էր արեւելեան լեզուների դասաւանդութեան բնականոն զարգացման համար:*

*Այսպիսով, Լազարեան ճեմարանը արեւելեան լեզուաց պարփակում էր իր մէջ* երկու կրթական հաստատութիւններ՝ գիմնազիոնական բաժինն *իր յատուկ ուսումն. ծրագրով, սահմանուած Կայսրութեան բոլոր*

*գիմնազիոնների համար, համաձայն* 1864 *թ. պետական դպրոցների Կանոնագրի, եւ* Մասնագիտական Դասարաններ կամ Լիկէոն, *յատուկ ուսումն. ծրագրով եւ իրաւունքներով, համահաւասար Կայսրութեան Համալսարանների մի մասնաճիւղի՝ արեւելեան լեզուների յատուկ ուսումնասիրութեան համար: Ճեմարանի այս կազմակերպութիւնը միանգամայն համապատասխանում էր նրա հիմնադիրների սկզբից ի վեր հետապնդած ճեմարանի հիմնական նպատակներին՝* ա. *դարձնել իրենց դպրոցը այնպիսի ընդհանուր կրթութիւն տուող մի հիմնարկ, որի շրջանաւարտներն առանց արգելքի ու դժուարութեան ի վիճակի լինէին մտնելու համալսարան ու ստանալ բարձրագոյն ուսում, եւ* բ. *արեւելեան լեզուների դասաւանդութիւնը դնել այնպիսի հիմքերի վրայ, որպէս զի ուսանողները պատրաստուէին թէ գիտական աշխատանքների համար արեւելեան ազգերի մշակոյթի ուսումնասիրական ասպարէզում եւ թէ ձեռք բերէին ձեռնհասութիւն վարելու պետական պաշտօններ Արեւելքում, որի հետ Ռուսաստանի փոխյարաբերութիւնները օրէցօր զարգանում ու աւելի սերտանում էին:*

Երկրորդ: *Ճեմարանի Մասնագիտական դասարանները ստանում էին այն բոլոր իրաւունքներն եւ առանձնաշնորհումները, որոնցով օժտուած էին Կայսրութեան համալսարանները, համաձայն* 1863 *թ. յունիս* 18*ի Նոր*

Կանոնագրի, սակայն առանց իրաւունքի գիտական կոչումներ տալու իր շրջանաւարտներին։ Դրա փոխարէն եւ որպէս զի խրախուսուած լինէին ուսանողներին նուիրելու արեւելեան լեզուների ուսման, Լիկէոնի շրջանաւարտները ստանում էին Ժ եւ ԺԲրդ կարգի աստիճաններ[1]։ Լիկէոնի պրոֆեսորներն ու դասախօսները ստանում էին այն բոլոր առանձնաշնորհումները, որոնք վերապահուած էին համալսարանների պրոֆեսորներին ու դասախօսներին, որպէս պետական պաշտօնեաների ստանալ շքանշաններ, բարձրանալ իրենց կարգի կամ աստիճանի մէջ, ըստ 1722 թուի օրէնքի, սահմանւում էր համապատասխանութիւն ստանալիք ռոճիկների ու կենսաթոշակի չափերի միջեւ համալսարանների պրոֆեսորների ստացած ռոճիկների ու կենսաթոշակի հետ, եւ այլն։

Երրորդ, Լիկէոնի դասընթացքը վե-

---

[1] Պետրոս Մեծը, կամենալով պետական ծառայութեան մէջ ոչնչացնել ազնուական ծագման սկըզբունքը, որին վերապահուած էին մեծ առանձնաշնորհումներ հանդէպ ո՛չ ազնուական ծագում ունեցող պետական ծառայողների, եւ փոխարինել այն անձնական արժանիքների սկզբունքով, 1722 թ. հրատարակեց «Ցուցակ ծառայութեան աստիճանների» օրէնքը, ըստ որի բոլոր պետական պաշտօնեաները բաժանւում էին 14 կարգի կամ աստիճանի։ Ամենից ստորը՝ 14րդն էր, որից եւ սկսում էր ամէն մի պետական պաշտօնեայ իր ծառայութիւնը եւ աստիճանաբար բարձրանում մինչեւ առաջին կարգը, համապատասխան ցուցադրած իր եռանդի, շնորհքի, նուիրումի ու աշխատանքի արդիւնաւէտութեան։ Այս օրէնքը իր ուժի մէջ էր ամբողջ Ռուսաստանում մինչեւ 1918 թ.։

բաժնում էր եռամեայ դասընթացքի փոխանակ նախկին երկամեայի։ Լիկէոնը պիտի ունենար՝ 6 պրոֆեսորներ, մի դոցենտ եւ երկու ուսուցիչ հետեւեալ առարկաների համար.

1. Հայերէն լեզու եւ դպրութիւն, 2. Ռուսաց լեզու եւ դպրութիւն, 3. Արաբերէն լեզու եւ դպրութիւն, 4. Պարսկերէն լեզու եւ դպրութիւն, 5. Թուրքօ-տաճկական լեզու, 6. Արեւելքի պատմութիւն, 7. Վրացերէն լեզու, 8. Պարսկերէնի ու տաճկերէնի գործնական ուսում եւ 9. արեւելեան լեզուների գեղագրութիւն։

Առաջին դասարանի համար սահմանուած էր՝ շաբաթական 30 ժամ, իսկ երկրորդ եւ երրորդ դասարանների համար՝ 28ական ժամ պարապմունքներ, չհաշուած շաբաթական մէկական ժամ արեւելեան լեզուների գեղագրութեան համար բոլոր երեք դասարաններում։

Բացի այդ հայ ուսանողները պարտաւոր էին լսել դասախօսութիւններ Հայոց դպրութեան մասին շաբաթական 3ական ժամ բոլոր երեք դասարաններում. վրացի ուսանողներն ու Կովկասեան որդեգիրները՝ վրացերէն լեզու շաբաթական 2ական ժամ բոլոր երեք դասարաններում։

1875 թ. սահմանւում է նաեւ Ֆրանսերէն լեզուի դասաւանդութիւն, յատկացնելով 2ական ժամ բոլոր երեք դասարաններում

այն ուսանողների համար, որոնք կը կամենային պատրաստուիլ ծառայելու Արտաքին Գործոց Նախարարութեան մէջ:

Այսպիսով Լիկէոնի դասացուցակը իր փոփոխութիւններով ու լրացումներով ներկայացնում էր հետեւեալ պատկերը.

| Լիկէոնի դասացուցակը | Դասախօսութիւնները թիւը | | | |
|---|---|---|---|---|
| | I | II | III | Ընդա-մէնը |
| | դասարան | | | |
| Հայերէն լեզու եւ գրրութիւն .... | 3 | 3 | 3 | 9 |
| Արաբերէն լեզու եւ գրրութիւն .. | 4 | 4 | 4 | 12 |
| Պարսկերէն լեզու եւ գրրութիւն | 4 | 4 | 4 | 12 |
| Թուրքօ-տաճկական լեզու ...... | 4 | 4 | 4 | 12 |
| Արեւելքի պատմութիւն ........ | 2[2] | 2 | 2 | 6 |
| Ռուսաց գրրութիւն .......... | 3 | 2 | 2 | 7 |
| Վրացերէն լեզու .............. | 2 | 2 | 2 | 6 |
| | 22 | 21 | 21 | 64 |
| Գործնական աշխատանքներ | | | | |
| Տաճկերէն .................... | Ամէն օր[3] | | | |
| Պարսկերէն .................. | | | | |
| Արեւելեան գեղագրութիւն ...... | 1 | 1 | 1 | 3 |
| | 23 | 22 | 22 | 67 |
| 1875 թուից նաեւ Ֆրանսերէն լեզուից չարաթական 2 ժամ ամէն մի դասարանում ............. | 2 | 2 | 2 | 2 |
| | 25 | 24 | 24 | 69 |

[2] 1899/1900 թուից՝ 3 ժամ:

[3] 1902 թուից 4ական ժամ ամէն մի դասարանում: 1873 թուից մտցրուած են արաբերէն լեզուի համար գործնական վարժութիւնների ժամեր:

Մասնագիտական դասարանների ուսուցչական կազմը։
1902 թուին եւ տարեկան բիւջէն

| | Թիւը | Ռոճիկը ընդամէնը ռուբլին տարին |
|---|---|---|
| 1· Օրդինար պրոֆեսորներ ...... | 3 | 8·838 |
| 2· Էքստրա–օրդինար պրոֆեսորներ | 3 | 5·892 |
| 3· Վրացերէնի դոցենտ ........ | 1 | 1·179 |
| 4· Տաճկերէնի եւ պարսկերէնի դասատուներ ............... | 2 | 1·572 |
| 5· Արեւելեան լեզուների գեղագրութեան դասատու որ ստանձնում է դասախօսներից որեւէ մէկը ..................... | 1 | 2·450 |
| 6· Ճեմարանի վերատեսուչին յաւելեալ ..................... | 1 | 2·450 |
| Ընդամէնը ...... | — | 20·225 |
| 7· Դպրոցական պիտոյքներ ...... | — | 266 |
| 8· Մասնագիտական դասարանների համար ..................... | — | 1·500 |
| 9· 15 Կովկասեան որդեգիրների համար եւ 4 Ն. Կ. Մեծութեան որդեգիրների համար .. | | 7·600 |
| Ամբողջը ...... | — | 29·591 |

Ուսուցչական անձնական կազմը հետագայ տարիներում ենթարկւում է մի չարք փոփոխութիւնների, միշտ նպատակ ունենալով ուժեղացնել այդ կազմը աւելի կարող գիտական ույժերով։

1872 թուին մենք ունինք երեք հայ ականաւոր պրոֆեսոր–դասախօսներ՝ Մ· Էմին՝ Հայկական դպրութեան դասատու, Ստ· Նա–

զարեանց՝ Պարսկերէն լեզուի ու դպրութեան դասատու եւ Գէորգ Քանանեան՝ Արեւելքի հին ու միջին դարերի պատմութեան դասատու:

Այնուհետեւ Մոսկուայի համալսարանի յայտնի Պրոֆ. Վ. Գերիէն հրաւիրում է Արեւելքի պատմութեան նոր դարաշրջանի դասախօս:

Գէորգ Քանանեանի մահից յետոյ, նրա դասերը ստանձնում է նոր վերատեսուչ Պրոֆ. Վ. Միլլերը:

Մ. Էմինին փոխարինում է Գր. Խալաթեանը, նրա աշակերտը:

Ռուսաց դպրութեան դասատու Պոպովին փոխարինում է Մոսկուայի համալսարանի Պրոֆ. Ալէքսէյ Վեսելովսկին, որն, ի դէպ, հայասէր մէկն էր, ինչպէս եւ նրա որդին՝ Իւրիյ Վեսելովսկին:

Ստ. Նազարեանցին փոխարինում են ուրիշները եւ ի վերջոյ հրաւիրում է աշխարհահռչակ լեզուագէտ Պրոֆ. ակադեմիկոս Ֆ. Կորշը պարսկերէն լեզու ու դպրութեան ամբիոնի համար, իսկ պարսկերէն գործնական դասերի համար իրանցի Միրզա Ջաֆար Տէր-Ջաֆարովը:

Վրացերէնի դասատու է հրաւիրում վրացի Ա. Խախանովը:

Իսլամի պատմութեան եւ արաբական դպրութեան ամբիոնը ստանում է 1901 թ. Պրոֆ. Կրիմսկի:

Միաժամանակ ջանք է տարւում ճոխացնելու Լիկէոնի կրթական ծրագիրը, սահմաններով նոր առարկաների դասաւանդութիւն:

Այսպէս, 1898 թ. սահմանւում են համեմատական լեզուագիտութեան ու հին պարսկերէն լեզուի դասընթացքներ, որոնք յանձնւում են ձեմարանաւարտ լեզուագէտ Լեւոն Մսերեանցին:

Սահմանւում եւ նաեւ ազգագրութեան դասընթացքներ, որի համար հրաւիրւում է Մոսկ. համալս. Պրոֆ. Խարուզինը:

1880 թ. արաբերէնի գործնական դասերի համար հրաւիրւում է Միխայիլ Օսիպովիչ Ատտայեա, որը միաժամանակ գիմնազիական բաժնում վարում էր դաստիարակի պաշտօն:

1901 թ. սահմանւում է սարտերի լեզուի դասաւանդութիւնը, որն ստանձնում է Միրզա Աբդուլլա Գաֆարովը:

Մէկ ուրիշ կարեւոր նորութիւն էլ մտցնւում է 1891 թ.: Այդ թւականից սկսած Լիկէոնի ուսանողներին պարտադրում են յաճախել Մոսկ. համալսարանի Իրաւաբանական մասնաճիւղը եւ հետեւել իրաւաբանական գիտութիւններից՝ քրէական, քաղաքացիական ու պետական իրաւունքի դասախօսութիւններին:

Պրոֆ. Վ. Միլլէրի վերատեսչութեան օրօք ուսումն. ծրագրի առարկաների վրայ

աւելանում է նաեւ մահմեդական իրաւունքի դասաւանդութիւնը։

Այս բոլոր բարենորոգումներն ու խնամքը՝ բարձրացնել Լիկէոնի գիտական մակարդակը, գրաւում են հասարակութեան, մասնաւորապէս արեւելագէտների ուշադրութիւնը, համակրանքն ու վստահութիւնը եւ Լիկէոնը ձեռք է բերում մեծ համբաւ համաեւրոպական գիտական աշխարհում։

Արեւելագէտների բոլոր միջազգային համագումարներին Լազարեան ճեմարանը սիրով հրաւիրւում է բերելու իր թանկագին մասնակցութիւնը։

Լիկէոնի ուսանողների գիտական աշխատանքները արժանանում են հրապարակային գնահատանքի։

Այսպէս, 1882 թ. Համառուսական ցուցահանդէսում Լիկէոնի ուսանողների արեւելեան գեղագրութեան օրինակները ստանում են երկրորդ կարգի վկայական, որը համահաւասար էր արծաթէ մեդալի։

Լիկէոնի ուսանողները տպագրում են արեւելագիտութեան վերաբերեալ իրենց գիտական աշխատանքները, հանդէս են գալիս գիտական զեկոյցներով Մոսկուայի Կայսերական Հնագիտական Ընկերութեան Արեւելեան Յանձնաժողովում եւ արժանանում ուշադրութեան ու գնահատանքի։

1900 թ. Փարիզի համաշխարհային ցուցահանդէսին Լազ. ճեմարանի Լիկէոնը ստա–

նում է ոսկէ մեդալ իր կատարած գիտական լուրջ ուսումնասիրական աշխատանքների համար՝ մասնաւորապէս 887 թ. Հայկական Աւետարանի հրատարակութեան համար։

Լիկէոնի աճող ու տարածուող գիտական համատառութեան համբաւը առաջ է բերում հետաքրքրութիւն նաեւ օտար կառավարական շրջաններում, ինչպէս եւ Եւրոպայի արեւելագէտների շարքերում։

1876 թ. Լիկէոնին այցելութիւն են տալիս ականաւոր արեւելագէտներ՝ Պրոֆ. Շեֆֆէրը, Ժիւլ Օպպերտը, Ֆոն-Միւլլէրը, իսկ 1900 թ. Բերլինի համալսարանի Պրոֆ. Հարտմանը, իսկ 1881 թ. մահմեդական գիտնական մոլլա Փիրաձէն։

Ամենքը միաբերան վկայում են, որ Լիկէոնի ուսանողները ցուցադրում են մեծ յաջողութիւններ արեւելեան լեզուների իւրացման գործում։

1873 թ. մայիս 3ին այցելում է ճեմարանը Պարսից Շահնշահը Նասրէդդինը, որին ճեմարանի կողմից ողջունում են Պրոֆ. Ստեփան Նազարեանցը պարսկերէն լեզուով, իսկ Պրոֆ. Մարկոսը՝ արաբերէն. աշակերտները երգում են հայերէն երգեր։ Շահին ցոյց են տալիս արեւելեան լեզուներով գրքերի եւ ձեռագիրների գրադարանը։

Ն. Դելեանովի վերատեսչութեան օրօք ճեմարանին այցելութիւն է տալիս Բրազի–

*լիսյի կայսրը, որն առանձնապէս հետաքրքրւում է արեւելեան լեզուների դասաւանդութեամբ։*

*Այս առթիւ, Պրոֆ. Խախանովը, որի գրչին է պատկանում Լիկէոնի 30ամեակի պատմութիւնը, նկատում է, որ ճեմարանը եւ մասնաւորապէս Լիկէոնը մեծ բարգաւաճման է հասնում վերատեսուչներ՝ Ն. Դելեանովի եւ մանաւանդ Գէորգ Քանանեանի օրօք։*

*«37 տարուայ ընթացքում, — ասում է նա — Գ. Քանանեանը ճեմարանի հոգին էր. նա իր ձեռքումն էր պահել Լիկէոնի լաւագոյն կազմակերպութեան բոլոր հոգսերի դեկավարութիւնը։ Նրան է պատկանում, ի միջի այլոց, Լիկէոնի գրադարանի համար առանձին շէնքի կառուցման պատիւը. Նրա անմիջական հսկողութեան տակ է կատարուած շէնքի կառուցման գործը»։*

*Լիկէոնը ընդունում էին այն աշակերտները, որոնք աւարտել էին ճեմարանի գիմնազիոնական լրիւ դասընթացքը եւ առհասարակ պետական միջնակարգ դպրոցները եւ ստացել հասունութեան վկայական, թէ որպէս խսկական ուսանողներ, թէ որպէս ազատ ունկնդիրներ։*

1888 *թուին ազատ ունկնդիրների թիւը այնքան է բազմանում, որ Լիկէոնի խորհուրդը որոշում է սահմանել նրանց համար երեկոյեան դասընթացքներ։*

*Ազատ ունկնդիրների կազմը եղել է շատ բազմազան՝ հասարակութեան բոլոր խաւերից. կային՝ զինուորականներ, քահանաներ եւ մեծ մասամբ պետութեան բարձրագոյն դպրոցների ուսանողներ:*

*Հետեւեալ տախտակը տալիս է լրիւ պատկեր Լիկէոնի ուսանողների թէ կազմի մասին եւ թէ նրա զարգացման փուլերի մասին 30 տարուայ ընթացքում:*

Տախտակ
Լիկէոնի ուսանողների կազմի ու շրջանաւարտների թուի 30 տարուայ ընթացքում: 1871/72—1901 թ.

| Ուսումն. տարի | Ուսանողների ընդհ. թիւը առ Յունուարի | Լիկէոնի Ուսանողներ | Ազատ ունկնդիրներ | Լ. Ճեմարանի գիմնազիոնից Լիկէոն մտածները | Լիկէոնի ուսումնաւարտները |
|---|---|---|---|---|---|
| 1871/72 | 7 | 5 | 2 | 2 | — |
| 1872/73 | 18 | 10 | 8 | 4 | — |
| 1873/74 | 17 | 7 | 10 | — | 3 |
| 1874/75 | 20 | 10 | 10 | 2 | 6 |
| 1875/76 | 15 | 6 | 9 | — | 1 |
| 1876/77 | 42 | 5 | 37 | 7 | 3 |
| 1877/78 | 57 | 7 | 50 | 7 | 8 |
| 1878/79 | 48 | 19 | 29 | 4 | 17 |
| 1879/80 | 30 | 17 | 13 | 3 | 10 |
| 1880/81 | 18 | 15 | 3 | 3 | 4 |
| 1881/82 | 15 | 15 | — | 2 | 5 |
| 1882/83 | 23 | 21 | 2 | 3 | 5 |
| 1883/84 | 16 | 15 | 1 | 2 | 3 |

| Ուսումն. տարի | Ուսանողների ընդհ. թիւը առ Յունուարի | Լիկէօնի Ուսանողներ | Ազատ ունկնդիրներ | Լ. Ճեմարանի գիմնազիոնցի Լիկէօն մտածները | Լիկէօնի ուսումնաւարտները |
|---|---|---|---|---|---|
| 1884/85 | 19 | 18 | 1 | 2 | 6 |
| 1885/86 | 22 | 16 | 6 | 2 | 4 |
| 1886/87 | 33 | 26 | 7 | 1 | 5 |
| 1887/88 | 29 | 24 | 5 | 2 | 4 |
| 1888/89 | 29 | 26 | 3 | 1 | 7 |
| 1889/90 | 27 | 26 | 1 | 1 | 6 |
| 1890/91 | 27 | 26 | 1 | 5 | 5 |
| 1891/92 | 24 | 24 | — | 5 | 3 |
| 1892/93 | 33 | 31 | 2 | 5 | 6 |
| 1893/94 | 37 | 34 | 3 | 5 | 9 |
| 1894/95 | 35 | 32 | 3 | 3 | 9 |
| 1895/96 | 31 | 26 | 5 | 3 | 7 |
| 1896/97 | 24 | 20 | 4 | 6 | 3 |
| 1897/98 | 30 | 23 | 7 | 3 | 7 |
| 1898/99 | 33 | 26 | 7 | 3 | 5 |
| 1899/1900 | 36 | 30 | 6 | 1 | 10 |
| 1900/01 | 55 | 48 | 7 | 1 | 8 |
| 1901/02 | 56 | 50 | 6 | 2 | 14 |
| ընդամէնը՝ | 906 | 658 | 248 | 90[4] | 183[5] |

[4] 658 ուսանողներից, միայն 90 հոգի են որ ճեմարանի գիմնազիոնական դասընթացքը աւարտելով՝ ուսումը շարունակել են Լիկէօնում իրենց բարձրագոյն կրթութիւնը ստանալու համար. միջին հաշուով 30 տարուայ մէջ՝ միայն 3 հոգի տարեկան:

Այս մի նոր ապացոյց է, որ ճեմարանի միջնակարգ բաժնում շատ ուժեղ է եղել ձգտումը դէպի Համալսարան:

[5] Լիկէօնի ուսումնաւարտների անուանացուցակում ցոյց է տրուած 184 անուն:

Աւելացնենք, որ առ 24 Հոկտեմբեր 1902 թ. լիկէոնը ունեցել է 62 ունկնդիրներ, որոնցից 47 հոգի իսկական ուսանողներ եւ 15 հոգի ազատ ունկնդիրներ:

Այսպիսով, ունկնդիրների թիւը 30 տարուայ ընթացքում բազմացել է 9 անգամ:

30 տարուայ ընթացքում Լիկէոնը ունեցել է 184 շրջանաւարտներ, որոնցից ոմանք գործել են դիւանագիտական ասպարէզում Արեւելեան եւ այլ երկիրներում՝ Պարսկաստան, Թիւրքիա, Եգիպտոս, Բրազիլիա եւ այլն: Ոմանք՝ պետական-հասարակական ասպարէզում, ոմանք էլ՝ արդիւնաբերական բնագաւառում Ռուսաստանի ներքին գաւառներում, Միջին Ասիայում, Կովկասում:

Այդ 184 ուսումնաւարտներից 142 հոգի ռուսներ են եղել, 22 հոգի հայ-լուսաւորչականներ եւ 20 հոգի այլ դաւանանքներից:

Հայերի չնչին թիւը բացատրւում է նրանով, որ ցարական ռեժիմի օրօք հայ երիտասարդութեան առաջ փակ են եղել ոչ միայն դիւանագիտական ծառայութեան համար դռները, այլ եւ մի շարք այլ գրաւիչ պաշտօններ ստանալու հնարաւորութիւնից զուրկ է եղել....:

Այս 184 շրջանաւարտների հետագայ ճակատագրի մասին տեղեկութիւնները պակասում են, յայտնի է միայն, որ նրանցից 40 հոգի ծառայելիս են եղել Արեւելքում դիւանագիտական եւ վարչական ասպարէզներում՝ Պոլիս, Թեհրան, Մէշէդ, Աստրաբադ, Դա-

մանկոս, Գահիրէ, Բոմբէյ, Բաղդադ եւ այլն. 50 հոգի ծառայելիս են եղել ներքին գործոց նախարարութեան եւ ժողովրդ. լուսաւորութեան նախարարութեան մէջ՝ Կովկասում, Ղրիմում, Անդրկասպեան երկրում։

*

Արեւելեան լեզուների ուսուցման դարկ տալու եւ աւելի մեծ թւով ուսանողներ գրաւելու համար սահմանուել են թոշակներ, բացի այդ ճեմարանը իր կողմից տուել է չքաւոր ուսանողներին դրամական նպաստ, ազատել է ուսման վարձից, հայթայթել է մանաւոր վճարովի դասեր ու տուել մատչելի արժէքով նախաճաշ եւ ճաշ։

Ուշագրաւ է, որ 30 տարուայ ընթացքում Լիկէոնի ուսանողների մէջ տեղի չեն ունեցել ո՛չ մի խլրտում կամ դժգոհութիւն ու բողոքի արտայայտութիւններ թէ ներքին կեանքից անբաւական լինելու հետեւանքով եւ թէ քաղաքական գետնի վրայ։

Այս երեւոյթը բացատրւում է մասամբ նրանով, որ ուսանողների թիւը եղել է շատ սահմանափակ, մասամբ էլ, որովհետեւ Լիկէոնի դասախօսների ամբողջ կազմն ու ճեմարանի վարչութիւնը չափազանց ուշադիր ու հոգատար վերաբերմունք են ցուցադրել ուսանողների հանդէպ եւ հաստատել մտերիմ յարաբերութիւններ ու բարոյական կապ նրանց հետ, ոչ միայն նրանց ճեմարանում

եղած ժամանակաշրջանում, այլ եւ երբ, աւարտելով իրենց դասընթացքը Լէկէոնում, կեանք են մտել:

*

Լազարեան ճեմարանի գլխաւոր դեկավարութիւնը հետամուտ է եղել ո՛չ միայն այն անմիջական գործնական նպատակներին հասնելու լաւագոյն կերպով, որոնք դրուած են եղել Լիկէոնի առաջ, այն է՝ պատրաստել գործիչներ ծառայելու Արեւելքում, այլ եւ ջանք չի խնայել զարկ տալու զուտ գիտնական ուսումնասիրութեան Արեւելեան լեզուների, գրականութեան, հնութիւնների եւ այլն, ուրիշ խօսքով՝ դնել արեւելագիտութիւնը լուրջ հիմքերի վրայ:

Այսպէս, 1888 թ. պետական խորհրդական Դանիէլ Քանանեանի նուիրաբերուած գումարը յատկացւում է Հայոց լեզուի ու պատմութեան մասին գիտական լաւագոյն աշխատանքների հեղինակներին:

Եւ 1894 թ. այդ մրցանակը՝ 400 ռուբլի տրւում է Բեռլինի համալսարանի փիլիսոփայութեան Դոկտոր Դաղբաշեանին Հայ Բագրատունիների պատմութեան ուսումնասիրական աշխատանքի համար:

Այնուհետեւ Պ. Հայկունին պարգեւատրւում է՝ «Նիւթեր ժամանակակից հայերի սովորոյթի իրաւունքի մասին» ուսումնասիրական գործի համար:

Մ. Էմինը կտակում է Լիկէոնին 10.000 ռ., որպէս զի նրա տոկոսներով հրատարակուեն նիւթեր եւ ուսումնասիրութիւններ Հայկական ազգագրութեան մասին:

Այդ գումարի տոկոսներով սկսած 1893 հրատարակուած են հէնց իր Էմինի մի շարք երկասիրութիւնները եւ ապա հինգ ուրիշ ուսումնասիրական գործեր Պրոֆ. Գր. Խալաթեանցի խմբագրութեամբ եւ «Էմինի ազգագրական ժողովածու» անուան տակ:

Ի յիշատակ հանգուցեալ Գէորգ Քանանեանի Լիկէոնի Խորհուրդը հաստատում է յատուկ ֆոնդ պարգեւատրելու լաւագոյն ուսումնասիրական աշխատանքների հեղինակներին Ռուսաստանում ապրող արեւելեան ազգերի պատմութեան եւ ազգագրութեան վերաբերեալ:

1899 թ. սկսած ճեմարանի վերատեսուչ Պրոֆ. Վ. Միլլէրի նախաձեռնութեամբ Լիկէոնի խորհուրդը ձեռնամուխ է լինում հրատարակելու Լիկէոնի պրոֆեսորների եւ ուսանողների ուսումնասիրութիւնները «Արեւելագիտութեան Երկեր» ընդհանուր խորագրի տակ: Մինչեւ 1903 թ. հրատարակուած են 12 հատոր:

Բացի այդ 1899 թուին ճեմարանի պատուակալ Հոգաբարձու իշխան Սիմէոն Սիմէոնովիչ Աբամելիք-Լազարեանի դրամական միջոցներով եւ Պրոֆ. Գրիգոր Խալաթեանի խմբագրութեամբ Լիկէոնը հրատարակել է 887 թուի հայկական ամենահին Աւետարանը

*ըստ այն ձեռագրի, որը ծեմարանի սեփակա-կանութիւնն է եղել։*

*Միաժամանակ Լիկէոնի պրոֆեսորներն ու դասատուները չափազանց մտահոգուած են եղել* դասագրքեր *յօրինելու խնդրով եւ նրանցով օժտել ուսանողներին, քանզի դասագրքերի բացակայութիւնը, · մանաւանդ սկզբնական շրջանում, չափազանց դժուարացրել էր դասաւանդութեան գործը։*

*Այսպէս, օրինակ, յայտնի է, որ Ստ. Նազարեանցը պարսկերէնի քերականութիւնը թելադրելիս է եղել, իսկ ընթերցանութեան բնագիրները գրելիս գրատախտակի վրայ, որտեղից ուսանողները արտագրել են եւ սովորել կարդալը. անծանօթ բառերի թարգմանութիւնը ինքը Նազարեանցն է ասելիս եղել, քանի որ բառարաններ չկային։*

*Լիկէոնի այս կենսական պահանջին ընդառաջելով, Խորհուրդը ձեռնամուխ է լինում դասագրքերի կազմութեան ու հրատարակութեան գործին։*

*Շատ երկար կը լինէր մի առ մի թուել բոլոր հրատարակութիւնները այդ ուղղութեամբ արուած, բայց, որպէս մի նմոյշ, ասենք, որ 80ական թուականներին լոյս է տեսնում* Գ. Աստայի *արաբերէն լեզուի քերականութիւնն ու ընթերցանութեան ձեռնարկը, այնուհետեւ* Միրզա Ջաֆարի *հեղինակութեամբ պարսկերէն լեզուի քերականութիւնն եւ ռուս-պարսկական խօսակցութեան ձեռնարկը եւ այլն։*

Լիկէոնի կրթական գործի յաջողութիւնը պահանջում էր նաեւ ունենալ ճոխ գրադարան, արեւելեան եւ եւրոպական լեզուներով գրքերի, որոնցից կարողանային օգտուել թէ ուսանողները եւ թէ պրոֆեսորները: Այս գործին Լիկէոնը ձեռնամուխ է լինում սկզբից՝ 1872 թուից, աստիճանաբար միջոցներ հայթայթելով ու ճոխացնելով գրադարանը: Միաժամանակ գրադարանը ստացել է նաեւ նուէրներ՝ Մ. Էմինից՝ 1280 անուններ 2505 հատոր, Գ. Քանանեանից՝ 917 անուններ 1388 հատոր եւ այլն:

Գրադարանը 1902 թուին ունէր ընդամէնը գրքեր՝ 7610 անուններով 13·737 հատոր: Ծախսուած է գրքերի գնման համար՝ 35·272 ռուբլի:

Շնորհիւ Գ. Քանանեանի ջանքերի գրադարանի համար կառուցուել է 1896 թ. յատուկ շէնք, որի համար դրամական միջոցներ տրամադրել է Գրիգոր Էմմանուիլովիչ Մանուկ Բէյը:

Լիկէոնի գրադարանից օգտուել են ո՛չ միայն Լիկէոնի ուսանողներն ու պրոֆեսորները, այլ եւ կողմնակի մարդիկ՝ համալսարանների ուսանողներն ու պրոֆեսորները, Մոսկուա ժամանած գիտնականները: Պատահել են դէպքեր, երբ գրադարանից գրքեր են ուղարկուած եղել այլ քաղաքներ եւ այլ հաստատութիւններին, ինչպէս, օրինակ, Կազան քաղաքի Հոգեւոր Ակադեմիային, Կազան քաղաքի համալսարանին եւ այլն:

Լիկէոնի պրոֆեսորները միաժամանակ հրատարակել են բազմաթիւ մեծարժէք գիտական աշխատանքներ՝ ինքնուրոյն ուսումնասիրութիւններ եւ թարգմանական, ռուսերէն, հայերէն եւ եւրոպական լեզուներով[6].

Հայ պրոֆեսորներից՝

Մկրտիչ Էմինը ունի 42 գործ.
Գէորգ Քանանեանը՝ 6 գործ.
Ստ. Նազարեանցը՝ 14 գործ.
Գր. Խալաթեանցը՝ 29 եւ 16 իր խմբագրութեամբ
Լեւոն Մսերեանցը՝ 35 գործ.

*

Որպէս ամփոփումն Լիկէոնի կատարած խոշոր դերի մասին, առաջ ենք բերում վերատեսուչ Պրոֆ. Վ. Միլլէրի ճառի եզրափակման խօսքը, ասուած 1902 թ. Լիկէոնի 30ամեակի առթիւ կազմակերպուած հանդէսին.

«Մասնագիտական դասարանների (Լիկէոնի) 30ամեայ պատմութիւնը ապացուցանում է, որ այն դրամական միջոցները, որ պետութիւնը բաց է թողնում ուսուցչապետների ու դասախօսների պահպանութեան համար, միանգամայն արդիւնաւէտ կերպով են ծախսուել, քանզի նրանք ամենայն բարե–

[6] Տե՛ս մանրամասն ցուցակը «Լ. Ճ. 30ամեակը», էջ 111—114, 125—127, 140—142:

խղճութեամբ են կատարել իրենց պարտականութիւնները եւ պատրաստել են բաւական թուով օգտաւէտ գործիչներ պետութեան համար թէ Ռուսաստանի սահմաններում եւ թէ մահմեդական Արեւելքում:

«Իր հերթին Լազարեան ճեմարանը, պահպանելով իր հիմնադիրների աւանդները, 30 տարուայ ընթացքում ծախսել է մեծ գումարներ պահպանելու Լիկէօնը, մատակարարելով շէնքին վառելիք, լուսաւորութիւն, նորոգութիւններ կատարելով եւ այլն. տրամադրել է իր դիւանը, իր ծառայողներին եւ կառուցել է գրադարանի համար յատուկ շէնք: Նուազագոյն գնահատանքով այդ գումարը, ծախսուած 30 տարուայ ընթացքում, 200·000 ռուբլուց աւելի է:

«Այսպէս, ժողովրդական լուսաւորութեան Նախարարութեան եւ Լազարեան ճեմարանի միացեալ միջոցներով ապահովուել է մեր համեստ հաստատութեան բարգաւաճումը, որն ըստ իր կարողութեան բաւարարել է թէ պետութեան կարիքները, մատակարարելով արեւելագէտ-պաշտօնեաներ եւ թէ ընդառաջել հասարակութեան ձգտումներին՝ ուսումնասիրել արեւելեան լեզուները եւ զարկ տալ ռուս արեւելագիտութեանը[7]»:

---

[7] Տե՛ս «Լ. Ճ. 30ամեակը», էջ ԻԱ—ԻԲ:

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

Լազարեանների դրամական նուիրատուութիւնները ճեմարանին:

| | | |
|---|---|---|
| | *ռուբլի* | *արծաթ* |
| 1· *Յովհաննէս Ղազարեան Լազարեանի կտակով թողած որպէս անձեռնմխելի գումար՝* 200·000 *ռ. թղթադրամ կամ* ............ | 57·142 | $85^5/_7$ |
| 2· *Յովակիմ Ղազարեան Լազարեանը ճեմարանի շէնքի կառուցման եւ այլ պէտքերի համար* (3 *նուագով*) | 65·210 | 53 |
| 3· *Յովհաննէս Ղազարեան Լազարեանի կինը՝ Կոմսուհի Կատարինէ Լազարեանը կտակով* .......... | 2·857 | $14^2/_7$ |
| 4· *Մինաս Ղազարեան Լազարեանը* (2 *նուագով*) .................... | 10·603 | $84^4/_7$ |
| 5· *Յովհաննէս Յովակիմեան Լազարեանց եւ Խաչատուր Յովակիմեան Լազարեանը* (18 *նուագով*) .... | 502·437 | 55½ |
| 6· *Խաչատուր Լազարեանի կինը՝ Կատարինէ Խմմանուէլեան Լազարեանը* (5 *նուագով*) .......... | 24·530 | 95 |
| *Ընդամէնը* ...... | 662·782 | 75 |

*Բացի այդ Խաչատուր Լազարեանը ճեմարանի 50 ամեակի առթիւ նուիրաբերել էր՝* 200·000 *ռուբլի*:

Այս բոլորի հետ միասին Լազարեանները հոգացել են բոլոր ծախսերը՝ ա. մատենադարանի համար, որ առ 1865 թ. ունէր 6.000 հատոր գիրք, բ. հանքաբանական կաբինետի կազմութեան համար, ինչպէս եւ ֆիզիքայի, մաթեմաթիկայի զանազան գործիքներ գնելու, գ. նկարներ, պատկերներ, հին դրամներ եւ այլն։

## ԱՆՈՒԱՆԱՑԱՆԿ

### ԼԱԶԱՐԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԻ ՇՐՋԱՆԱՒԱՐՏՆԵՐԻ 1820—1916 ԹԹ., ՀԱՆԴԵՐՁ ԻՐԵՆՑ ՀԱՄԱՌՕՏ ԿԵՆՍԱԳՐԱԿԱՆ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐՈՎ

Ներկայացնելով այս համառօտ անուանացուցակը մենք, ի հարկ է, նպատակ չենք ունեցել տալու լրիւ ցանկը. դա նաեւ հնարաւոր չէ ու աննպատակ, քանզի ճեմարանի շրջանաւարտների թիւը հասնում է հազարների։ Մեր նպատակն էր այս չատ համառօտ ցանկով աղօտ գաղափար տալ այն հսկայական կրթական ու ազգային–հասարակական դերի մասին, որ կատարել է Լազարեան ճեմարանը իր 100ամեայ գոյութեան ընթացքին թէ ռուս պետական եւ թէ մանաւանդ հայ կեանքի բոլոր մարզերում։

Այս անուանացուցակը կազմելիս մենք օգտուել ենք հետեւեալ աղբիւրներից.

1. «Լ. Ճ. 50ամեակը», 2. «Լազ. Ճեմա–

րանի 75ամեակը» ռուսերէն պաշտօնական հրատարակութիւններից, 3. Պրոֆ. Զինովիեւի «Լազ. ճեմ. համառօտ պատմութիւնը» (ռուսերէն) եւ 4. Մսեր Մսերեանցի «Յիշատակարան»ից։

Այնուհետեւ քաղել ենք տեղեկութիւններ բազմաթիւ գրքերից, ուր եղել են յիշատակութիւններ Լազ. ճեմարանի շրջանաւարտների մասին. վերջապէս, Թեհրանում գտնուած ճեմարանի նախկին աշակերտների եւ իմ անձնական յուշերից։

Մեր ցանկութիւնը պահպանել նաեւ ժամանակագրական կարգը նրանց ուսման աւարտելու մէջ, — անհնարին եղաւ, քանզի մեր գլխաւոր աղբիւրների մէջ շատ սակաւ են նման ցուցմունքները։

1. Յակոբ Արզանեան

2. Դաւիթ Արզանեան

Համալսարանաւարտ։ Յակոբը եղել է տեսուչ Ներս. դպրոցի՝ 1830—1835 ու նաեւ 1857—1858 թ. լեզուագէտ՝ գիտնականի համբաւով։ 1827ին երկուսը միասին գրել ու հրատարակել են՝ «Հայոց Թագաւորութեան մի փորձ»։ «Դարաստան հատուկտոր գրուածոց Հայ Մատենագրաց ի պէտս ընթերցանութեան եւ թարգմանութեան ի Հայ լեզուէ ի Ռուս»։ 1838 թ. Թիֆլիս։ Դաւիթը եղել է 1848 թ. Ներս. դպրոցի Հոգաբարձութեան անդամ։

3. Աստուածատուր Արարատեան

*Աշակերտել է Ալամդարեանին Լ. Ճեմարանում, ապա ուսուցիչ Ներս. դպրոցի. 1823 թ. աղա Յովակիմն էր ուղարկել Ներսէս Աշտարակեցուն, այդ ժամանակույ Առաջնորդին։*

4. Ներսէս Արարատեան

*Աշակերտել է Ալամդարեանին Լ. Ճեմարանում. 1824—1830 թթ.ին ուսուցիչ Ներսէս. դպր. Աւանդել է՝ հայերէն, ռուսերէն եւ վայելչագրութիւն։ Սրան եւս աղա Յովակիմն էր ուղարկել Ներսէս Աշտարակեցուն 1823 թ.։*

5. Յովհաննէս Ալղաղանեան

*Աշակերտել է Ալամդարեանին Լ. Ճեմարանում. Ուսուցիչ Ներս. դպր.։ Սրան եւս աղա Յովակիմն էր ուղարկել Ներս. Աշտարակեցուն։*

6. Գաբրիէլ Երեցփուխով

1854 *թ. կազմել ու հրատարակել էր* «Ռուս–Հայկական բառարանը»։

7. Սիմէոն Սուլթանշահեանց

1831 *թ. Հեղինակ՝ ««Գաղափար Հայկական վայելչագրութեան». գծագրեաց Սիմէոն Սուլթանշահեանց, ի լոյս էած Հայկական Ճեմարան Տեարց Լազարեանց, որ ի Մոսկով։ Հետագայում զօրավար Պետերբուրգում. որ մեծապէս նպաստեց, Նալբանդեանի*

*խնդրանօք, «Հիւսիսափայլի» կառավարական թոյլտուութիւնը առնուելուն։*

8. Յովհաննէս Եղիազարեան

9. Միքայէլ Պատկանեան

1839 *թ. հրատարակել է՝ «Քերականութիւն Հայոց լեզուի»։ Մոսկուա։ Ուսուցիչ, թատերագիր, Հայ թատրոնի հիմնադիրներից մէկը։ Կովկասեան զօրաբանակի Պարենաւորման քննիչ։*

10. Խաչատուր Դաւթեանց 1852/07

*Բժիշկ Թիֆլիսում։*

11. Յովսէփ Չերքէզեան

*Աշակերտել է՝ Սալլանթեանին։* 1833 *թ. հրատարակել է՝ «Սկզբունք քրիստոնէական վարդապետութեան»։ Մոսկուա։ Կատաղի հակառակորդ Ս. Նազարեանի եւ նոյնքան կատաղի պաշտպան գրաբարի։ Հեղինակ՝ «Դատագիրք Հայոց պատմութեան»,* 1861 *թ. Թէոդոսիա։*

12. Մկրտիչ Էմին 1829 աշնան. Եւ աւարտել է 1834 թ.

*Համալսարանաւարտ* 1838 *թ. Ն. Զուգայեցի։ Կալկաթայից եկած ճեմարան։ Այնուհետեւ* 1838 *թուից ուսուցիչ Հայոց լեզուի ճեմարանում. տեսուչ՝* 1580—1860 *թ.։ Յետագայում Պրոֆ., ճեմարանի Լիկէոնում՝ հայագիտութեան դասախօս։ Վխճ.* 1890 *թ. Դեկտ.* 13*ին։*

13· Յարութիւն Ալամդարեանց
(*քահանայ, յետոյ վարդապետ*)

*Ուսուցիչ Լազ. ճեմարանում։* 1842 *թ.ից տեսուչ Ներս. դպրոցի։ Լեզուագէտ ու դրական տաղանդով օժտուած։ Խոշոր դեր է կատարել Եփրեմ կաթողիկոսի օրօք եւ Ներսէս Աշտարակեցու առաջնորդութեան ժամանակ։ Աքսորուել է Հաղբատ, յետոյ անցել Քիշինեւ եւ ապա Ս. Խաչ վանքը, ուր սպանուել է* 1834 *թ. Հեղինակ՝* ա. «*Համառօտ բառարան ի Ռուսաց լեզուէ ի Հայ*»։ *Մոսկ.* 1821 *թ.*։ բ. «*Հրահանգ քրիստոնէական վարդապետութեան ի պէտս մանկանց Հայաստանեայց սուրբ Եկեղեցւոյ*»։ 1825 *թ. Թիֆլիս։*

14· Միքայէլ Միանսարեան 1849/50
(*Հետազօտող գիտնական*)

*Հեղինակ գծած տետրակների, որ այնուհետեւ գործածութեան մէջ է մտել մեր դպրոցներում։ Լոյս է ընծայել՝* ա. «*Կանոնաւոր եւ վայելուչ գրութեան պատմութիւնը ու տեսութիւնը։ Ծրագրական փորձառութիւն հանդերձ զանազան ծանօթութիւններով, յաւելուածներով եւ գրասեղանների ու անատոմիկական սուերագրերով։ Պետերբուրգ,* 1872։ բ. «*Հայկական կանոնաւոր եւ վայելուչ գրութիւն*»։ *Լայպցիգ.* 1873. *Միաժամանակ հրատարակիչ հետեւեալ գործերի։*

ա․ *«Ազգային կրթութիւն, հրապարակային ընթերցանութիւնք Էդուարդ Լաբուլէի․ թարգման․ Մ․ Տէր–Գրիգորեանի*: 1867․ բ․ *«Խնամատարութիւն երեխայոց մարմնական եւ բարոյական․ չարադրութիւն Կոմբի, անգլիացոց թագուհու բժշկի եւ Էդինբուրգի արքունի բժշկական համալսարանի անդամի»: Պետերբուրգ* 1868․ գ․ «Քնար Հայկական»*ի Հրատարակիչ*: դ․ *Հեղինակ* «Bibliographia»*ի ուր հաւաքուած են այն բոլոր գրուածքների անունները, որոնք վերաբերում են Կովկասին եւ Անդրկովկասին*:

15․ Ռափայէլ Պատկանեան 1848/49

*Բանաստեղծ «Գամառ Քաթիպա»: Աշակերտել է Մ․ Էմինին*:

16․ Սերովբէ Պատկանեան 1848/49

*Ուսուցիչ եւ բանաստեղծ*:

17․ Կարապետ Եզեան (Էզով) 1850/51, 1852/53

*Պետական բարձր պաշտօնեայ: Հեղինակ ռուսերէն լեզուով «Պետրոս Մեծի յարաբերութիւնները հայ ժողովրդի հետ» արժէքաւոր գրքի ու նաեւ՝ «Ս․ Էջմիածնի եւ Ռուսաց կառավարութեան յարաբերութիւնների ծագումը», Թիֆլիս* 1905․ *Պահպանողական, մոլեռանդ լուսաւորչական, նուիրուած հայ եկեղեցուն*:

18 · Ալէքսանդր Ռոտինեանց 1850/51

*Թիֆլիսեցի: Դորպատի համալսարանը աւարտած* (1852—1856). *Գիւղատնտես: Պետական պաշտօնեայ: Հանրային գործիչ: Ունի գրած յիշողութիւններ Դորպատի հայ ուսանողների կեանքի մասին:*

19 · Գէորգ Հախվերդեանց

*«Սայաթնովայի» Հրատարակիչը* 1852 *թ.: Աշակերտել է Մկրտիչ էմինին:*

20 · Գրիգոր Աղափիրեանց 1848/49

*Համալսարանաւարտ—Դորպատում* (1849—1851): *Ս. Էջմիածնի միաբան: Եպիսկոպոս եւ ապա առաջնորդ Վերին Ագուլիսում:*

21 · Պետրոս Շանշեանց (*Ճեմարանում մինչեւ* 1855 *թ. սովորողների ցուցակի մէջ է գտնւում*):

*Համալսարանաւարտ:* 1849 *թ. տեսուչ Ներս. դպրոցի: «Լուսամփա, լայն հայեացքների, գաղափարական մարդ, մեղմ բնաւորութեամբ եւ հաստատ համոզմունքներով»: Հեղինակ՝ «Համառօտութիւն քրիստոնէական ուսման Հայաստանեայց առաքելական Ս. Եկեղեցւոյ» եւ «Ուսումն. պարտուց». Պոլիս եւ ապա Երուսաղէմ՝* 1873—1874 *թ.:*

22 · Սարգիս Տիգրանեանց

1830*ին աւարտ. Համալսարանը: Այնուհետեւ եղել է ուսուցիչ Լ. Ճեմարանում,*

Նոր–Նախիջեւանի գաւառական դպրոցներում, Սիմֆերոպոլի Գիմնազիայում եւ տեսուչ Խալիպեան դպրոցի: Վախճ. Եյսկում (Հիւս. Կովկ.) 1875 թ.:

23. Զարմայր Մսերեանց 1852/53, 1854/55

1859 թ. հրատարակել է՝ «Հայերէն պատկերազարդ այբբէնարան», իսկ 1863 թ.՝ «Հայ եւ ռուս այբբէնարան» Մոսկուա: Խմբագիր «Ճռաքաղ»ի եւ «Փարոս Հայաստանի» կիսամեայ հանդէսի, 1879—1881 թ.: Նաեւ խմբագիր ռուս. «Համբաւաբեր Ռուսիոյ» հանդէսի:

24. Քրիստափոր Յովհաննիսեան (Քուչուկ) 1854/55, 1875

Ուսուցիչ Հայոց լեզուի Լ. ճեմարանում: Հեղինակ բազմաթիւ գիտական աշխատանքների Հայաստանի պատմութեան եւ հնագիտութեան մասին::

25. Մանուկ Սաղաթեան 1857/58

Վերակացու Լ. ճեմարանում. Լերմոնտովի «Դեւ» պօէմայի անզուգական թարգմանիչը:

26. Սմբատ Շահազիզ 1859/60, 1861/62

Բանաստեղծ: Հեղինակ «Լեւոնի վիշտը» պօէմայի, «Հրապարակախօս ձայն»ի, «Ամառնային նամակների», «Ազատութեան ժամքը» բանաստեղծութիւնների եւ այլն: Նախ՝ վերակացու Լ. Ճ. եւ յետոյ բազմամեայ ուսու–

*ցիչ Հայոց լեզուի Լ. ճեմարանում մինչեւ* 1897 *թ.: Աշտարակեցի: Աշխատակից «Հիւսիսափայլ»ի: Վախճ. Մոսկուայում* 1907 *թ. դեկտ.* 24*ին,* 67 *տարեկան հասակում:*

27. Յովհաննէս Տէր–Յակոբեան 1859/60, 1861/62

*Ս. Շահազիզի մտերիմ բարեկամը ճեմարանից սկսած. դասընկերներ են եղել: Հետագայում Բաքուի նաւթարդիւնաբերողներից:*

28. Սեդրակ Մանդինեան 1857/58—1869/63

*Մանկավարժ: 1876 թ. տեսուչ Ներս. դպրոցի, ապա Շուշու եւ Երեւանի թեմ. դպրոցների, դասախօս Գէորգեան ճեմարանի եւ գրական գործիչ: Վախճ. 72 տարիքում* 1915 *թ. նոյեմբ.* 28*ին Հեղինակ՝* ա. *«Դպրոցական սահմանադրութիւն»,* բ. *«Մանկավարժական տարակուսանքներ մեր մէջ»,* գ. *«Ուսման նախագիծ ազգ. ուսումնարաններ հսամար» եւ այլն:*

29. Ամիր Թաւրիզեան — Ամիր-Դովլաթ 1862/63

*Պարսկահայ, թարգման Պարսից շահի արքունիքում:*

30. Յովսէփ Օրբելի (*քահանայ*)

*Հեղինակ՝ «Համառօտութիւն Սրբազան Պատմութեան, հանդերձ համառօտ բառա-*

*բանիւ ի Հայ լեզուէ ի ռուս վասն բանից ի նմա պարունակելոց, ի պէտս Հայազգի մանկանց. աշխատասիրեաց Տիրացու Յովսէփ Տէր–Յովակիմեան Օրբելի, որ աշակերտեցաւ ի Տեարց Լազարեանց Հայկական Ճեմարանին Արեւելեան լեզուաց»: Մոսկուա. կրօնուսոյց Թիֆլիսի գիմնազիոնում:*

31. Գէորգ Դոդոխեան 1852

*Ուսուցիչ Ներս. դպրոցի եւ ապա տեսուչ նոյն դպրոցի: Համալսարանաւարտ: Ծն.* 1831 *թ. Սիմֆերոպոլ քաղաքում. Հեղինակ՝ «Երգ պանդուխտ պատանեկի (Ծիծեռնակ)* 1854 *թ. Դորպատում:*

32. Ոսկան Յովհաննիսեանց

*Լ. Ճեմարանի Հայոց լեզուի ուսուցիչ, որին փոխարինեց Մ. Նալբանդեանը* 1853 *թ. Հեղինակ՝* ա. *«Սմբատի Հայաստանի պատմութիւնը». Մ.* 1856 *թ.* բ. *«Կիրակոսի Հայաստանի պատմութիւնը» Մ.* 1858. գ. *«Հայաստանի նոր քնարը», երգերի ու բանաստեղծութիւնների ժողովածու* 1855 *թ. Մոսկ.* գ. *Դասագիրք պարսկերէն լեզուի:*

33. Իսմայիլ (Ստեփան) խանի որդիք եւ եղբօրորդիք (*անունները անյայտ են*):

*Եղել են թարգմանիչներ Պարսից Շահերի արքունիքում: Պարսկահայեր:*

34․ Աբգար Սարգիսեան 1864/65

*Թարգման Նաարէգդին Շահի մօտ։ Ունի ռուսերէնից հայերէնի թարգմանական աշխատանքներ։ Ն․ Զուղայեցի։*

35․ Մարտիրոս Դաւիթխանեան (Ամիր–Թումանի) 1864/65

*Զօրավար․ Պարսկաստանի զինուորական շտաբի պետ։*

36․ Յովհաննէս Միրաքեան

*Պետական խորհրդական Թիֆլիսում։ Այնուհետեւ Ս․ էջմիածնի դատախազ (պրոկուրոր)։*

37․ Ստեփան Մատինեան

*Ս․ էջմիածնի պրոկուրորի տեղակալ։* 1848 *Թ․ եղել է Ներս․ դպր․ հոգաբարձութեան անդամ։*

38․ Գէորգ Սուրէնեանց 1850/51, 1852/53

*Ուսուցիչ Լ․ ճեմարանի։*

39․ Գալուստ Զարիխով

*Ն․ Նախիջեւանի Հայոց Հոգեւոր Թեմ․ դպրոցի ռեկտոր։ Հասարակական գործիչ։ Ն․ Նախիջեւանի ինքնավարութեան անդամ։*

40․ Գրիգոր Զալխուշեան

*Փաստաբան։ Հասարակական անուանի գործիչ։ Ն․ Նախիջեւանի քաղաք․ ինքնավարութեան անդամ։*

41․ Գրիգոր Կարախանեան 1886

*Գրաքննիչ Թիֆլիսում 1890 թ․։*

42․ Բալանթար Բալանթարեան

*Պաշտօնեայ Ծուշու դատաստանական հիմնարկներում։*

43․ Տէր Ստեփան Տէր-Ստեփանեան

*Աւագ քահանայ Գորիում։*

44․ Աղէքսանդր Մատինեան 1850/51

*Ճեմարանի 50ամեակի առթիւ, 1865 թ․ նուէր էր ուղարկել ճեմարանին հին ձեռագիրներ՝ 74 հատ եւ գրքեր, գնուած Թիֆլիսում մի չարք քաղաքացիների եւ նախկին սաների միջեւ հանգանակուած գումարով․ նուէրը ուղարկուած էր մի արտասուչ նամակի հետ, որի տակ ստորագրել էր ինքը։*

45․ Աստուածատուր Արարատեան

*Ուսուցիչ եւ ապա պաշտօնեայ էջմիածնի Սինոդի եւ Կոնսիստորիայի։ Յայտնի Յարութիւն Աստուածատուրեան Արարատեանի (Վաղարշապատցի), խոկական պետական խորհրդականի՝ եղբօր որդին էր։ Ինքը Յարութիւն Արարատեան շատ մօտ է եղել Լազարեանց մեծահոչակ գերդաստանին։ (Տե՛ս «Յարութիւն Արարատեանի կեանքը», էջ Թ)։*

46․ Տէր-Աստուրեան

*Գեներալ-լէյտենանտ։*

47․ Լեւոն Խօջայեանց

*Ուսուցիչ Էջմիածնի Գէորգեան ճեմարանում:*

48․ Նիկողայոս Մառ

*Հռչակաւոր արեւելագէտ, Հայագէտ եւ վրացագէտ, հիմնադիր Յաբեթաբանութեան տեսութեան լեզուագիտութեան մէջ: Պրոֆ. Պետերբուրգի համալսարանի արեւելագիտական մասնաճիւղում՝ իբրեւ հայագիտութեան ու վրացագիտութեան ամբիոնի դասախօս:*

49․ Յովհաննէս Յովհաննէսեան

*Բանաստեղծ ու նաեւ ուսուցիչ Էջմիածնի Գէորգեան ճեմարանում* 1890 *թ.:*

50․ Աստուածատուր Պիտանեանց 1889

*Ուսուցիչ Էջմիածնի Գէորգեան ճեմարանում* 1890 *թ. եւ ապա հարկերի տեսուչ:*

51․ Վարդգէս Սուրէնեանց

*Նկարիչ: Ուսուցիչ Էջմիածնի Գէորգեան ճեմարանում* 1890 *թ.:*

52․ Սիմէոն Տահնազարեան

*Բժիշկ: Եղել է* 1897—1898 *թ. ուսումն. տարում, կարճ ժամանակով Երեւանի Հայոց թեմ. դպրոցի տեսուչ:*

53․ Լեւոն Մսերեանց

*Բարբառագէտ: Դասախօս Լ. ճեմ. Լիկէոնում: Հեղինակ բազմաթիւ գիտ. աշխատութիւնների:*

54. Պետրոս Սիմէոնեանց 1850/51

*Ն. Նախիջեւանցի: Դորպատի համալս. աւարտած 1851—1853 թ.: Դպրոցական գործիչ: Խմբագիր «Մեղու Հայաստանի» 1863 թ. Ղեկավար դէմք պահպանողական ուղղութեան:*

55. Համբարձում Փափազեանց 1848/1849

*Կ. Պոլսեցի: Աւարտել է Դորպատի համալսարանը 1849—1851 թթ.: Յետագային հոգեւորական:*

56. Քերովբէ Պատկանեան 1849/50

1843 *մտել է ճեմ. եւ աւարտել* 1850*ին: Աշակերտել է Մ. Էմինին:* 1851 *թ. մտնում է Դորպատի համալսարանը, բայց չի աւարտում:* 1857 *թ. աւարտում է Պետերբուրգի Մանկավարժական ճեմարանը: Ուսուցիչ Թիֆլիսում:* 1861 *թ. նշանակւում է Պետերբուրգի համալսարանի Արեւելեան մասնաճիւղի Հայոց լեզուի դասախօս: Դր. եւ պրոֆեսոր հայագիտութեան: Ունի բազմաթիւ գիտական ուսումնասիրական աշխատանքներ նուիրուած գլխաւորապէս Հայոց լեզուին եւ Հայոց պատմութեան: Հիմնադիր հայ բարբառագիտութեան: Ծն. Ստաւրապոլում* 1833 *թ. եւ վախճ.* 1889 *թ. ապրիլ* 2*ին:*

57. Աստամանեան Կոստանդին 1893/94, 1898

*Ուսուցիչ Բաքւում:*

58 · Բահաթրեանց Առաքել 1874

*Փոխ վերատեսուչ Ն · Նախիջեւանի հոգ · ճեմ · դպրոցի ։*

59 · Աթեանց խաչատուր

*Աւարտել է Մոսկ · համալսարանը ։ Բժիշկ Թիֆլիսում ։ Ծնած Վերին Ագուլիսում ։*

60 · Արիստակէս (Ռուստէմ) Զարդարեան

*Ծն · Գողթան գաւ · Ն · Ագուլիսում ։ Ճեմարանը աւարտելուց յետոյ աւարտել է Մ · համալսարանը բժշկ · մասնաճիւղը ։ Բժշկութեամբ պարապել է Թիֆլիսում եւ ձեռք բերել մեծ հռչակ ։ Հրաւիրուել է որպէս Ն · Կ · Մ · Միխայիլ Նիկոլաեւիչի պալատական բժիշկ · այդ պաշտօնում մնացել է մինչեւ 1905 թ · յեղափոխութիւնը ։ Յայտնի էր որպէս չատ համակրելի հասարակ · գործիչ · եղել է Կովկասի Հայոց հրատարակչ · ընկերութեան վարչութեան անդամ ։ Երկու տարի բժշկութիւն արել Թաւրիզում ու յետոյ վերադարձել նորից Թիֆլիս, ուր եւ վախճանուել է ։ Ունէր նկարչութեան չնորհք ։ Գրել է մի քանի գրքոյկներ զօկերի բարբառով ։*

*Մարդասէր, ազգասէր եւ մասնաւորապէս քնքուշ զգացումներ էր տածում դէպի Գողթանն ու գողթանցիները ։*

61 · Անանիա Սուլթան Շահ 1853/54

*Բժիշկ ։ Հասարակ · գործիչ ։ Աշխատակից «Հիւսիսափայլ»ի ։ Հեղինակ՝ «Հայոց*

*ազգի լուսաւորիչք» վիպական գրուածքի։ Վախճանած Ղզլարում 1900 թ.։*

62. Սարգիսեան Աբգար 1864/65

*Թարգման Նասրէդդին Շահի մօտ։ Ունի թարգմանական աշխատանքներ ռուսերէնից՝ հայերէնի։ Ն. Ջուղայեցի։*

63. Սարգիսեան Լեւոն 1873/84

*Գողթանի Ցղնա (Ցանանար) գիւղից։ Ծն. 1862 թ. Աւարտել է Մոսկ. համալսարանի բնագիտական բաժինը։ Ուսուցիչ Լազ. ճեմ. եւ Ներսիսեան դպրոցում (1889 թ.)։ Հեղինակ՝ «Հին ցաւ», «Ժողովրդակ. կրթութիւնը մեզանում», «Այց Թիւրքաց Հայաստանին»։ Տեսուչ Շուշւայ թեմ. դպրոցի։ Հեղինակ «Մայրենի խօսք» (Կ. Կուսիկեանի հետ) ընթերցարանութեան ձեռնարկի։ Քաղաքագլուխ Ալէքսանդրապոլի (Լենինականի)՝ Սով. իշխ. օրօք։ 1921 թ. դեսպան Խ. Հ.նի Թեհրանում։ Վխճ. 1926 թ.։*

64. Համբարձում Թումանեանց 1877/88

*Պարսկաստանի հանրածանօթ Թումանեան Առեւտրական Տան անդամ։ Ապրում է Փարիզում։*

65. Երուանդ Շահազիզ

1882. *Ն. Նախիջեւանի թեմ. դպրոցի Հայոց լեզուի դասատու։ Աչքառու գրականագէտ. ունի բազմաթիւ գրական-պատմական-կենսագրական ուսումնասիրութիւններ։*

*Հեղինակ՝ «Մկրտիչ Յովսէփեան էմին» կենսագրութեան, «Սմբատ Շահազիզ»ի կենսագրութեան* (1944 *թ.*)։ *Խ. Հայաստանում ստացել է «Դոկտոր Փիլոլոգիական գիտութիւնների» կոչումը։*

66. Մկրտիչ Բարխուդարեան 1886/87

*Ծն. Գողթանի Վ. Ագուլիս աւանում։ Համալսարանաւարտ։ Խմբագիր կիսամեայ «Հանդէս գրականութեան եւ պատմութեան»։ Լոյս են տեսել եօթ ստուար հատորներ* 1888—1896 *թթ.։ Ունէր տպարան Մոսկուայում* 1889 *թուից։*

67. Կանկանեան

*Բժիշկ Կաղզմանում։*

68. Մամիկոնեան

*Բժիշկ Կաղզմանում։*

69. Մակաշեան Սուրէն

*Բժիշկ. գործել է Երեւանում, Թեհրանում եւ Իրանի այլ քաղաքներում։*

70. Կարապետ Կուսիկեան

71. Մինաս Բերբերեան (80*ական թուականներին*)

*Ն. Նախիջեւանցի։*

72. Իւրիյ Վեսելովսկի (80*ական թուականներին*)

*Ռուս գրական գործիչ։ Ունի հայ գրականութեան նուիրած մի շարք աշխատանքներ։ Անկեղծ ու ջերմ հայասէր։*

73· Ալեքսէյ Զիվիլեգեան

*Աւարտել է Մ. համալս. պատմա-լեզուագիտական մասնաճիւղը: Պրոֆ. պատմութեան: Ունի ռուսերէն լեզուով մի շարք պատմագիտական աշխատանքներ: Ներկայիս Խ. Հայաստանում է աշխատում:*

74· Եակուլով Ալէքսանդր

*Աւարտել է Մ. համալս. իրաւարան. մասնաճիւղը եւ ապա որպէս փաստաբան գործել Մոսկուայում:*

75· Ցալանթարեան Արտեմ 1891

*Մի Ֆիրմայի ներկայացուցիչ Բաքւում:*

76· Բահաթրեան Լեւոն 1891/92, 1895

*Աւարտել է Մ. համալս. իրաւարան: Գործել է Բաքւում:*

77· Ամբարդանով Ալէքսիանոս 1900

*Պետերբուրգի Պետական Բանկի պաշտոնեայ:*

78· Տէր-Սարգիսեանց Ստեփան

(*Ազատ ունկնդիր* 1889 *թ.*)

*Վերակացու Լազ. ճեմ. եւ Դասատու Նախակրթարանի առաջին բաժանմունքի Լազ. ճեմարանում:*

79· Սեփերեան Գէորգ

*Առեւտրական Միլանո քաղաքում (Իտալիա):*

80. Պետրոսեան Ղազարոս 1895, 1898

*Պոլսեցի: Լազ. ճեմ. Լիկէոնից յետոյ մտնում է Մ. համալսարանի բժշկական մասնաճիւղը, որը եւ աւարտում է: Գործել է Թուրքաստանի գաւառական քաղաքներում:*

81. Ալէքսանդր Ներսիսեան աւ. 1895

*Իրաւաբան Մոսկուայում: Աւարտ. Մոսկ. համալս. իրաւաբանական մասնաճիւղը:*

82. Ստեփան Քաքանակեան աւ. 1895

*Աւարտել է Մոսկ. համալս. պատմա-լեզուագիտ. մասնաճիւղը, գրականութեան բաժինը: Ուսուցիչ Ներսիս. դպրոցի ռուսերէն լեզուի: Գնահատուած արտասանող: Թատրոնական գործիչ Թիֆլիսում:*

83. Յովսէփ Թադէոսեան 1887—1895

*Ծն. Գողթանի Վ. Ագուլիս աւանում 1873 թ.: Սկզբնական կրթութիւնը ստացել է գիւղի ծխ. դպրոցում. Միջնակարգը՝ Լազ. ճեմարանում: Բարձրագոյնը՝ Մոսկ. համալս. պատմա-լեզուագիտական բաժնի պատմական մասնաճիւղը 1900 թ.: Երկու եւ կէս տարի եղել է ուսանող Բերլինի եւ Միւնխէնի համալսարաններում, լսել է հասարակական գիտութիւններ ու պատմութիւն: Պաշտօնավարել է, որպէս ուսուցիչ՝ Թիֆլիս քաղաքի Հայոց Յովնանեան դպրոցում (2 տարի), որպէս տեսուչ՝ Ախալցխայի եւ Բաթումի դպրոցներում: Եղել է ուսուցիչ*

*Լազարեան ճեմարանում* (1909—1918)։ *Հ. Հ. օրօք եղել է Երեւանի պետական ինքնավարութեան Վարչութեան Նախագահ*։ 1921—1929 *թ. Թաւրիզի Հայոց գիմնազիոնի հիմնադիրներից մէկը եւ ուսուցիչ*։ 1929—1831 *թ. Թեհրանի Հայոց դպրոցում ուսուցիչ*։ 1931 *թ. հիմնադիր եւ առաջին խմբագիր* (5 *տարի*) *«Ալիք» թերթի։ Խմբագիր՝ «Նաւասարդ», «Լոյս» եւ «Արփի» գրական-գիտական ամսագրերի։ Ունի բազմաթիւ գրական ինքնուրոյն ու թարգմանական աշխատանքներ։ Աշխատակցել է՝ «Հայրենիք» եւ «Մուրճ» ամսագրերին, «Հայրենիք», «Յուսաբեր» եւ «Յառաջ» օրաթերթերին, «Նոր Գիր» գրական Հանդէսին եւ «Հանդէս Ամսօրեայ» ուսումնաթերթին*։

84. Յակոբ (Եաշա) Եակուլով

*Աւ. Լազ. ճեմ. եւ Մոսկ. համալսարանի Իրաւաբանական բաժինը։ Շատ չուտով ձեռք բերել անուանի փաստաբանի անուն Մոսկուայում։ Մասնագէտ քրէական իրաւունքի*։

85. Մամիկոն Գէորգեան

*Ծն. Գողթանում՝ Վ. Ագուլիսում։ Աւարտ. Մոսկ. համալս. իրաւաբանական մասնաճիւղը։ Ներկայումս՝ Խ. Հայաստանում է գործում*։

86. Գարեգին Աթաբէկեան

*Ծն. Վ. Ագուլիսում։ Աւ. Մոսկ. համալսարանի բժշկական մասնաճիւղը*։

87· Պալասանեան Ռուբէն

*Բժ. Թեհրանում:*

88· Ֆրէնդեան Ալէքսանդր 1899 թ.:

*Սկզբ. կրթութիւնը ստացել է Թեհրանի Հայկազեան դպրոցում: 1899 թ. անցել է Լազ. ճեմարան: Երկար տարիներ պաշտօ-նավարել է Իրանի պետական հիմնարկնե-րում:*

89· Մելիք-Յովսէփեան Յարութիւն 1909—1916

*Վաճառական Թեհրանում:*

90· Յակոբեան Գալուստ 1905—1915

*Ճարտարապետ-մեքենագէտ Թեհրանում:*

91· Յակոբեան Սուրէն 1906—1915

*Տնտեսագէտ: Գործում է Թեհրանում:*

92· Յովսէփ Կուսիկեան

*Բարձրագոյն ուսումն. ստացել է Մոսկ. Համալսարանում, աւարտելով պատմա-լե-զուագիտական մասնաճիւղը: Ներկայումս գործում է Խ. Հայաստանում: Պատմագիտա-կան աշխատանքներ ունի. աշխատակցում է «Խ. Հայաստան» եւ այլ հանդէսներին Երե-ւանում:*

93· Դեմետրի Կարապետեան 1909—1917

*Ծն. Ն Ջուղայում 1909 թ. Սկզբ. կրթու-թիւնը ստացել է Ն. Ջուղայի ծխական դպրո-*

*ցում: Լազ. ճեմ. լիկէոնում սովորել է 1½ տարի (Պր. Մառի եւ Օրբելիի ժամանակ), յետոյ անցել Մոսկուայի Պետ. Երաժշտանոցը: Նուագում է թառ ջութակի վրայ: Ներկայիս՝ Թեհրանի Երաժշտանոցի թառ ջութակի դասատու է:*

94. Գուրգէն Տէր-Մկրտչեան 1909—1916

*Իրաւաբան: Գործում է Թեհրանում որպէս առեւտրական–արդիւնաբերող: (Ունի կարտօնաժի գործարան:)*

95. Միքայէլ Մանդինեան

*Թիֆլիսեցի: Բժիշկ: Վիճ. արտասահմանում:*

# ԱՂԲԻՒՐՆԵՐ

1. «Լազարեան Ճեմարանի 50ամեակը», *Հաւաքածոյ ճառերի, հաշուետուութեան, բարձրագոյն հրովարտակների, պաշտօնական գրագրութիւնների, ճեմարանաւարտների անուանացուցակով եւ այլն: Ռուսերէն: Տպարան Լազ. ճեմարանի:* 1865, 4°, *Մոսկուա:*

2. «Լազարեան Ճեմարանի 75ամեակը», *Հաւաքածոյ նոյնանման նիւթերի: Մոսկուա, Տպարան Գատցուկի,* 1891 *թ., էջ Ը* + 250 *եւ չորս տախտակներ վիճակագր. տեղեկութիւններով: Ռուսերէն:*

3. «Լազարեան Ճեմարանի Մասնագիտական Դասարանների 30ամեակը» (1872—1902), *Հաւաքածոյ ճառերի, հաշուետուութեան, պատմական ակնարկի, Անուանացուցակ ուսանողների, դասատուների գիտական աշխատութիւնների ցանկ եւ այլն: Մոսկուա* 1903: *Ռուսերէն:*

4. Պրոֆ. Ալեքսէյ Զինովեւ, «Լազարեան Ճեմարանի արեւելեան լեզուաց պատմական ակնարկ, հանդերձ համառօտ կենսագրական տեղեկութիւններով Լազարեան տոհմի անդամների մասին»: *Մոսկուա* 1863 *թ.: Տպարան Լազ. ճեմարանի: Ռուսերէն:*

5. Մսեր Մագիստրոս Գր. Մսերեանց, «Յիշատակարան կենաց եւ գործոց մեծանուն պայազատաց Լազարեան տոհմի»: *Տպարան Արեւելեան լեզուաց ճեմարանի Տեարց Լազարեանց: ի Մոսկուա* 1856:

6. Աղ. Երիցեանց, «Կովկասեայք ժԹ. դարում: *Մասն Ա. եւ Մասն Բ.* (1831—1842): *Թիֆլիզ* 1895:

7. Աղ. Երիցեանց, «Ներսէս եպիսկոպոսը Դանիէլ կաթողիկոսի ժամանակ»: *Թիֆլիզ* 1877:

8· «Յիշատակարան բազմերախտ հոգաբարձուի Յովհաննու Յովակիմեան Լազարեանց»: *Մոսկուա* 1859, *Տպարան Լազ. Ճեմ. Արեւելեան Լեզուաց:*

9· Դաւիթ Անանուն, «Ռուսահայերի հասարակական զարգացումը 19րդ դարում»: *Հ. Ա.* 1916 *Թ.*:

10· «Բարձրագոյն Հրովարտակք, *Կանոնադրութիւնք եւ Ցուցակ Լազարեանց Ճեմարանի Արեւելեան Լեզուաց ի Մոսկով եւ Կանոնք Նորին բարձրագոյն Հաստատեալք»*, *ծախիւք Տ. Հոգաբարձուի Լազարեանց Ճեմարանի ի յիշատակ մատաղահաս Յովհաննու Խաչատրեան Լազարեւի: Ի Մոսկով, ի Տպարանի Լազարեանց Ճեմարանի Արեւելեան Լեզուաց:* 1852: (*Հայերէն եւ Ռուսերէն բնագրերով:*)

11· Լէօ, «Յովսէփ կաթողիկոս Արղութեան», *Թիֆլիս* 1902:

12· Լէօ, «Հայկական Տպագրութիւն», *Հ. Ա. եւ Հ. Բ.*:

13· Լէօ, «Ստեփաննոս Նազարեանց», *Հ. Ա. եւ Հ. Բ. Թիֆլիս* 1902:

14· Լէօ, «Պատմ. Ներսէսեան թեմական հոգեւոր դպրոցի, 1837—1912»: *Թիֆլիս* 1914:

15· Ստ. Մալխասեանց, «Համառօտ պատմութիւն Ներսիսեան հոգեւոր դպրոցի 75ամեայ գոյութեան (1824—1899)»: *Թիֆլիս* 1900 *Թ.*:

16· «Ղարաբաղի Հայոց Հոգեւոր թեմական դպրոցի 75ամեակը», *Շուշի* 1913 *Թ.*:

17· Նիկոլ Աղբալեան, «Պատմութիւն Հայոց գրականութեան». Ներածութիւն: *Պէյրութ* 1947, *Տպ. «Յոյս»*:

18· Երուանդ Շահազիզ, «Մկրտիչ Յովսէփեան էմին», *Կենսագրական ճախուղ*: *Թիֆլիս* 1900:

19· Երուանդ Շահազիզ, «Սմբատ Շահազիզի կենսագրութիւնը»: *Երեւան* 1944:

20· Լեւոն Մանուէլեան, «Ռուսահայ գրականութեան պատմութիւն», *Հտ. Ա., Բ., Գ. եւ Դ.*, 1909—1911: *Թիֆլիս*:

21. Վ. Պօտտօ (*ռուս պատմաբան*), «Վերածնութիւն Հայաստանի», *Ռուսերէնից թարգմ. Պ. Պ. (Արտատպութիւն «Բանասէր» հանդէսից)։ Պարիս* 1904։

22. Յարութիւն Թ. Տէր-Յովհանեանց, «Պատմութիւն Նոր Ջուղայու որ յԱսպահան, *աշխատասիրեալ Նոր Ջուղայեցւոյ Ատենադպրէ Ամենափրկչեան Սրբոյ վանաց»։ Ն. Ջուղա, Տպարան Ամենափրկչեան Ս. Վանաց*, 1880 *Թ.։ Հ. Ա. եւ* 1881 *Թ. Հ. Բ.*։

23. «Դիւան Հայոց Պատմութեան», *Խմբագրեց Գիւտ քահ. Աղանեանց։ Գիրք Ա. եւ Բ.* 1780—1834։ *Թիֆլիս* 1893։

24. Գիւտ քահ. Աղանեանց, «Կարնոյ գաղթը» (1829—1830)։ *Թիֆլիզ* 1891։

25. Կարապետ Եզեանց, «Ս. Էջմիածնի Մայր Աթոռի եւ Ռուսաց կառավարութեան յարաբերութիւնների ծագումը»։ *Թիֆլիզ* 1905։

26. Վ. Գ. Զարդարեան, «Յիշատակարան»։ *Հայ երեւելիներու կենսագրութիւնները, ձեռագրերը, գրութիւնները եւ այլն*։ 1512—1912. *Հայկական տպագրութեան* 400*ամեայ յոբելեանի առթիւ։ Երկրորդ Հատոր*։ 61 *կենսագրութիւն* 126 *լուսատիպ պատկերներով*։ 1911 *Թ. Կ. Պոլիս*։

27. Մխիթար վարդապետ, «Հայերը Ռուսաստանում»։ *Վաղարշապատ* 1906։

28. Ղազարոս Աղայեան, «Իմ կեանքի գլխաւոր դէպքերը»։

29. «Նկարագիր Գաղթականութեան Հայոց *ի Պարսկաստանէ ի Ռուսաստան*», 1832, *ի Մոսկով ի տպարանի Հայկական ճեմարանի Տեարց Լազարեանց*։

30. Գր. Ջանշեան, «Եղբայրական Օգնութիւն Հայերին», *Մոսկուա։ Ռուսերէն*։

31. Սմբատ Շահազիզ, «Լեւոնի վիշտը», *Պօէմա*։ 1865 *Թ. Տպարան Լազարեան ճեմարանի*,

32. «Բազմավէպ», *Հատոր ԽԵ*: *Վենետիկ* 1887 *թ*.:
33. «Հանդէս Ամսօրեայ», *Հոկտ.—Դեկտ.* 1947:
34. «Սիոն», *ամսագիր*, 1947 *թ. մարտ*, *թ*. 3: *Երուսաղէմ*:
35. «Հայրենիք», *ամսագիր*, 1946, *մարտ–ապրիլ*: *Պոսթըն*:
36. «Սովետական Հայաստան», *ամսագիր*, 1947, *սեպտեմբեր*, *թ*. 9:

# ՈՒՂՂԵԼԻՔ

| Էջ | Տող | Տպուած է | Պիտի լինի |
|---|---|---|---|
| 9 | 5 ն.[1] | *Սիրաէյ* | *Սերգէյ* |
| 11 | 7 ն. | *թէ առանձին ցանկի մէջ* | *բաց թողնել այս բառերը* |
| 31 | 2 վ. | *այն արիական* | *այն արիւնոտ* |
| 41 | 3 վ. | *Ալէքսէյ յօհնայի* | *Ալէքսէյ յեւնայի* |
| 48 | 1 ն. | *ցուցադրած վերա-բերմունքն* | *ցուցադրած պար-սաւելի վերա-բերմունքն* |
| 49 | 7 ն. | *ընթացքներին* | *ընթացքին* |
| 96 | 6 վ. | *կենտրոնական* | *կենտրոնախոյս* |
| 102 | 2 ն. | *Գլենկան* | *Գլինկան* |
| 109 | 4 ն. | *Գլենկան* | *Գլինկան* |
| 111 | 11 ն. | *Վադանդոլսկի* | *Վանդանկովսկի* |
| 151 | 3 ն. | *գործնահետեւանք-ների* | *գործնական հետե-ւանքների* |
| 152 | 5 ն. | *Տահրիմանեան* | *Տահամիրեան* |
| 154 | 9 վ. | *Կնորինդն* | *Կնորինգն* |
| 154 | 7 ն. | *Ի Տամարէն* | *Ի Թամարէն* |
| 163 | 15 վ. | *Գեղարտակրին* | *Գեղարդակրին* |
| 164 | 4 վ. | *մտայնացումն* | *մտայղացումն* |
| 193 | 5 ն. | *չթարս–րիտմիտարի* | *չտարս–րամիտարի* |
| 212 | 13 վ. | *մամուլի որդաները* | *մամուլի օրգան-ները* |
| 212 | 8 ն. | *ծախելով* | *ծախսելով* |
| 217 | 9 ն. | *Հայկական գրադա-րանը* | *հսկայական գրա-դարանը* |
| 220 | 10 վ. | *դրականութեան* | *իրականութեան* |
| 223 | 3 վ. | *առում էր* | *առում է* |

[1] Վ. = *վերեւից* : Ն. = *ներքեւից* :

| | | | |
|---|---|---|---|
| 225 | 2 վ. | (Կամերիեր) | (Կամերդեր) |
| 246 | 1 ն. | դաստառու : | դաստառու եւ դաս–տիարակ : |
| 278 | 13 վ. | Տուլայի Պերմ եւ | Տուլայի, Պերմ |
| 337 | 15 վ. | գրականագիտու–թեան | գրականութեան |
| 352 | 2 վ. | երագացնել | իրականացնել |
| 365 | 14 վ. | մասնացումի | մասնակցումի |
| 368 | 15 ն. | (լուսաւորու)ւեան | (լուսաւորու)–թեան |
| 414 | 2 վ. | Ջաադաեւ | Չաադաեւ |
| 423 | 3 ն. | Մեյլերի | Միլլերի |

# ՊԱՏԿԵՐՆԵՐ

Եջ



---

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

## ՄԱՏԵՆԱՇԱՐ

ձԿԸ. Ակինեան Հ. Ն., *Եղիշէ վարդապետ եւ իւր Պատմութիւնն Հայոց պատերազմին. քննական ուսումնասիրութիւն: Հտ. Գ.:* 1952, *էջք* 530: գ. Ֆր. 7·—

ձԿԹ. Ակինեան Հ. Ն., *Կարմիրն Վարդան եւ Աւարայրի ճակատամարտը ըստ Ղազար Փարպեցւոյ:* 1951, *էջք է* + 96: գ. Ֆր. 1·—

ձՀ. Պօղոսեան Հ. Ե., *Գուրջաճեան եւ Թրնկրեան Գերդաստանները:* 1951, *էջք Ե* + 222: գ. Ֆր. 1·20

ձՀԱ. Ոսկեան Հ. Հ., *Գնունեաց եւ Ռշտունեաց Նախարարութիւնները:* 1952, *էջք Ը* + 156: գ. Ֆր. 3·—

ձՀԲ. Ակինեան Հ. Ն., *Բաղէշի Դպրոցը* 1500—1704. *Նպաստ մը Հայոց Եկեղեցւոյ Պատմութեան եւ Մատենագրութեան:* 1952, *էջք Ը* + 390: գ. Ֆր. 5·—

ձՀԳ. Ակինեան Հ. Ն., *Մատենագրական հետազօտութիւններ. Հտ. Ե.* 1953: գ. Ֆր. 5·—

ձՀԴ. Ոսկեան Հ. Հ., *Տարօն–Տուրուբերանի վանքերը:* 1953, *էջ* 371 (24 *պատկերով*): գ. Ֆր. 5·—

ձՀԵ. Ոսկեան Հ. Հ., *Արցախի վանքերը:* 1953, *էջք* 256: գ. Ֆր. 3·—

ձՀԶ. Թաղէոսեան Յ., *Պատմութիւն Լազարեան տոհմի եւ Լազարեան ճեմարանի արեւելեան լեզուաց:* 1953, *էջք Ը* + 516: (23 *պատկերով:*) գ. Ֆր. 5·—

ձՀԷ. Պօղոսեան Հ. Ե., *Ոսկեան եւ Մըսըրլեան գերդաստանները:* 1953, *էջք* 120: գ. Ֆր. 1·50

---

*Հասցէ*

**ՄԽԻԹԱՐԵԱՆ ԳՐԱՎԱՃԱՌԱՆՈՑ**

*Librairie des Pères Mechitharistes*

*Vienne VII/62, Mechitaristengasse 4 (Autriche)*



